# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

---

16 ԺԶ.

## ՄԱՏԵՆԱԳՐԱԿԱՆ

# ՄԱՆՐ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՔ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1895.

Hagovpos Dashian

(Modern Armenian)

Minor Literary Investigations
or
Criticisms
Search into the Originals
Part First, 1–6.
Nemesius, Brogl (Pavelus), Khosro,
Yelipan (Epiphanius) and Secundus.
Written by
Dashian Hagovpos, Dr.
Mechitarian Monastery
Venice
Mechitarian Press.
1895.

# ՄԱՄՆԱԳՐԱԿԱՆ

# ՄԱՆՐ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՔ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1895.

Hagovpos Dashian

(Modern Armenian)

Minor Literary Investigation or

Criticisms

Search into the Originals

Part First, 1-6.

Nemesius Brogl (Paradus), Khosro

Yelipan (Epiphanius) and Secundus.

Written by

Dashian Hagovpos Dr.

Mechitarian Monastery

Venice

Mechitarian Press.

1895.

Θ

Hagopos Dashian

# ՄԱՏԵՆԱԳՐԱԿԱՆ

# ՄԱՆՐ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՔ

## ՀԵՏԱԶՕՏՈՒԹԻՒՆՔ ԵՒ ԲՆԱԳԻՐՔ

---

ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ, Ա–Զ

ՆԵՄԵՍԻՈՍ, ՊՐՈԿՂ, ԽՈՍՐՈՎԻԿ, ԵՊԻՓԱՆ

ԵՒ ՍԵԿՈՒՆԴՈՍ

ԳՐԵՑ

Հ. ՅԱԿՈՎԲՈՍ Վ. ՏԱՇԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1895.

# ԱԶԴ

Յաջորդ գրութիւնս նպատակ ունի՝ իւր յաջորդ մասերուն հետ մէկտեղ՝ մեր մատենագրութեան հետազօտութեան նպաստել եւ ասով հայ մատենագրութեան ապագայ պատմագրին հետազօտութիւնը փոքու իւիք դիւրացընել: Առ այս կը դիտուի հետզհետէ հրատարակել համառօտ քննութիւններ նախնեաց այլեւայլ ինքնագիր եւ թարգմանական գրութեանց վրայ, մասամբ նաեւ քննադատական հրատարակութիւններ կցել հետազօտութեանց, ինչպէս եղած է նաեւ այս գրութեան մէջ: Յաջորդ մասերն ալ կը յուսամք հետզհետէ ի լոյս հանել, եթէ հանգամանք ներեն:

Այս մասին մէջ կը գտնուին հետազօտութիւնք հինգ գրութեանց, որոնք մասամբ լոյս տեսած էին “Հանդիսի„ մէջ (1892—93), կցելով ասոնց այլեւայլ բնագիրներ՝ համեմատութեամբ ձեռագրաց, եւ ծանօթութիւններ: Իւրաքանչիւր մասին մէջ յիշուած են մանրամասն նոյն խնդրոյ վրայ խօսող գրութիւնք: Հետազօտութեանցս լոյս տեսնելէն ետքն այլեւայլ գրութիւնք ալ երեւցան, զորոնք չէինք կրնար զետեղել իրենց տեղն, ուստի հոս համառօտիւ կը նշանակենք գլխաւորները:

Նեմեսիոսի մեր քննութեան հետ[1] լոյս տեսաւ Իտալացի հայագիտին քննութիւնն նոյն գրութեան վրայ[2], որ նաեւ հայերէն թարգմանութեամբ ծանօթացաւ “Բազմավիպի„ մէջ:[3] Քիչ մ'ետքը նոյն հայագէտն երկրորդ տետրակ մ'ալ հրատարակեց “Նեմեսիականք„ վերնագրով՝ որ է “Տեղեկութիւն Նեմեսիոսի հայերէն թարգմանութեան ինչ ինչ տեղեաց վրայ:„[4] Ասոր մէկ

[1] Տես Հանդէս 1892, Թ. 3, էջ 65—71:

[2] E. Teza, La Natura dell' Uomo di Nemesio. Venezia 1892.

[3] Բազմավէպ, 1892, Թ. 10—12:

[4] E. Teza, Nemesiana. Sopra alcuni luoghi della

մասն նուիրուած է մեր հետազօտութեան արդիւնքները յառաջ բերելու եւ քննելու, երկրորդն հայ թարգմանու-թեան մէկ գլուխն մանրամասն համեմատելու յունա-րէնին հետ՝ նշանակելով նաեւ մեր գրատան Թ. 90 Բ ձեռագրին ընթերցմունք:[1]

Պրոկղի գրութեան քննութեան[2] մէկ կարեւոր կէտին վրայ նոր լոյս սփռեց Կոնիբիր հայագիտին խաւ-րած հատակոտորքն.[3] եւ այս յաջորդ գործքիս հին-գերորդ մասը կը կազմէ (տես էջ 147 եւն): Քիչ մ'ետքն ընդարձակ եւ հմտալից քննութիւն մը լոյս տեսաւ "Բազմավիպի" մէջ Հ. Բարսեղ Վ. Սարգսեանի գրչէն, ուր Պրոկղի խնդիրք կրկին հետազօտուած եւ շատ կէտեր նոր լուսաբանուած են, Վենետկոյ ընտիր մէկ ձեռագրին վրայ տեղեկութիւններ տրուած եւն: Ցա-տուածին վերնագիրն է. "Պրոկղ իմաստասիրի աստուա-ծաբանական Շաղկապաց հայկական թարգմանութեան խնդիրն եւ Մատենադարանիս թիւ 1123 գրչագրի զաղտ-նիքն:"[4] Պրոկղի ապագայ քննիչք անտեսել չեն կրնար այս հատուածները: — Անցողակի յիշենք հոս գրքոյկ մ'ալ որ մօտերս մեր ձեռքն անցաւ, եւ որ սա վերնա-գիրը կը կրէ. "Գրքուկ որ կոչի Պատճառաց. որ է մասն ինչ ի գրոց Արիստոտէլի, կամ որպէս ոմանք կարծեն Պրոկղի իմաստասիրի. Թուին 1199 (= 1750 Ց. Ք.): Փոքրիկ 78 էջով գրքոյկս[5] Ստեփանոսի Լեհացւոյ մէկ գործն է, որ ի վերջոյ սա յիշատակարանը կցեր է (էջ 75). "Արդ դուզաքեայ բանս թարգմանեալ եղեւ ի լա-

---

„Natura dell' Uomo" in Armeno. Nota. Roma. 1893. 8° pp. 16.

[1] Հմմտ. Հանդէս 1893, Թ. 11, էջ 343:

[2] Տես Հանդէս 1892, Թ. 4 եւ 5:

[3] Հանդէս 1893, Թ. 12:

[4] Բազմավէպ, 1894, Թ. 3, էջ 122—130 եւ Թ. 7, էջ 310—328:

[5] Սկիզբն է այսպէս. "Ի գրոց պատճառաց Ա-րիստոտէլի. կամ որպէս ոմանց թուի Պրոկղի: Ա-ռարկութիւն Առաջնորդ: Ամենայն պատճառ նախկին՝ է յոյժ ազդեղ յիւր պատճառելին, քան թէ պատճառ երկրորդ ընդհանուր" եւն: Ամբողջ գրքոյկը բաժնուած է 32 "Առարկութեանց:"

տինացոց բարբառէ ի հայոց լեզու ի ձեռն ուրումն լէհացի ստեփաննոս կրօնաւորի ի փառս Քրիստոսի„ եւն: Ինչպէս տպագրողին յիշատակարանէն (էջ 76—78) կ՚իմանանք, տպուած է գրքոյկս "ի հայրապետութեան Տեառն Ղազարու„ եւ "ի պատրիարգութեան Սրբոյ աթոռոյն Երուսաղէմի Տեառն Յակոբայ,„ եւ այն հրամանաւ Կ. Պոլսոյ պատրիարգին "Տեառն Մինասայ ծգնազգեաց վարդապետի.„ նոյն քաղաքին "Բարսեղեան Գաբրիէլ դպրի„ տպարանին մէջ: Տպագրութեան թուականն ալ է՝ "ի թուի փրկչին ՌՉԺին ի մայիսի 10ին:„ Տեղւոյս չէ աւելի խօսիլ թարգմանութեանս եւ իւր բնագրին վրայ:

Խոսրովկայ[1] եւ "Գրոց Հերձուածոց„[2] մեր քննութեան մէկ կէտին նկատմամբ կարեւոր դիտողութիւն մը խաւրեց հրատարակիչը՝ Միաբան:[3] Միաբանի ձեռօք ասոր եւ "Անանիայի„ խոստովանութեան հրատարակութիւնն առիթ տուաւ երկու նոր իրարմէ անկախ եւ իրարմէ շատ մասանց մէջ տարբերող քննութեանց լոյս տեսնելուն: Երկուքին մէջն ալ աւելի պատմական կողմն քննութեան նիւթ առնուած է, ի մասնաւորի հիւսելով Պաւղիկեանց եւ նման աղանդոց հայ հողի վրայ ունեցած գործունէութեան պատմութիւնը: Առաջինն է Հ. Բարսղի Վրդի Սարգսեան գրութիւնն "Ուսումնասիրութիւն Մանիքէա-Պաւղիկեան Թոնդրակեցւոց աղանդին եւ Նարեկացւոյ թուղթը.„ (Վենետ. 1892) եւ երկրորդ՝ Կ. Տէր-Մկրտչեանի գերմաներէն գրութիւնն՝ "Պաւղիկեանք բիւզանդական կայսրութեան մէջ եւ ազգակից աղանդք ի Հայս.„[4] որուն առաջին՝ զուտ մատենագրական-քննական՝ մասն լոյս տեսած էր նախ սա վերնա-

---

[1] Տես Հանդէս 1892, Թ. 9:

[2] Հանդէս 1892, Թ. 10, 11:

[3] Հմմտ. Հանդէս 1893, Թ. 11. էջ 371:

[4] Ter-Mkrtschian K. — Die Paulikaner im byzantinischen Kaiserreiche und verwandte ketzerische Erscheinungen in Armenien. Leipzig 1893. 8o XII 163 pp. Վերջերը կը խօսուի նաեւ "Գրոց հերձուածոց„ քանի մը մասանց վրայ:

զրով՝ "Յունական աղբերք Պաւղիկեանց նկատմամբ:„[1] եւ որուն վրայ խօսած ենք համառօտիւ:[2]

Սեկունդոսի քննութիւն[3] գերմաներէն գրուած է նախնաբար եւ ներկայացուած Վիեննա գիտութեան ճեմարանին, եւ ընդունուելով անկէ լոյս պիտի տեսնէ նոյն ճեմարանին հրատարակած Տեղակագրոց մէջ:[4] Քննութեանս վրայ համառօտ տեղեկութիւն մը տրուած է ճեմարանին փիլիսոփայական-պատմական բաժնին տեղեկատուութեանց մէջ (1894, Մայիս 2:)[5]

Տպագրութեանս մէջ աւելորդ է՝ ըսել բնագիրը ճշդութեամբ ջանացած ենք յառաջ բերել, նաեւ ուր սխալ էր ընթերցումս եւն: Քանի մը տպագրական վրիպակք հայ եւ այլ լեզուաց մէջ կը յուսանք որ ընթերցողք անտես կ'ընեն:

ՀԵՂԻՆԱԿԸ

---

[1] Die griechischen Quellen über die Paulikaner. Leipzig 1893. 8o pp. 40.

[2] Հմմտ. Հանդէս 1893, Թ. 11, էջ 343:

[3] Հանդէս 1894, Թ. 4, 5, 7, 8, 9, 11, 12:

[4] Das Leben und die Sentenzen des Philosophen Secuudus des Schweigsamen in altarmenischer Uebersetzung von P. J. Dashian: Denkschriften der k. k. Akademie der Wissenschaften. Band XLIV, (Wien 1895), III.

[5] Sitzungsberichte. Sitzung der phil.-hist. Classe vom 2. Mai. Jahrg. 1894, Anzeige-Nr. XII, p. 51—53.

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

րին, 218: — Ուղղակի յունարէնէ թարգմանուած է, 220: — Այլ խմբագրութեանց հետ ինչ աղերս ունի, 221: — Վճռոց եւ Վարուց կապուած ըլլալն, 222: — Հայոյն քանի մ'առանձնայատկութիւնք, եւ Նորանշան թարգմանութիւնք, 224:

2. Բնագիր: "Խաւսք Սեկունդոսի իմաստասիրի առ Ադրիանոս կայսեր." Համեմատութեամբ երեք ձեռագրաց, էջ 225–240:

3. Ծանօթութիւնք: Համեմատութիւնք հայոյն յոյն, ասորի, արաբ. եւ եթովպ. բնագրաց եւն. էջ 240–294:



# ՄԱՏԵՆԱԳՐԱԿԱՆ

# ՄԱՆՐ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՔ



## Ա.

## ՆԵՄԵՍԻՈՍԻ ՅԱՂԱԳՍ ԲՆՈՒԹԵԱՆ ՄԱՐԴՈՅ

Շատ ժամանակ չէ որ լոյս տեսաւ մեր Նախնեաց գրուոր վաստակոց մին ալ Վենետկոյ Ս. Ղազարու տպարանէն։ Ասով "Մատենագրութիւնք Նախնեաց" անուամբ հրատարակուող ժողովածուն ճոխացաւ գրութեամբ մ'որ եթէ ոչ իւր ճարտար թարգմանութեան եւ գեղեցիկ լեզուին, գոնէ իւր նշանակալից բովանդակութեան կողմանէ արժանի է ուշադրութեան։ Այս մատեանն է Նեմեսիոսի Եմեսացւոյ (կամ ըստ մեր նախնեաց՝ Գրիգորի Նիւսացւոյ) Մարդակազմութիւնն, որուն վերնագիրն է "Յաղագս Բնութեան մարդոյ[1]." (Περὶ φύσεως ἀνθρώπου.) այսպէս նոյն իսկ վերնագրովը տարբերելով Նիւսացւոյն նման գրութենէն։

Նեմեսիոսի այս գրութեան հայերէն թարգմանութեան վրայ առաջին անգամ գրեց Հ. Արսէն Վ. Սուքրեան "Բազմավէպի" մէջ[2]։ Այս հատուածին վերնագրէն իսկ կ'իմանանք որ ճաշակ մը կ'ուզէր տալ դիրքն այն թարգմանութեան բովան-

[1] "Նեմեսիոսի փիլիսոփայի Եմեսացւոյ Յաղագս Բնութեան մարդոյ", Վենետիկ. 1889—91։ 8º էջք՝ 166։

[2] "Բազմավէպ", ԼԸ. 1880. Դ. էջ 326—340։

դակութեան եւ լեզուին. եւ այս պատճառաւ ամբողջ գրութեան բովանդակութեան քաղուածոյ համառօտութիւն մըն է հատուածն, ուր ի մասնաւորի ջանացած է հմուտ գրիչն հայոյն ուսումնական բառերուն նշանակութիւնը ճշգրտելու համար՝ դնել փակագծի մէջ համապատասխանող գաղղիականները։ Հատուածը կը վերջանայ նշանակալից նախադասութեամբ՝ թէ "Թարգմանիչն շատ հաւատարիմ չէ իր բնագրին, եւ շատ տեղ՝ ուր աւելի ցանկալի էր որ հայերէն բառից լոյս մը տար մեզի՝ հոն լռութեամբ կ'անցնի։" Եօթն տարի վերջը սկսաւ լոյս տեսնել այս հետաքրքրական գրութիւնը "Բազմավէպի" 1887—88 տարւոյ թուերուն մէջ[1], եւ հասաւ մինչեւ ԺԱ. գլուխ, որ գրեթէ կէսն է ամբողջ գրութեան։ Մնացեալն ամբողջովին լոյս տեսաւ ոչ շատ ժամանակ յառաջ համեմատութեամբ ձեռագրաց եւ բնագրին. Այս միջոցին հատուածիկ մ'ալ գրուած է Նախնեաց Թարգմանութեանց Մատենադարանին մէջ։[2]

Հրատարակութեանս յառաջաբանին մէջ յառաջբերուելով "Մատենադարան Հայկական Թարգմանութեանց" հեղինակին այս նկատմամբ գրածը՝ կը ցուցուի նախ որ Գրիգորի Նիւսացւոյ չէ ճառս՝ յիշելով այն էական կէտը՝ թէ գրոցս մէջ հոգւոյ նախագոյութիւնը կ'ուսուցուի, որ օտար է Նիւսացւոյ վարդապետութենէն. Այս մասին աւելորդ է խօսիլն. վասն զի խնդրոյ տակ չէ այն՝ թէ բոլորովին ուրիշ գործք է Նիւսացւոյն գրութիւնը։ Վերջինս գրած էր նախ "Ջատագովական Մեկնութիւն ի Վեցօրեայն" (Ἀπολογητικὸς περὶ τῆς ἑξαημέρου.) եւ այն՝ ի խնդրոյ իւր Պետրոս եղբօր, որ վանահայր

[1] Հմմտ. "Բազմավէպ,, 1887, Դ, էջ 318—329։ Նոյն՝ 1888, Ա, էջ 31—50. Բ, էջ 118—124. Գ, էջ 217—224 եւ Դ, էջ 313—323։

[2] "Մատենադարան Հայկական Թարգմանութեանց Նախնեաց,, Վենետիկ, տպ. Մխիթ. 1889, էջ 629—632։ Հմմտ. նաեւ՝ էջ 371։

էր վանքի մ'ի Պոնտոս եւ յետոյ եպիսկոպոս եղաւ Սեբաստիոյ։ Նիւսացին իր այս գրութիւնը 379ին գրած էր. իբր շարունակութիւն գրեց նաեւ երկրորդ մը "Վասն Մարդակազմութեան" (περὶ παρασκευῆς ἀνθρώπου.) ամբողջն 30 գլխոյ բաժնուած։ Այս վերջին ճառին հետ շփոթելով Նեմեսիոսի նոյն նիւթոյ վրայ գրածը՝ Գրիգորի Նիւսացւոյ տուին եղաւ Նեմեսիոսի գրութիւնը հայ գրուածոց մէջ, մինչ ընդհակառակն Դիոնեսիոս Կրտսերն (Dionysius Exiguus), որ Նիւսացւոյ գրութիւնը թարգմանեց լատիներէն, վերջնոյն ալ Եւգիպպիոսի ընծայեց, որ Լուկուլանի վանահայրն էր։ Նիւսացւոյ գրութեան հայ թարգմանութիւնն ալ կայ ձեռագրաց մէջ[1], բայց դեռ չէ հրատարակուած։ Իսկ Նեմեսիոսի գրութեան յոյն բնագիրը, որ չի կրնար շփոթուիլ Նիւսացւոյ գրութեան հետ, լոյս տեսած է շատ անգամ, եւ մանրամասն քննութեան առարկայ եղած։ Առաջին անգամ հրատարակեց զայն Նիկ. Էլլեբոդիոս 1565ին յԱնտուերպիա[2]։ Այլ քանի մը հրատարակութիւններէն ետքն[3] աւելի կատարեալ եւ ուղղեալ լոյս տեսաւ յՕքսֆորդ 1671ին[4]։ Ամէնէն աւելի ընտիր հրատարակութիւնն ըրաւ Մատ-

---

[1] Հմմտ. "Մատեն. Թարգմ. Նախն.", էջ 371, ուր "Ցեսութիւն մարդոյն կազմութեան", տիտղոսը կը կրէ։ Էջմիածնի Մատենադարանին Թիւ 445—452 կը բովանդակեն Նիւսացւոյ "Բնութեան Մարդակազմութեան եւ Կուսութեան գիրք", անուն գրութիւններ։ Իսկ Թ. 453, որ անանուն "Բնութեան եւ Մարդակազմութեան գիրք" "քառածալ բոլորգիր գրեալ ի թղթի, սկիզբն թերի", գրչութիւն մըն է, կը համարուի թէ Նեմեսիոսի այս գործքն ըլլայ։ (Հմմտ. յիշեալ "Մատենադարան", եւն. էջ 631։)

[2] Nemesii Opera, gr. et. lat. ab Nic. Ellebodio. Antv. 1565.

[3] Հմմտ. Auctarium bibl. Patr. Ducaei, Paris. 1621, Tom. II. Դարձեալ Auctarium etc. Morelli, Paris. 1654, Tom VIII.

[4] Nemesius, etc. Oxon. 1671. Այս Հրատարակութեան հեղինակը Fell գիտնականը կը դնեն ոմանք։ Հմմտ. Nirschl, Patrologie, II, p. 231.

թէ ի Մակտեպուրկ 1802ին[1]։ Ընդարձակ ներածութեամբք կրկին հրատարակուեցաւ Կալլանդիոսի եւ Մինեէի համբաւաւոր ժողովածուներու մէջ[2]. Թարգմանուեցաւ ի գերմաներէն եւն, եւ մանրամասն քննութեանց ենթարկուեցաւ շատ անգամ։ Սակայն եւ այնպէս Հայ բնագրին մանրամասն ուսումնասիրութիւն մը հաճելի է եւրոպական ուսումնականաց։ Վասն զի հայն՝ որ կէտ առ կէտ եւ նիւթականաբար թարգմանուած է, շատ հին բնագիր մը կ'ենթադրէ. ըստ որում թարգմանուած է՝ ըստ վկայութեան թարգմանչին՝ 716ին Յ. Ք.։ Արդ ընդունելով որ թարգմանչին տեսած բնագիրը գոնէ 100ամեայ էր, հազիւ երկու դարու անջրպետ կը մնայ հեղինակին գրութեան եւ թարգմանութեան նախաբնագրին մէջ։

Որչափ ծանօթ է Նեմեսիոսի գրութիւնն, այնչափ աղօտ է նոյն գրոց հեղինակին վրայ մեր ունեցած ծանօթութիւնք։ Այնկատմամբ հետեւեալը կը գրուի հրատարակութեանս յառաջաբանին մէջ. "Տարակուսական կ'երեւայ Նիւսացւոյ կամ եպիսկոպոսական աստիճան ունեցող ուրիշ որեւիցէ անձի մը վերագրել՝ անդամազննական մանրամասնութիւնքն որ ի գլուխն ԻԵ։ Բովանդակ գրուածին մէջ հեղինակը ոչ աննշան, մանաւանդ թէ բազմահմուտ իմաստասէր կ'երեւայ. բայց քրիստոնէական կրօնից ճշմարտութեանց նկատմամբ՝ թերեւս չափաւոր գիտութեամբ։ Ուստի եթէ բանադատութիւնք Նեմեսիոս անունով մէկու մ'ալ ընծայել զայն, հաւա-

[1] Nemesius, etc. Chr. Fr. Matthei, Magdeburg, 1802.

[2] Galandius Bibliotheca veterum patrum. Venetiis, Tom. VII. — Migne, Patrologiae cursus completus. Series Graeca, Tom. XL, pp 503—818. Այս երկու հաւաքածոյից սկիզբն քննութիւնք ալ կան Նեմեսիոսի եւ իւր գրոց վրայ։ Գերմաներէն թարգմանեց հանդերձ ծանօթութեամբք Osterhammer գիտնականը (Salzb. 1819.)։ Բաց յայլոց գրեց գրոցս վրայ՝ Ritter, Geschichte der christlichen Philosophie, II, 461—484 եւ այլք բազումք։

նական կ'երեւայ հմտից՝ կապադովկիոյ համանուն քաղաքապետ մը հեղինակ սեպել, որուն Աստուածաբան ուղղած է իր մէկ քերթուած, քան եպիսկոպոսական աստղութիւն ունեցող անձի մը։ — Ապողինարի եւ Նեստորիոսի անուանց եւ հերձուածոց յիշատակութենէն յայտնի կ'երեւայ թէ 375 թուականէն ետքն եղած է շարադրութիւնը։»

Այս տեղեկութեան մէջ քանի մը անճշդութիւնք կ'երեւան սպրդած։ Նախ այն որ հմուտ է հեղինակն հին իմաստասիրաց գրութեանց եւ իւր ժամանակին քաջ անդամագնիններէն է, արգելք չէ որ հեղինակն յետոյ բարձրացած ըլլայ եպիսկոպոսական աստիճանի։ Հին եկեղեցւոյ մէջ ցանցառ չէ այն որ հեթանոս իմաստասէր մը քրիստոնեայ ըլլալով երբեմն մինչեւ եպիսկոպոսական աստիճանին կը հասնի։ Գրոյս մէջ չենք տեսներ որեւիցէ արգելք հեղինակին նոյն կարգին վերաբերելուն. եւ չի կրնար անհմուտ ըսուիլ քրիստոնէական կրօնից, որուն իւր գրոց մէջ այնպէս գեղեցիկ ջատագով կը կանգնի։ Ըստ նորագոյն քննչաց ապահով կրնանք ըսել որ գրոյս հեղինակն եպիսկոպոս էր Եմեսայ քաղաքին, յԵրկրորդ Փիւնիկէ, եւ իւր գրութենէն իսկ առեալ՝ հաւանականօրէն կ'ապրէր Դ դարուն վերջերն եւ Ե դարուն սկիզբները։ Սակայն բաւական պատճառ կայ ընդունելու որ այս եպիսկոպոսն միեւնոյն Նեմեսիոսն է, որ երբեմն հեթանոս էր եւ կուսակալ Գամրաց, եւ որուն Գրիգոր Նազիանզացի ուղղած է շատ մը նամակներ։ Այժմ իսկ կը գտնուին չորս այսպիսի գրութիւնք[1] գրուած յամի իբր 386—87։ Բայց սատի 334 տողէ քերթուած մ'ալ ուղղած է Գրիգոր այն Նեմեսիոսի[2],

---

[1] Հմմտ. Գրիգորի Նամակները՝ Migne, Tom. XXXVII, pp. 21—388. եւ Caillau, Collectio Selecta SS. Ecclesiae Patrum. Parisiis, Tomus LI, 1839. ի մասն առաջի՝ էջք 267—271։ Նամակացս թիւն է ըստ այլոց՝ ՃՁԳ, ՀԹ. ՃՁԴ, եւ ՃՁԵ. իսկ ըստ Caillauի հրատարակութեան՝ ՃՂԸ—ՄԱ։

[2] Հմմտ. Գրիգորի երգերը՝ Migne, Tom. XXXVII,

որուն մէջ կը ցուցընէ դից ստութիւնը եւ կը յորդորէ քրիստոնեայ ըլլալ. իսկ այս քերթուածը գոնէ 384 Յ. Ք. տարիէն յառաջ գրուած չ'երեւար գիտնոց: Կ'երեւայ որ Գրիգորի սոյն ճիգն քրիստոնեայ ընելու զՆեմեսիոս՝ անպտուղ չէ մնացած. վասն զի Գրիգոր իւր Նամակաց մէջ յայտնապէս կը յիշէ Նեմեսիոսի մէտ ըլլալն ի քրիստոնէութիւն. մանաւանդ թէ տեղ մը որոշ կ'ըսէ՝ թէ Նեմեսիոս քրիստոնէութեան դառնալու առաջին քայլն առած էր եւ սկսած: Այսպիսի հռչակաւոր իմաստասէր մի իւր դարձէն ետքը դիւրաւ կրնար մինչեւ եպիսկոպոսական դահն ամբառնալ:

Նեմեսիոս իւր գիրքն գրած է իբրեւ փիլիսոփայ. ամբողջ գրութիւնը լի է յոյն հեթանոս իմաստասիրաց գրութեանց քննութեամբ, եւ մերժելով զանոնք՝ քրիստոնէական դրութեան ջատագով կ'ելլէ: Ասով ստացած է Նեմեսիոս “Փիլիսոփայ„ վերադիրը: Թ. դարու վերջերը ծաղկող ասորի մատենագիր մը՝ Մովսէս Բար-Կեփա անուն՝ կը յիշէ Նեմեսիոսի գործքը “Վասն ծառոյն կենաց„ տիտղոսով, եւ կը կոչէ զՆեմեսիոս “Իմաստասէր Քրիստոնեայ„: Բար-Կեփայի այս կոչումը կը գտնուի իւր “Դրախտի Մեկնութիւն„ գրոց մէջ (Մասն Ա. գլ. Ի:)[1] Նեմեսիոսի գրոց ասորի թարգմանութիւն մ'ալ կայ, որ սակայն հայոյն հետ կապ չունի: Միայն մտադրութեան արժանին այն է որ հայ ընթերցող մը համեմատած կ'երեւայ հայն ասորի թարգմանութեան հետ: Նեմեսիոսի “Վասն Յիշողականին„ գլխուն[2] մէջ հայ թարգմանութիւնն անյարիր կտոր մ'ունի, որ կը գտնուի՝ նոյնպէս անկապակցեալ՝ շատ մը յոյն ձեռագրաց մէջ: Ճիշդ այս տեղը ամէն հայ

pp. 398—1600 եւ XXXVIII, pp. 11—134. Իսկ Caillau, Collectio, Tom. LII. Paris. 1840, ուր մեր այս երգն է՝ յէջս 484—499:

[1] Հմմտ. J. S. Assemani, Bibliotheca Orientalis, Romae 1721, Tom. II, p. 129.

[2] Հմմտ. էջ 85, ծ. 1:

ձեռագիրք լուսանցքի վրայ ունին այս տողը՝ թէ «Այս տունս անյայտ է ի բանս, յաւուրէն Բնա–բեան գէր+՝ չկայր այս տունս։»

Հայոյն յունէն թարգմանուած ըլլալը խնդրոյ նիւթ չի կրնար ըլլալ. այնպէս որոշ կը տեսնուի այս՝ ամէն տողի մէջ։ Մեծ բացառութիւն մ՚ալ այն է որ այս թարգմանութեան ժամանակն եւ թարգմանիչը ծանօթ են մեզ, մինչդեռ մեր թարգմանութեանց մեծ մասին նկատմամբ այսպիսի տեղեկութիւնք կը պակսին ընդհանրապէս։ Թարգմանիչը գրոց վերջը կցեր է այսպիսի յիշատակարան մը[1]. «Ի վեցհազարերորդի երկհարիւրերորդի քսաներորդի եօթներորդի արարածոց աշխարհիս, ըստ յունարէն թուոյ՝ ի չորեքտասաներորդի ընդիքտիոնին. իսկ ըստ հայումս թուի ՄԻԱ (= 772 Յ. Ք.) յառաջին ամի թագաւորութեան Լեւոնի (Յունաց կայսեր) թարգմանեցան գիրք սրբոյն Գրիգորի Նիւսեայ եպիսկոպոսի, ի ստոյգ օրինակաց, ի Կոստանդնուպօլիս. ի ձեռն Դաւթի Հիւպատոսի. եւ թագաւորական սեղանոյ կենտառի. ի՛ ձեռն Ստեփաննոսի քահանայի եւ քերթողի, աշակերտի տեառն Մովսէսի՝ Սիւնեաց եպիսկոպոսի։ Յիշեցէք զնոսա ընդ օրինակողսք» եւն։ Այս յիշատակարանէն կը տեսնենք որ արդէն յոյն նախաբնագիրն որմէ եղած է թարգմանութիւնս, Նեմեսիոսի անուան տեղ Նիւսացւոյն անունը կրած կ՚երեւայ, եւ գրոց վերնագիրը կամ այնպէս եւ կամ գոնէ անանուն գտեր է նաեւ թարգմանիչն. ապա թէ ոչ՝ անհնար էր որ թարգմանիչն իսկ Նիւսացւոյ սարգրութիւնն, եթէ Նեմեսիոս ընթերցած ըլլար։ Մթին է նոյնպէս այն՝ թէ թարգմանութեանս կրկին թարգմանչաց ո՞րն է գլխաւորն։ Այս խնդրոյս վրայ կը գրէ Հրատարակիչը[2]. «Խնդրելի է թէ արդեօք ինքնի՞ն իցէ թարգմանիչն (Ստեփանոս Սիւնեցի) թէ լոկ սրբագրող կամ յարդարող թարգ-

---

[1] Նեմեսիոսի Ցաղագս Բնութեան, էջ 162 եւ ծ.։
[2] Հմմտ. էջ 162, ծ. 2։

մանութեան յիշատակելոյն ի նմանէ Գուլթի Հիւպատոսի. որում յիրաւի ի դէպ էր ընծայել զյունականս Հայերէնդ քան Հեղինակի վսեմական Աւագ Օրհնութեանց, եթէ չէին ի միջի եւ այլ յունարան թարգմանութիւնք վերջնոյս եւ վկայութիւն պատմագրաց զգործոց նորա ի քաղաքին Կոստանդնուպօլսի: — Իսկ թէ զի՞նչ նշանակէ կէնար պատուոյ կոչումն՝ զոր վերադրէ Գուլթի՝ անգիտանամք: Մեզի լաւ կ'երեւայ երկրորդն, այսինքն՝ այն թէ Գուլիթ է բուն թարգմանիչն եւ Ստեփանոս միայն յարդարող էր. այս յայտնի է նաեւ անկէ որ նախ կը յիշուի Գուլթի անունն իբրեւ գլխաւոր թարգմանիչ: Այս Գուլիթն, զոր “Հռովմայեցի„ կը կոչեն ոմանք[1], նորանշան երեւոյթ մըն է Հայ մատենագրութեան մէջ, այնու որ գրեթէ բոլորովին անտես եղած է եւ իր գործոց մի մասն ալ զրուցաւոր անձանց վերագրուած: Բայց այս կէտին վրայ այլուր թերեւս կը խօսինք:

Նշանակալից է Գուլթի “կէնար սեղանոյ„ վերադիրը, զոր չի կրնար մեկնել Հրատարակիչն, բայց զոր արդէն 1864ին շատ լաւ մեկնած կ'երեւայ Բրոսսէ[2]: Յայտնապէս կը տեսնուի որ “կէնար„ սխալ դրչութիւն մը կրնայ ըլլալ փոխանակ “կէլար„ գրելու, որ է լատինական cellarius բառը, թէեւ կըրնանք ալ ըսել որ “կէնար„ գրագիտաց ծանօթ աղաւաղութիւնն է “կէլար„ ձեւին. գոնէ չենք կարծեր որ ժողովրդեան ծանօթ բառ ըլլար “կելար:„ Այս վերջին բառն, որ “մառանապետ„ ըսել է, կը նշանակէ Գուլթի աստիճանը, որ “թագաւորական սեղանոյ կէլար„ էր: Իսկ եթէ “կենար„ ձեւին Հարազատ ըլլալը ստուգուի, կրնանք թերեւս ընդունիլ որ լատիներէն coena (սեղան, ճաշ), coenatorius

[1] Հմմտ. Կիրակոս Գանձակեցի, Պատմութիւն, տպ. Վենետ. 1865, էջ 40, 31:

[2] Histoire de la Siounie par Stéphannos Orbélian, traduite par M. Brosset. St. Pétersbourg, 1864 pp. 82—83:

(ճաշակման), coenatorium (ճաշարան) եւն բառերու հետ կապ մ՚ունենայ. բայց այս այնչափ հաւանական չէ. վասն զի օրինակի համար * coenarius իբր պաշտաման անուն չի գործածուիր Լատինացւոց քով, մինչ Հռովմայեցւոց արքունեաց "մառանապետք" արգեամբք cellarius (կելլար) կը կոչուէին:

Նեմեսիոսի թարգմանութեան այս յիշատակարանը դեռ շատ խորհրդածութեանց նիւթ կրնայ ըլլալ, բայց մենք համառօտիւ կը յիշենք մին միայն: Թարգմանութեան ժամանակը կը դրուի 6227 տարին աշխարհի ստեղծման (= 719 Յ. Ք.) եւ Լեւոնի կայսեր (Իսաւրացւոյ) առաջին տարին (= 717 Յ. Ք.) եւ Յունաց "ընդիքտիոնին" 14րդ տարին, որ միաբան է աշխարհիս ստեղծման տարւոյն, բայց ոչ Լեւոնի գահակալութեան, որով երկու տարուան տարբերութիւն կայ[1]: Սակայն այս ոչինչ է: Այս թուերուն դիմաց իբրեւ համապատասխանող կը դրուի Երափարակ—Ընեանս մէջ Հայոց ՄԻԱ տարին, որ է 772 Յ. Ք. (´.) ուստի կէս դարու տարբերութեամբ: Սխալն ակնյայտնի է. մանաւանդ եթէ միտ դնենք որ ըստ Սիւնեաց Պատմութեան[2] Ստեփանոս մեռած է Հայոց ՃՁԴ (= 735 Յ. Ք.) տարւոյն Յուլիսի 21ին: Ի հարկէ ինքն Ստեփանոս այսպիսի սխալ թիւ մը չէր կրնար գրած ըլլալ, թէեւ այսպէս ունի՝ բաց ի հրատարակութենէն՝ նաեւ Բրոսսէի տեսած ուրիշ մէկ ձեռագիրը Ջուղայի գրատան[3]: Սակայն եւ ոչ ալ ամէն ձեռագիրք այսպէս սխալ ունին թուականը, թէեւ հրատարակութեան մէջ հոս ձեռագրաց տարբերութիւն մը չի յիշուիր: Դար մը յառաջ Հ. Միքայէլ Վ. Չամչեան իւր Պատմութեան մէջ բերած է յիշատակա-

[1] Հմմտ. Բրոսսէ, անդ, էջ 82, ծ. 3:

[2] Ստեփ. Սիւնեաց եպ., Պատմութիւն, տպ. Մոսկուա 1861. գլ. Լ. էջ 104:

[3] Brosset, էջ 83, ծ.: Ջուղայի Հայոց գրատան այս ձեռագրին թիւը կը դնէ 114, որ եւ է Նեմեսիոսի այս գործքն, ինչպէս յառաջ բերուած յիշատակարանէն կը տեսնուի:

բանս ուրիշ ձեռագրի մը համեմատ[1], ուր թուերը քիչ մ՚այլազգ են։ Աշխարհիս թուական կը գնէ 6225, իսկ “կենառ„ բառի տեղ կը կարդանք ուրիշ աղաւաղութիւն մը “յակիւնառի„։ Ասոնք ի բաց թողլով՝ կը յիշեցրնենք որ Չամչեանի օրինակը “ըստ Հայում թուականին ՃԿԵ„ կը կարդայ, որ է 716, ուրեմն՝ կրնանք ըսել՝ ճիշդ։ Չամչեան կը յաւելու թէ “ի միւսում ձեռագրի„ միայն “ՄԻԱ„ թուական գրուած է, զոր “յայտնի սխալ գրչաց„ կ՚անուանէ։ Հոս ուրեմն հրատարակչին վերագրելու ենք որ սխալ ընթերցուածը նախամեծար ընտրած է միւսներէն՝ առանց միտ դնելու ժամանակագրական վրիպակին։ Բայց աւելի մեծ է ըստ մեզ այն թերութիւնն որ եւ ոչ նշանակուած է՝ թէ ուրիշ ընթերցուած ունին միւս գոնէ քանի մը ձեռագիրք։

Թէ 716 կամ 717 թուականն է միայն ուղիղն՝ այն ստոյգ է։ Այս թուականը կը հաստատուի նաեւ Սիւնեցւոյ ուրիշ մէկ յիշատակարանովն զոր կցած է Կիւրղի գործոց թարգմանութեան վերջն այսպէս[2]. “Ի վեցհազարերորդի երկերիւրերորդի քսաներորդի չորրորդի ամի արարածոց աշխարհիս, ըստ յունարէն թուոյ՝ ի չորեքտասաներորդի ենդիկտիոնի՝ յերկրորդ ամի թագաւորութեան Անաստասի, թարգմանեցան գիրքս Պարապմանց եւ թղթոց սրբոյն Կիւրղի եպիսկոպոսապետին Աղեքսանդրի ի ստոյգ օրինակաց, ի Կոստանդինուպոլիս, ի ձեռն Գիւթի հիւպատոսի եւ թագաւորական սեղանոյ կենառոյ, եւ ի ձեռն Ստեփանոսի քերթողի՝ աշակերտի Մովսէսի Սիւնեաց եպիսկոպոսի: Արդ մաղթեմ„ եւն: Հոս մտադրութեան արժանի բան է “կենառ„ խնդրական բառին կրկնուելէն՝ այն է որ Հայոց թուական չէ դրուած, որ սակայն եթէ չէ տպագրութեան վրիպանաց արդիւնք, ստուգիւ գրը-

---

1 Պատմութիւն Հայոց, Հտր. Բ։ Վենետիկ, 1785։ Գիրք Գ. Ծանօթութիւն ԾՋ. էջ 555։

2 Հմմտ. “Մատենագ. Թարգմ. Նախ.„ էջ 519։

չին անմտադրութեան պտուղն է: Բրոսսէի տեսած Ջուղայի ձեռագիրն[1] ունի այս տեղ Հայոց Թուականն ալ՝ թէեւ դարձեալ սխալ թուով ՄԻԸ (= 779) գրելով, եւ այս զարմանալի չէ այնու որ նաեւ աշխարհի ստեղծման թիւր 6004 եղած է, "Անաստաս„ անունէն "Աստաս„ մնացած է, միով բանիւ բաւական աղաւաղած: Մեզ այժմ կը բաւէ այն որ Անաստասայ երկրորդ տարին թարգմանուած է գիրքս, ուստի եւ յամի 714 Ց. Ք. վասն զի Անաստաս Անթեմիոս թագաւորեց 713—716 Ց. Ք., որ միայն կը յարմարի Ստեփանոսի Կ. Պոլիս գըտնուելու ժամանակին: Այսպէս Պարապմանց գրոց թարգմանութիւնն երկու երեք տարի կանուխ է քան Նեմեսիոսի գրոցն: — Դժբախտաբար պատմութիւնն՝ որչափ մեզ ծանօթ է, որոշ չի դներ թէ որ տարին Կ. Պոլիս գնաց Ստեփանոս: Այսչափ գիտենք որ յամի ՃԾ (= 701) դեռ իւր հայրենիքն էր[2]:

Վերը յիշեցինք քանի մ'օրինակ որ Նեմեսիոսի թարգմանութեան ժամանակը սխալ կը գրեն եւ փոխանակ ՃԿԵ թուին ՄԻԱ թուականը կը կրեն: Թերեւս հետաքրքրական է գիտնալն այս սխալ ընթերցման հնութիւնը: Շատ եւ կարծուածէն աւելի հին է այս սխալն. այնպէս որ արդէն Սամուէլ ԺԲ դարուն նոյնը կարդացեր է, եւ ըստ այնմ ալ իւր ժամանակագրութեան մէջ անցուցեր է Փրկչին Ծննդեան ՉՀԵ (775) եւ Հայոց ՄԻԲ (773) տարիէն

---

[1] Brosset, էջ 82—83, Ծ. Ձեռագիրն է՝ թիւ 59 Ջուղայի գրատան, որուն ցուցակն Բրոսսէի խաւրած է Ad. Berger անուն պաշտօնեայ մը յԱնդրկովկաս:

[2] Հմմտ. Ստեփ. Սիւն., Պատմութիւն, տպ. Մոսկ. էջ 96, ուր կը յիշուի թէ Կ. Պոլիս երթալէն յառաջ Մաքենոցաց վանքն էր եւ Սաղմոսին "Հարանց Հօր„ առաջնորդութեան տակ, որ "էգոնոմոս„ (οἰκονόμος անտես) էր նոյն վանաց, եւ "որ յօրինեաց զպայծառացուցիչն տօնից տէրունականաց եւ յիշատակաց մարտիրոսաց զՏօնականն ի ՃԾ թուին Հայոց.„ (ուրեմն = 701 Ց. Ք.:)

բանքը միայն յիշելով[1]՝ թէ “յայսմ ժամանակի էր Ստեփաննոս դրան երէց որ բանիբուն ճանաչէր. հասու ի կատարումն ամենայն իմաստասիրական եւ գրամատիկոս[2] (γραμματικός) արհեստից հանդերձ հոգեւորական առաքինութեամբ:” Սամուէլ կը յաւելու հոս թէ “Էին եւ վարդապետք յաշխարհիս Հայոց ընտրեալք եւ լուսաւորեալք՝ Տէր Եփրեմ, եւ Անաստաս եւ Խաչիկ եւ Դաւիթ Հոռոմեցին. Մեծ իմաստասէրն Ստեփաննոս սիւնեցի աշակերտ Մովսէսի:” Ճիշդ այն տողերը Կիրակոս Գանձակեցի օրինակած է իւր Պատմութեան մէջ[3] միայն այն տարբերութեամբ որ ի սկզբան ՄԻԲ թուականն յայտնապէս գրեր կրկներ է գրելով՝ “Յայսմ ժամանակի թուականիս երկերիւր տասն եւ երկու էր, Ստեփաննոս դրան երէց” եւն: Ուրեմն Սամուէլի՝ Ստեփաննոսի վրայ գրածին աղբիւրն միայն վերը դրուած յիշատակարանն է, եւ այն՝ սխալագիր արդէն:

Ինչպէս Սամուէլ, նոյնպէս նաեւ Սիւնեաց Ստեփաննոս պատմիչը կարդացեր է այն յիշատակարանն, երբ Ստեփաննոսի համար կը գրէ ի մէջ այլոց.[4] “Ծանօթացեալ մեծ հիւպատոսի միոյ Դաւիթ անուն եւ թագաւորական սեղանոյն կենաւ՝ Նորին ձեռնտուութեամբ թարգմանէ զգեղեցիկ գիրս Սրբոյն Դիոնիսիոսի, եւ ինքն գնէ դժուարագոյն եւ խրթին բանիցն լուծումն բան առ բան, թարգմանէ եւ զգիրս քաղցրաբան Գրիգորի Նիւսացւոյ զբնութեան եւ զկազմութեան” եւն: Հոս “կենաւ” բառը յայտնի ապացոյց է որ առնուած է Ստեփաննոսի թարգմանութեանց յիշատակարաններէն, եւ Նեմեսիոսի տեղ Գրիգորի Նիւսացւոյ անունն ալ մեր թարգմանութեան յիշատակարանէն օրինակուած

---

[1] Հմմտ. Ձեռագիր Մեր Մատեն. Թիւ 130, թղ. 131ա: Նոյնպէս են նաեւ Թիւք 16 եւ 67:

[2] Թիւ 16 եւ 130 “գրամարտիկոս.”, իսկ Թ. 67 եւ Կիրակոս (էջ 40) “գրամատիկոս:”

[3] Կիրակոս Գանձակեցի. տպ. Վենետ. էջ 40.

[4] Ստեփ. Սիւն. Պատմ. տպ. Մոսկ. էջ 98:

կ՚երեւայ, եթէ բուն Նիւսացւոյ գրութիւնը չէ ակ-նարկուած այս տողերով։

Ինչպէս կը տեսնուի՝ Նեմեսիոսի գիրքը մեծ յարգ գտած է Հայոց քով, եւ մինչեւ անգամ մեկնաբանուած։ Հրատարակիչը բնագրին ներքեւ շատ տեղ զետեղեր է “Լուծմունք” անուամբ բաւական ռամկալեզու մեկնութիւն մը որուն հեղինակը կը համարի Գէորգ Սկեւռացի՝ “զորոյ զանուննն բերեն գրչագրողք ուրեք ուրեք ի լուսանցս անդ լուծմանց՝ Գէ կամ Գէորգ նշանակելով։” Այս “լուծմունք” կամ մեկնութիւնք հրատարակու-թեանս մէջ կանոնաւոր եղանակաւ չեն դրուած, այլ տեղ տեղ յաւելուել լուսաւորութիւն մթին բնագրին։ Ճիշդ նոյնպէս է նաեւ յոյն բնագրի հետ եղած համեմատութիւնը. վասն զի թէեւ նշանա-կուած են հայոյն յունէն ունեցած խոտորմունքն խրթին եւ յունաբանութեամբն անհասկանալի տեղերը, որ պարզուած են յոյն բնագրին օգնութեամբ եւն, սակայն նաեւ միայն այնչափ։ Գլխաւոր թե-րութիւնն հոս այն է՝ որ չի նշանակուիր թէ այս կամ այն տեղ հայն յոյն բազմաթիւ ձեռագրաց ո՛ր խմբին հետ միաբան է կամ ոչ. հայոյն այս կամ այն կղզիացեալ ընթերցուածն ո՛ր կարգի ձեռագրաց մէջ կը գտնուի կամ ոչ եւն, որով միայն կարելի էր պայծառ գաղափար կազմել՝ թէ ի՛նչ կարգի էր եւ ի՛նչ արժէք ունէր այն յոյն ձեռագիրն, որմէ եղած է թարգմանութիւնս։

Վեց ձեռագրաց համեմատութեամբ եղած է հրատարակութիւնս. սակայն արդէն վերը տեսանք՝ թէ մինչեւ անգամ ամենակարեւոր տեղ մը չէ նշանակուած ձեռագրաց տարբերութիւնն, եւ բնա-գրին մէջ առնուած ընթերցուածն ոչ միշտ ընտրու-թեամբ եղած է։ Հոս ալ գլխաւոր թերութիւնը կը մնայ այն որ ձեռագիրք՝ ուր ուրեք իրենց տարբերութիւնը կը դրուի, որոշ չեն նշանակուիր, այլ ընդհանուր կերպով “այլ օրինակ,” “ոմանք,”

«յօրինակս ինչ» եւն ասութեամբք։ Ասով չենք կրնար գիտնալ՝ թէ բնագրին մէջ ընտրուած դրուած ընթերցումն ինչ արժէք ունի. քանի ձեռագիրք միաբան են անոր կամ ոչ, եւ այլ նման կէտեր, որոնք բանասիրութեան համար անհրաժեշտ են։

Վերն անգամ մ'առիթ ունեցանք տեսնելու որ տեղ տեղ աղաւաղած էր արդէն՝ ինչպէս կ'երեւայ Հայոյն տեսած յոյն բնագիրը։ Այսպէս տեղ մը բոլորովին անյարիր կտոր մը՝ որ սպրդած է յոյնին մէջ, թարգմանուած է ճիշտ նոյնպէս.[1] ուրիշ տեղ մը, ուր Գաղղիանոսի յիշատակութիւնը կ'ընէ Նեմեսիոս, յոյն քանի մ'օրինակք աղաւաղուած են, այնպէս որ Նեմեսիոսի ընդդիմախօս պատասխանին իբրեւ բուն Գաղղիանոսի խօսքն ի վկայութիւն կը բերեն։ Ասոնց կարգէն է նաեւ Հայոյն տեսած նախաբնագիրն եւ ասով նաեւ իւր թարգմանութիւնը[2]։

Ոչ սակաւ տեղ աղաւաղութիւնքն այն չափին հասած են որ բոլորովին անիմանալի դարձած է արդէն խրթին ու յունախօսութեամբք խճողեալ եւ յոռեգոյն թարգմանութեամբն անհասկանալի եղած Հայ բնագիրը[3]։ Այս անիմանալի, թերատ ու խառնակ կտորներուն մեծ մասին պատասխանատուութիւնն հարկաւ գրչագրաց վրայ է. մաս մ'ալ թարգմանչին յունամոլ մթաբանութեան արդիւնք, եւ անշուշտ ոչ դոյզն բաժին մ'ալ յոյն նախաբնագրին։ Թարգմանութեանս մէջ՝ մանաւանդ վերջերը՝ կան նաեւ պակաս կտորներ, որոնք նոյնպէս պէսպէս պատճառաց արդիւնք են[4]։

Նեմեսիոսի մասամբ մարդախօսական եւ մա-

---

[1] Նեմեսիոս, Յաղագս Բնութեան, ԺԳ, էջ 85, 9—11 եւ Ծ. 1։ Տես քիչ մը վերը՝ էջ 6։

[2] Հմմտ. Նեմեսիոս, Բ, էջ 35, 4 եւ Ծ. 1։

[3] Հմմտ. ի մէջ այլոց՝ էջ 38 եւ Ծ. 2.— 50, Ծ. 3.— 63, Ծ. 1, 2.— 70, Ծ. 3.—71, Ծ. 2.—74, Ծ. 1, 2.—94, Ծ. 2.— 110, Ծ. 3.—111, Ծ. 1.—155, Ծ. 1, 2 եւն եւն։

[4] Հմմտ. էջ 106, Ծ. 1.—107, Ծ. 2, 3, 4.—112, Ծ. 3, 4, 5.—149, Ծ. 1.—151, Ծ. 2 եւն։

տամբ հոգեխօսական գրութիւնը 44 գլուխ բաժնուած է: Գլխոց բաժանմունք կան հայ թարգմանութեան մէջ նոյնպէս անփոփոխ: Երկու տեղ միայն տարբերութիւն կայ: Հրատարակութեանս ԺԳ եւ ԺԵ գլուխները հայ ձեռագրաց՝ ինչպէս քանի մը յոյն ձեռագրաց մէջ՝ միացած եղած են մէկ գլուխ[1], որով յաջորդ ԺԶ եւն գլուխն է ձեռագրաց ԺԵ եւն գլուխն, եւ յաջորդաբար նոյնպէս կը շարունակուի: Նոյնպէս եւ հրատարակութեանս ԽԳ գլուխը հայ ձեռագրաց մէջ կցուած է ԽԲ գլխուն հետ. անշուշտ ժամանակաւ կորսուած է հոս վերնագիրն եւ գլխոյ բաժանումն, ինչպէս կը վկայէ ԽԳ գլխոյ վերջին եղած իբր 5 տող պակաս մասը[2]: Հարկաւ այս մասին մէջ այլեւայլ ձեռագիրք պէսպիսութիւն մ'ունին. օրինակի համար Մեր Մատ. Թիւ 90 Բ ձեռագիրը 43 գլուխ բաժնուած է. բայց վերջին գլուխն ըստ հեշտի երկու մասի անջատելով՝ եղած են 44 գլուխք:

Լեզուի կողմանէ խեղճ թարգմանութիւն մըն է Նեմեսիոսի մարդակազմութիւնը: Թարգմանիչն այն կարգի Հայերէն է, որ կարծած են՝ թէ լաւագոյն բան մը չեն կրնար ընել բայց եթէ ձուլել հայը բոլորովին յունարէնի համեմատ, եւ գրեթէ խօսիլ հայ բառերով յոյն լեզու մը: Թէպէտ թարգմանութիւնս այս կողմանէ չի հաւասարիր բարբարոսութեամբ "Դաւթի Անյաղթի" անուամբ ծանօթ թարգմանութեանց անհեթեթութեանց, բայց շատ վար ալ չի մնար: Առանց չափազանցութեան թերեւս աւելի շատ են հայաբառ յունալեզու կտորներ թարգմանութեանս մէջ՝ քան անյունագէտ հայու մը հասկանալի մասեր. ուստի աւելորդ է ըսել թէ ոչ միայն բառեր, այլ եւ ամբողջական նախադասութիւնք նիւթական նմանողութիւն են յունա-

---

[1] Անդ, էջ 87։
[2] Անդ, էջ 149։

բէնին։ Ցաւելունք տար վրայ որ թարգմանութիւնս բառական կողմանէ համեմատաբար շատ աղքատ է. ուսումնական բառեր ու ասութիւններ կամ դուրս թողուած են (թէեւ միայն են տեղ տեղ) կամ յունարէնը պարզապէս օրինակուած եւ կամ անհեթեւթութեամբ նմանցուցած յունարէնին։

Ընդդիմութիւն չկայ ի հարկէ որ՝ ուր պէտք է՝ գործածուին նաեւ յոյն բառերը, զոր օրինակ այս խօսքին մէջ, ուր «անարիւն բայց շնչաւոր» անասունք կը յիշուին՝ թէ ըլլան «սէպիայք եւ տեւթի(է)-դէսք ... կարկինոսք եւ աստակոսք եւ պալարա-կուրք»[1] եւն. (յոյնն է՝ σηπίαι καὶ τευθίδες ... κάραβοι καὶ καρκίνοι καὶ ἀστακοί.) ուր միտ դնելու է որ «կարկինոս» էն յառաջ յոյնը «խաշափառ» ալ կը յիշէ, զոր հայն ի բաց թողուցեր է, բայց ի փոխարէն «պալարակուր» կցեր է վերջը։ Ընդդիմութիւն չունինք դարձեալ՝ երբ «խելագարութիւն» կամ «մոլաբանութիւն» եւն բառին տեղ «փրենէտիտ» (φρενῖτις)[2] կը գործածէ եւ այլ նմանները։ Սակայն երբեմն նաեւ այնպիսի տեղեր կը գործածուին յոյն բառերն որ բոլորովին աւելորդ կ'երեւան։ Այսպէս են հետեւեալ երկրաչափական բառերը[3]. «կիւբիկոն ձեւ (κυβικὸς խորանարդ)...էյկոսադեդրոն (εἰκοσάεδρος քսանանկիւն, քսանանիստ) ... պիւռամոիդէս (πυραμοειδὴς բրգաձեւ) ... ոկտաէդրոն (ὀκτάεδρος ութանիստ, ութանկիւն) ... սկալենեայ եռանդիւն (σκαληνὸς անհաւասարակող եռանկիւն) եւն եւն[4]։ Բայց վերջապէս այսպիսիք ալ կրնան մեկնուիլ այնու որ թարգմանիչը կամ չէ իմացած բառին իմաստը կամ չէ կրցած հայերէն յարմար բառ գտնել։

---

[1] Էջ 29—30։
[2] Էջ 85, 17։
[3] Էջ 64—65.
[4] Ահաւասիկ օրինակ մ'այս կտորէն (էջ 65.) «Զերիս զայսոսիկ՝ զպիւռամիդն եւ զոքտաէտռոնն եւ զիկոսաէդռոնն՝ ի սկալենեացն եռանկիւնից հաստատիլ.» եւն եւն. եւ սոոնք՝ հայ ընթերցողի համար գրուած են։

Աւելի նորանշան երեւոյթ է հետեւեալը։ Թարգմանիչը կը կարծէ թէ անհրաժեշտ է մէկ յունարէն բառին տեղ միշտ միեւնոյն հայ բառը դնել. եթէ յոյն բառը հարիւր նշանակութիւն ալ ունենայ, իւր կարծեօք պէտք է որ նոյն նշանակութիւնքն ունենայ անհրաժեշտ նաեւ հայերէնը։ Կրնայինք այս տեղ բազմաթիւ օրինակներ բերել, բայց կը շատանանք յիշելով մէկ երկու օրինակ։ Ըստ թարգմանչին՝ կենդանւոյն ազատ կամքին թողուած է "հաւանելն եւ յորդորել[1]," այսինքն "ցանկալ," վասն զի յունարէն ὁρμάω բառն որ "ցանկալ" կը նշանակէ, նախնաբար այլ նշանակութիւն ունի, այսինքն՝ "մղել, գրգռել" եւ "յարձակել, դիմել։" Այս բառն ամէն տեղ՝ յարմար անյարմար՝ միշտ "յարձակիլ" թարգմանած է Նեմեսիոսի հայ թարգմանը, որ՝ ինչպէս լաւ մտադիր կ՚ընէ հոս հրատարակիչը, "յոլով սուրբ բառից առաւել՝ քան իմաստից թուի թարգմանիչ։" — Ըստ Պղատոնի երկիրն "ի սրութենէ հրոյ" կը լուծուի, այսինքն՝ "ի սաստկութենէ հրոյ[2]" (ὑπὸ τῆς ὀξύτητος κτλ.) վասն զի ὀξύτης նախնաբար "սրութիւն" կը նշանակէ։ Աստ քով դնելու է Արիստոտէլի համար ըսուածը՝ թէ "սուր" էր,[3] այսինքն՝ սրամիտ։ — Յիշողութեան սահմանը՝ զոր Պղատոն կու տայ, թարգմանուած է այսպէս. "փրկութիւն զգայութեան եւ իմացման."[4] այսինքն՝ "պահպանութիւն" որ ըսել է զգայութեան եւ իմացման մտաց մէջ մնալը։ Բայց թարգմանիչն հարկ տեսեր է "փրկութիւն" թարգմանել, վասն զի յունարէնն է σωτηρία, որ նախնաբար "ազատութիւն" (փրկութիւն) կը նշանակէ։ — Վերջապէս չնչառութեան եղանակը մեկնելով կ՚ըսէ Նեմեսիոս՝ թէ չնչառութեան ժամա-

---

[1] Էջ 126 եւ ծ. 2։
[2] Էջ 65 եւ ծ. 1։
[3] Էջ 45, 5։
[4] Էջ 83, ծ. 1։

նակ սիրտը կ՚ընդլայնի եւ կը նեղնայ։ Թարգմանիչն այս «ընդլայնել» բառին տեղ միշտ «որոշել» կամ «տարորոշել» կ՚ըսէ. այսպէս՝ «մկունք են որ որոշեն զախոնդանան՝ զտիրագոյնան գործարան շնչոյն»[1] կամ «քարշէ մասն ինչ յօդոյս՝ ըստ փոփոխելոյ սրտին»[2] այսինքն՝ սրտին ընդլայնելուն համեմատ։ Նորանշան թարգմանութեանս պատճառը յայտնի է։ Յունարէն հոս գործածուած διαστέλλω բառը կը նշանակէ ա) որոշել, զատել. բ) բանալ, ընդլայնել, եւ վերջապէս նաեւ՝ հրամայել եւն։ Թարգմանիչը պէտք տեսեր է միշտ առաջին նշանակութիւնը գործածել առանց իմաստին միտ դնելու։

Աւելորդ է յիշեցընել որ բոլորովին անճահ անթիւ բառեր ստեղծուած են միայն յունարէնին նման ըլլալու համար։ Օրինակի համար «դիպուած,» «բախտ» եւն ըսելու տեղ «ինքնամափոյցն[3]» ըսել. վասն զի այսպէս կ՚ըսեն Յոյնք. (τὸ αὐτόματον.) այսպէս են «նախայօժարութիւն.[4]» (προαίρεσις, որ ըսել է՝ առաջադրութիւն, խորհուրդ)։ Նոյնպէս՝ «յօդումն[5]» (որ մեր արդի «ներդաշնակութիւն» բառին տեղ է.) վասն զի յունարէն ἁρμονία (ներդաշնակութիւն) բառին արմատն է ἁρμὸς որ կը նշանակէ «յօդուած» եւ «յարմարութիւն» կամ «միաբանութիւն»։ Այսպիսեաց լեգէոն մը կրնայինք բերել օրինակ։

Քիչ չկան նաեւ այնպիսի անհեթեթ թարգմանուածոյ բառեր, որ մեզի անհաւատալի պիտի երեւային, եթէ չտեսնէինք առջեւնիս։ Ո՞վ կրնար հաւատալ որ Նեմեսիոսի երրորդ գլուխը կը քննէ թէ ինչպէս կ՚ըլլայ «միաւորութիւն անձին եւ մարմնոյ» այսինքն՝ «Հոգւոյ» եւ մարմնոյ։[6]» Եւ այսպէս է

---

[1] Էջ 108 եւ ծ. 1։
[2] Էջ 110, 5 եւ ծ. 2։
[3] Էջ 135, 5 եւ ծ. 1 եւն։
[4] Էջ 120—122 եւ ծ. եւ այլուր։
[5] Էջ 33, 5 եւ ծ. 1 եւն եւն։
[6] Էջ 14 եւ ծ. 4—37, ծ. 2 եւն եւն։

թարգմանութեանս մէջ, ուր միշտ «անձն» կը նշանակէ «հոգի»․ վասն զի զանազանել ուզելով Յունաց ψυχή («հոգի» կամ հոս աւելի «ոգի») եւ πνεῦμα (բուն «շունչ») բառերուն մէջ, մին միշտ «անձն» թարգմաներ է, իսկ երկրորդն «հոգի»․ զոր օրինակ «Հոգւոյ բարեխառնութիւն[1]» եւն։ — Աւելի նորանշան է հետեւեալը: Նեմեսիոսի Է գլուխը կը ճառէ «Յաղագս Երեւոյց:» Ո՞վ կը գուշակէ որ հոս եւ ամէն տեղ ի թարգմանութեանս՝ «երեւք» ուրիշ նշանակութիւն ունի, այսինքն՝ «տեսողութիւն» կամ «տեսութիւն»: Ահա խօսք մը.[2] «Ընդ թափանցիկն մինչեւ ցխորութիւն բնաւորեցան անցանել երեւոյթ.» այսինքն՝ թէ փէնոմէնը թափանցիկ իրերուն մինչեւ խորքը կը թափանցէ ու կը տեսնէ: Եթէ դեղին պտուղ տեսնենք, կ'ըսէ Նեմեսիոս, եւ սխալմամբ կարծենք թէ կարմիր է, սխալողը փէնոմէնը չէ, այլ միտքը. («ոչ երեւոյթն են որ սխալին, այլ իմացումն:[3]») Այս զարմանալի թարգմանութեան պատճառն այն է որ այս տեղերը յունարէն ὄψις բառը կը գործածուի, որ կը նշանակէ «երեւոյթ, դէմք. փէնոմէնն, տեսութիւն. աչք:» — «Պիտոյ է անձին հոգատար կալ մարմնոյ, զի կազմեսցէ զնա[4]» եւն. այսինքն՝ «պիտոյ է հոգւոյ խնամ տանել մարմնոյ» եւն. (յոյն է՝ ἐπιμέλεια, խնամք, փոյթ:) — «Նշմարելով (այսինքն՝ կարծելով, εἰκάζοντες) ոմանք ասեն զայս, որոց ոչ ամենեքին հետեւին:[5]» Իբրեւ օրինակ յիշենք նաեւ «ծայրք որակութիւնք[6]» ասութիւնն իբր համապատասխանող snmmae qualitates բացատրութեան, ինչպէս լատինագիր կ'ընէ հրատարակիչը:

---

[1] Եջ 37, 2։
[2] Եջ 75, 19։
[3] Եջ 76, 10. «երեւք» շատ յաճախ է այս իմաստով։
[4] Եջ 37 եւ Ծ. 4։
[5] Եջ 43, 10 եւ Ծ. 3։
[6] Եջ 60, 21 եւ Ծ. 4։

Այս եւ այլ անթիւ կամաւոր յունախօսութեանց մէջ մտած են տեղ տեղ նաեւ ակամայք: Շատ բան յայտնապէս շփոթմամբ, սխալ ընթերցմամբ կամ անճիշդ հասկընալով թարգմանուած է. մաս մ'ալ գուցէ այնպէս էր արդէն իւր տեսած յոյն բնագրին մէջ: Հոս կը յիշենք քանի մը հատը: Յաճախ կը գտնենք թարգմանուած “ստացումն„ եւ “ստացուած„ իբր “ստեղծումն„ եւ “ստեղծուած.„ զոր օրինակ այս խօսքին մէջ[1] “Տարբերութիւն ստացուածոյ (ստեղծման) եւ նախախնամութեան:„ Հոս շփոթեր է թարգմանիչը (եւ իրմէ յառաջ այլք) κτῆσις (ստացուած) եւ κτίσις (ստեղծուած) բառերը: — Ճաշակելեաց գործարանն է “լեզու... եւ վերնատանն.„[2] այսինքն “քիմք:„ Ուստի յայտնի է որ շփոթուեր են ὑπερῷα (քիմք) եւ ὑπερῷον (վերնատուն) բառերը: — “Պարտ է ... ընդ տրտմելիսն հաճել...: Ոչ միշտ մեղադրելի: Իսկ Իւրեգինէս[3]„ եւն: Այս անկապ “մեղադրելի„ խօսքին տեղը յոյնը կ'ըսէ “պարտ է... ընդ տրտմելիս հաճել...: Բայց ոչ միշտ: „Ապա ուրեմն իրաւամբք կ'ըսէ հոս հրատարակիչը՝ թէ թարգմանիչը բնագրին οὐχ ἀεὶ μέντοι (ոչ միշտ սակայն) կարդացեր է... μεμπτοί (մեղադրելիքն), եւ կամ այսպէս էր արդէն իւր նախաբնագիրը: — Նեմեսիոս յիշելով Եւնոմիոսի վարդապետութիւնը՝ թէ “անձն„ (այսինքն՝ հոգին) սահմանեց այսպէս. “Էութիւն անմարմին՝ ի մարմնի ստացեալ.„ կը յաւելու նաեւ՝ թէ այս “Էութիւն անմարմին„ բառերն“ ի Պղատոնէ էառ„ նոյն գիտնականը:[4] Հայոյն մէջ ասոր տեղն է “ի ճշմարտութենէ էառ„ անյարմար խօսքը: Յայտնի է որ ἐκ τοῦ Πλάτωνος (ի Պղատոնէ) եւ ἐκ τῆς ἀληθείας (ի ճշմարտութենէ) շփոթուեր են, կամ

---

[1] Էջ 44 եւ Ծ. 1 եւ այլուր:
[2] Էջ 80, 29 եւ Ծ. 3:
[3] Էջ 115, 19 եւ Ծ. 3:
[4] Էջ 43, 3 եւ Ծ. 1:

այնպէս էր արդէն հայոյն տեսած բնագիրը: — "Եւ այսպէս սոփէրէ-րէ,[1]" փոխանակ "այսպէս իմաստասէրէ," ինչպէս կը թարգմանեն յետինք: Պատճառն այն է որ յոյնը հոս οὕτω σοφίζεται կ'ըսէ, իսկ σοφίζω (եւ իւր միջակն ը σοφίζομαι ըստ սեռին) կը նշանակէ "իմաստասիրել," "իմաստուն ընել" (եւ "ըլլալ," "ըմբռնել," "ուսանել.") բայց կը նշանակէ նաեւ ճարտարամտութեամբ եւ հնարիւք պատրել, այս իմաստով է թարգմանչին "ստերիւրել" բառը: — "Ձմռան ածելն փ———ոքրէլն եւ գտանել."[2] հոս "փառաւորել" բային անճահ ըլլալը յայտյանդիման է եւ պէտք է ըլլալ "խորհել" կամ "կարծել:" Յոյնը հոս δοξάζω բառը կը գործածէ որ կը նշանակէ՝ ա) պատուել, փ———ոքրէլ. բ) խորհել, կարծել, համարիլ: Ուստի թարգմանութեան սխալ մըն է այս կտորն ալ:

Լեզուի այս մեր քննութիւնը կը փակենք օրինակաւ մ'որ կը ցուցընէ գրոյս նիւթական սորըկութիւնը լեզուի եւ նաեւ թարգմանութեան մէջ՝ մտադիր ընելով որ սոյն խօսքն (եւ այլ անթիւք) գրուած են անյունագէտ Հայոց համար: Այլեւայլ կարծիքներ յիշելով Նեմեսիոս կը յաւելու՝ թէ "եւ կալնու յաւէտ առ ի փառաւորագունիցն՝ նախկինն."[3] (բառական՝ Καὶ κρατεῖ μᾶλλον παρὰ τοῖς ἐνδοξοτέτοις τὸ πρότερον.) որ ըսել է "եւ առաջինն (ի կարծեաց) յաղթեալ տիրէ առ ականաւորսն (այսինքն՝ հռչակաւոր փիլիսոփայս): Եւ այս դեռ լաւ կտորներէն է:

Այս ամէնն ի հարկէ թարգմանութեան լաւ վկայութիւն չեն. եւ արդեամբք թարգմանութիւնն իւր ստրուկ բառականութեամբն եւ առաւել եւս յունախօս գերի լեզուաւն հաճոյական երեւոյթ մըն չէ հայ մատենագրութեան մէջ, թէեւ այս

[1] Էջ 39—40, 1 եւ ծ. 1:
[2] Էջ 41, 10 եւ ծ. 1:
[3] Էջ 32, 7 եւ ծ. 2:

երկու կողմանէ ալ աւելի յոռեգոյններ կան եւ դժբախտաբար բաւական ստուար թուով։ Միւս կողմանէ թարգմանչին գոնէ բարի կամքն ու ճիգն այսպիսի իմաստասիրական գործքերը Հայ սերնդոց մատչելի ընելու՝ արժանի է ամենայն յարգանաց։ — Գովութեամբ պէտք ենք յիշել որ հրատարակիչն այսպիսի յունախօս տեղերը լուսաբաններ է ծանօթութեանց մէջ։

Մեր Մատենադարանի Թ. 90Բ ձեռագիրը՝ զոր առիթ ունեցանք յիշելու, նորագոյն ժամանակի անյիշատակարան ընդօրինակութիւն մըն է անծանօթ ձեռագրէ մը։ Հրատարակութենէս ունեցած իւր տարբերութիւնքը համեմատաբար աննշանակ են, որոնց վրայ խօսել այժմ մեր նպատակէն դուրս է։



## Բ.

## ՊՐՈԿՂԻ ԴԻԱԴՈԽՈՍԻ ԾԱՂԿԱՊՔ ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆԱԿԱՆՔ

*Նախնեաց իմաստասիրական բազմաթիւ թարգմանութեանց մէջ իւր ուրոյն տեղը կը բռնէ Պրոկղի իմաստասիրի գրութիւնը, որ եթէ ոչ իւր թարգմանչին յաջողակութեան եւ ոչ իւր լեզուին կողմանէ մասնաւոր մտադրութեան արժանի է, բայց գոնէ հետաքրքրական այն պարագան ունի որ վրացերէն լեզուէ թարգմանուած կ՚աւանդուի։ Այս աւանդութեամբ Պրոկղի մեր այս թարգմանութեան յարգը քիչ մ՚աւելի կրնայ աճիլ թերեւս, այնու որ վրացերէնէ թարգմանուած այսպիսի գիրք մը, որ իւր յունաձեւ խրթնաբան եւ արուեստակեալ լեզուաւ իւր նմանեաց հետ ամենայն կերպով կրնայ մրցիլ, գոնէ սովորական երեւոյթ չէ եւ ոչ հայ մատենագրութեան մէջ։*

*Պրոկղի այս գրութեան բաւական թուով ձեռագիրք կան հայ մատենադարանաց մէջ. միայն Էջմիածնի մատենադարանն արդէն* 1863*ին* 23[1] *օրինակ ունէր։ Այս յայտնի նշան է՝ թէ նաեւ Հայոց քով բաւական մեծ ընդունելութիւն գտած է հեթանոս իմաստասիրին գրութիւնը, որուն ապացոյց է նաեւ այլեւայլ Լուծմանց գոյութիւնն, որ յորի-*

[1] Սոյն ցուցակին մէջ նախ 22 օրինակք կը յիշուին ի միասին. (Թիւք 1811—1832։) Բայց այլուր կը յիշուի ուրիշ մ՚ալ (Թիւ 817) որ է “գրեալ ի թղթի ի Մաղաքիայ քահանայէ ի թուին Հայոց ՌՃՁԱ (= 1732),, եւ այն՝ “Մակածութիւն Պրոկղի,, անուամբ՝ հանդերձ լուծմամբք Սիմէոնի գառնեցւոյ։ Անշուշտ կան ցուցակիս մէջ ուրիշ օրինակներ ալ։

նուած են ի մեկնութիւն գրոցս։ Մեր մատենադարանը մօտերս ստացաւ օրինակ մը Պրոկղի այս գրոց (Թիւ 123 Ա), որ առիթ տուաւ մեր այս համառօտ դիտողութեանց։ Դժբախտաբար պայծառ գաղափար մը պիտի չկրնանք յօրինել շատ մը խնդրոց մէջ՝ քանի որ ծանօթ բազմաթիւ ձեռագիրներուն համեմատութեամբ խստիւ քննադատուած հրատարակութիւն մը լոյս չէ տեսած գրոցս բնաբանին եւ իւր այլեւայլ լուծմանց։ Մեր դիտողութիւնքն որ մեր մատենադարանին ձեռագրին վրայ հիմնեալ են, պիտի ցուցընեն որ՝ թէպէտ եւ տեղ տեղ բաղձացուած ստոյգ հետեւութեանց չկարենանք հասնիլ, շատ ալ սխալ ու շփոթ կէտեր լուսաբանելու նպատակին հասնելու ջանացած ենք։

Պրոկղոս յոյն Նոր-պղատոնական իմաստասէր մըն է, որ ծնած է ի Կ. Պոլիս 412ին եւ մեռած 485 Յ. Ք։ Իւր կրթութիւնն նախ յԱղէքսանդրիա առաւ, ապա գնաց Աթէնք, ուր աշակերտեցաւ (աւագ) Ողիմպիոդորոսի, Պղուտարքոսի եւ Սիւրիանոսի։ Յաջորդելով Սիւրիանոսի իբրեւ ուսուցիչ իմաստասիրութեան՝ ապրեցաւ յԱթէնս, ուր գրեց բազմաթիւ գործքեր։ Մեծ մասն այս գործոց՝ մեկնութիւնք են այլեւայլ գիտնոց գրոց. այսպէս գրեց մեկնութիւն Պղատոնի՝ Տիմէոս,[1] Կրատիւղոս, Աղկիբիադէս[2] եւ Պարմենիդաս[3] գրոց, Եւկղիդեայ Երկրաչափութեան, եւ այլ գործքեր։ Իւր գործոց լիուլի եւ լաւագոյն բազմահատոր հրատարակութիւնն ըրաւ Գուզէն[4] դարուս սկիզբները։ Պրոկ-

---

[1] Procli in Platonis Timeum comment., ed. Bas. 1534 եւն։ Հմմտ. այս գործքին վրայ J. Simon. Du commentaire de Proclus sur le Timée de Platon. Paris, 1839.

[2] Հմմտ. Excerpta ex Procli scholiis in Plat. Cratylum. Lipsiae 1820, եւ Procli in Plat. Alcibiad., ed. Creuzer. Francof. 1822.

[3] Procli in Plat. Parmenidem, ed. Stallbaum, Lipsiae 1839.

[4] Procli philosophi platonici opera omnia, ed. Couzin. Paris. 1820 ff.

ղոս Նոր-պղատոնական դպրոցին ամենամեծ ներկայացուցիչներէն եղաւ. այս փիլիսոփայք արդէն յաղթական քրիստոնէութեան դէմ կը մաքառէին մէկ կողմանէ մաքրելով իրենց հնոց անտեղի կարծիքներն, միւս կողմանէ՝ ազդուելով հանդերձ քրիստոնէութեան շատ մը վարդապետութիւններէն՝ կը ջանային ոգորիլ վերջնոյս դէմ։ Պրոկղոս մինչեւ անգամ ուրոյն գործք մ'ընդդէմ քրիստոնէից շարադրեց, որուն անունն է "Հաւաքաբանութիւնք (ἐπιχείρημα) ընդդէմ քրիստոնէից.„ ուր կը ջանար աշխարհիս ոչ-ստեղծուած այլ յաւիտենական ինքնագոյութիւնը ցուցընելու. իրեն դէմ մաքառեցան ի հարկէ քրիստոնեայ ջատագով գրիչք[1]։ Մեր նպատակէն դուրս է նկարագրել հոս Պրոկղի փիլիսոփայական դրութիւնն, որ յամենայն դէպս հին փիլիսոփայութեան պատմութեան մէջ իւր նշանաւոր տեղը կը գրաւէ, եւ արդէն մանրամասն քննադատուած է շատ անգամ եւրոպական գիտնականներէն[2]։

Պրոկղոս՝ թէպէտ եւ աշակերտ փիլիսոփայական դրութեանց Պղատոնի, (որուն գրութիւնքը շատ կը գործածէ,) Պորփիւրի, Յամբղիքեայ եւ այլոց, եւ Նոր-պղատոնական իմաստասիրութեան ընդհանրապէս, բայց ի մասնաւորի աթէնական դպրոցին գլխաւոր ներկայացուցիչն եղած է. բայց իւր գրութիւնք շատ կարդացուած են նաեւ քրիստոնեայ

1 Այսպէս Պրոկղի ընդդէմ քրիստոնէութեան գրած "Հաւաքաբանութեան„ հերքում գրեց յունարէն՝ նաեւ Յովհ. Փիլոպոնոս († 610էն ետքը) (De aeternit. mundi libri XVIII. ed. Venet. 1535) զոր լատիններէն թարգմանեց J. Mahatius, ed. Lugd. 1557.

2 Berger, Proclus, exposition de sa doctrine. Paris, 1840. — H. Kirchner, de Procli neoplatonici metaphysica. Berol. 1846. — Steinhart, ի բառն Proklus: Pauly's Realencycl. VII, pp. 62 ff. Հմմտ. A. Stöckl, Lehrbuch der Geschichte der Philosophie. 2. Aufl. Mainz, 1875 pp. 240 ff. եւն։ — Նորերս՝ J. B. Pitra, Analecta Sacra et Classica, Paris. 1888, Préf. p. XIII-XXXV, եւ Classica, pp. 1—329.

մատենագրերէն, զոր օրինակ ի Դիոնիսեայ եւն։ Պրոկղոս բաց ի վերոյիշեալ գրութիւններէն՝ ունի Պղատոնի Աստուածաբանութեան մեկնութիւն մ'ի վեց գիրս, որ լոյս տեսաւ նախ ի Համպուրկ 1618ին[1], եւ ուր կայ նաեւ Պրոկղի առաջաբանական կենսագրութիւնն իւր Մարինոս աշակերտէն գրուած։ Սոյն այս հրատարակութեան մէջ առաջին անգամ Եմիլիոս Պորտոս հրատարակեց յունարէն բնագիրն այն գրութեան, որուն հայերէն թարգմանութեան վրայ է այժմ մեր խօսքը։ Բայց Պորտոսի ձեռագիրն, որ Կոտտորփի դղեկին (մերձ ի Շլէզվիկ) գրատունէն էր, ձեռագրաց յոռի խմբին կը վերաբերէր, մինչ յետոյ շատ աւելի լաւագոյն ձեռագիրք յերեւան ելան։ Ընտրելագոյն հրատարակութիւնն եղաւ գաղղիացի հռչակաւոր Ֆիրմէն–Տիտոյ գրավաճառաց հրատարակած յունական գրութեանց մէջ, երբ Պղոտինի Էննէադք գրութեան սկիզբն Ներածութեան մէջ ամբողջովին հրատարակեցին Քրայցեր եւ Մոզէր գիտնականք[2]։

Պրոկղի գիրքն, ինչպէս ակնարկեցինք, այնպէս սերտ կապ ունի Պղոտինի գրութեան հետ, որ գիտնականին Թէննէման մինչեւ անգամ Պղոտինի գրութեան լուծմունք միայն համարեցաւ Պրոկղի երկասիրութիւնը[3]։ Հրատարակիչն (Ներած. էջ 49) չընդունելով հանդերձ սոյն կարծիքը՝ կը խոստովանի որ սոյն գործքը Պղոտինի աստուածխօսութեան համառօտութիւն կրնանք կոչել, եւ թէ այս կողմանէ նմանութիւն ունի մեծապէս Պորփիւրի մէկ

[1] Procli in Theologiam Platonis libri sex (una cum Marini Vita Procli) et Procli Institutio theologica. Hamb. 1618.

[2] Plotini Enneades, ed. Frid. Creuzer et Henr. Moser, primum accedunt Porphyri et Procli Institutiones et Prisciani philosophi Solutiones, ed. Fr. Dübner. Paris. 1855, Firmin-Didot. Պրոկղի այս գործքը կը գտնուի Ներածութեան մէջ (Prolegomena, pp. XLIX—CXVII)

[3] Tennemann, Grundriss der Geschichte der Philosophie, 30 Aufl. p. 270.

գրութեան, որուն անունն է՝ “Սկզբունք յիմանալիս։„ Պրոկղի գիրքն յոյն բնագրին մէջ Στοιχείωσις θεολογική (Նախակրթութիւն Աստուածխօսական) կը կոչուի. Հայ թարգմանիչն իւր յոռի լեզուաւ թարգմանած է այս բառերը՝ “Շաղկապք աստուածաբանականք։„ Հայ ձեռագրաց մէջ գրոյս լիուլի վերնագիրն է. “Պրոկղի Դիադոխոսի պղատոնականի[1] իմաստասիրի Շաղկապք աստուածաբանականք. Հատորք[2] ՄԺԱ։„ Այսպէս է նաեւ Վենետկոյ ձեռագրին վերնագիրն։ Անշուշտ տարբեր չեն Էջմիածնի ձեռագրաց վերնագիրք ալ, թէպէտ 1863ի “Մայր ցուցակին„ մէջ միշտ “Պրոկղի Աստուածաբանութեան Շաղկապաց Մեկնութիւն„ տիտղոսով կը յիշուին[3]։ “Դիադոխոս„ յունարէն διάδοχος (յաջորդ) բառն է, որ վերադիր եղած է Պրոկղի՝ իբրեւ յաջորդի Սիւրիանոսի յիմաստասիրութեան։ Այսպէս կը գտնենք նաեւ յոյն բնագրին մէջ, որուն վերնագիրն է ճշդիւ համեմատ հայոյն. (Προκλου Διαδοχου πλατωνικου Στοιχειωσις θεολογικη.) — Իսկ “Հատորք ՄԺԱ„ ըսելով կը հասկըցուին հատուածք կամ մանր գլուխք. վասն զի թէ՛ յոյն բնագիրն եւ թէ՛ հայ թարգմանութիւնն արդեամբք այսչափ մանր մասանց բաժնուած է, որոնց վրայ կը խօսինք քիչ մ'ետքը։

Հայոյն “դիադոխոս„ բառն ինքնին պիտի բաւէր ըստ ինքեան ցուցընելու՝ թէ անպատճառ յոյն բնագրէ եղած է թարգմանութիւնը։ Բայց այս դէպքիս մէջ այնչափ հաստատուն ապացոյց չէ այս բառն. վասն զի Պրոկղի մականուն մ'եղած է, որով անշուշտ այսպէս պիտի գտնուէր նաեւ վրական թարգմանութեանն ալ մէջ, որմէ վերստին թարգ-

---

[1] Մեր ձեռագիրն է “պղատոնականի.„ իսկ վենետկեան օրինակը (Հմմտ. “Մատենադարան թարգմանութեանց„ էջ 667) միշտ “դիադօխոսի։„

[2] Վենետկ. օր. “Հատորս։„

[3] Մայր Ցուցակ, տպ. Տփ. 1863, թիւք 1811—1832։

մանուած կ՚աւանդուի հայը։ Հայ Թարգմանութեան վրայ ցայժմ ոչինչ գրուած կայ, բաց ի այն հատուածիկէն, որ լոյս տեսաւ “Մատենադարան Հայկական Թարգմանութեանց Նախնեաց„ գրոց մէջ[1]։ Այս հատուածիկին մէջ հետեւեալ տեղեկութիւնք կը տրուին Հայ Թարգմանութեան վրայ։ Պրոկղի գրոց Հայ Թարգմանութեան վերջը յիշատակարան մը կցուած է, եւ որ ի մէջ կը բերուի. եւ ապա յիշելով Էջմիածնի 22 ձեռագիրները՝ կ՚աւելցուի թէ այս ամենուն մէջ “Թարգմանիչ կը կոչուի Սիմէոն Գառնեցի, եւ միւս ալ համանուն Երեւանցի վարդապետ մը՝ որ Թարգմանչէն շատ ետքը յօրիներ է զլուծմունս գրոցն Պրոկղի։„ Այսպէս ուրեմն “Մատենադարանի„ հեղինակը կը համարի թէ Թարգմանիչն է Սիմէոն Գառնեցին, զոր “կրօնաւոր„ կը կոչէ պարզապէս քիչ մը վերը։ Վերջապէս յիշելով Կոնիբերի հայագէտի կարծիքն, որ կրկին Հայ Թարգմանութիւն կը գտնէր (անշուշտ՝ Էջմիածնի) ձեռագրաց մէջ, կը յաւելու. “Մենք այս նախնական Թարգմանութեան տեղեկութիւն չունինք. եւ յարգելով իսկ մեր բարեկամին ենթադրութիւնը՝ հաւանական չենք համարիր, զի Գառնեցին Սիմէոն՝ իւր Թարգմանութեան բուն պատճառը՝ յայլոց ինչուան իւր ատեն ի Հայ լեզու փոխուած չըլլալը կը դնէ[2]։„

Այս տեղեկութեան մէջ քանի մ՚անճշդութիւնք կ՚երեւան։ Նախ յայտնապէս շփոթութիւն մըն է զՍիմէոն Գառնեցի դնել Թարգմանիչ, եւ զինքը նոյնացընել “Սիմէոն կրօնաւորին„ հետ, որ արդեամբք Թարգմանած է գիրքս։ Բոլորովին ուրիշ անձ է Սիմէոն կրօնաւոր, որ յամի 1248 Յ. Ք. Թարգմանած է գիրքն, եւ ուրիշ է դարձեալ Սիմէոն Գառնեցի եպիսկոպոս որ յետոյ միայն

---

1 Հ. Գար. Վ. Զարբ., “Մատենադարան„ եւն։ Վենետ. 1889, էջ 666—669։
2 Անդ, էջ 669։

“Լուծմունք„ յօրինած է, եւ այն՝ 1651ին Յ. Ք. որով չորս ամբողջ դարու անջրպետ կայ երկուքին մէջ։ Բուն Թարգմանիչն այսպիսի յիշատակարան մը կցած է իւր Թարգմանութեան վերջը, զոր կը գտնենք հոս մեր ձեռագրէն՝ համեմատութեամբ այն օրինակին, որմէ առած գրած է զայն “Մատենադարանին„ հեղինակը։ Համեմատութիւնս կարեւոր է այնու մանաւանդ որ՝ ինչպէս պիտի տեսնենք, մեր օրինակին մէջ մեծ կտոր մը պակաս է։ Մեր ձեռագիրը գրքին ամէնէն վերջը՝ բոլորովին կղզիացեալ՝ “Յիշատակարան Թարգմանողի գրոցս„ վերնագրով կը գտնէ յիշատակարանն այսպէս[1]. “Թարգմանեցաւ[2] գիրքս[3] Պրոկղի դիադոխոսի[4] պղատոնական իմաստասիրի ձեռամբ Սիմէոնի[5] անպիտան քահանայի եւ[6] կրօնաւորի ի վրաց լեզուէ ի հայ լեզուս. յերկիրս Հայոց ի վանս Վրաց որ կոչի Պղնձահանք. ի[7] [illegible] Քրոնիկոնին Ց. Չ. Ծ. Ջ. (= ուրեմն 1248 Յ. Ք.։) Արդ[8] աղաչեմ զձեզ, ով եղբարք, ներել ինձ[9], զի յոյժ աշխատութեամբ Թարգմանեցի. Նախ զի ոչ էի արժանի այսպիսի սպասաւորութեան, սակս շաղախեալ գոլոյ[10] մեղօք. երկրորդ զի յոյժ ծերացեալ էի, եւ տկարացեալ յաչաց եւ ի մտաց եւ ի զօրութենէ. զի դժուարիմանալի էր. այլ զի ոչ էր եւս Թարգմանեալ ի մեր լեզու. [[11]Եւ սա է մայր աստուածաբանութեան առաջին։ Մովսէս զայս

[1] Ձեռ. 123 Ա. էջ 511։

[2] Վենետ. օր. Թէ հոս եւ Թէ յետոյ միշտ “Թարգմանեցաւ„ եւն կը գրէ։

[3] Վենետ. օր. կը յաւելու “որ է շաղկապ եւ գլուխ աստուածաբանութեան։„

[4] Վենետ. “դիադօխոսի։„

[5] Ձեռ. 123 Ա “Սիմէօնէ։„

[6] Վենետ. չունի “եւ։„

[7] Վենետ. “ի„ չունի։

[8] Վենետ. չունի “արդ։„

[9] Վենետ. չունի “ներել ինձ։„

[10] Վենետ. “գոլ։„

[11] Այս ամբողջ կտորն՝ որ փակագծի մէջ առնուած է, չունի մեր ձեռագիրն, որով ամբողջ խօսքն աւելի կապակցեալ է։

ունեալ զդպրութիւն, եւ ի սորա բանիցն կարգեաց զիւրն աստուածաբանութիւն. եւ Դիոնեսիոս արիսպագացին եւ Յովթէոս զիւրեանց գրեանքն բովանդակ ի սմանէ դրեցին. Նոյնպէս եւ Գրիգոր աստուածաբան զիւր աստուածաբանութիւն ի սմանէ խօսեալ է. եւ բոլորովիմքն որք[1] զամենայն աստուածաբանութիւնս իւրեանց ի սմին ոլորմանց բանից բխեցին. եւ սա է հիմն եւ արմատ եւ մայր ամենայնի. ի սմանէ առին նոքա բովանդակ. իսկ այնք փոքր հատոր ելով. եւ ես][2] յայնսակս թարգմանեցի. զի մի պակաս եղիցի[3] սա յազգէս մերմէ: [4]Արդ աղաչեմ որք ընթեռնուք կամ օրինակ առնուք, յիշեսջիք յաղօթս զիս եւ զիմ փոքր բանս գրեսջիք զկնի. եւ դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ, որ է օրհնեալ յաւիտեանս ամէն:”

Այս յիշատակարանէս կ՚իմանանք որոշ նախ թարգմանութեան տարին (1248 Յ. Ք.) եւ թարգմանչին անունն ու աստիճանն, եւ վերջապէս նաեւ 60ամեայ հասակը, որ անոր համար ձեռնարկեց թարգմանել՝ վասն զի հայ լեզուաւ թարգմանուած չէր գտած: Վրացերէնէ թարգմանած էր անշուշտ անոր համար որ ուրիշ լեզուի հմուտ չէր, մինչ ինքն քաջ տեղեակ ըլլալու էր վրացերէն լեզուի՝ բնակելով Վրացվանաց մէջ, որուն անունն էր Պղնձահանք: Այս անուամբ տեղ մը եւ նաեւ աւերակ հին մենաստան կայ նաեւ Բջնոյ հիւսիս-արեւելեան կողմը[5]. սակայն մեր թարգմանչին յիշածը չէ հարկաւ:

[1] “Բոլորիմքն որք„ մենք դրինք ըստ հեշտի: Վենետ. օրինակն է “բոլորովիմքներքս:„

[2] Կը սկսի մեր ձեռագիրն:

[3] Մեր ձեռագիրն “լինիցի:„

[4] Յաջորդ մասն ամբողջ մեր ձեռագրէն է. աներկբայ հարազատ է հատուածիկս:

[5] Հմմտ. Հ. Ղ. Վ. Ալիշան, “Այրարատ„ Վենետ. 1890, էջ 258: “Սակաւուք ի ստորեւ ի Հր. Ել. Պղնձահանիցն եւ ի հարաւոյ գետակին՝ յառապար լանջակողման լերին՝ կայ հին եւ լքեալ մենաստան, որոցաձեւ անսիւն բարձրակամար եկեղեցեաւ, չափաւոր մեծութեամբ, զորոյ ստորոտս քուոց

Թարգմանիչն այն Պղնձահանք անուն վանուց մէջն էր, զոր մեր թարգմանչին թարգմանութենէն ոչ շատ յառաջ Տաշրաց երկրին մէջ Իւանէ Հայոցմէ առաւ եւ "վրացի վանս" հաստատեց, եւ որ էր գերեզմանատուն Իւանէի եւ իւր որդւոյն Աւագին, ինչպէս կը յիշեն Կիրակոս[1] եւ Վարդան[2]: Թէպէտ Վրաց վանք էր եւ "վան Վրաց" հաստատուած, ինչպէս կը յիշէ Կիրակոս, բայց անշուշտ չէին պակսեր նաեւ Հայք, որոնցմէ էր Սիմէոն՝ որ 1248ին 60ամեայ ըլլալով՝ անշուշտ նոյն Վրաց վանաց ամենէն առաջին բնակիչներէն էր: Ուրիշ տեղեկութիւն չունինք իւր վրայ, եւ չորս դար ետքը՝ Սիմէոն Գառնեցի՝ իրեն եւ իւր ժամանակակցաց բոլորովին "անծանօթ" կը գտնէր սոյն անձը[3]:

Ի՞նչ էր ուրեմն Սիմէոնի Գառնեցւոյ արդիւնքն Պրոկղի գրոց հայ թարգմանութեան նկատմամբ: Սիմէոն Գառնեցի եպիսկոպոս՝ ըստ իւր իսկ խոստովանութեան՝ բնագրին հետ գործք չունի, այլ "Լուծմունք" միայն յօրինած է նոյն գրոց, որոնց վերջը կցեր է յիշատակարան մը: Թէպէտ

---

տանեացն շուրջ առեալ պատէ մեծապարսպ արձանագիր վիմօք. իսկ ի ստորեւ զեկեղեցեաւն ածեալ կայ պարիսպ քառակուսի, եւ սենեակք բնակութեան, այլ ծածկեալ վայրենամոլ թփովք եւ մացառօք: Նման իմն է տեղիս հաշակաւոր Պղնձահանիցն Տաշրաց, սեպհականութեան եւ գերեզմանի Իւանէի Աթաբէկի,, եւն:

[1] Հմմտ. Կիրակոս Գանձակեցի, Պատմութիւն. տպ. Վենետ. 1865, 116. "Իւանէ եղբայր Զաքարիայի ... թաղեցաւ ի Պղնձահանքն, ի դուռն եկեղեցւոյն՝ զոր շինեաց ինքն, առեալ ի Հայոց՝ վրացի վանս հաստատեաց:" Էջ 126. "Մեռեալ էր Իւանէ, եւ տարեալ թաղեցին զնա ի Պղնձահանքն, զոր իւր շինեալ էր վասն Վրաց, առեալ ի Հայոց:" Հմմտ. նաեւ էջ 180. "Յետ այսորիկ մեռաւ իշխանաց իշխան Աւագն, եւ թաղեցաւ ի Պղնձահանքն ի գերեզմանի հօր իւրոյ Իւանէի:"

[2] Վարդան, Պատմութիւն. տպ. Վենետ. 1862, էջ 148. "Ի վեց հարիւր իննսուն եւ ինն թուին (= 1250) մեռաւ Աւագն որդին Իւանէի եւ թաղեցաւ ի Պղնձահանքն ընդ հօր իւրում" եւն: Ուրեմն Աւագի մահուանէ երկու տարի յառաջ եղած է թարգմանութիւնս:

[3] Ձեռ. 123Ա, էջ 2, 17:

"Մատենադարանի„ հեղինակն այսպիսի յիշատակարան մը չի յիշեր, բայց չենք կարծեր որ չգտնուի Վենետկոյ օրինակաց մէջ։ Այս յիշատակարանն է[1]. "Եղեւ Լուծմունքս բանիցն Պրոկղի պղատոնական իմաստասիրի ի հազարերորդի եւ ի հարիւրերորդի թուականութեանս Հայոց. (= 1651 Յ. Ք.) ի նուաստ Սիմէոնէ Գառնեցւոյ Եպիսկոպոսէ. որ աղաչեմ զհանդիպօղսդ ներել ինձ ի ձեռնամխութիւն բանիցս այսոցիկ. զի գուցէ ոք հանդիպօղ, որում Աստուած եւս պարզագոյն տեսութիւն շնորհիցէ. բայց առ այն շնորհ ունիցի շնորհաց պարգեւողին Աստուծոյ, որում անբաւ փառք ըստ անբաւութեան իւրում ամէն։„

Գառնեցւոյ մեկնութիւնը հատած առ հատած է, այսինքն Պրոկղի իւրաքանչիւր հատածին վերջը կ'աւելցուին մեկնութիւնք, որ մեր ձեռագրին մէջ կարմրագիր "Լծ„ տառերով կը նշանակուին լուսանցքի վրայ։ Այս լուծմանց լեզուն աւելի հասկանալի եւ աւելի հայերէն է քան բուն բնագրինը, թէեւ ուսումնական բառերուն մէջ ի հարկէ հայ թարգմանութեան յատուկները գործածուած են։ Տեղւոյս չէ Գառնեցւոյ այս գործքին վրայ մանրամասն խօսիլ. ստոյգ է միայն որ արդեամբք յօրինիչն կ'երեւայ Գառնեցին, ինչպէս հայերէն բառերու մեկնութիւնք կը ցուցընեն[2]։ Սակայն Գառնեցի անշուշտ ունի առջեւն առաջնորդ մը, եւ թերեւս իւր Լուծմանց մեծագոյն մասն նմանողութիւն է։ Մեր այս ենթադրութեան ուղիղ կամ թիւր ըլլալն կրնայինք իմանալ՝ եթէ առջեւնիս

---

[1] Ձեռ. 123Ա, էջ 506,11—20։

[2] Հմմտ. ՃԶԴ, ուր կը խօսի Պրոկղ՝ ըստ թարգմանչին՝ "Յաղագս անձին,„ այսինքն "հոգւոյ.„ (= ψυχὴ·) Հմմտ. այս նկատմամբ մեր գրածը Նախընթաց հատածին մէջ՝ էջ 18—19։ Գառնեցի հանդիպելով այսպիսի նշանակութեան մը "անձն„ բառին՝ նոյն հատուածին Լուծմունքը բոլորովին նուիրած է մեկնելու "անձն„ բառն, որ "հոմանուն է ըստ լեզուիս Հայոց„ եւն։

*ունենայինք Էջմիածնի ձեռագիրներէն գոնէ քանի մը հատածներ, ի մասնաւորի այն մեկնութենէն կամ լուծմունքներէն որ "Ամելախօսի" անունը կը կրեն։ Այս անուամբ հին լուծմունք մը կը գըտնուի հայ թարգմանութեան ինչ ինչ օրինակաց մէջ։ Կ'երեւայ թէ Վենետկոյ օրինակին լուծմունքն այս կարգէն են. վասն զի "Մատենադարանի" հեղինակը Պրոկղի հայ թարգմանութիւնն յիշելով կը յաւելու՝ թէ "Կից են" ասոր հետ "Ողլախօսի իմաստասիրի եւ հռետորի Աթենացւոց եպիսկոպոսի՝ լուծմունք Պրոկղի դիադօխոսի պղատոնական իմաստասիրի։" Էջմիածնի ձեռագրաց մեծ մասին լուծմունք Գառնեցւոյ գրութիւնը կ'երեւան, եւ ոչ այլ մեծ հնութիւն ունին, գոնէ ըստ "Մայր ցուցակի [1]։"*

---

[1] *Էջմիածնի ձեռագիրք են ըստ "Մայր Ցուցակի."* Թիւ 1811. *"Պրոկղի Աստուածաբանութեան շաղկապաց մեկնութիւն քառածալ նօտրագիր գրեալ ի թղթի ի Գալուստ վարդապետէ Ջուղայեցւոյ ի թուին Հայոց* ՌՄԺԸ (= 1769.)," *ուր կան այլ երեք գրութիւնք։* — Թ. 1812. *"Նոյն՝ քառածալ բոլորագիր գրեալ ի թղթի ի Զաքարիայ վարդապետէ։"* — Թ. 1813. *"Նոյն նօտրագիր" անյիշատակարան։* — Թ. 1814. *"Նոյն բոլորգիր սրբագրեալ ի Սիմէօն վարդապետէ երեւանցւոյ գրեալ ի թղթի ի Կարապետ աբեղայէ ի թուին Հայոց* ՌՄԺԹ. (= 1770.)," — Թ. 1815. *"Պրոկղի եւն քառածալ նօտրագիր գրեալ ի թղթի ի սուրբ Էջմիածին ի Վարդան աբեղայէ ի թուին Հայոց* ՌՄԽԵ. (= 1796։) — Թ. 1816. *"Նոյն ի վանս Վարագայ ի Յովհաննիսէ ի թուին Հայոց* ՌՄԻԱ (= 1772։)" — Թ. 1817. *"Նոյն բոլորգիր գրեալ ի թղթի ի քաղաքն Ասպահան ի գիւղն Քորդիմանու ի Թուման դպրէ ի թուին Հայոց* ՌճԷ (= 1658։)," — Թ. 1818—21 *նոյն՝ անյիշատակարան. առանց որեւիցէ ուրիշ տեղեկութեան, բայց միայն որ* Թ. 1818 *"գրեալ ի թղթի," է եւ* Թ. 1821 *թերի։* — Թ. 1822. *"Պրոկղի Աստուածաբանութիւն շաղկապաց մեկնութեան Համելախօսի քառածալ նօտրագիր գրեալ ի թղթի ի նահանգին Կարբւոյ ի վանքն Յաւչոյ Ս. Սարգսի ի վանահայրութեան Տեառն Ոսկանայ վարդապետի երեւանցւոյ թարգմանչի ըստ դաղմատերէնի, ի Կարապետէ ի թուին Հայոց* ՌճԷ (= 1658։)," — Թ. 1823. *"Նոյն՝ Սիմէօնի, գրեալ ի թղթի ի սուրբ Էջմիածին ի Մինաս աբեղայէ ի թուին Հայոց* ՌՄԾԲ. (= 1793։)," — Թ. 1824. *"Նոյն ութածալ գրեալ ի թղթի," անյիշատակարան։* — Թ. 1825. *"Նոյն ի սուրբ Էջմիածին ի Փիլիպպոս վարդապետէ ի թուին Հայոց* ՌՄԺԶ (= 1767)։" — Թ. 1826—1829 *"Նոյն"։* — Թ. 1830. *"Նոյն նօտրագիր յԷջմիածին*

“Մատենագարանի„ հեղինակն այսպիսի յիշատա-կարան մը չի յիշեր, բայց չենք կարծեր որ չգտնուի Վենետկոյ օրինակաց մէջ: Այս յիշատակարանն է[1]. “Եղեւ Լուծմունքս բանիցն Պրոկղի պղատոնական իմաստասիրի ի հազարերորդի եւ ի հարիւրերորդի թուականութեանս Հայոց. (= 1651 Յ. Ք.) ի նուաստ Սիմէոնէ Գառնեցւոյ եպիսկոպոսէ. որ աղաչեմ զհանդիպօղսդ ներել ինձ ի ձեռնամխութիւն բանիցս այսոցիկ. զի գուցէ ոք հանդիպօղ, որում Աստուած եւս պարզագոյն տեսութիւն շնորհիցէ. բայց առ այն շնորհ ունիցի շնորհաց պարգեւողին Աստուծոյ, որում անբաւ փառք ըստ անբաւութեան իւրում ամէն:„

Գառնեցւոյ մեկնութիւնը հատած առ հատած է, այսինքն Պրոկղի իւրաքանչիւր հատածին վերջը կ’աւելցուին մեկնութիւնք, որ մեր ձեռագրին մէջ կարմրագիր “ԼԾ„ տառերով կը նշանակուին լուսանցքի վրայ: Այս լուծմանց լեզուն աւելի հասկանալի եւ աւելի հայերէն է քան բուն բնագրինը, թէեւ ուսումնական բառերուն մէջ ի հարկէ հայ թարգմանութեան յատուկները գործածուած են: Տեղւոյս չէ Գառնեցւոյ այս գործքին վրայ մանրամասն խօսիլ. ստոյգ է միայն որ արդեամբք յօրինիչն կ’երեւայ Գառնեցին, ինչպէս հայերէն բառերու մեկնութիւնք կը ցուցընեն[2]: Սակայն Գառնեցի անշուշտ ունի առջեւն առաջնորդ մը, եւ թերեւս իւր Լուծմանց մեծագոյն մասն նմանողութիւն է: Մեր այս ենթադրութեան ուղիղ կամ թիւր ըլլալն կրնայինք իմանալ՝ եթէ առջեւնիս

---

[1] Ձեռ. 123Ա, էջ 506,11—20:

[2] Հմմտ. ՃԶԴ, ուր կը խօսի Պրոկղ՝ ըստ թարգմանչին՝ “Յաղագս անձին,„ այսինքն “հոգւոյ.„ (= ψυχή.) Հմմտ. այս նկատմամբ մեր գրածը նախընթաց հատածին մէջ՝ էջ 18—19: Գառնեցի հանդիպելով այսպիսի նշանակութեան մը “անձն„ բառին՝ նոյն հատուածին Լուծմունքը բոլորովին նուիրած է մեկնելու “անձն„ բառն, որ “հոմանուն է ըստ լեզուիս Հայոց„ եւն:

ունենայինք Էջմիածնի ձեռագիրներէն գոնէ քանի մը հատուածներ, ի մասնաւորի այն մեկնութենէն կամ լուծմունքներէն որ “Ամելախոսի„ անունը կը կրեն։ Այս անուամբ հին լուծմունք մը կը գըտնուի հայ թարգմանութեան ինչ ինչ օրինակաց մէջ։ Կ'երեւայ թէ Վենետկոյ օրինակին լուծմունքն այս կարգէն են. վասն զի “Մատենադարանի„ հեղինակը Պրոկղի հայ թարգմանութիւնն յիշելով կը յաւելու՝ թէ “կէց էն„ ասոր հետ “Ոմելախօսի իմաստասիրի եւ հռետորի Աթենացւոց եպիսկոպոսի՝ լուծմունք Պրոկղի դիադօխոսի պղատոնական իմաստասիրի։„ Էջմիածնի ձեռագրաց մեծ մասին լուծմունք Գառնեցւոյ գրութիւնը կ'երեւան, եւ ոչ այլ մեծ հնութիւն ունին, գոնէ ըստ “Մայր ցուցակի [1]։„

---

[1] Էջմիածնի ձեռագիրք են ըստ “Մայր Ցուցակի.„ Թիւ 1811. “Պրոկղի Աստուածաբանութեան շաղկապաց մեկնութիւն քառածալ նօտրագիր գրեալ ի թղթի ի Գալուստ վարդապետէ Ջուղայեցւոյ ի թուին Հայոց ՌՄԺԸ (= 1769.)„ ուր կան այլ երեք գրութիւնք։ — Թ. 1812. “Նոյն՝ քառածալ բոլորագիր գրեալ ի թղթի ի Զաքարիայ վարդապետէ։„ — Թ. 1813. “Նոյն նօտրագիր„ անյիշատակարան։ — Թ. 1814. “Նոյն բոլորգիր սրբագրեալ ի Սիմէօն վարդապետէ երեւանցւոյ գրեալ ի թղթի ի Կարապետ աբեղայէ ի թուին Հայոց ՌՄԺԹ. (= 1770.)„ — Թ. 1815. “Պրոկղի եւն քառածալ նօտրագիր գրեալ ի թղթի ի սուրբ Էջմիածին ի Վարդան աբեղայէ ի թուին Հայոց ՌՄԽԵ. (= 1796։) — Թ. 1816. “Նոյն ի վանս Վարագայ ի Յովհաննիսէ ի թուին Հայոց ՌՄԻԱ (= 1772։)„ — Թ. 1817. “Նոյն բոլորգիր գրեալ ի թղթի ի քաղաքն Ապահան ի գիւղն Քորդիմանու ի Թուման գպրէ ի թուին Հայոց ՌՃԷ (= 1658։)„ — Թ. 1818—21 Նոյն՝ անյիշատակարան. առանց որեւիցէ ուրիշ տեղեկութեան, բայց միայն որ Թ. 1818 “գրեալ ի թղթի„ է եւ Թ. 1821 թերի։ — Թ. 1822. “Պրոկղի Աստուածաբանութիւն շաղկապաց մեկնութեան Հոմելախոսի քառածալ նօտրագիր գրեալ ի թղթի ի նահանգին Կարբւոյ ի վանքն Յաւշոյ Ս. Սարգսի ի վանահայրութեան Ցեառն Ոսկանայ վարդապետի երեւանցւոյ թարգմանչի ըստ դաղմատերէնի, ի Կարապետէ ի թուին Հայոց ՌՃԷ (= 1658։)„ — Թ. 1823. “Նոյն՝ Սիմէօնի, գրեալ ի թղթի ի սուրբ Էջմիածին ի Մինաս աբեղայէ ի թուին Հայոց ՌՄԽԲ. (= 1793։)„ — Թ. 1824. “Նոյն ութածալ գրեալ ի թղթի„ անյիշատակարան։ — Թ. 1825. “Նոյն ի սուրբ Էջմիածին ի Փիլիպպոս վարդապետէ ի թուին Հայոց ՌՄԺԶ (= 1767)։„ — Թ. 1826—1829 “Նոյն„։ — Թ. 1830. “Նոյն նօտրագիր յԷջմիածին

Մի օրինակ միայն ապահովութեամբ (Թիւ 1822) “Պրոկղի աստուածաբանութիւն շաղկապաց մեկնութեան Հոմելախօսէ„ է, այսինքն՝ Լուծմունքն ապահովութեամբ հին այն լուծմունքն են, զոր յիշեցինք։ “Հոմելախօս„ կամ լաւ եւս “Յամելախոս„ անշուշտ յունական կամ Ἰάμβλιχος (Jamblichus) եւ կամ նաեւ Ἀμφίλοχος (Amphilochus) անունն է։ Առձեռն չունենալով սոյն Լուծմունքն՝ ստոյգ բան մ՚ըսել չենք կրնար իւր բովանդակութեան նկատմամբ։ Բայց ապահով կ՚երեւայ թէ Սիմոն կրօնաւոր Պրոկղի գրոց հետ ի միասին թարգմանած էր նաեւ այն Լուծմունք։ Գառնեցի իւր Լուծմանց յառաջաբանութեան մէջ[1] յայտնապէս կը յիշէ թէ “Յառաջագոյն բնաբանին (այսինքն՝ Պրոկղի բուն գիրքն) ունի ընդ իւր Լուծմունս ի Յամելախօսէ եպիսկոպոսէ ումեմնէ. եւ յայլմէ թարգմանեալ ընդ բնաբանին։„ Սիմէոն այս տեղեկութիւնն այլուստ չէր կրնար գիտնալ, (վասն զի Յամելախոսի անձն իրեն անծանօթ էր, ինչպէս “ումեմնէ„ յայտնապէս կը ցուցընէ,) բայց միայն Թերեւս յիշատակարանէ մը, զոր անշուշտ նոյն Լուծմանց վերջը գտած էր, եւ որուն նմանելով է Թերեւս որ իւր Լուծմանց վերջը դրեր է իւր յիշատակարանը։ Կը յիշէ Գառնեցի նաեւ այն որ սոյն Յամելախոսի Լուծմունք շատ խրթին էին, ինչպէս նաեւ բուն բնաբանը՝ “ի վրաց լեզուէ„ թարգմանուած ըլլալով։ Իւր այս դատաստանն ամրապնդելու համար կը յիշեցընէ Գառնեցի իբր վկայ գրոցս հին օրինակները, “զոր ոչ է անհնար, կ՚ըսէ, գտանել ձեզ հանդերձ իւրով հին մեկնութեամբն.„ վասն զի նաեւ “յոլովք բազմացուցին օրինակելով վասն անծանօթ անուանն։„ Ասոր

---

ի Մատթէոս վարդապետէ ի թուին Հայոց ՌՄԻԱ. (= 1772։)„ — Թ. 1831. “Նոյն ի Զմիւռնիայ ի Յարութիւն դպրէ ի թուին Հայոց ՌՄԻ. (= 1771։) — Թ. 1832. “Նոյն երկոտասանածալ„, անյիշատակարան։ — Հմմտ. Թիւ 867։

[1] Ձեռ. 123Ա, էջ 2։

համար, կ'ըսէ, հարկ տեսեր է ձեռնամուխ ըլլալ
նոր Լուծմանց: Գառնեցի իւր Լուծմանց մէջ քանի
մ'անգամ կոչում կ'ընէ Դիոնեսիոսի, Արիստոտելի,
Փիլոնի, "Դաւթի" եւն գրութիւններէն[1]: Վեր-
ջապէս կ'երեւայ թէ Սիմէոնի թարգմանութիւնը
ներածութիւն մ'ալ ունէր՝ անշուշտ թարգմանչէն
յաւելեալ: Ասոր տեղ գրած պիտի ըլլայ Գառնեցի
իւր յառաջաբանութիւնն, որ իւր առջեւ ունեցած
հին օրինակին "Յառաջաբանութիւն Թարգմանողին"
բառերն օրինակեր դրեր է իւր յառաջաբանութեան
գլուխը. (— այս յառաջաբանութիւնը յետոյ ամ-
բողջովին կը գտնենք —:) Թերեւս ալ ինչ ինչ մա-
սեր պահած ըլլայ հին ներածութենէն իւր յառա-
ջաբանութեան մէջ, այսպէս սկիզբն եւ վերջը եւն:
Ի հարկէ որոշ բան մը չենք գիտեր այս նկատմամբ:
— Ուրիշ լուծմունք մ'ալ յօրինուած կը յիշուի
Էջմիածնի Թիւ 1813ին մէջ, որ Պրոկղի գիրքն է, բայց
"ուղղագրեալ ի Սիմէոն վարդապետէ Երեւանցւոյ:"

Մեր ձեռագիրն, ինչպէս ըսինք, Գառնեցւոյ
Լուծմունքն ունի: Մաքուր փայլուն ողորկուած
թղթի վրայ գեղեցիկ սեւ թանաքով նոտրագիր
գրչութիւն մըն է այս. (մեծ. 15×10 սնդ. գրու-
թիւնն միայն 11×6, 5 սնդ. տող 19.) լու-
սանցքները կարմրագիծ են, նոյնպէս եւ գլխաւոր
վերնագիրք եւ սովորական վերնագրաց յաջորդող
հատածին առաջին տողք, հատածացոյց թիւք եւ
հատուածոց սկզբնագիրք կարմրաւ գրուած են:
Ձեռագիրս, որ 512 էջ[2] է, "գրեցաւ ձեռամբ ապի-
կար չնչին Նիկողայոս կոչեցելոյ, ի վայելումն Մել-
քիսեդեկ սարկաւագին՝ ստացեալ արդեամբք իւ-
րովք. թվին ՌՃՂԷ. (= 1748) սկիզբն տարւոյն

[1] Հմմտ. Թ, ԾԴ, ՁԴ, ՀԲ եւ այլն հատուածներու Լուծմունքը:

[2] Սակայն բուն ըլլալու էր 412. վասն զի գրիչն էջերու թուերը նշանակելու ժամանակ 139էն ետքը շփոթմամբ սկսեր է հաշուել 240 եւն, որով 140—239 էջերը չկան գրոցս մէջ: Վերջն երկու դատարկ թուղթ կայ:

ւարտեցաւ:„ Ձեռագրիս վերջը՝ Սիմէոնի կրօնաւորի յիշատակարանէն յառաջ կայ ցանկ մը գրութեանս[1] նիւթերուն, բայց մանաւանդ ի սկզբան երկար յառաջաբանութիւն մը Գառնեցւոյն: Այս յառաջաբանութիւնն, զոր արդէն քանի մ'անգամ յիշեցինք, կը դնենք հոս ըստ մեր ձեռագրին[2]:

"Սիմէօնի քահանայ. Երզնկացի Արարեալ մեկնութեան գրոյն Պրոկղի: — Յառաջաբանութիւն Թարգմանողի: — Ի[3] թարգմանչացն մերոց առաջնոց մօսէսի ասեմ եւ դաւթի եւ ընկերաց սոցին, որ աթենական ուսմամբն էին կրթեալք. ոչ ունիմք զպրոկղս թարգմանեալ. կամ մեկնեալ, գուցէ թէ թարգմանեալ իցեն, այլ յանհոգութենէ ազգիս, եւ յանուսումնութենէ սպառեալ է յազգէս մերմէ: կամ գուցէ, թէ թարգմանիչքն տեսանելով, զի ի պորփիւրէ, եւ ի սորոգութեանցն. նաեւ յանձին գրոցն արիստոտէլի կարելի է ուսանիլ որ ինչ ի գիրս յայսմիկ գոյ, ոչ թարգմանեցին զայս. զի զնոյն բան կրկնէ. եւ երեքկնէ, եւ չորեքկնէ: եւ եւս բազմակնէ որ յաճախութիւն իմն երեւի: Բայց օգտութիւն բազում ունի յաւելեալ ի պորփիւր (էջ 2) եւ յայլս զորս ոչ գտանեմք ի նոսա[4]. յորոյ օգտութիւնն հայեցեալ, հարկեցայ առնել տեսողաց տեսանել զտեսութիւն սորա. օգնականութեամբ հոգւոյն աստուծոյ, եւ օժանդակութեամբ աղօթից ձերոց: Բայց յառաջագոյն ունի բնաբանն ընդ իւր լուծմունս ի յամելախօսէ եպիսկոպոսէ ումեմնէ, եւ յայլմէ թարգմանեալ ընդ բնաբանին: այլ դժուարաւ մուծանէ զմեզ ի բնաբան անդր: նաեւ ի թարգմանութենէն ունի խանգարումն իմացուածոց. զի ի վրաց լեզուէ է թարգմանեալ ի հայ բարբառ ի Սիմէոնէ քահանայէ յաշխատասիրէ ումեմնէ: եւ սասցելոցս վկայ ունիմ զգիրքս զայս, զոր ոչ է

---

[1] Ձեռ. 123Ա, էջ 507—510:

[2] Ձեռ. 123Ա, էջ 1—5:

[3] Ձեռ. չունի "Ի„ գրուած, այլ տեղ թողուած է զարդագրով գրելու: Նաեւ ուրիշ շատ տեղեր սկզբնատառք կը պակսին, վասն զի զարդագիրները չեն յօրինուած յետոյ, ինչպէս կը տեսնենք ուրիշ ձեռագրաց մէջն ալ.

[4] Ցայս վայր անշուշտ բուն թարգմանչին յառաջաբանէն օրինակած է Գառնեցի:

անհնար գտանել ձեզ հանդերձ իւրով հին մեկնութեամբն։ զի ի յետին ժամանակս է թարգմանութիւն սորա, եւ ըստ Նիւթականին չինուածոյ նոր։ Նա եւ յոլովք բազմացուցին օրինակելով վասն անծանօթ անուանն, յորոց ստիպեալ ձեռնամուխ եղէ ի սա ըստ կարի մերում բացայայտել խնդրողացն (էջ 3) զզօրութիւն սորա։ որոյ մակագրութիւնն է այս։ "պրոկղի դիադոխոսի պղատոնական իմաստասիրի։ Շաղկապք Աստուածաբանականք։ Հատորք. ՄԺԱ։" դիադոխոս է ըստ յունացն՝ որ ի հայս փոխանորդ թարգմանի[1]։ իբրեւ թէ պրոկղ զկնի պղատոնի յաջորդեալ իցէ զտեղի պղատոնի, եւ փոխանորդ եղեալ պղատոնի։ եւ եթէ այս, յայտ է ապա թէ պրոկղ էր ազգաւ յոյն, յերկրէն ելլադացեաց, ուստի եւ ամենայն իմաստասէրք աթենացեացն էին։ Նա եւ ի նոյն քաղաքէն աթենայ. ուստի եւ պղատոն էր." եւն[2]։

Ըստ վկայութեան թարգմանչին եւ Գառնեցւոյ՝ հայերէն ուրիշ թարգմանութիւն չկար Պրոկղի գրոց, բայց միայն այս վրացերէնէ թարգմանուածը։ Սակայն հայագէտ անգղիացին Կոնիբիր, որ յայց ելաւ Էջմիածնի գրատան, աւելի հնագոյն թարգմանութիւն մ՚ալ տեսած է, որմէ թարգմանուած է նոյն իսկ վրացերէնը։ Հայագէտին հայ լեզուաւ գրած այս նամակին առ Մեծ. Հեղինակն "Մատենադարանին"[3] է այսպէս. "Աստուածաբանութեանն Պրոկլոսի Դիադոքոսի ջէբրէ–գոտի թարգմանութեանն գրութիւնս. զոմն որ Ռէն Ռարքճանչլաց գործք է, եւ զոմն որ ի վրաց լեզուէ ի միջին դարու

[1] Անշուշտ այս տեղեկութիւնն գտած է Գառնեցին թարգմանչին յառաջաբանութեան մէջ. վասն զի չենք կարծեր որ Գառնեցի յոյն լեզուի տեղեակ ըլլար։ Նաեւ թարգմանիչն՝ Սիմէոն կրօնաւոր՝ չունէր յոյն բնագիր մ՚առջեւն, այլ վրացերէնն, ուր անշուշտ սոյնպէս մեկնուած էր այս յոյն բառը։ Այս բառին "դիադոխոս" ձեւը կը ցուցընէ որ հին ժամանակներէն չէ առնուած ընդօրինակութեամբ։

[2] Մնացեալն սոյնօրինակ խորհրդածութիւն է, յորում կը կարծէ Գառնեցի թէ Պրոկղ Պղատոնի աշակերտն էր եւ անոր յաջորդ։ Ապա կը մեկնուի "Շաղկապք Աստուածաբանականք" տիտղոսը։

[3] "Մատենադարան", էջ 669։

յարգարեալ է. ամենայնք, — բայց եթէ մի, — օրինակք յԷջմիածին պահեալքն ի վրայ լեզուէ յօրինակեալ են. եւ հնագոյն թարգմանութիւնն առաւել հաւատարմութեամբ արարեալ է քան զայլս. առանց երկմտութեան վրացն թարգմանութիւն ի հայոց լեզուէ ինքն յարգարեալ է, եւ վերստին հայերէն թարգմանեալ:„

“Մատենադարանին„ հեղինակը հաւանական չի համարիր այսպիսի հնագոյն թարգմանութեան մը գոյութիւնն, այնու որ նաեւ Սիմէոն, կ'ըսէ, իր թարգմանութեան բուն պատճառն մինչեւ իւր ատեն թարգմանուած չգտնելը կը դնէ: Ճշդիւ խօսելով՝ զօրաւոր ապացոյց մը չէ այս պարագայն. անլուր չէ ընդհանրապէս որ միեւնոյն գործքը կրկին անգամ թարգմանէ կրտսերագոյն մ'առանց գիտնալու թէ արդէն թարգմանուած է այն: Մեզի ապահով կ'երեւայ հայերէնագէտին կարծիքն, ինչպէս նաեւ այն՝ թէ նոյն իսկ վրացերէնը նոյն նախնական հայ թարգմանութենէն է: Ամէն բան կը պարզէ, եթէ այն մի միակ ձեռագիրն, զոր տեսած է գիտնականն յԷջմիածին, լոյս տեսնէ: Այսպիսի հրատարակութիւն մ'արժէք ունի նաեւ յոյն բնագրին համար, մինչ այժմու թարգմանութեան այս նկատմամբ ունեցած արժէքը գրեթէ ոչինչ է:

Անշուշտ հնագոյն հայ թարգմանութեամբ պէտք է մեկնել սոյն գրոց հայ լեզուին մէջ տեսնուած զարմանալի երեւոյթը: Մէկ կողմանէ յայտնապէս կը տեսնուի յոյն լեզուի ազդեցութիւնն թարգմանութեան մէջ, միւս կողմանէ այնպիսի բառակազմութիւններ, որ յունաձեւ նման գրութեանց անսովոր են, եւ ոչ ալ ըստ յունարէնի՝ ինչպէս են այլոց բառակազմութիւնք: Անշուշտ հայ նախկին թարգմանութիւնը յունախօս էր, եւ տեղ տեղ (ինչպէս պիտի տեսնենք) նաեւ շփոթութիւնք, սխալ ընթերցմունք չէին պակսիր: Սոյն տեղերը նիւթականօրէն թարգմանուած կ'երեւան ի վրացե-

րէն, որմէ կրկին անգամ նոյնպէս նիւթականօրէն Հայերէն թարգմանուած են. այնպէս որ եթէ չգիտնայինք կամ չընդունէինք այս պարագայն, պէտք էր ըսել որ Պրոկղի յունարէնէ թարգմանուած է այժմու Հայս: Մեր ըսածը կը հաստատուի հետեւեալ քանի մ'օրինակներով, որով նաեւ գրոցս լեզուին վրայ գաղափար մը կազմել կարելի կ'ըլլայ:

Լեզուին նկատմամբ յունարէնի ազդեցութիւնը կը տեսնուի նաեւ շատ մը բառերուն պարզապէս օրինակուելէն, զոր օր. «սիրայ» (=σειρά, կարգ եւն), որ իբրեւ իմաստասիրական յատուկ բառ յեղյեղուած կը գտնենք:[1] Ահա օրինակ մը. Պրոկղ կ'ըսէ թէ պատահական չէ այն՝ «յորում սէրայէ լինիցի ընդ միմեանս ալլէլուքէայ.»[2] այսինքն՝ ուր չորգ կայ ստոյգ եւ փոփոխ աղերս: Հայոյն «ալլիլուքիայ» բառը յունարէն ἀλληλουχία (կապակցութիւն, աղերս) բառն է: — Հայոյ մը համար բոլորովին անհասկանալի է այն նախադասութիւնն ուր կ'ըսուի՝ թէ «իմացական տեսակաց անձն զկնի եւ երկրորդ ներկայացանէ զ(որ)օրինակ եւ զէմֆասս նախատիպին.»[3] որ է յունարէն ἔμφασις բառն, որ նախնաբար «ազդուաբանութիւն» ըսել է:

Կարծենք թէ աւելորդ է ըսել որ յունարէնի համեմատ յօրինուած բառերու եւ նիւթականօրէն նմանցուած ասութեանց լեզէոն մը կը գտնուի գրոցս՝ ինչպէս նաեւ այլ նմանեաց մէջ. օրինակի համար՝ «ինքնամիակ (αὐτοενὸς)» այսինքն՝ մի ըստ ինքեան կամ յինքեան[4]. — «միեղէն»[5]. (ἑνιαῖος, ἑνοειδὲς, յատուկ). — «բարետեսակութիւնք» (τὸ ἀγαθοει-

1 Հմմտ. Հատուած ԻԲ, ՂԷ եւն յաճախ:
2 ՂԷ, էջ 313, 5 (= Յոյն՝ XCVII, p. 82, 23.)
3 Հմմտ. ՃՂԴ, էջ 461, 18: Յոյնն է. (CXCIV, p. 112, 25) *Τῶν νοερῶν ἄρα εἰδῶν ψυχὴ δευτέρως ἔχει τὰς ἐμφάσεις.* Լատին թարգմանն հոս emphases թարգմանելով՝ կը մեկնէ tacitas vel potius apertas significationes.
4 Հմմտ. Դ. էջ 16, 15 եւն:
5 ՁԹ, էջ 298, 10. ՃԺԳ եւ յաճախ:

δῶς)[1]. — "վերբերութիւն"[2] (τὸ ἀναγωγὸν αἴτιον; պատճառ վերամբարձ.) — "ի ձեռն շրջաբերութեան չափեցի"[3] (περίοδος, période) եւ այլ նմաններ, զոր չենք յիշեր։ Ասոնց թէեւ մի մասն այնչափ խոտելի ալ չըլլան՝ նոյն դարուց Հայ լեզուի վիճակը դիտելով, բայց կայ մեծ մաս մ'ալ որ լոկ անհեթեթ եւ անիմաստ նմանողութիւն է։ Աւելի խորթ են յունամոլ ասութիւնք եւ նմանները[4]։

Կայ քանի մը տեղ ալ, ուր յայտնապէս կը տեսնուի որ թարգմանիչը շփոթ տեսեր է կամ նաեւ սխալ թարգմաներ։ Պրոկղ կ'ըսէ՝ թէ այն բանն որ ժամանակաւ կը չափուի, ի դէպ է որ ի ժամանակի ալ ըլլայ եւ ներգործէ։ Այս խօսքն է թարգմանչին գրածը. "Իսկ եթէ ամանակաւ չափի, ընթանի լինի նմա զի ըստ ամանակին եղանի"[5] եւն. Յայտնապէս կը տեսնուի որ προσῆκον (ի դէպ)

---

[1] ԻԵ, էջ 83, 10։

[2] ՃԾԸ, էջ 400, 11։

[3] ՃՂԸ, էջ 474, 7 եւն։

[4] Օրինակի համար՝ ի մէջ այլոց կը գտնենք. (ԿԹ, էջ 260, 3) բան մ'եթէ մասերէ բաղկանայ, "եղիցի ախտացեալ բոլորն." (= Յոյն, LXXIX, p. 74, 26 πεπονθός ἐστι τὸ ὅλον.) այսինքն՝ բան մը կը կրէ ամբողջը, ինչպէս կը մեկնէ նաեւ լատին թարգմանիչը։ Հմմտ. Բ, էջ 12, 3։ — ԻԹ, էջ 93, 17 "Ամենայն առաջատուածն էական ի ձեռն նմանութեան." (= XXIX, p. 63, 10 πᾶσα πρόοδος = progressus) այսինքն՝ յառաջ գալն բանէ մը, որ շատ նիւթական թարգմանութիւն է։ Հմմտ. ՃԿՁ, էջ 410, 8։ — ՃԺԴ, 336, 4 "Աստուած ինքնակատար միակ է." (= CXIV, p 87, 31. πᾶς θεὸς ἑνάς ἐστιν αὐτοτελής,) այսինքն՝ միութիւն կատարեալ։ — ՃՁԹ, 449, 13 "ինքնակենդան." (= αὐτόζως.) նոյնպէս (ՃԻԱ, 346, 3) "զօրութիւն կալողական." (= δύναμις κρατική.) — ՃԵ, 327, 8 "որպէս ունի էակ առ կենդանութիւն." (= CV, p. 85, 21 ὡς γὰρ ἔχει τὸ ὂν πρὸς τὴν ζωὴν.) այսինքն՝ ինչ յարաբերութիւն որ ունի էակն կենդանութեան հետ։ — ՄԺ, 500, 6 "անձին կառք ... զնոյն հաւասար եւ զմեծութիւն ունին," այսինքն՝ նոյն ձեւն ունին. պատճառն է որ "ձեւին," Յոյնք σχῆμα կ'ըսեն, որ հոս ալ գործածուած է (CCX, p. 117, 13,) եւ որ նախնաբար "կարուածք," ըսել է. (Հմմտ. տճկ. պիչիմ.) եւն եւն։

[5] Ծ, 125, 11 = Յոյն L. p. 68, 23։

կարդացեր է πρόσοιχον (մերձաւոր, ընտանի:) — Ըստ Պրոկղի՝ այն բանն որ հաղորդ է ժամանակի, նաեւ ըստ թուոյ կը յառաջանայ. Թարգմանիչն ընդհակառակը կ՚ըսէ՝ թէ «ըստ թուոյ պտըտիլ լինի[1]:» Հոս կ՚երեւայ թէ շփոթեր է թարգմանիչն πορεύω (տանել, խրկել) իւր միջակն πορεύομαι (երթալ, յառաջանալ եւն) ձեւին հետ: — (ՃՂԵ. 386, 4) «Ամենայն . . . էութիւն յամենայն յետինս տնկագործի.» փոխանակ «հաղորդի» կամ «անցանէ,» ինչպէս ունի բնագիրն ալ. (= CXCV, p. 97, 40 . . . διὰ πάντων φοιτᾶ.) Յայտնի է ուրեմն որ թարգմանիչը շփոթեր է φοιτάω (երթալ, յաճախել) եւ φυτεύω (տնկել, տնկագործել:) — Կրնայինք դեռ այսպիսի կտորներ բերել հոս. բայց վասն համառօտութեան կը շատանանք դնել լոկ երկու օրինակ, զորոնք առանց բնագրի օգնութեան անհնար է հասկընալ: «Եւ այս, կ՚ըսէ թարգմանիչն, ոչ յամէ (ձեռ. «ամի» է) ամենայնի ընտանեաց եղեալ:»[2] Ըստ ինքեան անյունագէտ հայոյ մը համար ասկէ պարզ խօսք չի կրնար ըլլալ. բայց թէ ինչ կը նշանակէ այս խօսքն՝ այն ոչ ոք կրնայ առեղծուլ: Յիշեալ նախադասութեանն՝ որ կէտ առ կէտ նմանողութիւն է յունարէնին, իմաստն է՝ «այս բանս ամէնուն հանդիպելէն չի դադրիր:» (՛) Մեկնութիւնն այս է. յոյնը բառ առ բառ կ՚ըսէ «Եւ այս կիրք (passio) ոչ դադարի զամենեքումբք լինել.» միայն թէ թարգմանիչն πάθημα բառն (հոս «կիրք» փիլիսոփայօրէն մտօք առեալ,) թարգմաներ է նիւթական իմաստով (վիշտ, նեղութիւն, վնաս եւն), եւ

---

[1] ՃՂԸ. 474, 11 (= Յուն CXCVIII, p. 113, 29 *κατὰ ἀριθμὸν πορεύεται.*)

[2] ՄԶ. 489, 19 = Յուն CCVI, p. 116, 24 *καὶ τοῦτο οὐ μὴ παύσεται περὶ ἁπάσας τὸ πάθημα γενόμενον,* լատ. haec passio non desinet circa omnes (animas) esse. (i. e. hoc singulis ac universis animabus accidere nunquam desinet.) — Հմմտ. նաեւ ԿԶ. 252, 6. եւ «ախտանալ», բային նկատմամբ ըսածնիս:

աւելի յուեցուցեր "մնաստակար„ ընելով: — Ուրիշ տեղ մ՚ալ կը կարդանք. "Եղականն ոչ է ստոյգ-էութիւն[1].„ սոր իմաստն բուն հակառակն է, այսինքն թէ "այն որ եղական է, չէ ուրեմն տակաւին այն՝ զոր պիտի դեռ ըլլայ:„ Սակայն հայոյն այսպէս թարգմանուելուն պատճառն այլուր, թերեւս իւր վրական բնագրին մէջ պէտք է փնտռել. վասն զի յոյնը հոս պայծառ է, եւ առիթ չէր կրնար տալ այսպիսի նախադասութեան մ՚որ՝ թէեւ կարելի է նոյն իմաստով ալ հասկընալ, բայց սովորական ոճով խօսելով՝ բոլորովին ուրիշ իմաստ ունի: Վերջապէս թերեւս յոյն բնագրին ազդեցութեան նշան համարինք այն ալ որ տեղ մ՚ուր յոյնը թերի է, ճշդիւ նոյնպէս թերի կ՚երեւայ նաեւ հայը[2]:

Յունական այս յայտնի ազդեցութեան փոխարէն շատ տեղ կը գտնենք այնպիսի բառեր եւ ասութիւններ, որ՝ թէեւ յունաձեւ մասնիկներով՝ բայց բոլորովին այլազգ եւ աննման ոչ միայն յունին, այլ եւ այն բառերուն, որ այլ շատ մը հայ նման գրոց մէջ կը գործածուին. թէեւ չենք ուզեր ըսել ասով որ ասոնք ամէնն ալ գրոցս լեզուին միայն սեպհական են: Օրինակի համար. "Յաղագս վերցուցողի եւ վերցուցելոյ.„[3] (այսինքն՝ մեր բառերով՝ "արտադրող„ եւ "արտադրեալ,„ զոր ըստ յունին պէտք էր անշուշտ "յարածող„ ըսել:) — "Արհեստաւորութեան եւ հանճար„[4], (որ շատ յաճախ կը կրկնուի, ինչպէս առ հասարակ նաեւ մեկնիչներն ալ,) փոխանակ յունին ἐπιστήμη բառին, զոր մերք

---

[1] Ծ, 126, 5 — L. p. 68, 37.

[2] Է, 25, 18 (Նոյն հատածին վերջն "զի գտցուք զսկիզբն.„) — Յոյն՝ VI, p. 53, 3 καὶ εὕρομεν τὸ ἐξ ἀρχῆς.**

[3] Ը, 27, 1 եւն — VII, p. 53, 4 etc. Յունարէն παράγω, եւ τὸ παρακτικὸν եւն բառերու համապատասխանող, զոր յետոյ թարգմանած է "ներգոյացուցողութիւն.„ (Հմմտ. ԻԶ, 86, 12. ԻԷ, 89, 8:)

[4] ԺԲ, 40, 6 — XI, p. 55, 18.

միշտ "մակացութիւն" կը թարգմանեն, այսինքն՝ գիտութիւն։ — "Որոց բարութիւն ներքոյանակ է[1]" փխ. "Ներքոյ էր ինչպէս է յոյնն, եւ ինչպէս կ'ըսեն այլք. սակայն այս բառն կրնայ գուցէ այլազգ ալ մեկնուիլ։ — "Ամենայն փոխակացուցանօղ լաւագոյն է քան զորս յինքենէ ներբերեացն"[2]. (եւ այլ տօր շատ ձեւերը,) այսինքն՝ խօսելով մեր նախնեաց իմաստասիրական լեզուով՝ (զոր շատ մասին մէջ ցաւօր ալ կը գործածենք,) "ենթադրիչն (կամ "ենթակայացուցիչն") լաւագոյն է քան զենթադրեալն։" Հոս յունարէն ὑπόστασις, ὑφίστημι եւն բառերը գործածուած են, զոր այլք միշտ "ենթակայ", "ենթակայիլ" եւն բառերով թարգմանուած են եւ դեռ կը թարգմանեն։ — "Ոչ կարօտանան տեղւոյ եւ յարաձգութեան",[3] այսինքն "անջրպետի" կամ "միջոցի", ինչպէս նաեւ այլուր "անյարաձգաբար[4]" կը գործածէ իբրեւ "առանց տարածութեան"։ Այս բառն նորանշան է. վասն զի հինք "յարաքարշել" եւն ուրիշ իմաստով կը գործածեն, (այսինքն՝ = παρασύρω, առ ինքն ձգել եւն։) — Վերջապէս այս կարգէն են "հակադարձել" "այլադարձել," "ինքնադարձական" եւ այլ շատ մը

[1] ԺԴ, 46, 19 = XIII, p. 56, 3, 4 κατὰ τὴν ... παρουσίαν. Հմմտ. ԾԴ, 133, 2 եւն։

[2] ԺԹ, 69, 6 = XVIII, p. 57, 48· πᾶν τὸ ὑποστατικόν τινος κρεῖττόν ἐστιν τῆς τοῦ ὑφισταμένου φύσεως. Հմմտ. ԺԹ, 70, 3. ԻԵ, 83, 16, 17 եւն. իսկ այլուր թարգմանուած է "ներբէացեալ," եւն. (Հմմտ. ՁԹ, 298, 10.) ըրկ "կայումն," գրուած է տեղ մ'ալ (ԺԲ, 39, 1) ուր յոյնն է προϋπόστασις (= XI, p. 54, 47.) վերջապէս ուրիշ տեղեր (ԻԳ, 78, 1. ԻԵ, 83, 6) "յառաջկայացուցանել յինքենէ," եւն կ'ըսէ, ուր յոյնն է դարձեալ ὑφίστημι բառը (= XXIII, 60, 20 եւն.) բայց ճիշդ այս բառն յետոյ նաեւ "ներկայացուցոյց զիւր էութիւն," փոխեր է (ՃՁԹ, 449, 15 = CLXXXIX, p. 110, 47 ἑαυτὴν ὑφίστησιν) եւն։

[3] ՃԽԱ, 377, 9 = CXL, p. 96, 21 ... τόπων καὶ διαστάσεων.

[4] ԾԲ, 128, 8։

ձեւեր[1], որոնք "անշարժ", "այլաշարժ", "ինքնաշարժ" եւն բառերու տեղն են, ինչպէս է նաեւ յոյնը· եւ այլ նմաններ :[2]

Այս ամէնը կարծենք կարելի է մեկնել այսպէս: Վրացերէնը թարգմանուած էր յունախօս հայ բնագրէ մը նէ-յունական կամ բառական ոճով. ասով ծնած պիտի ըլլան ի հարկէ վրացերէնին մէջ ալ յունաձեւ բառեր եւն, որչափ լեզուն կը ներէր, անշուշտ ասով բաւական այլայլելով տեղ տեղ յունարէնի հետեւողութեամբ շինուած ձեւերը: Երբ հայն կրկին թարգմանեց վրացերէնէ, այսպիսի բառերն կամ ըստ հեշտի կամ ըստ օրինակի այլայլեալ յունանման-վրացի ձեւերուն յերիւրեց: Ասով ծագեցաւ այն նորանշան երեւոյթն, որով մէկ կողմանէ մնաց շատ տեղ յունին ազդեցութիւնը, միւս կողմանէ շատ տեղ ալ զարմանալի կազմութեամբ

---

1 ԺԵ եւն. (= XIV, p. 56) յաճախ "անհակադարձական (ἀκίνητος, անշարժ.) "ինքնադարձական" (αὐτοκίνητος, ինքնաշարժ.) "այլադարձական" (ἑτεροκίνητος, այլաշարժ.) եւ այս եւ ասկէ յօրինեալ բառերը շատ յաճախ են։ Հմմտ. ԺԸ, 62, 9 "հակադարձողն եւ ներգործականն", այսինքն՝ շարժողն եւ շարժուողն (= XVIII, p. 57, 30 τὸ κινοῦν καὶ τὸ κινούμενον.) Սակայն տեղ տեղ այս բառերն բոլորովին յունարէնին համեմատ ալ գործածուած են. զոր. օր. ԺԶ, 55, 15 "առ ինքն հակադարձօղն." (= XV, p. 55, 41 τὸ πρὸς ἑαυτὸ ἐπιστρεπτικόν.) Նոյնպէս՝ ԼԲ, 102, 14 "հակադարձութիւն." (= XXXII, p. 63, 48 ἐπιστροφή,) մինչդեռ ուրիշ տեղ մը (ԺԸ, 63, 9 = XVII, p. 57, 43) ἐπιστρεπτικόν բառն "ներդարձական" եղած է, եւ վերջապէս նաեւ ճիշդ այս բառն "անդրադառնալ" գրուած է (ՁԳ, 286, 4 = p. 78, 49) եւն եւն։

2 Գուցէ այս կարգէն են. ԻԷ, 89, 2 "գերգոյութիւն" (= p. 62, 13 περιουσία) փխ. "առատութիւն." Հմմտ. ՃԺԸ, 342, 5 (ուր p. 89, 8 ὑπερουσίως կ'ըսէ յոյնը.) — ՀԵ, 271, 1 "ամենայն ընդհանրական պատճառ", այսինքն՝ բուն պատճառ. (= p. 76, 37 πᾶν τὸ κυρίως αἴτιον), զոր այլուր լաւ եւս (ՀԵ, 271, 13) "սեպհական պատճառ" կ'ըսէ. — ՁԴ, 287, 15 "եթէ սահմանեալ է զօրութիւն ուրոյն էութեան՝ ելանէ արտաքս երբեմն. եւ եթէ անցանէ." փխ. "դադարէ երբեմն ... դադարէ" (= LXXXIV, p. 79, 12 ἀπολίποι ἂν ποτε· ἀπολιποῦσα δὲ κτλ.) եւ այլ նմաններ։

բառեր ծնան։ Ասով կը մեկնուի այն ալ՝ որ միօրինակութիւն չկայ թարգմանութեանս մէջ։ Ուրիշ շատ թարգմանիչք իմաստասիրական բառերու որոշ մթերք մ'ունին, այնպէս որ յունարէն բառ մը գրեթէ միշտ միեւնոյն հայ բառով կը թարգմանեն. ուր մեր թարգմանիչն ասոր հակառակ միեւնոյն բառն մերթ այսպէս եւ մերթ այնպէս կը փոխէ ի հայ։ Մեր այս կարծիքն հաստատութիւն առնելու համար՝ վրացի բնագրին հայոյն հետ համեմատելն անհրաժեշտ է։

Զայս վայր բերած օրինակներէն կրնանք արդէն գրոցս լեզուին վրայ գաղափար մը կազմել, որ լիովին այն կարգէն է, որմէ են "Անյաղթի„ անուամբ ծանօթ գրութիւնք։ Յիշենք նաեւ ներգոյականի անհեթեթ ձեւեր եւն եւն։ Ի հարկէ ոչ ամէն բան թարգմանչին յատուկ է, այլ մեծ մասն այն լեզուի շրջանին արդիւնքն է, որով թարգմանուեցան միջին դարու սկիզբն ու մէջերն բազմաթիւ գրեանք. եւ որով շատ անգամ բռնի տոգորուած էին գրիչք։[1] Մեծ բաժին մ'ալ կ'իյնայ գրչագրաց անմտադրութեան եւ այլ աղաւաղմանց։

Հայ բնագիրն շատ թմրի եւ ոչ սակաւ տեղ բոլորովին աննման է յոյն բնագրին, որուն վրայ երկար խօսիլն մեր նպատակէն դուրս կը համարինք։ Ընդհանրապէս հայն աւելի կտորներ քիչ ունի,[2]

---

[1] Օրինակի համար՝ Թ, 32, 10 "ի հաղորդեցելոյն իւրում.„ — ՃԽ, 375 "ի միակ թուումն.„ — ՃԽՁ, 387, 2 "յամենայն շիրայոջ.„ ՃԿԷ, 411, 11 "ի սօսում„ (ի սօսին.) — Մ, 479, 11 "ամենայնում„ եւն։ Հմմտ. ԽԱ, 112, 4 "ոչ որպէս նենթակայում ... ի նենթակայոջէն.„ — ԽԴ, 117, 2 "ապա ներգործութիւնն լաւագոյն քան զգոյութիւն. զի ոմն կարող է յինքն դառնալ եւ ոմն ոչ„ եւն. — ՂԷ, 313, 20 "ի միեղէնութենէ եւ ի օփրայէն գերոգոյն պրեմյն.„ — ՂԸ, 316, 7 "ոչ յումեք է յիւրն վատթարոջ„ եւն եւն։ — Գրի սխալի օրինակ ըլլայ ՀԳ, 270, 5 "որպէս վերերեւեցաւ.„ անշուշտ "որպէս ի վերոյ երեւեցաւ„ էր նախնաբար եւն եւն. զորոնք յիշելն աւելորդ կը համարինք։

[2] Այսպէս են՝ հատածք ԿԴ, ՃԻԷ, ՃԼ ըստ մեր ձեռագրին։

բայց շատ ու չափէն աւելի շատ պակաս ու թերի եւ համառօտած կտորներ։ Բաց ի մանր պակասներէն, շատ հատածներ գրեթէ կիսով՝ (մեծաւ մասամբ վերջերէն՝) կիսատ են[1]. տեղ տեղ ամբողջ հատուածէն հազիւ քանի մ'աննշանակ բառ մնացած է[2], որ յայտնի նշան է ձեռագրաց աղաւաղութեան։ Հատուածներուն ոչ սակաւ մասն՝ գոնէ մեր ձեռագրին մէջ՝ չէ ճիշդ թարգմանութիւն, այլ ծայրաքաղ համառօտութիւն, երբեմն մինչեւ անգամ այնչափ՝ որ աւելի ցանկի կը նմանին.[3] եւ վերջապէս քանի մը հատածք բոլորովին կը պակսին[4], իսկ մէկ քանին բնագրին աննման են։[5]

---

[1] Մանր թերութիւնք անթիւ են. մեծերէն կը յիշենք միայն՝ Ի, 71, 15 ուր յոյնը շատ երկար է, (Հայը չունի՝ XX, p. 58, 23 πᾶν γὰρ — 36 ὑφεστώσης.) քիչ մ'ետքն՝ Ի, 72, (Հ պակաս է՝ XX, p. 58, 38 εἰ οὖν — 46 νοητικόν կտորը.) — ԻԱ հատածէն հինգ տող մնացած է. (պակասն է XX, 58, 48 νοῦς — 59, 6 δέδεικται.) — Խ հատուածին վերջը. (պակաս՝ XL. p. 66. 19 ἀλλ' εἰ — 31 ὡς δέδεικται.) — ԾԶ վերջը. (պակաս՝ p, 70, 28 εἰ δὲ τοῦτο — 40 μεταδεδωκός.) — Նոյնպէս նաեւ ՃԻԹ (թերի՝ 2 տող.) ՃԽԹ (պակաս՝ CXLIX, p. 98, 48—53 եւ 99, 1—10.) եւայլն եւայլն։

[2] Օրինակ ՃԺԵ հատածին (էջ 337, 17) մէջ՝ "Եւ սոքա անջատելիք են ի միմեանց,, բառերը մնացեր են CXV հատածէն, որով կը պակսին՝ p. 87, 51 ἔτι δέ — 53 եւ 88, 12 αἰτίων եւն։

[3] Համառօտ ու ծայրաքաղ են հատուածք՝ Է, ԻԱ, ԻԲ (որ XXI եւ XXII հատածներուն տեղն է,) ԼԶ եւ ԼԷ, ԼԸ (որ երեք տող է, մինչ յոյնը 12 տող = p. 75, 31—43.) ի մասնաւորի ԾԸ—ԿԲ որ ցանկ են աւելի, վասն զի ԾԸէն պակաս են՝ p. 71, 24 εἰ γὰρ — 35 ἀλλ' οὐκ. ԾԹ՝ չորս տող է, յոյնը՝ 15 (p. 71, 36—50.) նոյնպէս Կ (յոյն է՝ p. 71, 51—72, 13.) ԿԱ ցանկ է (յոյնն է՝ LXII, p. 72, 20—31) եւն. նաեւ ԿԲ. Նոյնպէս՝ ՃԵ, ՃԹ, ՃԺ (որ միասին 19 տող են, յոյնը՝ 51 տող, այսինքն՝ p. 85, 51—86, 43.) ՃԺԵ, ՃԼԷ—ՃԼԸ (որ 7 տող են, իսկ յոյնը՝ CXXXVI եւ CXXXVII, p. 95, 8—24 եւ 25—37, ուրեմն 30 տող.) ՃԽԹ (որ 3 տող է, իսկ յոյնը՝ 19 տող, այսինքն՝ CXLVIII, p. 98, 29–47.) ՃԿԱ եւ ՃԿԵ, ՄԳ եւն եւն։

[4] Հայը չունի յունին XIX, LXI, CXXXI, CXLIX (որ է՝ p. 98, 48—99, 10 եւն։)

[5] Այսպէս՝ ՃԻԶ, ՃԼ եւն։

Հատուածներու այս վիճակէն ի հարկէ կը հետեւի որ հատուածաթուերն ալ շատ տեղ միաբան չեն, թէեւ նոյն կարգաւ կը շարունակուին կտորները։ Իսկ հատուածներու վերնագրերն հազիւ քանի մը տեղ նոյն են։ Հայն ընդհանրապէս աւելի վերնագիր ունի քան յոյնն, որ միայն սկիզբներ ունի քանի մը հատ։ Ապագայ հրատարակչի գլխաւոր խնամքը պիտի ըլլայ նաեւ յոյն, հին հայ, վրացի եւ նոր հայ խմբագրութեանց պէսպէս ընթերցուածոց համեմատութեամբն ոչ միայն հեթանոս փիլիսոփային յունական բնագիրը վերահաստատելու, ուղղելու եւն նպաստել, այլ նաեւ այս համեմատութեամբ նոյն իսկ հայերէնը շատ տեղ ոչ լոկ ուղղել, այլ եւ հասկանալի ընել անգամ[1]. ա՛յնչափ անթիւ են այն կտորներն որոնց բուն իմաստն առանց բնագրի օգնութեան գրեթէ

---

[1] Օրինակի համար յիշենք քանի մը նախադասութիւններ, որ հազիւ կաթիլ մ'ի գուլէ են ամբողջին համեմատութեամբ։ Զ, 21, 10 "Եւ ոչ ոք յառաջ կացցէ ի միակի միջի եւ երկուց.,, այսինքն ոչինչ՝ որ յայլում է, թէ մի եւ թէ երկու կրնայ ըլլալ միանգամայն. (= VI, 52, 35 οὐδ᾽ ἕτερον, ἐν θατέρῳ γενόμενον, ἓν ἅμα καὶ δύο ἔσται, լտ. neutrum, si fuerit in altero, Unum simul et duo erit). — ԺԳ. 43, 3 "Ցոլացէր ի նախկին պատճառէն.,, այսինքն՝ առաջին պատճառէն կը բղխէր, յառաջ կու գար. (= XII, 55, 38 ἐφῆκον ἀπὸ τῆς πρωτίστης αἰτίας, լտ. manans a prima causa.) — ՂԸ. 316, 7 "Ոչ յումեք է յիւրն վատթարոջ.,, այսինքն՝ իրմէ ստորնագոյններուն միոյն մէջն ալ չէ. (= XCVIII, 82, 45 ἐν οὐδενί ἐστι τῶν ἑαυτοῦ καταδεστέρων, լտ. in nullo est eorum quae sunt inferiora ipsa.) — ՃԽԱ. 377, 1 "Ոչինչ գթեսցէ նոցա.,, այսինքն՝ ոչինչ արգելք կ'ըլլայ անոնց. (= CXL, 96, 20 οὔτε γὰρ ἐκείνας διείργει τι καὶ ἀποκωλύει κτλ. լտ. dirimit et prohibet.) — ՄԺ. 500, 8 "Ընդ-յեն-առաջդրութեամբ եւ յետընկենլութեամբ.,, այսինքն՝ յաւելմամբ եւ ի բաց բարձմամբ. (= CCX, 117, 15 δι᾽ ἄλλων σωμάτων προσθέσεις καὶ ἀφαιρέσεις, լտ. propter . . . additiones et ablationes.) — ՃՁԹ. 451, 1 "ամենայն անձն միջ է անբաժանելեաց եւ բաժանականաց.,, այսինքն՝ միջին է . . . (= CLXXXIX, 110, 47 . . . πᾶσα ψυχὴ μέση τῶν ἀμερίστων ἐστὶ καὶ τῶν περὶ τὰ σώματα μεριστῶν.) եւ այլ անթիւ նմաններ։

անհնար է առեղծուլ: Ասկէ յայտնի է որ ինչ մեծ խնամօք պէտք է որ ըլլայ ապագայ հրատարակութիւնն Պրոկղի հայ թարգմանութեան: Բայց յամենայն դէպս՝ ոչ միայն մեր մատենագրութեան, այլ եւ եւրոպական բանասիրութեան համար մեծ արդիւնք կը շահուի, եթէ ի լոյս բերուի Պրոկղի մանաւանդ ընաքոյն հայերէն թարգմանութիւնն, որ յԷջմիածին կը գտնուի՝ ըստ անգղիացի գիտնականին:



## Գ.

## ԽՈՍՐՈՎԻԿ ԵՒ ԳԻՐՔ ՀԵՐՁՈՒԱԾՈՑ

Երեք փոքրիկ գրութիւններ լոյս հանեց տարուոյս ընթացքին մէջ "Արարատ" իւր նոր խմբագրին գրչէն, որուն հետաքրքրական ուսումնասիրութիւնքն Խորենացւոյ ձեռագրաց վրայ (1891) "Միաբան" ստորագրութիւնը կը կրէին: Այս հատուածք արդիւնք էին հրատարակչին այն համոզման որ "Արարատ իւր կրօնական-պատմական բաժինը մեծաւ մասամբ պէտք է յատկացընէ նախնեաց կորած համարուած կամ անտիպ մնացած երկերին եւ նրանց հետազօտութեանը, քիչ թէ շատ ծառայելով մեր Ձեռագրերի մատենադարանի հարստութիւնները երեւան հանելու եւ նրանց ժամանակի մաշող ժանիքներից ազատելու:[1]" Այսպիսի ծրագրի մը գործադրութիւնն՝ ինքնին յայտնի է՝ ցանկալի է ամէն հայ բանասիրի:

Այս գրքոյկներուն առաջինն էր Անանիայի Նարեկացւոյ անուամբ փոքր գրութիւն մը, որ հաւատոյ Դաւանութիւն մըն է[2]: Սոյն գրութեան վրայ խօսիլ այժմ մեր նպատակը չէ: Երկրորդն էր "Գիրք հերձուածոց" անուն գրքոյկ մը, որ է նպատակ մեր յաջորդ դիտողութեանց: Սակայն նախ քան ձեռնարկելն նոյն գրութեամբ զբաղելու՝ հարկ կը համարինք քանի մը դիտողութիւն ընել երրորդին վրայ՝ որ ամենէն աւելի հետաքրքրութեան՝ կամ ճիշդ եւս՝ բանակռուի առարկայ եղաւ:

---

[1] "Գիրք Հերձուածոց.", եւն. Ցառաջաբ. էջ Բ:

[2] Անանիա Նարեկացի, Գիր Խոստովանութեան. Հրտ. Միաբան: Վաղարշապատ, տպ. Էջմ. 1892: 8° Երես՝ Է + 13: Գինն է՝ 50 կ.:

Միաբան “Արարատայ„ Ապրիլի թուոյն մէջ հրատարակեց “Խոսրովիկ Թարգմանիչ„ անուամբ հատուած մը՝[1] հանդերձ փոքրիկ գրութեամբ, եւ յիշելով նաեւ թերակատար գրուածք մ'որ նոյն Թարգմանչին մնաց արդիւնք, ուստի Ե դարու կորսուած գրութեանց Մնացորդ նշխարք պիտի ըլլային։ Այս այն Խոսրովիկ է, որոյ վրայ մեր գիտցած բոլոր տեղեկութիւնքն Ղազարայ Փարպեցւոյ սա խորհրդաւոր խօսքերուն մէջ ամփոփուած են.[2] “Անարատ եւ յամենեցունց յարգելի յոյսն՝ տէր Խոսրովիկ, չեւ եւս հասեալ ի սահմանս մեր, մինչդեռ գայր ի ճանապարհի եւ լուան, որպէս ի վերայ թշնամւոյ ընդդէմ զինեցան՝ սանելով. Ահաւասիկ գայ միւս Թարգմանն։ Եւ օրհնելոյն ի հեռաստանէ լուեալ զդռնչիւն մահաձայն աղեղանցն՝ նղօթեաց առ Բարձրեալն, եւ վաղվաղակի ընկալաւ զխնդիրն. որում եւ տենչալի նշխարացն այլք՝ եւ ոչ մեք՝ արժանի եղեն ընդունակութեան։„ Մեր խնդրէն դուրս է այս սիրելի անձնաւորութեան կենաց հանգամանքները քննել, զոր Մեծ. Հ. Գարեգին Վ. “անորոշ ժամանակաւ„[3] եւ Միաբան[4]՝ Կրտսեր աշակերտաց կարգէն կը համարին, իսկ Մեծ. Հ. Բարսեղ Վ. Սարգսեան[5] նոյն իսկ Առաջին Թարգմանչաց հասակակից եւ իբր 387ին ծնած։ Միայն կարծենք թէ Փարպեցւոյ խօսքէն առեալ կրնանք ընդունիլ որ Խոսրովիկ էր արդեամբք “Թարգման„ եղած իւր ուսման պարապած միջոցին յօտարութեան, ուստի իւր թարգմանութեամբք արդէն ծանօթ անձնաւորու-

---

[1] “Արարատ„ ամսագիր. ԻԵ (1892) Տարի. Թիւ Դ (Ապրիլ). էջ 275—282, որուն մեծ մասն (էջ 275—280) Ներածութիւն է հրատարակչին։

[2] Թուղթ Ղազ. Փարպեցւոյ. Մեղադրութիւն ստախօս աբեղայից. (Ղազ. Պատմութիւն, տպ. Վենետ. 1873, էջ 609։)

[3] Հայկական Հին Դպրութեան Պատմութիւն. Բ. Տպագր. Վենետ. 1886, էջ 278։

[4] “Արարատ„ էջ 276։

[5] “Բազմավէպ„ 1892, էջ 205—207։

թիւն էր, երբ դեռ չէր դարձած վերջին անգամ ի հայրենիս, ուր չժամանեց հասնիլ։

Դժբախտաբար Խոսրովկայ գրութիւնքն ալ անյայտ են, մինչեւ թերեւս բախտաւոր օր մը քիչ մը լոյս սփռէ այս խնդրոյն։ Խոսրովկայ անուամբ յիշուած գրութեանց ցանկն այսպէս կ'ամփոփէ Հ. Գարեգին[1]. "Խոսրով, որուն համար կը յիշատակուի թէ գրած ըլլայ 1) զՊատմութիւն Վարուց Ս. Սահակայ հայրապետի[2]։ 2) Ձեռագրաց ցուցակի մը մէջ ալ կը հանդիպինք (Մատենադ. Էջմ. Թիւ 920) Արտասանութիւն Խոսրովկայ թարգմանչի ի մեկնամարտութիւն Դաւթի եւ Գողիաթու։ . . . 3) Իրեն կ'ընծայուի դարձեալ Ջրօրհնէից կանոնին թարգմանութիւնն ի յունէն։ 4) Պատառիկ մը կայ առ մեզ "Վասն կարգի կաթուղիկոսաց" խորագրով որ Խոսրովու կը կարծուի։"

Առաջին հայեցուածքով իսկ կը տեսնուի որ շատ խնդրական են այս չորս գրութիւնք ալ, ինչպէս արդեամբք գիտցանք երկրորդին նկատմամբ, երբ լոյս տեսաւ Միաբանի խնամովք։ Միաբան Էջմիածնի հազարաւոր ձեռագրաց մէջ միայն օրինակ մը գտած կ'ըսէ այս "Արտասանութիւն" եան գրուածքէն, այսինքն՝ Թիւ 920[3] ճառընտրին մէջ, եւ հրատարակած է նոյնը "իբրեւ նշխար ոսկեղէն դարի եւ իբրեւ լեզուի նմուշ, թէեւ յունաբան։" Սակայն՝ ինչպէս գրութիւնն իսկ ինքնին կը

[1] Հայկ. Հին Դպր. էջ 278։

[2] Արդեօք այս խօսքով ակնարկուած է այն "Պատմութիւն վասն Ս. Սահակայ հայրապետին եւ Մեսրովբայ վարդապետին", զոր հրատարակած կը գտնենք ի Սոփերս, Բ. (Վենետ. 1853) էջ 1—42։ Դժբախտաբար յիշուած չէ նաեւ այն՝ թէ ինչ աղբիւրէ առնուած է այս տեղեկութիւնս։

[3] Միաբան Թ. 940 կ'ըսէ (սխալմամբ,) իսկ Հ. Գարեգին՝ 920, եւ այս վերջնոյս խօսքը կոչած է Միաբան ի վկայութիւն առանց այս 920 թիւը փոխելու։ Բողմաճեղ (էջ 204, Ծն. 1) միտ դնել տուած է այս չփոթութեան։ Սակայն անշուշտ Միաբանի 940 գրելը տպագրական վրիպակ է. ուղիղն է Թ. 920. (տես "Մայր Ցուցակ" եւն, էջ 123, յհգ.)։

վկայեր, այն ձեւի մէջ ուրոյն գրութիւն մը չէր կրնար ըլլալ հատուածիկս. այլ է բոլորովին ուրիշ գործք, այսինքն՝ Խորենացւոյ անուամբ առ մեզ հասած Պիտոյից գրոց մէկ կտորը[1], եւ ինչպէս արդէն նոյն հատակտորին ամբողջ նկարագիրը կը վկայէ, հռետորական կրթութիւն մը պարզապէս։ Յաջորդ ըստ մասնէ համեմատութիւնը կը ցուցընէ նաեւ որ Էջմիածնի օրինակը շատ թերի ու աղաւաղ է, ինչպէս կրնայինք արդէն ենթադրել այն պարագայէն առնել՝ որ ճառընտրի մը մէջ գտած էր զայն Միաբան. իսկ ճառընտրաց մնացունք շատ ընտրութիւն չեն ցուցըներ սովորաբար։ Ահա երկու կտորներուն քանի մը մասերը դէմ առ դէմ։[2]

| | |
|---|---|
| "Արտասանութիւն Խոսրովկայ Թարգմանչի ի մենամարտիլն Դաւթի եւ Գողիադու։„ (Արարատ, 1892, Թ. 4, էջ 280—282։) | "Արտասանութիւն Միայնամարտութեան Դաւթի եւ Գողիաթու։„ (Խոր. տպ. 1849, էջ 537։) |
| "Պատերազմական հանդիսիցն գումարք միշտ ահա երիւք այսոքիւք զանազանութեամբք յաւէտացեալ իւրաքանչիւրովքն ցուցանին զօրութեամբք. ձիամարտութեամբ եւ հետեւակամարտութեամբ եւ ի գըլխովին նաւակռիւ տեսութեամբ։ . . . . | "Պատերազմական հանդիսիցն գումարք միշտ ահա երիւքս այսոքիւք զանազանութեամբք յաւէտացեալ իւրաքանչիւրովքն ցուցանին զօրութեամբ. ծովամարտութեամբ, ձիամարտութեամբ եւ հետեւակամարտութեամբ։ . . . |
| "Իսկոյն լոկ միայն զպարսատիկն աջոյ ձեռամբն առեալ եւ մախաղ ընդ ուսին նոյնպէս եւ ցուպ յահեկումն բերեալ ձեռին, երթայր գոգցես մինչ ի հեղեղատ ինչ. . . .։ | "Եւ իսկոյն ի տգաց միայն զպարսատիկն աջոյ ձեռամբն առեալ, եւ մախաղ ընդ անութ, նոյնպէս եւ ցուպ յահեկում բերելով ձեռին, երթայր գոգցես մինչեւ ի հեղեղատ ինչ. եւն։ . . . . |

[1] "Յաղագս Պիտոյից.„ Գիրք Թ. ("Սահման Արտասանութեան.„) Օրինակ Գ։ (Հմմտ. Մ. Խորենացւոյ Մատենագրութիւնք, Վենետ. 1843, էջ 537—539։)

[2] Մանրամասն համեմատութիւնք եւ տարբերութիւնք դուրս թողուեցան, որպէս զի աւելորդ կրկնութիւն չըլլայ։

"Յորմէ ի փախուստ այնուհետեւ դարձեալ լինէր այլազգեացն կողմ, ի պարտութիւն մատնեալ ի հեբրայականացն, (ՆԵՐԷ) մինչեւ ցդրունս քաղաքացն երթային հալածեալք. եւ անդ (ՆԵՐԷ) զամանս ձերբակալ արարեալ սատակէին եւ զամանս բազում աւարաւ գերիս առեալ: (ԹՆԵՐԷ:)

"Եւ իմ ահա զայս ամենայն տեսանելով՝ իրաւացի համարեցայ եւ ձեզ պատմել:"

"Յորմէ ի փախուստ դարձեալ այնուհետեւ այլազգեացն լինէր կողմն, եւ ի պարտութիւն մատնեաւ ի հեբրայականացն համագունդ յարուցելոց ի վերայ. եւ առ աճապարելն խուլ ճապիւք լի, այնպէս կէսք վերջացեալք ի փախստեանն՝ որոյ լինէին կուր, եւ այլքն առաջի մինչեւ ցդրունս քաղաքաց երթային հալածեալք: Եւ անդ զօրէն անբանից՝ զամանս ձերբակալս արարեալ սատակէին, եւ զամանս հանդերձ բազում աւարաւ գերիս առեալ՝ յիւրեանցն խաղացուցանէին տանել քաղաքս, վայելելով ամենագեղեցիկ բարեբախտութեամբ: Եւ իմ ահա զայս ամենայն ի տեսանելն՝ սքանչացեալ բերկրեցայ հեշտութեամբ լի, եւ զնոյն գործեալ իրաւացի համարեցայ եւ ձեզ պատմել:"

Մեր այս համեմատութիւնը պատրաստ էր տպագրութեան, երբ սոյն երեւոյթիս մտադիր ըլնել տուաւ, ուստի եւ Խորոտվկոյ այս գրութեան ոչինչ ըլլալը ծանոյց նախ "Արձագանք"[1], եւ քիչ ետքը նաեւ ինքնին իսկ հրատարակիչը գրելով[2] թէ "Այդ Արտասանութիւնը նոյնութեամբ գտնուում է Խորենացւոյ Պիտոյից գրքում . . . որը վրիպել էր ինչպէս Զարբանալեանի նմանապէս եւ իմ ուշադրութիւնից: Գրուածքի վերտառութիւնը եւ սկզբնաւորութիւնը նոյնը լինելով, պէտք էր անշուշտ նախապէս բաղդատել, եւ այն ժամանակ կ'երեւէր երկուսի նոյնութիւնը, միայն մի քանի բառերի եւ ընթերցուածների տարբերութեամբ, թէեւ վերագրուած երկու տարբեր հեղինակների:" Պէտք է յաւելուլ որ Հ. Գարեգին Վ. Զարբ. շատ

---

[1] "Արձագանք" 1892, Թ. 66, Էջ 1, Սիւն՝ 5:
[2] "Արարատ" 1892, Թ. 5 (Մայիս), էջ 126—127:

աւելի դիւրութեամբ կրնար չիմանալ այս կտորնե-րուս նոյնութիւնը, քանի որ դեռ լոյս տեսած չէր Էջմիածնայ ձեռագրին հատուածը: — Վերջապէս մօտերս սոյն այս խնդրոյ վրայ գրեց նաեւ Հ. Բարսեղ Վ. Սարգսեան՝ “Խոսրովիկ Թարգմանչին եւ Միաբանի ըրած մի նոր գիւտի առթիւ„ վերնագրով[1], ուր նշանակուած են նաեւ այս երկու բնագրաց տարբերութիւնքը:[2] Այս հատուածին վերջին մասն[3] ընդարձակ տեղեկութիւն տալով Վենետկոյ Թ. 504 Է գ ձեռագրին՝ պարզուեցաւ ուրիշ խնդիր մ'ալ որ կնճռեալ կ'երեւար նախ: Այս խնդիրն է այն՝ զոր հետեւեալ տողերով համառօտիւ պիտի պարզենք:

Միաբան՝ Խոսրովկայ անուամբ մէկ ուրիշ գրութեան մը ճաշակը տուած էր հրատարակելով Էջմիածնի ձեռագրի մը մէջ գտնուած մէկ թերատ գրութիւնն, որուն վերնագիրն է ըստ ձեռնագրին “Խոսրովկայ Թարգմանչի Հայոց՝ առ այնոսիկ որ ասեն բնութեամբ անձեւ եւ անսկիզբն ընկալեալ զմարդկութիւն Բանն ի կուսէն:„ Ըստ Միաբանի այս կտորը կը գտնուի Թ. 655 ձեռագրի մէջ, որ “գրուած է Երուսաղէմում 1675 փրկչական թուին:„ Սակայն այս թիւն ալ ճիշդ չէ անշուշտ. վասն զի “Մայր Ցուցակի„ նոյն թիւը (էջ 41) “Լուսաւորութիւն Խոստովանութեան„ անուն գործք մըն է գրուած Կ. Պոլիս 1774 թուին: — Էջմիածնի օրինակը թերի է, եւ Խոսրովկայ “ամբողջ հատուածը 5 թուղթ է (10 երես) երկիջեան,„ այսինքն՝ երկսիւնեան, զոր յետոյ աւելի կը ճշդէ $19^{1}/_{2}$ էջ (սիւն) ունելով, որմէ հրատարակած է Միաբան իբր 2 երես[4]: Միաբան որ “բոլորովին անծանօթ մեր բանասէր-

1 “Բազմավէպ„ 1892, Թ. 5 (Մայիս.) էջ 203—214:
2 “Բազմավէպ„, անդ, էջ 208—209:
3 “Բազմավէպ„, անդ, էջ 210—214:
4 Անշուշտ այսպէս հասկընալու է Միաբանի գրածը, զոր մութ կը գտնէ նաեւ. “Բազմավէպ„, էջ 204, Ծան. 2:

ներին„ կ'ըսէ այս հատուածին համար, բնիկ Խորենացւոյ գործ կը համարի զայն, եւ առով նաեւ իբրեւ "առաջին գրուածքն ընդդէմ Քաղկեդոնի ժողովի եւ Խորենացւոյ մեր ձեռքն հասած երկասիրութիւններից կարեւորագոյնը։„ Սակայն յերեւան եկաւ որ ինչպէս անծանօթ չէր այն՝ բանասիրաց, նոյնպէս եւ ոչ Ե դարու Խորենացւոյ գործ։

Միաբանի այս հատուածին հրատարակութեան վրայ քննադատական ակնարկ մ'արձակեց նախ "Արձագանք[1]„ յիշելով որ արդէն 1888ին Արժ. Գիւտ քհն. Աղանեանց գրած է սոյն գրութեան վրայ եւ Է դարու հեղինակի մը գործք համարած՝ ցուցընելով որ այն Խորենացիկ զԱթանաս Անտիոքացի, զՅուստինիանոս կայսր եւն կը յիշէ։ Քիչ մ'ետքը կը տեսնենք Աղանեանցի կարծիքն աւելի մանրամասն. իսկ այժմ կը դնենք լոկ սոյն քննադատին հանած եզրակացութիւնը. "Խորենացիկը պատկանում է Զ դարու վերջին եւ Է֊ի սկիզբին, ուրեմն եւ Ժ դարու Խորենացին ես չէր կարող լինել։„ Վերջին խօսքին պէտք է միտ դնել, այնու որ սխալ ըմբռնուելով փոքր բանակռուի մ'առիթ եղաւ։ Վասն զի Միաբան՝ որ այս դիտողութեանս պատասխան գրեց "Մշակ„ թերթին մէջ[2], այս խօսքն այնպէս առած էր իբր թէ Աղանեանց այն խնդրական գրութիւնը Խորենացւոյ Անձեւացւոյ կու տայ, ուստի թէ "Արձագանք„ այն տեղ կ'ուղղէ նաեւ Աղանեանցի սխալը։ Այս խօսքն առիթ եղաւ Գիւտ քհն. Աղանեանցի մէկ պատասխանին[3], որ հաստատեց կրկին անգամ որ այն չէր իւր գրածը։ Միաբան կը կնքէ իւր պատասխանը յայտնապէս ծանուցանելով թէ իւր տեսած ձեռագրին մէջ "չկայ ոչ Յուստինիանոս կայսրի անուն, ոչ "յաւուրս Յուստինիանոսի կայսեր.„ ոչ Անտիոքացու անուն եւ ոչ

---

[3] "Արձագանք„ 1892, Թ. 57, էջ 2, Սիւն 5, 6։
[1] "Մշակ„ 1892, Թ. 61, էջ 2, Սիւն 3։
[2] "Արձագանք„ 1892, Թ. 64, էջ 2, Սիւն՝ 3, 4։

այդ Աթանաս Անտիոքացուն նուիրուած առանձին գլուխ.» — ուստի եւ սխալ համարելով «Արձագանքի» գրածը, կրկին կը հաստատէր իւր կարծիքը։

Այս բանակռուին մէջ՝ որ դժբախտաբար չմնաց լոկ գիտնական նկարագրաւ, երկու կողմն ալ ունէին իրաւունք ըստ իմիք։ Ուղիղ էր Միաբանի կարծիքը թէ Աթանասայ Անտիոքացւոյ եւն յիշատակութիւնք չկան Է-ր «Խոսրովկայ» գրութեան մէջ. եւ այս ուղիղ է ոչ միայն Էջմիածնի թերատ ձեռագրին համար, այլ եւ մեր Մատ. Թ. 5Թ ձեռագիրը,[1] որ անթերի ունի Խոսրովկայ «Աղօթից» եւն գրութիւնը, չունի այսպիսի կտորներ եւ յիշատակութիւններ։ Սակայն միւս կողմանէ ճիշդ էին նաեւ Աղանեանցի տուած տեղեկութիւնք, միայն այն տարբերութեամբ որ այն յիշատակութիւնք ոչ թէ Խոսրովկայ «Աղօթից» եւն գրութեան մէջն են, որ Ա մասն է միայն Խոսրովկայ գրութեանց, այլ Դ եւ Ե Մասանց մէջ։ Այս կնճռին պարզուելուն պատճառ եղաւ «Բազմավէպ»՝ Վենետկոյ ձեռագրին վրայ մանրամասն տեղեկութիւն տալով. որով երեւցաւ միանգամայն որ բաց ի թերատ ձեռագիրներէն՝ այնպէս ցանցառ չեն նաեւ լիակատարք։

Թէ՛ Վենետկոյ թէ՛ Աղանեանցի եւ թէ՛ Էջմիածնայ այս ձեռագրաց մէջ Խոսրովկայ այն գրութիւնք անկախ չեն, այլ մասն են երեքմասնեայ ժողովածուի մը նոյնատեսակ գրութեանց, որուն մէջ

[1] Մեր ձեռագիրը բոլորովին նոր գրութիւն է, եւ ըստ երեւութին՝ ընդօրինակութիւն Վենետկոյ ձեռագրաց միոյն միայն Ա. Մասին՝ նոյն իսկ Վենետկոյ Մեծ. Հարց միոյն ձեռքով։ Ձեռագիր ընդօրինակութիւնն է 21 մեծադիր էջ՝ 30×16, 5 սնդ. մեծութեամբ. իւրաքանչիւր էջ 40 տողով։ Միաբանի հրատարակած մասն է նոյն ձեռագրին՝ էջք 1—2, 27. իսկ Էջմիածնի ձեռագրի ամբողջ հատածը, (որ կը լմննայ «որք անհաւատութեամբ են մնացեալ ախտիւք, խորհուրդ օրինակ իմն միեւնոյն» բառերով,) է մեր ձեռագրին՝ էջ 1—8, 30 ուստի երեքին մէկը։ Իսկ Վենետկոյ ամբողջական օրինակին հետ կը համեմատի Էջմիածնի ձեռագիրը «իբր 10 երես առ 66.» (Հմմտ. «Բազմավէպ» էջ 211։)

կան սովորաբար այս երեք գործքերը. 1. "Անանիայի Վարդապետի Հայոց Բան հակաճառութեան ընդդէմ երկաբնակաց, զոր գրեաց հրամանաւ Տեառն Պետրոսի Հայոց վերադիտողի։" 2. "Խոսրովկայ Թարգմանչի Հայոց. Առ այնոսիկ" եւն. եւ 3. "Յովհաննու քահանայի յաղագս Նշանակ հաւատոյ Նիկիականն ԺԸ.իցն[1]։" Առաջինն է Անանիայի Սանահնեցւոյ ծանօթ գործքը. իսկ երրորդ գրութիւնը Յովհաննու Սարկաւագի կ՚ընծայուի, եւ ըստ Աղանեանցի[2] երկու մաս է՝ 1 "Յաղագս Նշանակ հաւատոյ" եւն. եւ 2 "Նորին Յովհաննու քահանայի ի խնդրոյ Գագկայ կրօնաւորի յաղագս քաղկեդոնականացն։" Էջմիածնի ձեռագրին մէջ ըստ Միաբանի կայ միայն Անանիայի գործքն եւ Խոսրովկայ մի մասը. Խոսրովկայ միւս մասը եւ Յովհաննու գործքը չկան՝ թերթերը դատարկ մնացած ըլլալով[3]։ Մեր խնդրէն դուրս է այս ժողովածուին եւ իւր բովանդակած միւս հեղինակաց վրայ խօսիլ[4]. միայն պէտք ենք յաւելուլ որ սոյն ժողովածուին յօրինողն է "Յովհաննէս Եզնկայ եպիսկոպոս," զոր

---

[1] "ԺԸ.իցն,, ունի միայն Ձեռ. Վենետ.։

[2] "Արձագանք,, 1888, էջ 63։

[3] Անանիայի գործքը կայ նաեւ ի "Մայր Ցուցակ,, Թ. 505—506։ — Յիշենք որ "Յովհաննու Սարկաւագ Վարդապետի ընդդէմ երկաբնակաց,, գործք մը կայ ի Թ 513, որ է "քառածալ երկաթագիր գրեալ ի թղթի," եւ որուն մէջ կան՝ 1. Թուղթք Փիլիքսիանոս եպիսկոպոսի վասն ելանելոյ յաշխարհէ. 2. Հարցումն վարդապետաց առ Սարկաւագ. 3. Յաղագս չորից առաքինութեանց ի նոյն Սարկաւագ վարդապետէ։ Գրքին սկիզբն ու վերջը թերի կ՚ըսուի։ Նաեւ ի Թ. 519 կայ "Սարկաւագ վարդապետի բանք ընդդէմ այնոցիկ, որ վասն բաժակին մոլին.,, (որ կայ նաեւ ի Թ. 531.) եւ նոյն ձեռագրին մէջ "Բանք երանելոյն Խոսրովայ,,, առանց ուրիշ տեղեկութեան թէ ինչ է. (—Ճիշդ այս կտորները սոյն կարգաւ կան նաեւ ուրիշ ձեռագրի մէջ Աղանեանցի (Թ. 12.) հմմտ. "Արձ." 1888, Թ. 12, էջ 158։) — Վերջապէս կայ ի Թ 329 "Բանք վարդապետաց վասն երկաբնակաց. առանց այլ տեղեկութեան։ — Անշուշտ է որ բուն այն երեքմասնեայ ժողովածուն "Յովհաննու Եզնկայ եպիսկոպոսի., ցանցառ պիտի չգտնուի Էջմիածնի հազարաւոր ձեռագրաց մէջ։

[4] Հմմտ. նաեւ "Արձ." էջ 61—63։ Հ. Գարեգին, Հին Դպր. տպ. Վենետ. 1886, էջ 569—572, 597 եւն եւն։

Միաբան հաստատութեամբ եւ Հ. Սարգիս Վ. Բարսեղեան՝ երկբայութեամբ ծանօթ Յովհաննէս Եզնկացին կը համարին ի ԺԳ դարու։ Այս ժողովածուին յօրինողը դրած է ի սկզբան նոյնպէս “Նախադրութիւն„ մը, որ երեք ձեռագրաց մէջ ալ կայ, եւ զոր թէ՛ Աղանեանց եւ թէ՛ Միաբան հրատարակած են իրարմէ անկախ։ Այս տեղ կը դնենք այս Նախադրութիւնն ըստ Աղանեանցի օրինակին՝ համեմատութեամբ Էջմիածնի ձեռագրին ըստ հրատարակութեան Միաբանի։[1]

“Նախադրութիւն գրոցս[2]։ — Նախ քան զմտանել քո ի դրունս ընթացման[3] գրոցս՝ պարտ է մեզ ցուցանել զգիւտ այս պատուական եւ բարելի գանձուց։ Նուաստ եւ տկարոգի Յովհաննէս Եզնկայ[4] եպիսկոպոս՝ սպասաւոր բանի, եւ իմաստից գրոց որբոց ծարաւի, յոլով ժամանակօք եւ աշխատութեամբ բազմաւ ստացայ զայս երեք գիրքս, որ են հիմունք հաւատոյ ուղղափառութեանն։ Եւ թէ զմին մի ի սոցանէ գտանէ ոք, բարեբախտութիւն մեծ եւ փարթամութիւն անկշիռ համարիմ նմա, մանաւանդ զճաշակ քաղցրութեանն գիտողի։ Զոր եւ գտի ես յայլեւայլ[5] տեղի եւ ժամանակի եւ ստացայ զերիս գիրսն. եւ ի նոցունց դարձեալ ետու գրել եւ առ միմեանս եդի եւ արարի մի գիրք։ Առաջին զԱնանիային, զՀայոց վարդապետի. երկրորդ՝ զխոսրովկայ Թարգմանչի եւ զհզօր գիտնականի. երրորդ՝ զՍարկաւագ վարդապետին եւ զմեծն իմաստասիրի զհաղբատեցւոյ։ Եւ թողում զսոսա յետ իմ ժառանգէք յօգնազան բարեաց ճոխու-

[1] Հմմտ. “Արձ.„ էջ 63—64. “Արարատ„ էջ 279—80։ Վենետիկոյ օրինակինն լոյս տեսած չէ. բայց չենք կարծեր որ կարեւոր տարբերութիւններ գտնուին. նաեւ Աղանեանցի եւ Էջմիածնի ձեռագիրք այս յիշատակարանն այնպէս կէտ առ կէտ նոյնութեամբ ունին, որ հաւանական կ'երեւայ թէ մէկ օրինակէ գաղափարեալ են երկուքն ալ։

[2] Ձեռ. Աղանեանց ալ ունէր անշուշտ այս վերնագիրը, որ բաց թողուած է։

[3] Այսպէս երկուքն ալ։ Միաբան կ'առաջարկէ “ընթերցման„ ուղղել։

[4] Այսպէս Ձեռ. Աղ. իսկ Էջմ. “Յօհաննէս Եզնկոյ։„

[5] Ձեռ. Էջմ. “յայլ եւ յայլ տեղի։„

> թիւն, ամենառատ գանձուց փարթամութիւն. աստուածաբանական հանճարով յերկինս թռուցելոց՝ սա թեւք զօրաւոր եւ վերացուցիչ: Ցաշխարհիս ծովիս նաւելոց՝ ղեկք վարիչք եւ ուղղիչք: Ի մարտս խմբից հերձուածողականացն՝ զէնք սրեալք յաղթողակ ձեռաց քաջամարտից: Ի խաղաղական ժամու ժողովոց՝ սեղանք երկնաւորք եւ քաղցրաճաշակ լցեալ կերակրով: Վաճառականաց հանգոյն բարւոյ եւ հմտագունից մարգարիտ անգին եւ աշխարհաւ ամենայնիւ գնեալ: Աղքատաց անձանց եւ նիւթականաց անձեռնհասից՝ սա ճոխութիւն երկնաւոր եւ անհամեմատելի: Իմաստութեամբ լուսաւոր անձանց՝ արփի լուսաբուխ եւ բազմանշոյլ: Անգիտութեան մթով պատելոց՝ ճրագ լուսատու եւ խաւարափարատ: Սա ձեզ յոլով բարեաց բղխմունս աղբերաց եւ մեզ նիւթ յիշատակի եւ բարբառ եւ ձայն առ ձեզ[1] մաղթանաց: Զի որք օգտիք եւ զուարճանայք՝ զողորմելի Յովհաննէս[2] յիշեսջիք եւ մեղուցելոյս անձին եւ վարդապետին իմոյ եւ ծնողաց՝ ողորմութիւն ի Քրիստոսէ հայցեսջիք:„

Աղանեանց իւր “Գրչագիրների մասին„ յօդուածներէն միոյն[3] մէջ նկարագրելով (Թ. 4) իւր ձեռքն ունեցած Խոսրովկայ ձեռագիրը, կը նկարագրէ զայն “քառածալ, մաքուր նօտրգիր, բամբակի թղթի վերայ, 463 երեսից բաղկացած, որ գրուած է Փրկչի 1779 թուին:„ Ձեռագիրը չափազանց երկար յիշատակարան մ'ունի, (զոր գրեթէ ամբողջ հրատարակած է Աղանեանց,) որմէ կ'իմանանք թէ Մարտիրոս ոմն սարկաւագ գրած է զայն “ընդ հովանեաւ . . . Խաչին սրբոյ, որ ի Սելամիէ ի թաղն Իւսկիւտարու:„ Երկարօրէն կը մեկնէ դարձեալ թէ ինչպէս իւր գաղափարին սխալ գրչութիւններն ուղղած է. (— բերած օրինակներէն կը տեսնենք որ շատ բան խանգարած է ըստ իւր խելամտութեան. —)

---

1 Այսպէս Ձեռ. Էջմ. իսկ Աղ. “ձայն առ յ.„ (= Յիսուս:)

2 Ձեռ. Էջմ. “Յօհաննէս:„

3 Հմմտ. “Արձ.„ 1888, Թ. 4, 5, 9, 10, 11, 12, 15, 25, 26, 27, 30:

կը յաւելու ապա ժողովածուիս հեղինակաց վրայ իւր ժողվել կրցած տեղեկութիւնքն՝ որ թէեւ չեն այնչափ ճիշդ, բայց գոնէ հետաքրքրական են. օրինակի աղագաւ այն՝ թէ Խոսրովիկ “ատենադպիր Բագրատունեաց„ էր եւն¹։ Ապա կը ծանուցանէ գրիչը թէ իւր գաղափարը վերջէն թուղթ մը պակաս էր², եւ հուսկ ուրեմն՝ որ ամենէն կարեւորն է՝ կը դնէ իւր գաղափարին գրութեան տարին եւ մէկ յիշատակարանը։ Եւ այս կը պարզէ մեր առջեւ սա զարմանալի երեւոյթը՝ թէ մեր Խոսրովկայ այժմու ծանօթ երեք օրինակք ալ մէկ օրինակէ մը ծագած են.

---

¹ Հմմտ. “Արշ.„ Թ. 5, էջ 61։ “Զհեղինակաց ցանկալի եւ սուրբ գրոցս գիտելի է, թէ ովք ոմանք էին. Նախկինն է Անանիա վարդապետն, որ ըստ ոմանց ասի գոլ կրթիչ եւ վարժապետն սրբոյն Գրիգորի Նարեկացւոյն. սա գրեաց զայս սխրալի գիր աստուածատուր իմաստութեամբ իւրով յաղթող սպառազէնս հաւատոյ ի խնդրոյ Տեառն Գէորգայ Գեղարքունւոյ հայրապետին մերոյ, որ ոչ կարաց տեսանել՝ վասն օրհասի կանխելոյ երջանիկ ելից նորա յաստեացս. այլ առընկալաւ տէր Խաչիկ վերադիտողն Հայոց մեծաց յաջորդն նորին, որպէս երեւի քեզ ի 3 եւ 164 երեսն սոյն գրոյս։ Երկրորդն է Խոսրով Անձեւանեաց մեր. զսա ոչ կարացի իմանալ ի գրոց՝ որ զաակաւս ընթերցայ, այլ ի յերեւելի ի նշանաւոր եւ ի մեծագոյն կարի ծերացեալ եպիսկոպոսէ եւ յիմաստնապերճ վարդապետէ յուսեմնէ լուայ՝ գոլ ատենադպիր Բագրատունեաց թագաւորացն մերոց. իսկ ըստ հաւատոց եւ ըստ վարուցն թէ որպիսի ոք իցէ եղեալ նա, բանք նորին ակներեւ ցուցանեն զնա քեզ։ Իսկ երրորդն որ է Յովհաննէս Սարկաւագ կոչեցեալ վարդապետն Հաղբատացի՝ մեծիմաստն գիտութեամբ եւ հոգիընկալ հանճարեղն երանելի. որ զամենայն վարս եւ զգործս կամիցի գիտել երանաշնորհ աստուածաբանիս, ընթերցիր զ636 երեսն Դրախտ ցանկալի անուանեալ գրքի Սրբազան Կաթուղիկոսին Ղազարու եւ բաւ է։„ — Ըսինք արդէն որ անճշդութեամբք լի է տեղեկութիւնս։

² “Արշ.„ անդ էջ 61. “Զայս եւս կամիմ ծանուցանել սիրելեացդ իմոց, զի ի վերջն առաջաբանութեան օրինակի գրոցս՝ գրեալ էր թէ գիրքս 338 թուղթ է, բայց մեք 337 գտաք, պակասեալ միով թղթով ի վերջէն բանիցն Յովհաննու, եւ վասն ոչ գոլոյն այլ օրինակ, զորքանն զոր գտաք՝ զայնքանն միայն օրինակեցաք։ Իսկ թիւ գրեցման նորա եւն։„ Շարունակութիւնը տես քիչ մ'եւսքը դէմ առ դէմ Վենետկոյ ձեռագրին յիշատակարանին։ Արդեամբք Վենետկոյ օրինակին Թ. 504 Ի ֆ ձեռագրին վերջը թուղթ պակաս է։

այսինքն՝ Վենետիկոյ Թ. 504 Ի գ օրինակն է բուն այն օրինակն որմէ գաղափարեալ է Աղանեանցի ձեռագիրը, իսկ Աղանեանցի օրինակը դարձեալ հիմն է Վենետիկոյ միւս ձեռագրին՝ Թ. 319՝ թէեւ ոչ ուղղակի, ինչպէս այժմ պիտի տեսնենք:

Աղանեանցի ձեռագրի գրիչը բարեբախտաբար գրած է իւր առջեւն ունեցած ձեռագրին յիշատակարանն, զոր համեմատելով կը տեսնենք որ նոյն է Վենետիկոյ Թ. 504 Ի գ ձեռագրին հետ: Յաջորդ համեմատութիւնը կը ցուցընէ այս ըսածնիս:

*Յիշատակարան Ձեռ. Աղանեանցի:*[1]

"Իսկ թիւ գրեցման նորին [այսինքն՝ ձեռագրին] թէ յորում արդեօք ժամանակի իցէր գրեցեալ ոչ գոյր ի նոսա, այլ այս միայն ի վերջ բանիցն խօսրովկայ թէ "[illegible] Սարգիս . . . [illegible], որ [illegible]: . . . Ի [illegible] ՊՀԴ (1425)

*Յիշատակարան Ձեռ. Թ. 504Ը գ:*[1]

"Փառք . . . Պատուելի եւ աստուածային շնորհօքն լըցեալ սուրբ Վ"դ յո"հ. ընգալ զաւկաւ գծիկս ի նուաստ քա"հի յովհաննիսէ . . . :"[2]

"Արդ՝[3] յերեսս անկեալ պաղատիմ մանկանցդ սուրբ եկեղեցւոյ, որք հանդիպիք աստուածային կտակիս՝ [illegible] Սարգիս, [4]եւ զհոգեւոր եւ զմարմնաւոր ծնողքն իմ: [illegible]: [5]Եւ Քրիստոս Աստուած որ առատն է ի տուրս բարեաց

---

[1] Համմ. "Բազմ.,, անդ, էջ 211 եւ "Արձ.,, անդ, էջ 61 ը:

[2] Մնացեալէն մեզի կարեւոր է միայն այս խօսքը թէ "աւրինակն գր(ութեան) պակաս էր.,, թէեւ չէ ըսուած թէ որչափ: — Վերջէն թուղթ մը պակսիլն արդէն ըսինք:

[3] Այս կտորն ստացողին յիշատակարանն է առաջնոյն կից, միայն մէկ տող վար գրուած: Աղանեանցի ձեռագրի գրիչը չէ օրինակած այս առաջին տողերը:

[4] Այս բառերը չէ հրատարակած Աղանեանց:

[5] Այս նախադասութիւնը չէ օրինակած գրիչն Աղանեանցի օրինակին:

ամ հայկազեան տումարի:„
Որոց յիշատակն օրհնութեամբ եղիցի, եւ աղօթիւք նոցին Տէր մեզ ողորմեսցի:„

զձեզ յիշէ ի փառս իւրթալիր աւրհնութեան ամէն:
Ի Թվականիս ՊՀԴ (1425) ամ հայկազեան տումարի:„

Յայտնի է ուրեմն որ այն օրինակն՝ որմէ օրինակուեցաւ Աղանեանցի օրինակն յԽուսկիւտար, անցած է Վենետկոյ մատենադարանն. եւ այսպէս կը վկայէ նաեւ Հ. Բարսեղ[1], որ մանրամասն ստորագրած է այս կարեւոր ձեռագիրը[2], որ միանգամայն հիմն է միւս ծանօթ ձեռագրաց: Այս ձեռագրին մէջ (— ինչպէս նաեւ ըստ հետեւորդի Աղանեանցի օրինակին մէջ ալ —) չորս գրութիւնք կան Խոսրովկայ անուամբ՝ որ "ընդ ամէն 85 թերթ„ կը գրաւեն, եւ են. 1 "Խոսրովկայ թարգմանչի Հայոց Առ այնոսիկ որ ասեն բնութեամբ անձեւ անսկիզբն ընկալեալ զմարդկութիւն Աստուած բանն ի կուսէն:„ — 2 "Յաղագս թէ պա՞րտ է զմարմինն տէրունական համագոյ ասել Աստուածն բանի, կամ թէ մարմնոյն եւ Բանն եւ մի բնութիւն ասել եթէ ոչ:„ — 3. "Առ այնոսիկ որ յերկուս զմարդկայինսն անջատեն, բնութիւն այլ գոյլ ասեն յառաջ քան

---

[1] Հմմտ. "Բազմ.„ անդ. էջ 211 ծն. "Այս նոր շղագրիս մէջ եղած յիշատակարանէն այնպէս կ'երեւի թէ ուրիշ հնագոյն օրինակ մ'եւս ատենօք եղած ըլլայ յԽուսկիւտար: Բայց ես կարծեմ, թէ այդ հնագոյն ձեռագիրն ուրիշ. բան չէր՝ բայց եթէ մեր Թիւ 504 օրինակն, զոր Վեր. Հ. Փիլիպպոս Թէրճիմանեան Ասլանեան գնելով ի Կ.Պոլիս 300 դահեկանի յամին 1830 յղեց ի վանս:„

[2] Անդ, էջ 210, ծ. 1: Ձեռագիրս է "բոլորգիր բամբակեայ թղթի վրայ:„ Թէեւ անթուական "բայց ամենայն վստահութեամբ կարեմք ասել թէ ԺԳ դարու կիսուն գրուած ըլլայ„ ըստ Հ. Բարսղի: Մեծութիւնն 17×13 սնդ. թուղթք 336 (թուղթ վերջոյ պակաս), տողք 27, աննկար եւ անզարդ, խորագիրք եւ սկզբնատառք կարմրագիր: Հ. Բարսեղ մինչեւ անգամ կը համարի որ այս իսկ է, "զոր Յովհ. Երզնկացի իւր ողջութեան ժամանակ ի մի հաւաքել եւ գրել տուաւ,„ յեցեալ այն երեւութին վրայ որ յիշատակարանին մէջ կ'ըսուի թէ Յովհաննէս քահանայ սա՛ գրած է ձեռագիրն եւ կը նուիրէ առ Վարդապետն Յովհաննէս: Այս խնդրոյն նկատմամբ բան մ'ըսել չենք կրնար ձեռագիրը տեսած չըլլալով:

զլանցանման եւ այլ զկնի յանցանացն։„ — 4. "Առ այնոսիկ որ տարակուսին ի վերայ (տնօրէնութեան) փրկչականն կրից մարդկայնոց. թէ բնակա՞ն պարտ է ասել թէ անբնական։ Նախադէր բանից առ Աբանաս Անտիոքացի։„ — 5. "Նորին խորհրդոյ բանից առ Տէր Սարգիս եպիսկոպոս Գերմանիկոյ։„

Այս ամէն կտորները կան անշուշտ նաեւ Վենետիկոյ միւս ձեռագրին մէջ՝ (Թ 319 Դ Ե.) որ "շղագիր օրինակ„ մըն է եւ "ընդօրինակուած Արմաշու վանքի Թ. 1827 գրչագրէն ձեռամբ Յովհաննու Տէր Կարապետեան Պրուսացւոյ։„ Սակայն անկախ օրինակ մը չէ այս օրինակը. վասն զի ձեռագրիս գաղափարը՝ Արմաշու Թ. 1827 ձեռագիրն ալ "ընդօրինակուած էր յամին 1795 Իսմայիլ Փաշայի Սելամիէ թաղը բնակող Տէր Մարտիրոս կուսակրօն Սարկաւագին ձեռագրէն, զոր խնդրեց անանուն ոմն Պրուսիացի գաղափարելու համար։„ Իսկ վերը տեսանք որ այն 1795ին ի Սելամիէ ընդօրինակեալ ձեռագիրն է այն՝ զոր Աղանեանցի օրինակ կոչեցինք, որուն վրայ տեղեկութիւն տուած է Աղանեանց։

Խոսրովկայ գրութեանց ներքին արժէքին վրայ խօսիլ չենք ուզեր, այնու մանաւանդ որ մեր ձեռքն եղած Ա Մասն՝ հազիւ մէկ դպրին մասն է ամբողջին, եւ դժուար է ասով գաղափար կազմել միւսացելոց համար։ Ցամենայն դէպս չափազանց են կարծենք այն գովութիւնք որ կը տրուին մանաւանդ ի մասին գրութեանս հայ լեզուին, որուն համար կ'ըսուի՝ թէ ըլլայ "Եզնկայ պէս կորովի, կտրուկ, պայծառ եւ ճարտար ի դարձուածս բանից եւ ամենադժուար գաղափարաց բայատրութեանց մէջ, թէպէտ եւ ըստ ամենայնի մի եւ նոյն ոսկեղէն բովէն թափուած չեն. այնպէս որ եթէ բարեբախտաբար նորա ճառերու մէջ որոշ պատմական եւ ժամանակագրական յիշատակութիւններ առ մեզ հասած լինէին, իրաւամբ Միաբանի հետ պիտի չփոթէինք

զնա ոսկեդարու համանուն հեղինակին հետ։[1] „ Այսչափ հիացմանէ շատ հեռու է գոնէ մեր հատակոտորին լեզուն, թէեւ համեմատաբար բաւական կոկիկ է։

Միաբան՝ ինչպէս ըսինք՝ Ե դարու հեղինակի՝ Խոսրովկայ գործ կը համարէր այս գրութիւնը։ Այս կարծեաց անհիմն ըլլալն այլ եւս խնդրոյ տակ չի կրնար ըլլալ։ Իսկ թէ երբ կ'ապրէր ուրեմն այս Խոսրովիկ՝ երկու տարբեր կարծիք յայտնուած են՝ իրարմէ անկախ։ Աղանեանց[2] մերժելով Ե դարու Խոսրովկի տալ այս գրութիւնը, կը ժխտէ նաեւ այն՝ թէ Խոսրով Անձեւացի ըլլայ հեղինակն[3], եւ կը հաստատէ որ Է դարու կ'ապրէր հեղինակը։ Գլխաւոր ցուցումն յայսմ է որ Խոսրովիկ թղթակցութիւն ունի Աթանասայ Անտիոքայ պատրիարքի հետ, եւ դարձեալ թէ այս թղթին մէջ տեղ մը կ'ըսուի այսպէս. “Յիշե՞ս ապաքէն յորժամ հրամայեցեր ի Դերայիդրոշտադ եպիսկոպոսաց՝ Թէոդոտեայ եւ Աթանասի հարցանել զիս վասն հաւատոյ։„ Արդ կը համարի Աղանեանց թէ, այս յիշուած “Թէոդորոս Փառանեցին եւ Անտիոքեայ պատրիարք Աթանաս եպիսկոպոսը ապրում էին Է դարու։„ Եւ դարձեալ Խոսրովկայ տրտունջները Հայոց կաթուղիկոսի մը դէմ՝ թէ “յորդորէր զմեզ ի ժողով գումարիլ„ եւ “զժողովոյն Քաղքեդոնի յայտնէր զհամաձայնութիւն,„ կ'առնու Եզր կաթուղիկոսի վրայ։

Թէպէտ այս խնդրոյս մէջ որոշ կարծիք յայտնել մեզ անհնար է, այնու որ Խոսրովկայ գրութեանց այն կտորներն՝ որ կրնան այս խնդրոյս մէջ

---

[1] Հմմտ. “Բազմ.„ էջ 213։

[2] “Արշ.„ անդ, էջ 62—63։

[3] Անդ։ Ցուցմանց մին ալ այն է որ Խոսրովիկ գրութեանց մէջ ինք զինք “Խոսրով Նուաստ ծառայ„ կ'անուանէ ուստի “հոգեւորականի տիտղոս„ չի կրեր։ Սակայն չենք կարծեր որ ասով ցուցուած ըլլայ Խոսրովկայ եկեղեցական չըլլալը, որ թերեւս եպիսկոպոս էր, եւ թերեւս իբր այնպիսի մասնակից էր ժողովին, (“յորդորէր զմեզ ի ժողով„ եւն) եւ այնպէս սերտ մասնակից կրօնական խնդրոց, ինչպէս իւր գրութիւնք առ Աթանաս եւն կը ցուցընեն։

կռուան ըլլալ, մեր ձեռքը չունինք. սակայն՝ որչափ կ'երեւայ՝ Աղանեանցի փաստերը շատ հաստատուն չեն: Անտիոքայ Աթանաս պատրիարքին անունը չի բաւեր միայն. վասն զի խնդիրը հոս այն է այժմ՝ թէ որն է հոս յիշուածն Անտիոքայ բազմաթիւ Աթանասներու մէջ, եւ ի մասնաւորի զԱթանաս Ա կամեղարիոս (+ 631 կամ 644 Յ. Ք.)[1] հասկընալու ենք, թէ զԱթանաս Բ Պալատացի (684—687)[2] թէ զԱթանաս Գ (724—740)[3] եւ այլն: Բաց աստի Խոսրովկայ ակնարկութիւնքն սքողեալ են միայն, եւ չկայ կռուան մը թէ ինչու միայն Եզր կարելի պիտի ըլլայ հասկցուիլ այն տեղ:

Ուրիշ կարծիք յայտնեց Հ. Բարսեղ Վ. Սարգսեան, որ զԽոսրովիկ կը դնէ ԺԲ դարու՝ անկախ Աղանեանցէն — գոնէ չենք տեսներ նշան մը թէ Աղանեանցի հաստուածը ծանօթ էր հեղինակին: Այս կարծիքն աւելի հաստատուն կ'երեւայ քան Աղանեանցի դրութիւնը: Աստ ալ գլխաւոր կռուանն է այն խօսքը՝ զոր դրինք վերը, այսինքն՝ ի "Դեբայիդրոշտադ" Թէոդորոս եւ Աթանաս եպիսկոպոսաց առջեւ հաւատոյ նկատմամբ եղած հարցափորձը կամ խնդիրը: Աթանաս պատրիարքն դնելով զԳ. ի Գուբա-Բարայայէ (724—740 Յ. Ք.) աւելի հաւանական կ'ըլլայ. վասն զի այս Աթանաս ըստ Բարհեբրէոսի[4] եւ նաեւ ըստ Կիրակոսի[5]՝ ինչպէս յիշած է արդէն Չամչեան[6], Հայոց հետ կրօնական միութիւն ընել ձեռնարկեց մասնակցելով ժողովոյ՝ յամի Յունաց 1037 (=726 Յ. Ք.), Յովհաննու Օձնեցւոյն օրով՝ գէթ ինչպէս կ'աւանդուի: Աթանասայ խաւրած սուրբ եպիսկոպոսաց մէջ ալ կը յիշուին "Թէոդորոս եպիսկոպոս Դարդամակաց"

---

1 Հմմտ. Assem. Bibl. Orient. etc. II, p. 333—334 եւն:
2 Ass. B. O. II, p. 335 եւն:
3 Անդ, II, p. 296, 338 եւն:
4 Հմմտ. Assem. B. O. II, p. 296 եւն:
5 Հմմտ. Կիրակոս, տպ. Վենետ. 1865, էջ 38:
6 Հմմտ. Չամչեան, Պատմ. Հայ. Բ. էջ 397—398:

եւ "Աբրահամ եպս. Նփրկերտոյ:„ Հ. Բարսեղ կը համարի թէ Օձնեցւոյն ժողովէն եւքն առ Աթանաս գրած թուղթն է "Խոսրովկայ ընծայուած Գ. Ճառականն պատասխանին,„ ուստի կը հետեւցընէ թէ "կամ Խոսրովիկս Յովհ. Օձնեցու կողմանէ գրեց զայն 726ին, եւ կամ դիտմամբ Խոսրովիկ Թարգմանչի„ տուած են զայն:

Երկրորդ ցուցումն կը բերուի այն՝ որ Խոսրովկայ առ Սարգիս գրած թղթին մէջ Յուլիանեանց եւ Սեւերիանեանց համար կ'ըսուի թէ "Եւ կացին մնացին ի նմին գրի (— "զոր հանեց Յուստինոս յառաջին ամի գահակալութեան իւրոյ.„ = 518 Յ. Ք.) Երկերէ-ր ամ-ասկա- համ-ա-էջէ„ Այս թուէն կը հետեւի 718 տարեթիւը. եւ եթէ աւելցուի "աւելի„ իբր 6—8 տարի, կը գտնենք յիշեալ ժողովոյն թիւը 726: Դարձեալ նկատելով որ սոյն թղթի մէջ կը յիշուի թէ "Ցիշեցաք սակաւուք զբազմազան նորա (Սեւերիանոսի) հայհոյանսն ի Բնչէին որ առ Պարքարին Աբրահամ վասն Թէոդիտեայ,„ կը հետեւցուի իրաւամբք որ առ Սարգիս յղուած թուղթն գրուած է՝ առ Աթանաս ուղղեալ թղթէն եւքը: Վերջապէս նաեւ յիշելով որ Կիրակոս[1] կը պատմէ՝ թէ Անանիա Մոկացւոյ կաթողիկոսի ժամանակ կար Խոսրով եպիսկոպոս մը, որ կաթողիկոսական իշխանութիւնը չէր ճանչնար, կ'ըսուի որ կարելի է թէ այս Խոսրովն է մեր հեղինակն, եւ Կիրակոս ժամանակագրական շփոթմամբ Անանիայիատեն դրած է այն դէպքն որ թերեւս Օձնեցւոյն ժամանակ դիպեցաւ, ուստի եւ Խոսրովկայ այն տրտունջները՝ զոր յիշեցինք, վերջնոյս ուղղուած ըլլան: Այս վերջին կէտն՝ այն թէ Օձնեցւոյն են ուղղուած Խոսրովկայ տրտունջները, շատ լաւ կրնայ ըլլալ. բայց միւս

---

[1] Կիր. եւն 48—49: "Ոչ է պարտ, (կ'ըսէ Խոսրով), եպիսկոպոսապետի՝ այսինքն կաթուղիկոսի հլու լինել, զի աւելի ոչինչ ունի, բայց միայն զանուանակոչութիւն„ եւն:

կէտը՝ թէ այս երկու Խոսրովք նոյն անձն են, դեռ խնդրական պէտք է անշուշտ համարիլ:

Ինչպէս ըսինք այս ամէն կարծեաց հաստատուն ըլլալը վերջնականապէս չենք կրնար վճռել առ այժմ, քանի որ անծանօթ են մեզ Խոսրովկայ գրութիւնք: Բայց յամենայն դէպս երկրորդ կարծիքն՝ զոր ի "Բողմովէրդ„ կը կարդանք, շատ աւելի հաւանական եւ հաստատուն հիման վրայ դրուած կ'երեւայ քան Աղանեանցի կարծիքը:

Խոսրովկայ գրութիւնն ի հարկէ յարգի էր յետագայ դրչաց քով: Այսպէս օրինակի աղագաւ կրօնական գրութեան մը մէջ, (— որուն վերնագիրն է "Կարգաւորութիւն սուրբ եւ ուղղափառ հաւատոյ հայաստան եկեղեցո. որով յամաւթ առնէ զհերձուածողսն. յառաջ քան զամ. տուր նոցա պատասխանի որ հայոյեն զմեզ այսպէս.„ —) Եկեղեցւոյ մեծ Ս. Հարց քով ի վկայութիւն բերուած կը գտնենք "է Հատուած Ընդդէմ Խոսրովու Հայոց Հայրապետի.[1]„ — ուր անշուշտ մեր այս Խոսրովկայ վերը յիշեալ թղթերէն միոյն ակնարկութիւն կ'ըլլայ:

[1] Հմմտ. Ձեռ. մեր Մատ. Թ. 101, Թղ. 63b: Հոս կը գտնենք այս կոչումն, զոր բաղձալի էր համեմատել Խոսրովկայ գրութեանց հետ. "Արդ գրէ առաքեալն պաւղոս. տէր յիսուս ի գիշերին յորում մատնէր առ հաց. զբաղարջն ի սեղանոյն ըստ աւրինացն. եւ զբաժակն գինով առանց ջրոյ. մել(+)իսեդեկ հաց բաղարջ եւ անապական գինի բաշխէր ի վերա գերեզմանին ադամա. որ գուշակէր զանապական ծնունդն տեառն ի կուսէն: նոյնպէս եւ բաղարջն աբրահամու եւ ղովտա որով զանմարմինսն կերակրեցին. եւ նահապետն յակոբ ասէ. լուացէ արեամբ խաղողո զձորջս (է լուացանս՝ զպատմուճանս) իւր: Ճշմարիտ որթն յիսուս զջուրն ի գինի փոխեաց. իսկ նստոր զգինին ի ջուր. զի ոչ էր նա մանուկ առագաստի ուրախութեան հարսանեաց, եւ այս յայտնի է յաստուածեղէն գրոց որ զուր եւ տարապարտուց ջանան որ ի սուրբ խորհուրդն ջուր եւ խմոր խառնեն:„ — Եթէ ունենայինք առ ձեռն Խոսրովկայ գրութիւնքն, կրնայինք վերջնականապէս վճռել թէ այս կոչումն արդեամբք մեր այս Խոսրովկա՞յ է թէ ոչ, զոր այժմ չենք կրնար որոշել ստուգութեամբ, վասն զի կարելի է որ մաս ըլլայ այս վերը յիշուած մէկ ճառին, որ բաժակի խնդրին վրայ կը ճառէ. (տես 57, ծ. 3:)

“Բազմավէպի„ հատուածը կը կնքուի դիտողութեամբ մը՝ թէ կրնայ Խոսրովկայ գործքը քննուիլ “գրուածոցս Հրատարակութեան ժամանակ, եթէ փափաքին երբեք սիրողք եւ յարգողք մեր Նախնեաց գործերուն հրատարակուած տեսնել զայն։„ Մեր ունեցած Ա. մասէն դատելով այս ճառերուն գոնէ այն մասերն որ պատմական ակնարկութիւններ են, պէտք է ի լոյս հանել, ամենէն աւելի առ Աթանաս եւ առ Սարգիս գրուածները։

Իսկ Ա Մասն, զոր առջեւնիս ունինք, երկու կրնանք բաժնել. առաջինը լի է պատմական ակնարկութեամբք Խոսրովկայ եւ Կաթուղիկոսի մը մէջ եղած նամակագրութեանց, — եւ այս հետաքրքրական կտորին մէկ մասն է Միաբանի ի մէջ բերածը. — Մնացեալը չոր ու ցամաք վիճաբանութիւն է հակառակ կարծեաց դէմ։ Հոս կը դնենք մենք այս սկզբան հետաքրքրական մասն՝ լոկ իբրեւ այսպէս կամ այնպէս պատմական նշանակութիւն ունեցող գրութիւն, եւ այն՝ ըստ մեր 5 Բ ձեռագրին, բայց համեմատութեամբ Էջմիածնի ձեռագրին՝ ցորչափ ի մէջ բերած է Միաբան։ Հատածի բաժանմունք չկան Էջմիածնի ձեռագրին այլ կան մեր ձեռագրին մէջ։

Իսկ “Գիրք Հերձուածոց„ երկասիրութեան վրայ կը խօսինք յաջորդ (Դ.) հատածին մէջ։

# ԽՈՍՐՈՎԿԱՅ ԹԱՐԳՄԱՆՉԻ ՀԱՅՈՑ

## *Առ այնոսիկ որ ասեն բնութեամբ անձեռ եւ[1] անսկիզբն ընկալեալ զմարդկութիւն Աստուած Բանն ի կուսէն:*

1. Ոչ ուրուք երբէք նախ քան զվախճան առնուլ մեղացն տեսանեմք գտանել զոք զԱստուած[2]. եւ վկայ աստուածայինն[3] առ ի մէնջ ասիցս գիր. “Զեւ են, ասէ, լցեալ Ամուրհացւոցն[4] մեղք:„ [5] Զնոյն տեսանեմք եւ ի վերայ Յուդայի եղեալ ի Քրիստոսէ: Զի այն՝ որ իբրեւ զմերձակայ[6] զհանդերձեալսն տեսանէր, եւ զիւրաքանչիւր ոք ճանաչէր նախ քան զաշխարհս հիմնեցուցանել, չարութեամբ ախտացելոյն՝ թոյլ տայ ընտրելոցն հաղորդակցել[7] բարութեանցն, այլ եւ զտնտեսութեանն հաւատալ նմա գործ՝ որ անհաւատ պարգեւացն գտանէր պտուղ[8]: Նաեւ[9] այժմ աւասիկ առ մեզ այնպիսի իմն առժամանեաց[10] փորձութիւն քան զոր յառաջ դոյզն ինչ ժամանակաւ ծածկել[11] ջանայաք ընդ քաղցրութեամբն Աստուծոյ եւ մարդասիրութեամբ՝ ոչ հրապարակելով զատահակութեանն նորա զանմարդութիւն. եւ ոչ միայն զխոստացեալսն ի վերայ ոչ ածելով նմա իրաւապէս ինչ արարաք առ անզուգաչարափառագունի միւսոյ մասին, այլ եւ յոլովագոյնս զսիրոյն մատուցանելով

---

[1] “Եւ„ չունի 5 Բ:
[2] 5 Բ “աստուած:„
[3] Այսպէս 5 Բ եւ 920 (Էջմ.):
[4] 5 Բ “ամուրհացւոց:„
[5] Այս նախադասութիւն չէ հրատարակած Միաբանն:
[6] 5 Բ “մերձեկայ:„
[7] 5 Բ “հաղորդակցեալ:„
[8] Հոս կը սկսի 920 (Էջմ.) ըստ հրատ. Միաբանի:
[9] 5 Բ “Նախ եւ.„ 920 “Եւ այժմ„ եւն:
[10] 920 “ժամանեաց . . . քանզի որ . . .:„
[11] 5 Բ “ծածկեալ:„ — “ջանացաք:„

յեղանակս[1] առաւել քան թէ արժանաւորաց սիրոյն՝ ոչ առ այլ ինչ, այլ աստցելոյն[2] ակն ունելով իբրու[3] թէ Տէր Աստուած կամի զի արդարասցի եւ բարձրասցուսցէ զօրհնութիւն[4]։ Այլ վախճան իրացն յայտ հակառակ մերոյս երեւիւր կարծեացս, զի որ ուտէրն ընդ մեզ՝ յաճախեաց առնել ընդ մեզ խաբէութիւն։ Զի յորդորէր զմեզ ի ժողով[5] գումարել, զժողովոյն պատճառս զաշխարհիս[6] մերոյ մարդիկ դնէր[7], եւ զմի եւ զնոյն իր միաբանութեան եւ բարժանման կազմէր հնարս։ Խոստանայր ցածուցանել ի ժողովոյ անտի զոտարափառութեան իւրոյ ջերմութիւն, եւ զանչափագիւտն ի բաց թողուլ նորաձեւութիւն կարգաց, կրօնից եւ պաշտամանց։ Այլ եւ որ ծայրագոյն կրճիմն է ընդ մէջ[8] մեր եւ արեւմտականացն, յանձն առնոյր ընդ մեզ միաձայնել մի բնութիւն ըստ գերահրաշ միաւորութեանն Աստուածն Բանի մարմնացեալ[9] խոստովանել՝ ասելով. "Ընդէ՞ր ոչ զասասցեալսն ի սրբոց Հարցն ասացից եւ ես.„ յիշեցուցանելով յանուանէ զԱթանաս, զԿիւրեղ, զԵփրեմ, զՅուլիոս Հռովմայ[10] եւ զայլս։ Առ այսոքիւք եւ պայմանս իմն վճռաձեւապէս առ միմեանս հաստատեալ յերիւրէր՝ ոչ մեզ զժողովն Քաղկեդոնի եւ զՏումարն Լեւոնի յիշել եւ ոչ իւր. նոյնպէս եւ զաշխարհիս մերոյ անտի եւ այսր զեկեղեցեաւս վերակացուս. որ թէպէտ եւ անմարթ էր զաւանդութեան հարանցն փոխել զկարգ եւ ոչ կատարելապէս ատել զատեցողսն[11]

1 920 "եղանակս։„
2 920 "աստցելոցն։„
3 920 "իբրեւ թէ։„
4 5 Բ "օրհնութիւն։„
5 920 "ժողով գումարել։„
6 5 Բ "աշխարհիս։„
7 5 Բ չունի "դնէր,„ որով անկատ է։
8 5 Բ "ընդդէմ մեր.„ եւ ի լուսանցս "ընդ մէջ ...։„
9 Այսպէս լաւ եւս (= 5 Բ) քան "... մարմնացելոյ„ ըստ 920։
10 920 "Հռոմայ։„
11 920 "զատեցօղսն։„

զՏէր, համայն զպատառման[1] Նորա ընդ միտ ածե-
լով՝ մեծագոյն վարկեալ զմիաւորութիւնն զՀեա
տայաք զմեզ եւ յայսմիկ առ ի նմանէ ասացելոցն։
Այլ եւ զանուանեալն իւր մեծ՝ եւ զօրս ընդ Նովաւ
ընդ մերոյ ի ձեռին կարգեալ խոստանայր իշխանու-
թեամբ։ Առ այսոքիւք եւ այսպիսեօքս առանձինն
հրապուրէր բանիւք. իսկ առ այլս զյաղթասիրելն
պարծենայր[2] զիւր եւ զմեզ ի պարտութիւն արկա-
նել. մինչ զի թէ[3] ոչ Տեառն օգնեալ էր, փոքր
միւս եւս լինէաք ծիծաղելիս բազմաց։ Այլ եւ
դժնդակագոյն եւս քան զծիծաղելն ասացէ[4] ոք
զայնքանեաց ժողովրդոց տեսանելով զչփոթու-
թիւն, որք ոչ նմանապէս իւրեանց վախճանի ելից
ակն ունելով տարակուսանային։ Զի զոմանս հոմա-
կամութեան կարծիք բարկութեամբ զինէին՝ տե-
սանելով զմեր առ նա խաղաղասիրելն, իսկ այլք
զօրանալ հակառակամարտին եւ իւրեանցն տկարա-
նալ գլխոյ երկուցեալք. եւ այսոքիկ՝ մերայնոցն։
Իսկ Նորայքն [այօղէս] եւ որ ի նորուն սուտ սատա-
պարծ բանիցն քաջալերեալք, զյաղթութեան նմա
սպասէին բիւր[5] փառս։ Իսկ ապա յորժամ աս-
տուածային օգնականութեամբն ի յուսոյն զրկեալ՝
հակառակ այսօրիկ եղեն հանդիպեալ, առ այլ իմն
տեսակ խաբէութեան փոխեալ անկանէր[6] իբրու
թէ զհակառակութեան իւրոյ բանս[7] գրով լուծա-
նել իսկ միանգամայն՝ որպէս[8] թէ զհայցուածոցն
մերոց կատարել փափագումն։ Իսկ յորժամ այսո-
քիկ եւ սուտութեան նորա հոլանիւր կեղծիք, եւ[9]

---

[1] Այսպէս 5Բ եւ 920։
[2] 920 “պարծանայր . . . զիւրեւ։„
[3] 920 “եթէ ոչ։„
[4] 5Բ “ասաց ոք։„
[5] 920 “բերել փառս։„
[6] 5Բ “անփանէր։„
[7] “Բանս„ չունի 5Բ, ուստի անկապ։
[8] 5Բ լոկ “թէ„ անյարմար։
[9] 920 չունի “եւ։„

պարզաբար զառ մեզ Թշնամութիւնն,[1] եւ զժողովոյն Քաղկեդոնի յայտնէր զհամաձայնութիւն. զի եւ գիրն՝ զոր խոստանայր առնել զնոյն վկայէր. մինչ զի ապա ցասուցեալ մեր ի վերայ այնպէս բազմաթիւր եւ բազմայեղանակ[2] բարոյիցն, ասացաք առ նա թէ “Զայդ զոր գրեցերդ եւ բերեր առ մեզ զըստ սահմանին Քաղկեդոնի բանս, կարծեր մինչեւ ցայժմ զդոյզն ո՞չ էաք լուեալ եւ ո՞չ դիտացեալ, այսօր ի քէ՞ն պէտք եղեն ուսանելոյ սկիզբն առնել. կամ այնքան աւուրս առ միմեանս մեր միաբանելոյն խորհուրդ զա՞յդ երեւեցոյց պտուղ:„ Առ որ պատասխանեալ ասաց. “Տիեզերաց աչք յիս հային, եւ ինձ ամօթ մեծ է ի միաբանելոցն քակիլ եւ ընդ անմիաբանիցն լինել, եւ դարձեալ զի դուք եւ զմի ոչ ինչ յիմոց անտի կատարեցէք խնդրոց[3]:„ Զի յառաջ քան զայս ասէր ձեռնադրութիւնս տալ ուխտի մանկանց, եւ ի քսանեւհինգն[4] Դեկտեմբերի Ծնունդ[5] առնել, եւ զերեքսրբեան օրհնութիւնն ի վերայ Երրորդութեանն եւ ո՛չ ի վերայ Որդւոյ միայն նուագել[6]՝ ի բաց հանելով անդուստ զխաչեցարն, եւ որ ինչ սոյնպիսիք[7]:

2. Առ որ ասացաք. “Զանց առնելով զայլովքն ամենեքումբք իբրեւ յոյժ նուաստագունիւք եւ որովք ո՛չ այնքան յընդունելն օգտեսցի[8] եկեղեցի եւ ո՛չ յոչ-ընդունելոյն վնասեսցի[9]. բայց յերեքսրբեանն յիրաւի բերեմք ի ներքս զխաչեցարն. զի զհասարակական անուանսն ի վերայ Որդւոյ ասել[ով]

---

[1] 5Բ “զառ մեզ Թշնամութեանն„ անյարմար:
[2] 920 “բազմաեղանակ:„
[3] 920 “խնդրոցն:„
[4] 920 “ի քսան եւ ի հինգ:„
[5] 920 “Ծննունդ:„
[6] 5Բ “նուագեալ:„
[7] 920 “այնպիսիք:„
[8] 5Բ “օգտեսցէ:„
[9] 920 “եւ ոչ յոչ-ընդունելն վնասեսցի:„ Այս բառերով կը լմննայ Միաբանի հրատարակած կտորը: Յաջորդը լոկ 5Բ ձեռագրէն է:

զնա եւ մարդ լեալ գոհաբանեմք մահու խաչի համբերելով վասն մերոյ փրկութեան։ Բայց դու յանձնառական անուանսն որպէս արդեօք յատկացուցանես զհաստատականսն՝ օտարադեղութեան տալով կարծիս, ի մի եւ ի նոյն բնութիւն։» Ընդ որ ոչ կարացեալ ելանել։ Դարձեալ ասացաք առ նա. «Իսկ զի՞րդ գրեցեր դու երկուս բնութիւնս ունել Քրիստոսի ի միում դիմի եւ առանձնաւորութեան. աղէ ասասցես մեզ՝ թէ զմի դէմս ի Քրիստոս ըստ նոյնութեա՞ն ասես թէ ըստ միաւորութեան։» Նորա զառ ի միաւորութենէն երկուցեալ ասել զմինն՝ թէ դուցէ նովիմբ. եւ մի ասել բնութիւն հարկաւորեսցի ի Քրիստոս, պատասխանի ետ. «Ես բնութիւն եւ ո՛չ դէմս մարդկային խոստովանիմ ընդունել բանին ի կուսէն։» Առ որ ասացաքն. «Չէ հնար բնութեան առանց դիմի իմանալ կամ ասել ըստ ամենայն հարկաւորութեան. յաղագս որոյ պարտ է քեզ երկուս դէմս ասել ըստ երկուց բնութեանցն, եւ կամ ըստ միոյ դիմին մի ասել եւ բնութիւն, եւ կա՛մ ապա եւ թէ ոչ մի ոք ի դոցանէ, հա՛րկ է զմիջինն խնդրել՝ որ բարեպաշտութեանն է, որով եւ ճշմարտութիւնն պայծառանայ։» Իսկ նորա զկապումն բանի ոտիցն խնդրել զարձակումն եւ կամ թէ ընդ ձեռն ոտիցն խորհեցեալ հանեալ զբանն ի տանէ կապանաց՝ ասաց. «Զոր հարկեցուցանէքդ զիս ասել վասն մարդկային դիմին, գրով զձերն առ իս առաքեցէք խոստովանութիւն. ի ձեռն գրոյ եւ զպատասխանին ընկալջիք յինէն՝ զայդորիկ համաձայն։» Եւ զայս ոչ ուղիղ ինչ մտօք, այլ կարծէր ի գրելոցն մերոց առ նա ընդ հնոց ուրուք չարաղանդութեամբ զմեզ արկանել. սակայն մեք գրեցաք առ նա՝ զոր խնդրէրն ըստ օրինակի երկիւղածայ Տեառն, եւ որոյ յաղագս սիրոյն զամենայն ինչ վէր ի վայր մոռանալ զյանցանայն օրինադրեալք, եւ մանաւանդ զի եւ պարզեալ զնա կամեցաք՝ ի պատասխանականացն անտի նորայոցն առ մեզ գրեցելոյ՝ թէ զի՞նչ խոր-

հիցի, եւ ո՛չ ումեք արդեօք ձայնակից գտանիցի։ Եւ էր[1] այս. “Ոչինչ պէտս ունի առաջնորդի, որոյ աչք իւր առողջապէս կարիցեն նկատել. եւ ոչ վարդապետի ումեք կարօտացի՝ որ զանմոլարն սիրեսցէ գտանել հաւատոյն բան։ Բայց արդ՝ եթէ տացէ քեզ Աստուած շնորհս բարեպաշտութեան եւ խնդրես ճշմարտութեանն ընդ մեզ լինել խոստովանակից, ասասցես՝ որպէս բնութիւն մարդկային, ընդ նմին եւ դէմ մարդկային առնուլ բանին ի կուսէն. եւ որպէս զդէմ բանին եւ մարմնոյն իւրոյ ընդ ձեռն միաւորութեան՝ մի խոստովանելով դէմ, այսպէս եւ զբնութիւնսն աստուածայինն[2] եւ զմարդկայինն մի դաւանել բնութիւն յանճառ միաւորութեանն. եւ զկենդանարար մարմինն փրկչական խոստովանելով հաստատել յարդանդէ կուսին մինչեւ յաւիտեան չարչարելի եւ մահկանացու ըստ բնութեանն, եւ անչարչարելի եւ անմահ ըստ միաւորութեանն բանի. եւ միանդամայն պարզաբար զաստուածայինսն՝ մարդկայինս. եւ զմարդկայինս՝ անուանել ածայինս ըստ անճառ միաւորութեանն, որպէս եւ սրբոյն ուսուցանեն հարանցն ճառք։„

3. Առ ի Սրբութենէդ ձերմէ[3]. “Տուաւ ինձ գիր հարկաւորութեան՝ պահանջեալ ի մէնջ՝ ասել

---

[1] 5 Բ “Եւ Էր այս.„ որ անյարմար կ'երեւայ, վասն զի անշուշտ “եւ էր այս„ ըսելով կ'ուզուի ըսել թէ այս էր նամակը։

[2] 5 Բ “զաստուածայինսն եւ զմարդկայինսն։„

[3] Այսպէս անջատել պէտք երեւցաւ իմաստին ամբողջութեան, թէեւ ձեռագիրն առանց ընդհատման կը գրէ “Առ ի սրբութենէդ ձերմէ տուաւ ինձ գիր հարկաւորութեան պահանջել ի մէնջ՝ ասել զմարդկային դէմ„ եւն։ Այս խօսքերն են այն կաթուղիկոսին նամակն առ Խոսրով, որուն դէմ սա ապա կը սկսի յաջորդ մասերուն մէջ մանրամասն կռուիլ՝ կոչումն ընելով այս բառերը։ Առաջին կոչումն է “Ասացեր՝ Հարկաւորութեան„ խոստովանել...։ Ասացեր՝ Այս ինչ ոչ այլ ինչ երեւի„ եւն եւն։ Յայտնի է ուրեմն որ “... գիր հարկաւորութեան ...„ բառերն կաթողիկոսին նամակէն են։ Թերեւս նախնաբար գրուած էր “Առ ի Սրբութենէդ ձերմէ ——— պատասխանի„ կամ նման բան մը, որ դուրս ինկած է։

զմարդկային դէմ առնուլ բանին ի կուսէն. եւ այս ինձ այլ ո՛չ ինչ երեւի՝ քան թէ առել զմի՜ մարդառնուլ։ Զի ամենայն մարդ յորմէ հետէ ձեւանայ յարգանդի՝ յայնմհետէ իմացեալ լինի դէմ. քանզի այսպէս [եւ] ոչ այլ ինչ գիտեմ զդէմն քան թէ զմի՜ մարդ։ Արդ թէպէտ եւ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ոչ ուրանամ մարդկայնովս երեւել մարդկան դիմաւ, այլ քանզի փոխանակ սերման զԲանն առեմ ժամանել յարգանդ կուսին, ըստ այնմ մտաց՝ մի առեմ զդէմն։ Իսկ մի բնութիւն յետ շարադրութեանցն՝ ո՛չ զոք ի Հարցն գիտեմ խոստովանիլ։ Զի թէ ոչ տեսանէի՝ զբոլոր խնդրեալսն հակառակ հարցն՝ ամենայն ուրեք համբուրէի զառ ձեզն ձայնակցութիւն. այլ զի ամենայնիւ տեսանեմ զձեզ փութացողս առանց հերձուածոյ ատեցման սուրբ ժողովոցն։ Զի՞նչ եւս այլ շատ խօսեցայց. մանաւանդ թէ ի վերն երեսական բարժանմանս, որ քան զՆեստորին եւս աջագին թուի. յոյժ զարմանամ Նորայն[1]։" Եւ այսոքիկ մերն առ նա, եւ Նորայն առ մեզ գրեցելոցն բանք[2]։

---

[1] "Զի՞նչ եւս այլ շատ խօսեցայց . . ." Նախադասութիւնը, բայց մանաւանդ այս "յոյժ զարմանամ Նորայն" խօսքը խնդրական է՝ թէ մա՞ս է կաթուղիկոսին նամակին թէ ոչ։

[2] Հոս կը լմննայ մեզի համար կարեւոր կտորը։ Յաջորդով կը սկսի Խոսրով կաթուղիկոսին այս վերջին նամակին ընդդիմաբանութեան մանրամասն, եւ այս է ամբողջ գրութեան Ա. Մասին նիւթը։



## Դ.

## ԳԻՐՔ ՀԵՐՁՈՒԱԾՈՑ

Այն մտադրութեան եւ հետաքրքրութեան՝ որով ընդունուեցաւ Խոսրովկայ անուամբ գրութիւնը, արժանի չեղաւ Միաբանի հրատարակած երրորդ փոքրիկ գործքը, որ ըստ ինքեան ամենէն աւելի հետաքրքրական պէտք էր ըլլալ դիտնոց թէ իր բովանդակութեամբն եւ թէ իր հեղինակին պատճառաւ։ Այս գրքոյկն էր "Գիրք Հերձուածոց[1]" անուամբ համառօտ ցուցակ մը բազմաթիւ մոլորութեանց որ քրիստոնէական առաջին դարուց մէջ յերեւան եկած են։ Այսպիսի գրքոյկ մը պէտք էր գոնէ քննուիլ թէ ինչ աստիճանի հնութիւն եւ պատմական արժէք ունի, եւ եթէ հնար է՝ ո՛ր հեղինակի գործն է։ Ընդհակառակն ամենօրեայ թերթի մը մէջ, զոր յիշելն աւելորդ կը համարինք, տրտունջ լսուեցաւ որ Էջմիածնայ մամուլը հերետիկոսաց անուամբք եւ պատմութեամբք զբաղիլ սկսեր է։ Եթէ քիչ մ'աւելի ուշադրութիւն դարձուէր այս "Գիրք Հերձուածոց" գրութեան, այսպիսի մեղադրութիւն մ'աւելորդ կ'ըլլար։ Թողլով իսկ գրութեան պատմական յարգը մէկդի, գրքոյկն այնպիսի Ս. Հօր մը գործն է, զոր նաեւ Հայ եկեղեցին յարգած է միշտ, եւ իր յարգանքն յայտնած՝ անոր բազմաթիւ գրութիւնքը թարգմանելով հայ լեզուաւ. — գրքոյկիս հեղի-

[1] "Գիրք Հերձուածոց," հրտ. Միաբան. (արտատպ. "Արարատ" ամսագրից։) Վաղարշապատ, տպ. Էջմ. 1892։ $8^0$ Բ + 22 էջ։ Գինն է՝ 50 կ.։

նակն է Ս. Եպիփան՝ գոնէ առաջին եւ մեծագոյն մասին։ Յաջորդ մեր քանի մը դիտողութեամբք պիտի ջանանք թարգմանութեանս ունեցած ներքին արժէքը լուսաբանել։

Միաբանի հրատարակած գործքը ՃԾԸ փոքր հատուած ունի կամ այնչափ թուով հերեսութեանց համառօտ պատմութիւնն է։ Մեր քննութիւնը պիտի ցուցընէ որ գրութիւնն այս ձեւին մէջ՝ անճահ խառնուրդ է եւ անշուշտ այլեւայլ գրչակաց արդիւնք, եւ թէ բուն հիմնական մասը՝ Ս. Եպիփանու գործքն՝ են միայն ՀԸ հատուածք։

Այս գործքը միայն մէկ ձեռագրի մէջ գտած կ'ըսէ Միաբան, այն է Էջմիածնի Գրատան Թ. 2005[1] ձեռագրի մէջ, որ շատ նոր ձեռագիր մըն է, եւ գրուած է Կ. Պոլիս 1621ին Սահակ անուն գրչէն, "պարզ եւ գեղեցիկ նոտրգրով, սակայն սաստիկ շատ սղագրութեամբ եւ պատիւներով։" Միաբան կը յաւելու ալ թէ "Մեր Մատենադարանի մի քանի ձեռագրում գտնուած Որտանու–Ընդ–ն Կերցոու–ձողոց կամ Բանք Կերցոու–աձողոց կոչուած գրութիւնները, որչափով որ մեզի յայտնի են, կամ բոլորովին տարբեր բաներ են եւ կամ նոյն այս մեր հրատարակածի չնչին եւ սխալաշատ պատառիկներ։"

---

[1] Այս Թ. 2005 Մայր-Ցուցակի մէջ (էջ 210—211) "Տօմարի մեկնութիւն Յակոբայ վարդապետի Ղրիմեցւոյ" է, ուր կան ուրիշ շատ կտորներ, բայց Հերձուածողաց նկատմամբ բան մը չէ նշանակուած. բաց աստի այս "ուղղածալ նոտրգիր գրեալ ի թղթի" ձեռագրին համար կ'ըսուի թէ "չունի զյիշատակարան։" իսկ Միաբան կը դնէ յիշատակարան մ'այն ձեռագրէն՝ ուստի հանած է "Գիրք Հերձուածոցն," որ է այս. "Թվին կենարարին. ՌՈԽԱ. եւ ի հայոց թվին. ՌՀ. գրեցաւ ի քաղաքն ի Ստամպօլ, ձեռամբ յոգնամեղ Սահակի։" կամ Միաբան վրիպակաւ նշանակած է ձեռագրի թիւը եւ կամ Մայր-Ցուցակի մէջ մոռցուած են յիշուիլ այս ամէնը։ Կրնայինք կարծել որ 2006 ձեռագիրն է Միաբանի յիշածը, բայց գրիչն ու ժամանակն չեն համաձայնիր։ (Հմմտ. յաջորդ Ծան.։) Միաբան որ "այս ձեռագրի մասին շուտով աւելի մանրամասն գրելու" խոստումն ըրած է, անշուշտ պիտի պարզէ այս կէտը։

Սակայն եւ այնպէս չենք կարծեր որ Էջմիածնի Հաշուառոր ձեռագրաց մէջ չգտնուին այս գործքիս շատ մը օրինակներ. վասն զի այնպէս հազուագիւտ չէ այս գրութիւնս: Թերեւս՝ օրինակի աղագաւ՝ ուրիշ գործք չըլլայ Մայր-Ցուցակի Թ. 2006 ձեռագրի "Բովանդակ անուանք հերձուածողաց„ վերնագրով գործքը:[1] Ճիշդ սոյն գործքը կը գտնենք նաեւ Մեր Մատենադարանի 56Ա[2] ձեռագրին մէջ՝ դժբախտաբար նոյնպէս աղաւաղ եւ սխալաշատ: Նման գրութիւն մ'ալ արդէն լոյս տեսաւ, եւ այն՝ մօտերս շաբաթաթերթի մը մէջ.[3] անշուշտ վերջինս Միաբանի յիշած "Որքանութիւն հերձուածոց„ եւն հատուածիկներուն կարգէն է:

Մեր 56Ա ձեռագիրը 1745—6ին գրուած Ոսկեփորիկ մըն է՝ հաւաքածոյ այլեւայլ գրութեանց, ուր կան ի մէջ այլոց Բարոյախօս, Առակք, Քարոզք, Խրատք Իմաստասիրաց, Կանոնք Ազգականութեան, Պատմութիւն Մակարայ միայնակեցի եւն եւն: Ձեռագիրը նոր թղթի վրայ՝ կէսը նոտրգիր եւ միւս կէսը մաքուր եւ մեծ բոլորգիր գրութեամբ, բազմաթիւ դատարկ, յաւելուածոյ եւ պակաս թղթերով գրութիւն մըն է. (թուղթք 332, մեծութիւն՝ 21, 5×15, 5 սնդ. տողք 21—24.) եւ գրուած Ալեքսիանոս անուն գրչէն[4], եւ շատ մ'անձանց ձեռօքն անցած, ինչպէս այլեւայլ յիշա-

---

[1] Թիւ 2006 "ուԹածալ նոտրգիր գրեալ ի թղթի ի Ջուղայ առ ոտն սուրբ Աստուածածնի եկեղեցւոյն յերեմիայ քահանայէ ի թուին Հայոց ՌԽԹ(=1600.) ուր կայ ի մէջ այլոց "բ. Բովանդակ անուանք հերձուածողաց„ վերնագրով գրութիւն մը:

[2] Թ. 56Ա, ա, թղ. 72b—83a:

[3] Հմմտ. "Փունջ„ շաբաթաթերթ, Կ. Պոլիս, 1892, Թիւ 2294: Հրատարակիչն է Յ. Վ. Պ. ի Կեսարիա:

[4] Թղ. 4b "Գիրք որ կոչի ոսկեփորիկ արարեալ սրբոց վարդապետաց . . . . գրեալ եղեւ ի թվականութեան որ է սկիզբն մատենիս. ՌՃՂԴին (= 1745). սկիզբն եղեւ. ՌՃՂԵին. (= 1746) կարողութեամբն կենարարին աւարտեցաւ . . . յիշեցէք զանարժան ծրօղս հող եւ մոխիր Ալեքսան երէցս Եւ ծնօղքն իմ զաւետիսն եւ սառան„ եւն: Հմմտ. նաեւ թղ. 310a:

տակագրութիւնք եւ կնիքներ կը ցուցընեն[1]։ Մեզի համար այժմ կարեւոր կէտն, որ Հերձուածոց պատմութիւնն է, կը յաջորդէ Առակաց։ Հատուածիկները բաժնուած չեն իրարմէ թուահամարով կամ այլ կերպով, բայց ամէն հատուածին առաջին տառը կարմրագիր է, եւ ամէնէն յառաջ ալ խեղճ զարդագիր մը կայ։ Ինչպէս պիտի տեսնենք, մեր ձեռագրին այս մասին մէջ՝ բաւական մեծ թերի մաս մը կայ։

Միաբան իւր հրատարակութեան Յառաջաբանին մէջ դուշակած էր արդէն որ "գրուածքն երեւում է թարգմանական," եւ աւելի յառաջ երթալով՝ թէ "սա ուղղակի կամ անուղղակի կապ պէտք է ունենայ Ս. Եպիփանու Կիպրացու գլուխգործոց Panariumի կամ Հերձուածոց գրքի հետ." եւ դարձեալ որովհետեւ Ս. Եպիփանու այն գործքը շատ ընդարձակ բան է, կը հետեւցընէ որ մերն "աւելի համապատասխանում է Ս. Եպիփանու մի ուրիշ երկասիրութեան՝ Anacéphaléosին, որը Panariumի համառօտութիւնն է։" Այս ենթադրութիւնքն արդէն հաստատուն հիման վրայ են. եւ եթէ Միաբան քիչ մ'աւելի մտադիր ըլլար Ս. Եպիփանու գործոց, (— զոր տեսած չ'երեւար, վասն զի իւր տեղեկութիւնը կ'առնու ուրիշ տեղէ մը[2], —) դժուարին չէր տեսնել որ իւր հրատարակած "Գիրք Հերձուածոյն" ուրիշ բան չէ, բայց եթէ ճշգրիտ՝ բայց աղաւաղ՝ թարգմանութիւնն Ս. Եպիփանու Հերձուածոց գրոց գլխոց ցանկին։

Եպիփան, որուն անունը կրող գրութեանց առմեզ հասած հայ թարգմանութիւնք շատ մեծ

[1] Հմմտ. Թղ. 1a, 4a, 5a 222a, 317a, b, 318b, 328b, 329b, 332b։ Աւելի մանրամասնութիւնք՝ Ձեռագրաց Ցուցակին մէջ։

[2] Հմմտ. Յառաջ. Ա, Ծ. 1, ուր ի կոչումն կը բերուի Migne, Dictionnaire de Patrologie.

թուոյ են[1], եւ որոնց ոչ սակաւ մասը միայն հայերէն կայ ցայժմ[2], Արեւելեան Ս. Հարց նշանաւորներէն է, եւ ծնած է ի Յուդայաստան՝ Ելեւթերուպոլեայ մօտ Բեսանդուկ գիւղը՝ 310ին Յ. Ք., Կիպրոսի Սաղամինայի (Կոստանդիայի) հայրապետ ընտրուած 367ին եւ մեռած 403ին, երբ Կ.Պոլսէն ուր Ս. Ոսկեբերանի խնդրոյն համար գացած էր, կը դառնար։ Իւր կենսագրութիւնը[3] յայտնի է եկեղեցական պատմութեան հետամտից, մանաւանդ իւր շատ մը վիճմամբքն՝ զոր ունեցաւ Երուսաղէմայ Յովհաննէս հայրապետին (— յորում իւր կողմն եղաւ Ս. Հերոնիմոս, —) եւ Ոսկեբերանի հետ, զոր հոս կրկնել աւելորդ կը համարինք։ Բաց ի յունարէնէ՝ տեղեակ էր եբրայական, ասորի, եգիպտական եւ մասամբ նաեւ լատին լեզուաց, եւ այս է իւր գրոց բազմակողմանիութեան պատճառներէն մին։ Եպիփանու բազմաթիւ գործոց մէջ[4], որոնց վրայ մանրամասն ուսումնասիրութիւնք եղած են շատ անգամ[5], երկու գործք ի մասնաւորի նշանաւոր են,

---

[1] Հմմտ. առ ժամն "Մատենագրական Թարգմ. Նախնեաց։„ Վենետ. 1889, էջ 401—418։

[2] Այսպէս՝ մեր Մատ. Թ. 49Գ ձեռագրին շատ կտորները, թէեւ մեծ մաս մ'ալ անվաւեր է անշուշտ։

[3] Սրբոյն կենսագրութիւնը գրած է՝ թէեւ քիչ մը զրուցախառն՝ իւր Յովհաննէս աշակերտը։ Հմմտ. Migne, Patrol. Series Gr. XLI, p. 115—152։ Համառօտ բայց հետաքրքրական կենսագրութիւն մ'ալ նոյն Յովհաննիսի անուամբ կայ հայ թարգմանութեամբ. (տես Ձեռ. մեր Մատ. Թ. 56 Ա, ա, էջ 1—9։

[4] Եպիփանու գործոց առաջին տպագրութիւնն եղաւ ի Պազէլ 1544, ապա շատ անգամ ի Փարիզ։ Լաւագոյններէն է Epiphanii ... Opera omnia (յոյն-լատին), ed. Petavius, Paris. 1622, եւ editio nova, Coloniae 1682, Tom. I, pp. 1138 եւ II, pp. 394, երրորդ անգամ՝ Rom. 1743. — Լաւագոյնն է Migne, Patrol. Cursus Completus. Ser. Gr. t. XLI—XLIII. Միայն յոյն բնագիրը՝ G. Dindorf, Epiph. Op. Lipsiae 1853—63, t. I—VIII. Երկու գլուխ-գործոցները միայն v. Ohler, Op. Berolin. 1855. Հմմտ. Gallandius, IX եւն։

[5] Հմմտ. Migneի Prolegomena. Petavii Animadversiones in S. Epiphanii Panarium, ed. Ohler, Berol. 1861. D. Gervais, l'hist. de la vie de S. Epiphane,

որոնք կապ ունին նաեւ մեր խնդրոյն հետ։ Երկու քահանայից եւ պամփիւլիացի աշխարհականի մը խնդրանօք գրեց նախ Եպիփան 374ին Յ. Ք. իւր "Խարսխեալ" (ἀγκυρωτός=Ancoratus) գործքը,[1] որ կ'աւարտի գեղեցիկ հանգանակաւ մը, այսինքն՝ անով, զոր Հայ եկեղեցին կը գործածէ ցայսօր, որուն ցայժմ միտ չէր դրուած[2]։ Սոյն այս գրութիւնը կարդալով Կարքեդոնի, Բերեայ եւ Կղեսուրի կողմերէ երկու վանահարք՝ Ակակ եւ Պաւղոս՝ նամակաւ[3] խնդրեցին Եպիփանէն որ աւելի մանրամասն գրէ հերձուածոց վրայ։ Այս խնդրանաց արդիւնքն եղաւ Եպիփանու գլուխ-գործոցն, որ սովորաբար "Ընդդէմ Ձ. Հերձուածոց[4]" կը կոչուի բայց նաեւ "Պանարիոն" կամ "Տուփ դեղոց" (Πανάριος, εἴτ' οὖν Κυβώτιος)[5], ինչպէս կը մեկնէ ինքն իսկ հեղինակը[6]։ Այս հսկայ գրութիւնն, որ պատմութիւն է հերձուածոց եւ հերքումն անոնց վարդապետութեանց եւ ուր յիշուած են նաեւ հեթանոսական եւ հրէական աղանդք, բաժնուած է երեք գրոց, որոնց առաջինն ունի երեք մաս, եւ երկու վերջինք՝ երկ'երկու, ամբողջը՝ եօթը մաս։

---

1738. Daucin, hist. de la vie etc. Paris 1720. Lipsius, Zur Quellenkritik des Epiphanius, Wien 1865. Հմմտ. նաեւ Tillemont, X, XII եւն եւն։

[1] Migne, XLIII, p. 12—236. Petav. II, p. (ed. Colon.) 1—125. Նոյնը հրատարակեց նաեւ Amerbach, Augsburg, 1548, եւ C. Thomasius: Institutiones theol. ant. Patr. Romae 1769, Vol. II. Գերմ. թրգմ. Wolfsgruber, Kempt. 1880 եւն եւն։

[2] Տես Հ. Յովսէփ Վ. Գաթրճեան, Հանգանակ Հաւատոյ որով վարի Հայ. եկեղեցի, քննութիւն եւն։ Վիեննա, տպ. Մխիթ. 1891։

[3] Migne, XLIII. Petav. I, եւն։

[4] Migne, XLI (p. 173—1290) եւ XLII p. (9—831.) Petav. (ed Colon.) I, 1—1108 եւն։

[5] Սովորաբար կը կոչուի նաեւ պարզապէս "Ընդդէմ Հերձուածոց.," (= Κατὰ αἱρέσεων=Adversus [LXXX] haereses.)

[6] Ի սկզբան թղթոյն առ Ակակ եւ Համառօտման. (Հմմտ. Petav. II, p. 126 B.)

Գրքին սկիզբը Եպիփան գրած է պատասխան[1] մը Ակակայ եւ Պաւղոսի Թղթին, որուն մէջ կը դնէ իւր ամբողջ գրոց ծրագիրը կամ հերձուածոց անուանքն այն կարգաւ եւ բաժանմամբ՝ որով պիտի խօսի գրութեան մէջ։

Ճշդիւ այս նամակին մէջ կը սկսի այն կտորը, որուն հայերէն թարգմանութիւնը հրատարակեց Միաբան "Գիրք Հերձուածոց" անուամբ. վասն զի Եպիփան իւրաքանչիւր գրոց եւ մասանց սկիզբը ցանկ մը դրած է անոնց մէջ բովանդակելի առարկայից։ Սակայն այս ցանկն այնչափ ընդարձակ է, որ համառօտ պատմութիւն մ'եղած է հերձուածոց. եւ ահա այս ցանկին թարգմանութիւնն է Միաբանի հրատարակածը, զոր կրնանք այսպէս դէմ առ դէմ դնել։

| "Գիրք Հերձուածոց։" | Եպիփան Ընդդէմ Հերձուածոց |
|---|---|
| Հատուածք՝ Ա—ԺԹ | Ցանկ Ա Գրոց Ա. Մասին։[2] |
| " Ի—ԼԱ | " " Բ " ։[3] |
| " ԼԲ—ԽԴ | " " Գ " ։[4] |
| " ԽԵ—ԿԲ | " Բ Գրոց Ա Մասին։[5] |
| " ԿԳ—ԿԷ | " " Բ " ։[6] |
| " ԿԸ—ՀԴ | " Գ Գրոց Ա Մասին։[7] |
| " ՀԵ—ՀԸ(Ձ) | " " Բ " ։[8] |

Եպիփան իւր այս գրութեան համառօտութիւն մ'ալ յօրինած է, զոր "Համառօտումն"

---

[1] Migne, XLI, p. 159—172 D եւն։
[2] Migne, XLI, p. 166C—172D, ապա Adv. Haer. Lib. I, Tom. I (p. 173—280).
[3] Անդ, p. 281—284, ապա Lib. I, Tom. II (p. 285—577).
[4] Անդ, p. 577—581, ապա Lib. I, Tom. III (p. 581—845).
[5] Անդ, p. 845—850, ապա Lib. II, Tom. I, (p. 850—1290).
[6] Migne, XLII, p. 9—11, ապա Lib. II, Tom. II, (p. 11—355).
[7] Անդ, p. 355—357, ապա Lib. III, Tom. I, (p. 339—639).
[8] Անդ, p. 639—640, ապա Lib. III, Tom. II. (p. 641—834)։

(᾿Ανακεφαλαίωσις — Anacephalaiosis) կոչած է իրաւամբք:[1] Բայց Եպիփան այս Համառօտութիւնն յօրինած է շատ անգամ բառ առ բառ օրինակելով իւր գրոց կտորներն: Ասով եղած է որ այն Ցանկը, զոր բնագիր ըսինք Միաբանի Հրատարակածին, բառ առ բառ դրուած է կրկին անգամ Համառօտման մէջ. այնպէս որ եթէ սկզբան եւ վերջին մասին կտորները մէկդի հանենք, կրնանք մեր "Գիրք Հերձուածոցն" թարգմանութիւն ըսել Եպիփանու Համառօտման:[2]

Այժմ խնդիրն այն է թէ հայ թարգմանիչն ուղղակի "Գիրք Հերձուածոցն" դիտմամբ ա՞յս ձեւով թարգմանած է — ընտրելով Եպիփանու միայն ցանկը, — թէ գրչագրաց արդիւնքն է այն, որոնք Եպիփանու սոյն գործքին ամբողջական հայերէն թարգմանութենէն քաղելով ցանկը՝ այս ձեւի վերածած ըլլան: Վերջին պատահականութիւնն ալ այնչափ խախուտ չէ. վասն զի՝ օրինակի աղագաւ՝ մեր այս "Գիրք Հերձուածոց"ի վերնագիրն անգամ խնդրոյ նիւթ է: Լաւ միտ դնելով կը տեսնուի որ սոյն վերնագիրն չէ բուն վերնագիր, այլ Եպիփանու գրքին մէկ խօսքն է, զոր կ'երեւայ թէ գրիչ մ'առած ըրած է վերնագիր: Միաբան կը խոստովանի որ "Գիրք Հերձուածոց" տիտղոսը չկայ Էջմիածնի ձեռագրին (— ինչպէս եւ ոչ ալ մեր ձեռագրին —) մէջ, այլ երկուքն ալ տիտղոս դրած են սա խօսքը. "Հերձուածողք երեւելիք այսչափ են եւ այսոքիկ զոր սերմանեաց սատանայ ի մարդիկ, (զոր կարգաւ ասեմք):" Արդ կը տեսնենք որ այս խօսքը Եպիփանու գրքին մէկ պարզ նախադասութիւնն է, որով կը հետեւի

[1] Հմմտ. Migne, XLII, p. 834—846. Petav. II, p. 126—157:

[2] Այնպէս որ մեր "Գիրք Հերձուածոց"ի կտորը կը գտնենք կրկին անգամ ի Migne, անդ, p. 839 C ff. Petav. II, p. 130C—150B. Գերմանացին Wolfsgruber զՀամառօտութիւն (ուստի եւ մեր "Գիրք Հերձուածոցն") թարգմանած է գերմաներէն. (Kempt. 1880.)

Թէ հայ գրիչը զայն վերնագիր ըրեր է՝ չօրինակելով նախորդները։ Ահա Եպիփանի ամբողջ խօսքը։

Epiph. AB[1]

Αὕτη ἡ ἀνακεφαλαίωσις, καὶ ἐπιγραφὴ τῆς πάσης κατὰ τῶν[2] ὀγδοήκοντα αἱρέσεων πραγματείας, καὶ μιᾶς[3] τῆς ὑπὲρ ἀληθείας ἀπολογίας, τουτέστι[4] τῆς μόνης Καθολικῆς Ἐκκλησίας, ἐν τρισὶ μὲν βιβλίοις ὑποκειμένη συντεταγμένως[5], ἑπτὰ δὲ[6] τόμοις διαιρεθεῖσα. Ποιησόμεθα δὲ πάλιν ἀνακεφαλαίωσιν ἑτέραν[7] τοῦ πρώτου τόμου τοῦ πρώτου βιβλίου τοῦ κατὰ τῶν εἴκοσιν αἱρέσεων διαλαμβάνοντες. Πρῶτον μὲν γὰρ[8] αἱ τῶν αἱρέσεων πασῶν μητέρες[9], καὶ πρωτότυποι ὀνομασίαι, ἐξ ὧν ἄλλαι[10]

(Հայ. Թարգմ.)

"Այս ինչ է Համառօտումն եւ վերնագիր բովանդակ գործոյս ընդդէմ Ձ. Հերձուածոց եւ միակ ջատագովութեան վասն ճշմարտութեան այսինքն միոյն կաթուղիկէ Եկեղեցւոյ, յերիս գիրս կարգեալ՝ յեւթն մասունս (հատորս) բաժանեալ։ Կարգեմք աստէն զայլ իմն Համառօտումն առաջնոյ մասին առաջին գրոց յորում են հերձուածք ի։ Քանզի նախ ամենայն հերձուածոց մայրք են նախկինն անուանակոչութիւնք, յորոց այլքն յառաջ եկին, այս են. Նախ Բարբարոսութիւն" եւն։ (= "Հերձուածողք

---

[1] Այսուհետեւ համառօտութեան համար հետեւեալ նշանները պիտի գործածենք։ B=Եպիփանու "Համառօտումն" (Anacephalaiosis) ըստ հրատարակութեան Պետաւիուսի (Colon. 1682)։ — A=Եպիփանու Ընդդէմ Հերձուածոց (Panarium) ըստ նոյն հրատարակութեան։ — Է=Էջմիածնի Թ. 2005 ձեռագիրն (ըստ հրատ. Միաբանի։) — 56Ա=Ձեռագիր մեր Մատ. Թիւ 56 Ա ա, Թղ. 72b—83a.

[2] A չունի τῶν.

[3] A: μία.

[4] A: τουτέστι τῆς καθολικῆς καὶ ὀρθοδόξου Ἐκκλησίας.

[5] A: ὑποκειμένοις συντεταγμένη.

[6] A: ἐν ἑπτὰ κτλ.

[7] A այլազգ· τὰ δὲ ἔνεστιν ἀνακεφαλαίωσις πρώτου τόμου τοῦ πρώτου βιβλίου, τοῦ κατὰ τῶν εἴκοσι αἱρέσεων ἐλέγχου οὕτω.

[8] A չունի γάρ.

[9] A: μητέρες τε καὶ πρωτότυποι καὶ ὀνομασίαι.

[10] A: ἐξ ὧν μητέρες πέντα αἱ ἄλλαι ἐφύησαν.

| | |
|---|---|
| *ἔφυσαν, αὗταί εἰσι*[1]. *Βαρβαρισμὸς κτλ.* | *երեւելիք այսչափ են եւ այսոքիկ, զոր սերմանեաց սատանայ ի մարդիկ, զոր կարգաւ ասեմք։»)* |

*Ցայտնապէս կը տեսնուի ուրեմն որ Հայոյն վերնագրութիւնն մասն է Եպիփանու գրքին, ուստի կրնայ ըսուիլ որ մեր «Գիրք Հերձուածոց» պակաս է։ Նոյն հետեւութիւնը կրնանք հանել ԺԹ հատուածին վերջը գտնուած սա կղզիացեալ նախադասութենէն. «Այս քսան հերձուածք յԱդամայ մինչեւ ի Քրիստոս,» որ ուրիշ տեղ չի կրկնուիր։ Այս ալ նաւաբեկութենէ պրծած պատառիկ մըն է*[2]*, մի միակը՝ որ պահուած է հայ թարգմանութեան մէջ, մինչդեռ յոյն բնագրին մէջ ամէն գրքի ու մասի սկիզբն եւ վերջը նման սկզբնաւորութիւնք եւ վերջաբանք կան. կրնանք ուրեմն ըսել որ գրիչը միւսներն աւելորդ համարած է օրինակել։ — Հատ մ՚ալ ունի միայն* 56Ա, *երբ ամբողջ գրութեան վերջը կը յաւելու*[3]*՝ թէ «Այսոքիկ հերձուածողք են թուով*[4] ՃԾԷ,» *որ թարգմանութիւն է յունին*[5]*, բայց* ՃԾԷ *եղած է թիւը փոխանակ Ձ թուին։*

*Թէեւ այսու կրնայ ըսուիլ թէ հաւանական եղաւ որ Եպիփանու ամբողջ գործքը կար թարգմանուած հայերէն, բայց ի հարկէ այլուստ ալ պէտք է ստուգութիւն խնդրել այս ենթադրութեան։*

---

1 *A: καὶ εἰσὶν αὗται πρῶται τέσσαρες. Πρώτη, Βαρβαρισμὸς κτλ.*

2 *Հմմտ.* AB (Petav. II, p. **134** *եւն*) *Οὗτος [A: δ] πρῶτος τόμος, περιέχων κατὰ πασῶν τῶν εἴκοσι τούτων αἱρέσεων κτλ.*

3 **56 Ա. Թղ. 83a. Է** *չունի զայս։*

4 **56 Ա «Թվով։»**

5 *Հմմտ.* AB (Petav. I, p. **994** *եւ* II, p. **150**) *Αὕτη ... καὶ τέλος τῶν τριῶν βιβλίων, ὁμοῦ δὲ αἱ πᾶσαι αἱρέσεις π΄ κτλ.* (*Այս ինչ է ... եւ կատարած երից գրոց. եւ են Հերձուածք Ձ եւն։) Հայ գրիչը հարկաւ* ՃԾԷ *պիտի գրէր՝ գտնելով իւր օրինակին մէջ միւս յաւելեալ մասերն ալ։*

Հ. Գարեգին[1] կը յիշէ ի միջի այլոց Եպիփանու այսպիսի մէկ գործքն ալ. «Հոլովմունք չար աղանդոց հերձուածողաց, որք ի սկզբանէ աշխարհի սերմանեցան ընդ ժամանակս ժամանակս, որ ի հեթանոսաց եւ որ ի կարծիս քրիստոնէութեան ազգի ազգի խաւարային շառաւեղք վերաբուսեալք հակառակ եկեղեցւոյ Քրիստոսի. զոր կարգեաց սքանչելիս այս Եպիփան զպատճառս եւ զարմատս եւ զժամանակս իւրաքանչիւր, ի գիրսն իւր որ անուանեալ կոչի Ո–Նէ–կորոս, այսինքն՝ Համա–տրոց գէրս, զոր Պարո–Նաչոց Եպէֆան կարդան։» Հ. Գարեգին կը յաւելու թէ ուրիշ ձեռագիրք «Բացատրութիւն բանից Ձ. հերձուածողաց» վերնագիրը կը կրեն։ Խնդրոյ տակ չէ այսուհետեւ թէ Եպիփանու Panariumը կար հայերէն թարգմանուած, — զոր կը յիշէ նաեւ Այրիվանեցի իւր Ժամանակագրութեան ՑՀ տարւոյն տակ, գրելով[2] «Աստ Աստուածաբանն, Բարսեղ, Նիւսացին, Եպիփան՝ որ յայտնեաց զաղանդս մինչեւ ի Քրիստոս, եւ ի Քրիստոսէ մինչեւ յինքն.» — սակայն քիչ մ'աւելի տեղեկութիւն այս կտորիս վրայ բաղձալի էր, եթէ ձեռագիր մ'աչքի առջեւ ունէր Հ. Գարեգին։ Վասն զի կարելի է որ հոս Եպիփանու երկու գլուխ-գործոյն ալ («Խարսխեալ» եւ «Ընդդէմ Հերձուածոց») ի միասին հասկցուին։ Մէկ կողմանէ յայտնապէս կ'ըսուի որ Եպիփանու այն գրութեան մէջ բոլոր հերձուածողաց մանրամասն պատմութիւնը կայ, — եւ այս է «Ընդդէմ Ձ հերձուածոց» գրութիւնը, զոր յայտնապէս ալ կը յիշեն այլ ձեռագիրք՝ «Բացատրութիւն բանից Ձ հերձուածողաց» գրելով. — միւս կողմանէ կ'ըսուի թէ այն գիրքը «Ո–Նէ–կորոս» կը կոչուէր. որ յայտնապէս 'Αγκυρωτός=

---

[1] Մատ. Թրգմ. Նախն. տպ. Վենետ. 1889, էջ 418։

[2] Մխիթար Այրիվանեցի, տպ. Պետր. 1867, էջ 61։ Հ. Գարեգին (անդ) յիշած է այս խօսքն առանց մատենագրին անուան, այլ լոկ «Յիշատակագիր մը կ'ըսէ» ըսելով։

Ancoratus անուան աղաւաղութիւն կ'երեւայ։ Հայոց քով Եպիփանու "Հաւատոյ Գիրքը", զոր նաեւ "Պարունակաց Գիրք" եւ "Պարունակախօս" կը կոչեն, շատ սիրելի է[1], եւ զոր յաճախ կը յիշեն մեր եկեղեցական գրիչք եւ նաեւ այլք, այսպէս Մագիստրոս[2], նոյնպէս պատմագիրք, այսպէս ի մասնաւորի Ասողիկ[3], որ Գրատիանոսի ժամանակի իբրեւ գլխաւոր դէպք զայն միայն գիտէ՝ թէ "Եպիփան Եպիսկոպոս Կիպրացւոց զՊարունակախօսն գրեաց[4]." Թէեւ քիչ չեն յիշուիր նաեւ Եպիփանու այլ գրութիւնք, ի մասնաւորի Սաղմոսաց Մեկնութիւնը[5], եւն։ Անշուշտ նաեւ այս Հերձուածոց գրոց պատմական նկարագիրն եղած է պատճառ որ Եպիփան իբրեւ պատմագիր կը յիշուի առ Արծրունւոյ[6], Մխիթարայ Այրիվանեցւոյ, եւ Անեցւոյ[7]

---

[1] Այս գրքէն հատուած մ'ալ կը յիշէ Հ. Գարեգին (անդ, էջ 416) այս վերնագրով՝ "Երանելւոյն Եպիփանու Կիպրացւոյ ի Հաւատոյ Գրոց (այլ օր. ի Պարունակաց գրոց) վասն յարութեան մեռելոց։" — Համմ. Ձեռ. Էջմիածն. Թ. 920, (Մայր Ցուցակ. էջ 109), ճժա։

[2] Համմ. Ձեռ. մեր Մատ. 50, էջ 15 (Թղ. Ա առ կաթուղիկոս Ասորւոց) "Ջհոյլս հերձուածողաց ... որք մինչեւ ցաւուրս երանելւոյն Եպիփանու, զորս յիւրում որբազան մատենին յիշատակէ, զորս Պարունակացն անուանեն։"

[3] Համմ. Ասողիկ, տպ. Պետր. 1885, էջ 214 "Եւ դարձեալ նոյն Եպիփանի Պարունակախօսն ասէ ...։" Անդ, էջ 223 "Եւ սրբոյն Եպիփանու ի Պարունակախօսն ասացեալ է ...։"

[4] Անդ, Բ, գ, էջ 139։

[5] Համմ. Ասողիկ, անդ Գ, իա, էջ 213, 229 եւն։ Կիրակոս, տպ. Վենետ. 1865, ԽԸ, էջ 188, ԽԹ, 19ն (զոր կը գտնենք նոյնպէս Յակոբայ եպիսկոպոսի գրութեան մէջ՝ Ձեռ. Վատիկ. Թ. 3, Ծ, Թղ. 461) եւն եւն։

[6] Թովմայ Արծրունի, տպ. Պետր. 1887, Ա, բ, էջ 19. "Յետ այնորիկ ի բազմանալ որդւոց մարդկան՝ յերիս մասունս եւ զերկիր բաժանեալ, ըստ ասացելում Հերոդոտեայն, զոր ասէ մի ըստ միոջէ մեծն Եպիփանոս։" Բայց շատ կարելի է որ Խորենացւոյ գրքէն (Ա, գ.) փոխառութիւն ըլլայ այս կտորը։

[7] Մխիթար Անեցի, տպ. Պետրբ. 1879, էջ 15 կը յիշուին պատմագիրք "Ափրիկանոս, Անդրէաս, Եղէֆոն, Սոկրատ, Տատիանոս։" — Նոյն ցուցակը կը գտնենք Մխիթ. Այրիվանեցւոյ քով, որ "Պատմագիրք ի սկզբանէ" վերնագրին տակ (լէ, էջ 87) կը յիշէ ի մէջ այլոց. "Յովսէպոս որ է Կայիափայ. Երոնոս. Եւսեբի. Սոկրատ մեծ եւ փոքր.

եւն. կամ թերեւս այս անուանակոչութեան պատճառն է Եպիփանու անուամբ Հայ ձեռագրաց մէջ գտնուած նախապատւոյ զրուցախառն պատմութիւնք[1]. գոնէ վերջնոյս մէջ կը գտնենք Ուխտանիսի մէկ կոչումը:[2] Ասով յայտնի եղաւ միանգամայն թէ Եպիփանու անուամբ գտնուած Հայ թարգմանութիւնք բաւական հին են. անշուշտ բաւական մաս մ'ալ Ստեփանոսի Սիւնեցւոյ թարգմանութիւնն է: Գոնէ կ'աւանդուի թէ Ստեփանոս Կիւրղի "Պարապմանց„ եւ "Գանձուց„ եւ Ս. Աթանասի գործոց հետ նաեւ Եպիփանու գործքերն բերաւ ի Հայրենիս իւր հետը:[3] Աւելի հնագոյն ժամանակներէն Խորենացի իւր Պատմութեան մէջ յայտնապէս կոչում կ'ընէ Եպիփանու գործքերէն գրելով.[4] "Քանզի եւ որ ի Կիպրացւոց Կոստանդեայ եպիսկոպոս Եպիփանիոս ի Հերձուածոցն Ցանկմանութեան, յորժամ ճշմարիտ եւ արդարադատ զԱստուած ձեռնարկէ ցուցանել, եւ վասն ընչելոյ որդւոցն Իսրայէլի զեւթն ազգսն, ասէ այսպէս եթէ Արդարադատապէս Աստուած զազգսն զայնոսիկ ընչեաց յերեսաց որդւոցն Իսրայէլի. զի ի բաժնի որդւոցն Սե-

---

Ափրիկանոս. Անդրէաս իմաստասէր. Եպիփան հայրապետ, Դատիանոս, Ղերուբնայ„ եւն:

[1] Հմմտ. մեր Մատ. Ձեռ. Թ. 49Դ, էջ 9—100 եւն:

[2] Ուխտանէս, տպ. Էջմ. 1871, Ա, իթ, էջ 44 "յԱդամայ մինչեւ ի ծնունդն Քրիստոսի ամք 5500, իսկ ըստ Հրէիցն մինչեւ ի ծնունդն Քրիստոսի 4000 ամք.... իսկ ըստ Յունացն Եպիփանու Կիպրացւոյ պատմութեանն՝ 5500 ամ:„ Հմմտ. ասոր հետ՝ 49Դ, էջ 116 "Եւ զի հինգ հազար եւ հինգ հարիւր ամ էր յԱդամայ մինչեւ յաւետիս սրբոյ կուսին„ եւն:

[3] Հմմտ. Ստեփ. Սիւնեաց, Պատմ. տպ. Մոսկ. 1861, Լ, էջ 93 "Գտանէ (Ստեփանոս ի Հռովմ) անդ այլ եւս երիս մատեանս համաբանս եւ միախորհուրդս նման առաջնոցն. որք էին Պարապմանց Կիւրղի եւ Գանձուց, եւ միւսն Աթանասի Աղեքսանդրացւոյ, եւ միւսն՝ սրբոյ Եպիփանու ասացեալ:„

[4] Խոր. Պատմ. Ա, գ. (տպ. Վենետ. 1843, էջ 16:) Խորենացի Եպիփանու անուամբ գրութենէ մը կոչումն կ'ընէ նաեւ "Առ Սահակ Արծրունի„ թղթին մէջ. (Խոր. Մատենագրութիւնք, տպ. 1843, էջ 288) եւն:

մայ հասեալ էր երկիր կալուածոցս այսոցիկ, բռնութեամբ Քամ ի վերայ եկեալ յափշտակեալ։ Իսկ Աստուած իրաւունս պահեալ զերդման ուխտին, վրէժ հատուցանէ ազգին Քամայ, ի բաց դարձուցանելով զժառանգութիւն Սեմայ։„ Հ. Գարեգին[1] Խորենացւոյ այս խօսքին համար կ՚ըսէ թէ փոխառեալ ըլլայ Եպիփանու “Յաղագս Մելքիսեդեկի գալոյն„ կտորէն, որ վերոյիշեալ նահապետայ պատմութեան մասն է։ Արդեամբք ալ ճիշդ նոյն խորհրդածութիւնը կը գտնենք այս տեղ ալ[2]։ Բայց Խորենացի յայտնապէս կ՚ըսէ թէ “ի Հերձուածոցն Յանդիմանութեան„ գտած է այն խօսքը. եւ այնտեղ նոյնը կը գտնենք, եւ այն՝ շատ աւելի նման բացատրութեամբք[3]։ — Խնդիր չկայ ուրեմն

---

[1] Մատ. եւն, էջ 403։

[2] Հմմտ. Ձեռ. մեր Մատ. 49Դ, էջ 89 “Եռաբաժին արար Նոյ զաշխարհս ամենայն յարեւելից մինչեւ ի մուտս արեւու ըստ հասարակածի արեգականն, եւ ետ անդրանկանն իւրոյ Սեմայ զմիջավայրս արարածոց։ ... Եւ ի բազմանալն երից ազգացն՝ Սեմայ, Քամայ եւ Յաբեթայ... Նեբրովթ սկայ որդի Քուշայ սկայի յազգէն Քամայ նախանձեալ ընդ բազմանալն որդւոցն Սեմայ, եւ նենգութեամբ յափշտակեալ եհան ի ձեռաց նոցա զհայրենի բնակութիւնն, եւ զամենայն աշխարհն Պաղեստին. եւ բնակեցոյց անդ քսան ազգ յորդւոցն Քամայ, եւ զորդիսն Սեմայ եւ զամենայն ազգատոհմն նորա որ էին յամենայն աշխարհին ժառանգաւորք, հալածանօք հրդեհեալ եհան անտի մինչեւ յարդարն Աբրահամ։„

[3] Հերձ. Գիրք Բ. Մասն Բ, հատ. ՁԴ. (ed. Petav. I, p. 703—704.) “Իբրեւ այսպէս բաժանեցան վիճակք, կոչեցեալ Նոյի զերեսին որդիս ի մի՝ հաստատէր նոցա երդմամբ չանկանել ի բաժին եղբօրն եւ չյափշտակել զեղբօրն։ Իսկ Քանան որդի Քամայ ցանկացեալ այլոց աշխարհաց՝ դիմեաց յաշխարհն Պաղեստին եւ կալաւ զայն, եւ կոչեցաւ երկիրն Քանան, զի ի նմա բնակեցաւ՝ թողեալ զիւր վիճակն, քանզի ջերմագին թուէր։ Եւ նստեալ յերկրին Սեթայ, որ այժմ Յուդայաստան կոչի, ծնաւ զորդիս զայսորիկ՝ զԱմովր .... Իսկ յաւուրս Նաւումի տոհմապետի եւ ի ժամանակս Յեսուայ որդւոյ Նաւեայ առին յետս որդիք Սեմայ զաշխարհն իւրեանց, եւ այն ոչ եթէ անիրաւութիւն ինչ էր, այլ արդարադատութիւն։ Արդ պարիսպք Երիքովի ինքնին անկան։ Զի արդարութիւն խնդրեաց զվրէժ անիրաւութեանն„ եւն։

որ Խորենացի տեսած է Հերձուածոց գիրքը, եւ թերեւս հայերէն թարգմանութեամբ. գոնէ Խորենացւոյ ուրիշ շատ գրոց կոչմունք գիտենք այսօր որ Հայ թարգմանութիւնքը կ'ակնարկեն: Թողլով այս խնդիրն առ այժմ, երկու բան կրնանք հաստատ դնել: Նախ մեր “Գիրք Հերձուածոցն„ — նկատելով միայն իւր ներքին հանգամանքները — ստուգիւ չէ քաղուածոյք Եպիփանու հայերէն այնպիսի թարգմանութենէ մ'որ այսչափ հին ըլլայ, այսինքն Ե դարու գործ: Մեր յաջորդ դիտողութեանց մէջ ըստ բաւականի պիտի տեսնենք թէ ի՛նչ խեղճ է “Գիրք Հերձուածոց„ի թարգմանչին գիտցածն ու կրցածը: — Բայց ստոյգ է նաեւ երկրորդ՝ որ — եթէ նաեւ չընդունուի թէ Ե դարու Հայ թարգմանութիւն մը կար, — մեր “Գիրք Հերձուածոց„ին գոնէ մասնական թարգմանութիւն մ'եղած է Ե դարու, — եւ այն՝ ի՛նչ գեղեցիկ թարգմանութիւն, — նոյն իսկ Եզնկայ ձեռամբ: Մեկնութիւնն այս է որ Եպիփանու ճիշդ այս կտորներէն բաւական բան մը թարգմանած է Եզնիկ բառ առ բառ եւ իւր գրոց մէջ առած. — միայն սոյն կտորներու դիրքն այլայլած է: Եզնկայ այս թարգմանութիւնը պէտք ենք ուստի մեր “Գիրք Հերձուածոց„ին իբր առաջին հայերէն խմբագրութիւնը համարիլ:

Քիչ գիրք կայ որ այսպէս կրկին անգամ թարգմանուած գտնենք մեր նախնիքներէն, եւ այն՝ մին Եզնկայ նման աննման գրչէ մը, եւ միւսն՝ դժբախտաբար շատ խեղճ թարգմանչէ: Փոքր մասի մ'իսկ համեմատութիւնը կը ցուցընէ երկու թարգմանչաց թարգմանական ճարտարութեան՝ բայց մանաւանդ լեզուի նկատմամբ եղած վիհը: Եզնկայ թարգմանածը մեր “Գիրք Հերձուածոցին„ առաջին մասն է, այսինքն Եզնկայ Գ. գրոց Դ եւ Ե հատուածները թարգմանութիւն են Եպիփանու “Ընդդէմ Հերձուածոց„ Ա գրոց Ա մասին ցանկէն մէկ մեծ

մասին[1] որ կը սկսի Հեթանոսութեան նկատմամբ եղած հատուածէն մինչեւ Եպիկուրեանց հատածը։ Նաեւ Մարկիոնի կտորը թարգմանած է Եզնիկ եւ իր գրութեան մէջ առած[2]։

Եզնիկայ այս փոխառութիւնը յերեւան հանեց նախ Մեծ. Հ. Յովհաննէս Վ. Թորոսեան, իր "Եզնիկ եւ իր երկասիրութիւնն" անուն հետաքըրքրական յօդուածոց մէջ,[3] ուր նաեւ կը գտնենք այս կտորները դրուած դէմ առ դէմ՝ հայերէն եւ լատիներէն թարգմանութեամբ Եպիփանու գործքին, այն կարգաւ՝ որով տպուած կը գտնենք Եզնիկայ մէջ։ Միտ դնելով կը տեսնուի որ Եզնիկայ նոյն գրոց Դ եւ Ե կտորները փեղափոխուած են, ինչպէս բնագրին համեմատութիւնը կը ցուցընէ, եւ կան նշաններ՝ թէ մասեր ալ կրնան գրչաց անհոգութեամբ դուրս ինկած ըլլալ, այսպէս մանաւանդ սկիզբը։ Թէեւ թերեւս այլուր կը յուսանք ինչպէս այս փոխառութեան նոյնպէս Եզնիկայ միւս փոխառեալ մասերուն վրայ խօսիլ, սակայն անհրաժեշտ կը համարինք այս մասերը դնել հոս, որով պիտի տեսնենք մէկ կողմանէ Եզնիկայ թարգմանութեան բնագրին հետ ունեցած աղերսը եւ միւս կողմանէ մեր այս "Գիրք Հերձուածոց"ին հետ ինչ բնագրաքննական կապ ունենալը։ Եզնիկայ կտորները զետեղուած են ըստ յոյն բնագրին եւ տարբերութիւնքը նշանակուած։ Այնպիսի մասեր որոնք այժմու Եզնիկայ մէջ դուրս ինկած են՝ ի հարկէ մեծաւ մասամբ գրչաց անմտադրութեան եւ կամ երկարժամանա-

[1] Հմմտ. Եզնիկ, տպ. Վենետ. 1826, էջ 206—208 եւ 204—206, դարձեալ՝ էջ 296—297 = A: Epist. ad. Acacium etc. եւ B: (Anaceph.) ed. Petav. I սկիզբն եւ II, p 130D—132D եւ I, p 230C եւ II, p 141D։

[2] Այժմ մեր խնդրէն դուրս է այն՝ թէ Եզնիկ այս կտորնե՞րը միայն թարգմանած էր՝ թէ քաղուածոյք են անոնք աւելի լիակատար թարգմանութենէ մը։

[3] Հմմտ. մանաւանդ Բազմավէպ. 1889, էջ 315—317 եւ 386։

կեայ հնութեան պատճառաւ, կրկին դրինք հայ բնագրին մէջ, բայց զանազանելու համար ձեռագրաց ընթերցուածէն՝ դրինք ուրիշ տառերով եւ այն միշտ անկիւնաւոր [ ] փակագծի մէջ առած: Յոյն B եւ A բնագրաց իրարմէ ունեցած տարբերութիւնք այն ատեն միայն նշանակուած են, երբ այն տարբերութիւնք հայ բնագրին համար կարեւորութիւն ունին:

(Եպիփան)

῾Ελληνισμὸς, ἀπὸ τῶν χρόνων τοῦ Σεροὺχ ἐνάρξάμενος, διά τοι τῆς εἰδωλολατρίας. Καὶ ὡς ἐστοίχουν τὸ τηνικαῦτα ἕκαστος κατά τινα δεισιδαιμονίαν, ἐπὶ τὸ μᾶλλον πολιτικώτερον, καὶ ἐπὶ ἔθη καὶ θεσμούς, εἰδώλων μέν τοί γε ἐναρξάμενα τάττεσθαι τὰ τῶν ἀνθρώπων γένη, οἷς τότε στοιχήσαντες ἐθεοποίουν. Διὰ μὲν χρωμάτων διαγράφοντες τὴν ἀρχὴν, καὶ ἀπεικονίζοντες τοὺς πάλαι παρ᾽ αὐτοῖς τετιμημένους, ἢ τυράννους, ἢ γόητας, ἢ τινὰς τί δράσαντας ἐν τῷ βίῳ, μνήμης τι

(Եզնիկ)

"Բայց[1] հեթանոսութեան սկիզբն ի Սերուքայ ժամանակաց անտի եղեւ. [[2] [illegible]] Զի որ լաւ ոք եկեալ յաշխարհ մեռանէր, վասն յիշատակի քաջութեանն զպատկերն երանգօք ի նկարու հանէին[3] եւ անտի ուսեալ տխմարաց՝ տակաւ ի պաշտօն առնոյին:[4]

---

[1] Արդէն այս "Բայց" կը ցուցընէ որ պակաս է հոս սկիզբը, ուր անշուշտ Եպիփանու Բարբարոսութեան վրայ գրածը թարգմանուած էր:

[2] Այս կտորը չկայ այժմու Եզնկայ մէջ, ինչպէս նաեւ յաջորդ այն կտորներն՝ զոր նուր տառերով եւ փակագծի մէջ կը նշանակենք:

[3] Եզնիկ քիչ մը համառօտած է այս նախադասութիւնն, որ ըստ յոյն բնագրին էր այսպէս "Եւ զորս ի պատուի ունէին, կամ զբռնաւորս կամ զկախարդս որ արժանի ինչ յիշատակաց ի կեանս գործեցին, եւ զկորովիս եւ զուժեղս մարմնով, զնոսին երանգօք ի նկարու հանէին" եւն:

[4] Այս նախադասութեան համապատասխանող մը չկայ հոս տեղ յոյն բնագրին մէջ: Թերեւս յաջորդ ("քանզի զնախահարս" եւն) կտորէն՝ որ չկայ այժմու Եզնկայ մէջ, մնացորդ մըն է:

δοκοῦν ἄξιον, δι' ἄλκης τε, ἢ σωμάτων εὐρωστίας. Ἔπειτα δὲ ἀπὸ τῶν χρόνων τοῦ Θάῤῥα τοῦ πατρὸς Ἀβραάμ, καὶ δι' ἀγαλμάτων αὐτὴν τὴν πλάνην τῆς εἰδωλολατρίας εἰσηγησάμενοι, τοὺς ἑαυτῶν προπάτορας δι' ἀπεικονισμῶν τετμηκότες, καὶ τοὺς πρὸ αὐτῶν τετελευτηκότας τεχνησάμενοι, ἐκ κεραμεικῆς ἐπιστήμης τὸ πρῶτον, ἔπειτα δὲ ἑκάστης τέχνης μιμησαμένης, οἰκοδόμοι μὲν λίθον ξέσαντες· ἀργυροκόποι δὲ, καὶ χρυσοχόοι διὰ τῆς ἰδίας ὕλης τεκτονάμενοι, οὕτω καὶ τέκτονες καὶ οἱ καθεξῆς. Αἰγύπτιοι δὲ ὁμοῦ, καὶ Βαβυλώνιοι, καὶ Φρύγες, καὶ Φοίνικες ταυτησὶ τῆς θρησκείας πρῶτοι εἰσηγηταὶ γεγόνασιν, ἀγαλματοποιίας τε καὶ μυστηρίων· ἀφ' ὧν τὰ πλεῖστα εἰς Ἕλληνας μετηνέχθη ἀπὸ τῆς Κέκροπος ἡλικίας[1] καὶ κα-

“Եւ կռոց եւ դրօշելոց հանգամանք առ Թարայիւ հարբն Աբրահամու[2] [գտան.] [³Քանզի զնախահարս իւրեանց պատկերօքն պատուեցին, եւ զորս յառաջ մեռեալսն էին՝ յօրինեալ կարգեցին նախ արուեստիւ բրտութեան.] եւ անտի իւրաքանչիւր ոք իւրով արուեստիւ զնոյն դրօշէր.[4] դարբինն՝ դարբնութեամբ, հիւսնն հիւսնութեամբ, արծաթագործն եւ պղնձագործ եւ քարակոփ եւ բրուտ իւրաքանչիւր արուեստիւ: Եւ անտի կարգեալ հասանէր յԵգիպտացիս եւ ի Բաբելոնացիս եւ ի Փռիւգացիս եւ Փիւնիկեցիս գործ դրօշագործութեան եւ խորհուրդք նորին. եւ ապա ի Հելլէնս, [5]որ են Յոյնք, առ Կեկրոպեաւ. եւ եւս յետոյ առաւել աստիք առ Կռոնաւն եւ Րէաւ եւ Դիաւ եւ Ապողոնիւ եւ առ այլովք

---

[1] B կը յաւելու καὶ χρόνων, զոր չունին A եւ Եզնիկ:

[2] Այս “գտան„ կամ նման բառ մ'անհրաժեշտ է հոս իմաստին ամբողջութեան համար:

[3] Այս ամբողջ կտորը չենք գտներ այժմու Եզնկայ մէջ, բայց նախնաբար ըլլալու էր անշուշտ. վասն զի յաջորդ խօսքը (“եւ անտի իւրաքանչիւր„ եւն) անկապ կը մնայ առանց այս մասին:

[4] Այս մասին մէջ Եզնիկ քիչ մը շրջեր է խօսքին մասերուն դիրքը. այսպէս ամենէն վերջ մնացած են “քարակոփ եւ բրուտ„ (վերջինս այս տեղ չի յիշուիր յունին մէջ), մինչ յոյնը նախ կ'ըսէ “քարակոփք (բուն՝ “ճարտարապետք„) զքարինս կոփելով„ եւն: Իսկ “դարբինն՝ դարբնութեամբ„ խօսքը չունին AB.

[5] Այս մեկնութիւնը (“Որ են Յոյնք„) Եզնիկ աւելցուցեր է:

*θεξῆς. Μετέπειτα δὲ καὶ ὑστέρῳ πολὺ, τοὺς περὶ Κρόνον καὶ Ῥέαν, Δία τε καὶ Ἀπόλλωνα, καὶ τοὺς καθεξῆς θεοὺς ἀναγορεύσαντες.*

բազմօք, զորս մի ըստ միոջէ աստուած անուանէին:»

*Ἕλληνες δὲ κέκληνται ἀπὸ Ἕλληνός τινος ἀνδρὸς τῶν ἐν τῇ Ἑλλάδι κατῳκηκότων*[1]. *Ὡς δὲ ἕτεροί φασιν, ἀπὸ τῆς ἐλαίας τῆς ἐν Ἀθήναις βλαστησάσης. Ἴωνες δὲ τούτων ἀρχηγοὶ γεγόνασιν, ὡς ἔχει ἡ ἀκρίβεια, ἀπὸ τοῦ Ἰουνᾶν, ἑνὸς ἀνδρὸς τῶν τὸν πύργον οἰκοδομησάντων, [ὅτε αἱ γλῶσσαι διεμερίσθησαν τῶν πάντων*[2]*.] Δι' ἣν αἰτίαν καὶ μέροπες πάντες κέκληνται, διὰ τὴν μεμεριομένην φωνήν. Ὕστερον δὲ ὁ Ἑλληνισμὸς εἰς αἱρέσεις κατέστη κατωτέρῳ τῷ χρόνῳ· φημὶ δὲ Πυθαγορείων, καὶ Στωϊκῶν, καὶ Πλατωνικῶν, καὶ Ἐπικου-*

«Եւ Հելլէնք կոչին Յոյնք յառնէ միոջէ, որում Հեղինոս անուն էր յԵլլադացւոց աշխարհին. բայց այլք ասեն՝ եթէ ի ձիթենւոյն որ յԱթէնս բուսաւ իւրովի. [3] վասն զի ձիթենի յունարէն էլէա կոչի: Բայց Յոյնք [[4] ելին նախահօրէ Նոյա, որպէս ասէ եւս ճշմարիտ պատմութիւնն,] ի Յաւանայ՝ որ էր մի յառաջնորդաց աշտարակագործութեանն. վասն որոյ Մերոպս ամենեքին կոչին յաղագս բարբառոյն բաժանելոյ. [5] քանզի բաժանումն յունարէն Մերիսմոս կոչի: — [6] Այլ եղեն բազում կրօնք փիլիսոփայից [հեթանոսաց]. [[7] Այս-

[1] B յաւելու *Καὶ τὴν προσωνυμίαν τῇ χώρᾳ παρελαμένου [παρεχομένου]*, զոր չունին A եւ Եզնիկ:

[2] Այս փակագծեալը ունի A, զոր չունին B՝ եւ Եզնիկ:

[3] Այս մեկնութիւնն Եզնիկայ յաւելուածն է ի հարկէ:

[4] Այս բառերը դուրս ինալով այժմու Եզնիկայ մէջ անյարիր խօսք մ'ելած է՝ "Բայց Յոյնք ի Յաւանայ, որ...:"

[5] Այս պարզաբանութիւնն ալ Եզնիկայ յաւելուածն է, ինչպէս նախընթացն, որոնք անհրաժեշտ էին անյունագէտ հայ ընթերցողին ըմբռնելի ընելու համար խնդիրը:

[6] Այս կտորը նշանաւոր է անով՝ որ սոյն խօսքը հոս չենք գտներ Եզնիկայ մէջ, այլ փոխադրուած ուրիշ տեղ մը (Գ. հտծ. գ, էջ 204, 3) "Եւ զայս ոչ ամենեքին սոյնպէս ասեն: Այլ են բազում կրօնք փիլիսոփայից:" Այս ալ՝ ինչպէս այլ տեղեր՝ կը ցուցընէ որ Եզնիկայ ձեռագրաց թղթերն տեղափոխուած եւ ասով հատածները յետեւառաջ դրուած ու շփոթուած են:

[7] Այս մեծ կտորը պակաս է Եզնիկայ քով. բայց թերեւս նոյն իսկ ինքն Եզնիկ համառօտած է, վասն զի յաջորդ խօսքը ("Եւ առաջին կրօնք" եւն) ասոր հետ չի

ρείων, καὶ λοιπῶν. Θεοσεβείας δὲ χαρακτὴρ ὑπῆρχεν ἅμα καὶ ὁ κατὰ φύσιν νόμος πολιτευόμενος ἀπὸ τούτων τῶν ἐθνῶν ἑαυτὸν ἀφορίζων ἀπὸ τῆς τοῦ κόσμου καταβολῆς καὶ δεῦρο, μέσος τυγχάνων Βαρβαρισμοῦ, καὶ Σκυθισμοῦ, καὶ Ἑλληνισμοῦ, ἕως ὅτου συνήφθη τῇ τοῦ Ἀβραὰμ θεοσεβείᾳ.

ենքն Պիւթագորեանքն եւ Ստոյիկեանք եւ Պղատոնականք եւ Եպիկուրեանք եւ այլք: Եւ պահեցաւ աստուածպաշտութեանն նկարագիր եւ բնութեանն օրէնք, որ է սկզբանէ աշխարհի յաղգուցս յայսցանէ չափեալ որոշեր:] Եւ առաջին կրօնք՝ խուժականք եւ սկիւթականք եւ հեթանոսականք կոչէին, մինչեւ եկն Աբրահամու աստուածպաշտութիւնն [1] եւ աղաւաղեաց զայն:

Καὶ μετέπειτα Ἰουδαϊσμὸς, ἀπὸ τῶν χρόνων Ἀβραὰμ τὸν χαρακτῆρα εἰληφὼς καὶ ἐν Μωϋσῇ ἑβδόμῳ ἀπὸ Ἀβραὰμ, διὰ τοῦ αὐτῷ δοθέντος νόμος ὑπὸ τοῦ θεοῦ πλατυνθείς. Ἀπὸ δὲ τοῦ Ἰούδα τετάρτου υἱοῦ τοῦ Ιακὼβ, τοῦ ἐπικληθέντος, Ἰσραὴλ, διὰ Δαβὶδ τοῦ πρώτου βασιλεύσαντος ἀπὸ τῆς τοῦ αὐτοῦ Ἰούδα φυλῆς,

Եւ Յուդայութիւն, որ է հրէութիւն, [[2]է ժամանակաց Աբրահամու առեալ զնկարագիր եւ Մովսէսի՝ որ եւթներորդն էր յԱբրահամէ եւ օրէնօք որ տուան նմա յԱստուծոյ, ընդարձակեալ,] ի Յուդայէ՝ ի չորրորդէ որդւոյն Յակոբայ, [[3]որ Իսրայէլն կոչեցան, եւ է Դաւիթ՝] յորմէ թագաւորութիւնն էր, [4]կալաւ ա-

---

կրնար կապուիլ, այլ ըստ բնագրին ըլլալու էր "եւ ցայս որ ժամանակի (աստուածպաշտութիւնն) ի միջի էր խուժական կրօնից, եւ սկիւթականութեան եւ հեթանոսութեան,, եւն։

[1] "Եւ աղաւաղեաց զայն,, խօսքը չունին AB։

[2] Այս կտորը կամ նման խօսք մը գրչագրաց անհոգութեամբ դուրս մնացած է, եւ "որ է հրէութիւն,, խօսքը (որ Եզնկայ քով միայն կայ) տեղափոխուած է. ըստ տպագրութեան Եզնկայ այս խօսքն է՝ "Եւ յուդայութիւն ի Յուդայէ, որ է հրէութիւն, ի չորրորդէ որդւոյն Յակոբայ։,,

[3] Այս խօսքն, մանաւանդ "ի Դաւթէ,, այնպէս կարեւոր է որ յաջորդն անիմաստ կ'ըլլայ առանց ասոր, ինչպէս է Եզնկայ տպագրութիւնը "... ի չորրորդէ որդւոյն Յակոբայ, յորմէ թագաւորութիւն էր,, որ անկայական անյարմար է։

[4] Տպագր. "եւ կալաւ,, եւն։

τὸ τέλειον τοῦ Ἰουδαϊσμοῦ ὄνομα κεκληρωμένος.[1]

Ἑλλήνων δὲ διαφοραί αἵδι[2].

Πυθαγόρειοι, εἴτ' οὖν Περιπατητικοί, τὴν μονάδα καὶ πρόνοιαν, καὶ τὸ κωλύειν θύεσθαι τοῖς δῆθεν θεοῖς δογματίζοντες[3], Πυθαγόρας ἐδογμάτισεν[4], ἐμψύχων τε μὴ μεταλαμβάνειν, ἀπὸ οἴνου δὲ ἐγκρατεύεσθαι. Διώριζε δὲ ἅμα τὰ ἀπὸ σελήνης, καὶ τὸ ἄνω ἀθάνατα λέγων, τὰ δὲ ὑποκάτω θνητά, μεταγγισμούς τε ψυχῶν ἀπὸ σωμάτων εἰς σώματα, ἄχρι ζώων καὶ κνωδάλων. Σιωπὴν δὲ ἅμα ἀσκεῖν ἐπιχρόνον [Α յաւ. πέντε ἐτῶν[5]] ἐδίδασκε. Τὸ τελευταῖον δὲ ἑαυτὸν θεὸν ὠνόμασε.

Πλατωνικοὶ θεὸν, καὶ

նուննն զամենայն ազգն յուդայական։[6]

Դ. [7]«Այս են կրօնք փիլիսոփայից։

Պիւթագորեանքն եւ Պերիպատիկեանքն՝ միութիւն եւ խնամակալութիւն ասեն եւ չզոհել աստուածոց։ Եդ կրօնս Պիւթագորաս՝ զշնչաւորաց միս չճաշակել, եւ ի գինւոյ ժուժկալել։ Եւ ի լուսնոյ ի վեր զամենայն ինչ որ է՝ անմահ համարել եւ որ ինչ նորա ի ներքոյ՝ մահկանացուս։ Եւ փոփոխումն շնչոց ի մարմնոց ի մարմինս մինչ ցանասունս եւ ցճճիս անգամ։ Եւ լռութեան կրօնս սահմանեաց. եւ յետոյ զիւր անձն աստուած անուանեաց։

«Իսկ Պղատոնեանքն՝ ա-

---

[1] Այս տեղ սոյն կտորը կը լմննայ ի B եւ յԵզնիկ, իսկ A հոս Պաւղոսի մէկ խօսքը կը դնէ (Կողոս. Գ. 11) զոր թարգմանած է ապա "Գիրք Հերձուածոց,, ի թարգմանիչը. (տես զայս հանդերձ յոյն բնագրաւ յետոյ. Գ։) Ուստի յայտնի է որ Եզնկայ տեսած օրինակը նման էր Bի, իսկ "Գիրք Հերձուածոց,, ի թարգմանչին տեսածն այս տեղ՝ A բնագրի համեմատ էր։

[2] Այսպէս B = Եզնիկ. A ունի լոկ Ἑλληνων διαφοραί.

[3] Այս δογματίζοντες ունի միայն B = Եզնիկ։

[4] B չունի զայս, այլ A = Եզնիկ։

[5] Այս "ամաց հնգից,, չունի B եւ ոչ Եզնիկ։

[6] Եզնիկ կը յաւելու "Եւ ի վախճանի հրէութեան՝ քրիստոնէութեան անուն ի Քրիստոսէ, որ նախ յԱնտիոք անուանեցաւ աշակերտելոցն։,, Այս խօսքը թէեւ չունին AB հոս, բայց գուցէ կար նախնաբար Եպիփանի այն օրինակին մէջ, զոր Եզնիկ առջեւն ունէր։

[7] Այս նախադասութիւնն շատ նշանաւոր է, վասն զի փոխանակ այս տեղւոյն կը գտնենք զայս ամենէն վերջը մնացած անյարիր կերպով (Եզն. Գ. հտծ. Դ. էջ 206. 4.) ուստի կարծես միայն ձեռագրի թղթի մը տեղափոխութեամբն այն տեղ ինկած։

ὕλην[1] καὶ εἶδος, καὶ τὸν κόσμον γεννητὸν καὶ φθαρτὸν ὑπάρχον, τὴν ψυχὴν δὲ ἀγέννητον, καὶ ἀθάνατον, καὶ θείαν. Εἶναι δὲ αὐτῆς τρία μέρη, λογικὸν, θυμικὸν, ἐπιθυμητικόν. Τὰς δὲ γυναῖκας κοινὰς τοῖς πᾶσι γίνεσθαι, καὶ μηδένα μίαν ἔχειν γαμετὴν ἰδίαν, ἄλλα τοὺς θέλοντας ταῖς βουλομέναις συνεῖναι. Μεταγγισμὸν δὲ ὡσαύτως ψυχῶν εἰς σώματα διάφορα, ἄχρι κνωδάλων. Ὁμοῦ δὲ καὶ θεοὺς ἐκ τοῦ ἑνὸς πολλοὺς ἐδογμάτισε.

տուած եւ հիւղ եւ իդոս, [³որ առաջին՝ նիւթ է եւ երկրորդն՝ առանձինն ինչ ուրուք.] եւ զաշխարհս՝ արարած եւ եղծանելի, եւ զշունչ՝ ⁴անարար եւ անմահ եւ աստուածական. որոյ երեք մասունք են՝ բանական, ցասմնական եւ ցանկական: Եւ զկանայս հասարակաց ամենեցուն համարել, եւ մի՛ ումեք մի կին առանձինն ունել. այլ զոր արքն կամիցին եւ կանայքն ախորժիցեն, այնց ընդ այնս լինել: Եւ փոփոխմունս շնչոց յայլեւայլ մարմինս մինչեւ ցճճիս եւ ցսողունս անգամ: Միանգամայն եւ աստուածս բազումս ի միօջէ ելեալ սահմանէ:

Στοϊκοὶ σῶμα τὸ πᾶν δογματίζοντες, καὶ τὸν αἰσθητὸν τοῦτον κόσμον θεὸν νομίζοντες. Τινὲς δὲ ἐκ τῆς τοῦ πυρὸς οὐσίας τὴν φύσιν ἔχειν αὐτὸν ἀπεφήναντο[2]. Καὶ τὸν μὲν θεὸν νοῦν ὁρίζουσι [B: δογματίζουσι], καὶ ὡς ψυχὴν παντὸς τοῦ

“Իսկ Ստոյիկեանքն մարմին զամենայն ինչ եդին, եւ զերեւելի աշխարհս աստուած համարին: Իսկ ոմանք ի հրոյ էութենէ համարին ունել սմա զբնութիւն: Եւ աստուած զմիտս սահմանեցին, իբրեւ թէ շունչ ամենայնի իցէ տա-

---

[1] Καὶ ὕλην միայն B ունի = Եզնիկ:

[2] Փոխանակ ἀπεφήναντο կը գտնենք ի B: ὁρίζουσι.

[3] Հետաքրքրական է այս կտորը՝ զոր Եզնիկ աւելցուցեր է մեկնելու համար նախ “զհիւղն,, (ὕλη), զոր “նիւթ,, կը թարգմանէ եւ “իդոս,, (εἶδος = “տեսակ,,), զոր “առանձինն-ինչ-ուրուք,, ստուգեամբ կը մեկնէ՝, թերեւս ἴδιος, այսինքն “յատուկ,, կարդալով: Նաեւ քիչ մը վերջը Պիւթագորեանց համար ըսածը թէ “մոնադն,, կը սորվեցընեն, գրուած է իբր թարգմանութիւն μονάςի, այսինքն = monade, զոր այժմ “մենատարր,, կը թարգմանենք:

[4] Այս երկու “արարած,, եւ “անարար,, բառերու միտ դնելու է, վասն զի այժմու յոյնը “ծնեալ,, եւ “անծին,, կ'ըսէ (γεννητὸν, ἀγέννητον.)

ὄντος κύτους οὐρανοῦ καὶ γῆς. Σῶμα δὲ αὐτοῦ τὸ πᾶν, ὡς ἔφην, καὶ ὀφθαλμοὺς τοὺς φωστῆρας. Τὴν δὲ σάρκα πάντων ἀπόλλυσθαι, καὶ τὴν ψυχὴν πάντων μεταγγίζεσθαι ἀπὸ σώματος εἰς σῶμα.

Ἐπικούρειοι ἄτομα καὶ ἀμερῆ σώματα, ὁμοιομερῆ τε, καὶ ἄπειρα τὴν ἀρχὴν εἶναι τῶν πάντων ὑπεστήσαντο, καὶ τέλος εἶναι εὐδαιμονίας τὴν ἡδονὴν ἐδογμάτισαν, καὶ μήτε θεὸν μήτε πρόνοιαν τὰ πράγματα διοικεῖν.

— Μαρκιωνισταί. Μαρκίων ὁ ἀπὸ Πόντου ὁρμώμενος Ἐπισκόπου μὲν ἦν υἱός, φθείρας δὲ παρθένον ἀπέδρα, διὰ τὸ ἐξεῶσθαι ὑπὸ τοῦ ἰδίου πατρὸς ἀπὸ τῆς Ἐκκλησίας. Ἀνελθὼν τε εἰς Ῥώμην, καὶ αἰτήσας μετάνοιαν τοὺς κατ᾽ ἐκεῖνου καιροῦ, καὶ μὴ τυχών, ἐπαρθεὶς κατὰ τῆς πίστεως, ἐδογμάτισε, τρεῖς ἀρχὰς εἰσηγησάμενος, ἀγαθόν τε καὶ

րերն երկնից եւ երկրի. մարմին նմա՝ զամենայն ինչ որ է՝ եդին, եւ աչս՝ զլուսաւորսն: Եւ զմարմինս ամենեցուն կորստական, եւ զշունչս փոփոխելիս ի մարմնոց ի մարմինս:»

«Իսկ Եպիկուրեանքն ասեն. անհատ[1] եւ անբաժին մարմինք էին զառաջինն, եւ անտի եկաց ամենայն ինչ: Եւ վախճան լաւութեան[2] զցանկութիւն սահմանեցին: Եւ թէ ոչ Աստուած գոյ, եւ ոչ խնամակալութիւն որ վարիցէ զամենայն[3]:»

(Եզն. Դ. հտդ. ԺԶ:)

Մարկիոնս այս ի Պոնտացւոց աշխարհէ անտի եղեալ էր, որդի եպիսկոպոսի: Եւ ապականեալ զկոյս մի՝ գնաց փախստական վասն մերժելոյ զնա յեկեղեցւոյ՝ իւրոյ իսկ հօրն: Եւ երթեալ ի Հռովմ խնդրել ապաշխարութիւն յայնմ ժամանակին[4], եւ չհասեալ այնմ՝ գրգռեցաւ ընդդէմ հաւատոց: Եւ եդեալ երիս

---

[1] Հոս ալ «անհատ» դրուած է իբրեւ ճշգրիտ եւ շատ յարմար թարգմանութիւն ἄτομος բառին, որմէ ծագած է այժմու գիտնական atome բառը՝ իբրեւ անբաժանելի մանրատարր կամ հիւլէ:

[2] Միտ դնելու է հոս «լաւութեան» բառին բուն իմաստին, այսինքն «երջանկութեան:» խօսքին իմաստն այն է՝ թէ Եպիկուրեանք մարդկային երջանկութիւնն զհեշտութիւն համարեցան:

[3] Հոս կը յաւելու Եզնկայ տպագրութիւնն «Այս են կրօնք Փիլիսոփայից» խօսքը, որ հոս չի վերաբերիր, այլ վերը, ինչպէս տեսանք:

[4] Յոյնը ... τοὺς κατ᾽ ἐκεῖνου καιροῦ ըլլալով՝ անշուշտ Եզնիկ գրած պիտի ըլլայ «խնդրել ապաշխարութիւն յոյնցանէ որ յայնմ ժամանակի էին,» կամ նման խօսք մը, ինչպէս կը ցուցընէ ն գիրը. Հմմտ. ժամանակ[են]ն:

δίκαιον καὶ φαῦλον, εἶναί τε τὴν καινὴν διαθήκην ἀλλοτρίαν τῆς παλαιᾶς, καὶ τοῦ ἐν αὐτῇ λαλήσαντος. Ἀνάστασιν σαρκὸς ἀθετεῖ. [1]Βάπτισμα δίδωσιν οὐ μόνον ἕν, ἀλλὰ καὶ [δύο καὶ][1] τρία μετὰ τὸ παραπεσεῖν. Ὑπὲρ δὲ τῶν τεθνεώτων κατηχουμένων ἄλλοι παρ᾽ αὐτοῖς βαπτίζονται. Ἀδεῶς δὲ καὶ γυναιξὶν ἐπιτρέπει δῆθεν λουτρὸν διδόναι.

առաջս, ուսուցանէ զբարւոյ եւ զարդարոյ եւ զչարէ։ Եւ զնոր կտակարանս օտարոտի համարի ի հնոյն. եւ յայնմանէ, որ ի նմայն խօսէր, զյարութիւն մարմնոյ արհամարհէ։ Եւ մկրտութիւն ոչ մի միայն տայ, այլ եւ երիս յետ յանցանելոյ. եւ փոխանակ երախայից մեռելոց՝ այլոց ստիպէ առնուլ կնիք։ Եւ այնչափ յանդգնեալ՝ մինչեւ կանանց հրամայէ մկրտութիւն տալ, [2]զոր ոչ ոք իշխեաց յայլոց աղանդոցն առնել. ոչ կնիք կրկին եւ երեքկին տալ, եւ ոչ զկանայս առ քահանայս ունել։»

Այս համեմատութեան վրայ ուրիշ դիտողութիւն յաւելուլ աւելորդ է։ Ընթերցողը պայծառ կը տեսնէ հոս Եզնկայ թարգմանութեան ոճն ու լեզուն իւր յատուկ բացատրութեամբք քանի մը գիտնական ասութեանց, եւ միւս կողմանէ նաեւ Եզնկայ այժմու հայ բնագրին կրած աղաւաղութիւնը։ Եզնկայ առաւելութիւնքն այն ատեն մանաւանդ յերեւան կու գան, երբ համեմատենք զայն երկրորդ թարգմանութեան հետ, կամ այն գործքին՝ զոր «Գիրք Հերձուածոց» կոչեցինք։ Արդեամբք ալ յաջորդ տողերը պիտի ցուցընեն՝ թէ ինչ խեղճ բան է այն՝ ամենայն հանգամանօք։

Առնունք նոյն իսկ առաջին տողը եւ կը տեսնենք որ այս թարգմանն Եպիփանու Βαρβαρισμὸς (= բարբարոսութիւն) բառը. թարգմանուած «բարբարխօսութ.» ուսափ յունական ισμὸς (=

[1] B միայն կը յաւելու καὶ δύο, զոր չունին A եւ Եզնիկ. բայց Եզնիկ քիչ մ'ետքը «ոչ կնիք կրկին եւ երեքկին տալ» գրելով կը ցուցընէ որ այսպիսի բան մը կարդացեր էր։

[2] Այս վերջին մասերը չկան յունին մէջ։

ութիւն) մասնիկն իբրեւ պարզ վերջաւորութիւն ածականաց՝ յոգնակի կազմելով (= "բարբարոսք։") Այսպէս կը գտնենք "Սկիւթիսմոսք" (Σκυθισμὸς, սկիւթականութիւն.) "Հելլէնիսմոսք" (Ἑλληνισμὸς, հելլենականութիւն,) զոր Եզնիկ միշտ "հեթանոսութիւն" կը թարգմանէ, զոր այլուր ալ կը գտնենք. "Յուդայիսմոսք" (Ἰουδαϊσμὸς, Յուդայականութիւն) եւն [1]։ — Յաճախ կը տեսնենք նոյնպէս հերձուածոց անուանց շարքին մէջ այնպիսի անուանք, որ բոլորովին անյարմար կերպով յունարէն բառերու ընդօրինակութիւնք են։ Քիչ զարմանք չէ օրինակի աղագաւ Հերձուածողաց անուանց մէջ տեսնել "Արքոնդիկէ [2], որ է յունական Ἀρχοντικαί (իշխանականք, ἀρχὸς=իշխան) բառն յունարէնի ածականաց յոգնակի վերջաւորութեամբ կամ ձեւով։ Այսպէս յունական հոլովմանց ձեւով օրինակուած են նաեւ "Անգելիկէ [3] = Ἀγγελικοί (Հրեշտակականք.) "Աբոստոլիկէ [4]" = Ἀποστολικοί (Առաքելականք) եւ նմաններ։ Ասոնց կարգէն են դարձեալ "Հեմիարիանոսք [5]" = Ἡμιάρειοι (Կէս-Արիանոսք), ուստի յունարէն ἡμι . . . (= կէս) պահելով ճշդիւ եւ միւս կէսը հայացընելով։ Յիշենք դարձեալ "Պնեւմադոմաքոսք" [6] Πνευματομάχοι, որ է ամենէն սովորական ու ծանօթ "Հոգեմարտք" աղանդի անունը. դարձեալ "Մարիանիտք" [7] = Μαριανῖτοι (Մարիամեանք), ուստի յունարէնի վերջաւորութեամբ։ Բայց ամենէն նորանշանն է "Անդիդիկոմարիանիտք" [8] անունը, այսինքն՝ Ἀντιδι-

[1] Հմմտ. հատ. Ա—Դ, Միաբ. էջ 1։
[2] Հատ. ԼԸ, 1. (Միաբան՝ ԼԶ, էջ 6։)
[3] Հատ. ԾԸ, 1. (Միաբ. ԾԷ, էջ 10։)
[4] Հատ. ԾԹ, 1. (Միաբ. ԾԸ, էջ 10։)
[5] ՀԱ, 1. (Հ.) — փակագծեալք կը ցուցընեն Միաբանի հրատարակութեան հատուածոց թիւը։
[6] ՀԲ, 1. (ՀԱ։)
[7] ՀԷ, 1։ Այսպէս են նաեւ "Դեմիուրիտք" = Δεμοιρῖται, "Ապողինարիտք" = Ἀπολλιναρῖται, եւն եւն։
[8] Հատ. ՀՁ, 1։ Ինչպէս այս՝ նոյնպէս միւս կոչմանց

χομαριανῖται, որ է "Դիմամարտք Մարիամու" ինչպէս կը մեկնէ ինքն իսկ թարգմանիչը։ Վերջապէս այս կարգի թարգմանութեան պսակ մըն է Եպիփանու Պաւղոսի թղթերէն ըրած մէկ կոչումը, որ թարգմանուած է. "Վասն նոցա Պաւղոս բարբառեցաւ Ո՛չ բարբարիսմոսք, ո՛չ սկիւթիսմոսք եւ յուդայիսմոսք, այլ ամենայն ի Քրիստոս։"[1] Յիշենք որ այս խօսքն Պաւղոսի այն սովորական խօսքն է (Կողոս. Գ. 11) թէ "Ուր ո՛չ հրէայ եւ ո՛չ հեթանոս, թլփատութիւն կամ անթլփատութիւն, խուժ-դուժ, սկիւթացի, ծառայ, ազատ, այլ ամենայն եւ յամենայնի Քրիստոս." — Ի՛նչ տարբերութիւն թարգմանութեան եւ լեզուի։ Թէեւ Եպիփան այս կոչումը բառացի չէ ըրած[2], սակայն Հայը բերանացի գիտէր սոյն կոչման հայերէնը, եւ անկէ միայն առած աւելցուցած է վերջին մասը՝ "այլ ամենայն ի Քրիստոս", զոր Եպիփան չունի հոս։

Այս ամէն յոռութիւնք կամայական էին, այսինքն՝ թարգմանչին քմահաճոյից նորանշան ծնունդք։ Սակայն եթէ խոր զննենք՝ կը գտնենք շատ անհեթեթութիւնք ալ որ ակամայ են, այսինքն՝ թարգմանչին սխալ հասկնալովը, յունարէն նման բառերը շփոթելով եւն յառաջ եկած։ Ասոնց մէջ երբեմն նաեւ շատ հետաքրքրական շփո-

---

մէջ՝ մենք ուղղագրեալ հայ ընթերցումը կը դնենք՝ առանց այստեղ ձեռագրաց աղճատանքները նշանակելու, զոր յետոյ մի առ մի պիտի դնենք իրենց տեղը։

[1] Հմմտ. Միաբան. էջ 1 (Դ։) Այս կոչումն ճիշդ այն կտորն է զոր վերը (Թ. 10, էջ 295, ծն. 1) յիշեցինք թէ միայն A ունի, եւ B եւ Եզնիկ չունին։

[2] Եպիփան կ'ըսէ. Σαφῶς γὰρ περὶ τούτων τῶν τεσσάρων αἱρέσεων ὁ Ἀπόστολος ἐπιτεμὼν ἔφη· Ἐν γὰρ Χριστῷ Ἰησοῦ οὐ Βάρβαρος, οὐ Σκύθης, οὐχ Ἕλλην, οὐκ Ἰουδαῖος, ἀλλὰ καινὴ κτίσις. (Բացորոշ ասէ Առաքեալ վասն Դ. հերձուածոցն առ հասարակ եթէ ի Քրիստոս Յիսուս ոչ խուժդուժ է եւ ո՛չ սկիւթացի, ո՛չ հեթանոս եւ ոչ հրեայ, այլ նոր արարած։) Այս վերջին "այլ նոր արարած" չէ թարգմանած Հայն, այլ փոխեր է "այլ ամենայն ի Քրիստոս", ինչպէս իրեն ծանօթ էր։

թութիւններ կան։ Այսպէս Եպիկուրեանց համար կ'ըսէ մեր թարգմանը թէ «զաշխարհս ինքնեղ եւ ոչ յԱստուծոյ եւ զտեսակս անհատս, եւ քաջե-պաշտօնէն զուտելն եւ զըմպելն» կ'ուսուցանեն։[1] Մեկնութիւնն այս է որ Եպիփան գրած է «τέλος εἶναι εὐδαιμονίας τὴν ἡδονὴν...», զոր Եզնիկ ինչպէս տեսանք, «վախճան լաւութեան (= երջանկութեան) զցանկութիւն սահմանեցին» կը թարգմանէ. իսկ մեր թարգմանիչը εὐδαιμονία (յաջողութիւն, երջանկութիւն) բառին իմաստը շփոթեր է եւ «բարեպաշտութիւն» գրեր։ — Շատ նշանաւոր է թարգմանչին Սիմոնեանց համար գրելը[2] թէ Սիմոն մոգ «կին մի Լուսին անուանեալ շրջեցուցանէր եւ իւրն անուն Արեգակն դնէր եւ յԱթենս նկարել ետ պատկեր երկուցն ի պաշտօն։» Այս շատ կողմանէ հետաքրքրական կտորը կը մեկնուի. եթէ դիտենք յոյն բնագիրը, որ է՝ Εἰκόνα δὲ ἑαυτοῦ καὶ τῆς σὺν αὐτῷ πόρνης Ἑλένης, ὡσεὶ Διὸς καὶ Ἀθηνᾶς παρεδίδου τοῖς ἑαυτοῦ μαθηταῖς εἰς προσκύνησιν, այսինքն՝ «զպատկեր իւր եւ զպոռնկին որ ընդ իւր զՀեղինեայ՝ իբրեւ Դիոսի եւ Աթենասայ տայր իւրոց աշակերտաց յերկրպագութիւն։» Ուրեմն մեկնութիւնն այս է որ «Լուսին» կնոջ անհաւատալի անունը ծագած է անկից՝ որ թարգմանիչը τῆς πόρνης Ἑλένης (պոռնկին Հեղինեայ) կարդացեր է πόρνη Σελήνη (պոռնիկ Լուսին). իսկ «յԱթենս» սխալ թարգմանութիւն է՝ Ἀθηνᾶ (Աթենաս դիցուհին) շփոթելով Ἀθῆναι (Աթէնք) անուան հետ. վերջապէս «Արեգակն»

---

1 Հտծ. Ը, 3։ Միտ դրուի որ հոս ալ ἄτομος «անհատ» թարգմանուած է, ինչպէս յԵզնիկ։ Տես վերը 98։

2 Հտծ. Ի, 5։ Տես Petav. II, 139 B. — Յայտնի է ուրեմն որ հոս հայը Bի նման բնագիր մ'ունէր առջեւը։ վասն զի այս միայն πόρνης Ἑλένης կ'ըսէ, որմէ հայը կրնար Σελήνη կարդալ շփոթմամբ, մինչ A: πόρνης ὀνόματι Ἑλένης կը գրէ, որմէ այսպիսի շփոթութիւն մը չէր կրնար ծագիլ։

թարգմանութիւն է "Դիոս" դից անուան. — Եւ այսպէս ծագած է վերոյիշեալ նորանշան նախադասութիւնը: — Մարկոսի աղանդին նկատմամբ կ'ըսուի թէ "Մարկոսս այս փախստակից էր Կողորբասի:[1]" Հոս ակնյայտնի է անյարմարութիւնն, եւ ըստ յունին պիտի ըլլայ "ուսումնակից էր Կողորբասի." (AB: Κολορβάσου συμφοιτητὴς.) — ուստի թարգմանիչը συμφοιτητὴς (ուսումնակից) բառին տեղ շփոթմամբ կարդացեր է συμφευκτικός (փախստակից:) — Կայիանոսաց համար կ'ըսուի թէ "զԿայէն փառաւորեն. Բռնաւոր զօրութիւն ունել ասեն նմա[2]:" Հոս "Բռնաւոր" անյաջող եւ նիւթական թարգմանութիւն է յունարէն ἰσχυρὸς (ուժեղ եւն) բառին՝ փոխանակ "Բուռն զօրութիւն . . ." ինչպէս կը տեսնենք համեմատելով բնագիրը: — Պեպուզացիք, կ'ըսէ Եպիփան, կ'ուսուցանեն թէ "Տէրդէ [Կուինտիղեայ] կամ Պրիսկիղեայ յղացեալ ծնաւ զՔրիստոս ի Պեպուզա:[3]" Այս բոլորովին անհեթեթ խօսքը շփոթութիւն մըն է. վասն զի Եպիփան կ'ըսէ Պեպուզեանց համար այսպէս՝ Καὶ δὴ τῇ Κυϊντίλῃ, ἢ καὶ Πρισκίλλῃ Χριστὸν ἐκεῖσε ἐν Πεπούζῃ ἀποκεκαλύφθαι ἐν ἰδέᾳ ἀληθείας μυθολογοῦσι, այսինքն՝ "Եւ առասպելաբանեն (Պեպուզացիք) եթէ Քրիստոս ճշմարտութեամբ յայտնեալ (ցուցեալ) իցէ զանձն երբեմն (կնոջն) Կուինտիղեայ կամ Պրիսկիղեայ:" Եթէ համեմատենք զայս եւ հայ թարգմանութիւնը՝ կը գտնենք անհուն տարբերութիւն, եւ ի մանաւորի հայոյն "Տէրդէ" անունն անառեղծելի կը մնայ: Սակայն քննելով կը տեսնենք որ "Տէրդէ" անիմաստ ընդօրինակութիւն է (καὶ) δὴ τῇ յոյն ձայնից, իսկ "ծնաւ զՔրիստոս" յառաջ եկած է յունին "յայտ-

---

[1] Հտծ. ԼԲ, 4. (ԼԱ:) Տես Petav. II, 141 C.

[2] Հտծ. ԼԶ, 2. (ԼԵ:) Տես Petav. II, p. 142 V λέγοντες αὐτὸν τῆς ἰσχυροτέρας δυνάμεως.

[3] Հտծ. ԽԷ, 10. (ԽԶ:) Տես Petav. II, 144 III.

նել զանձն„ ըսածէն: — Մանիքեցիք, կ'ըսէ, “Բ. իշխանութիւնս ասեն՝ չար եւ բարի.„ (Հատծ. ԿԴ, 5 = Petav. II, p. 146, II.) Հոս Եպիփան կը գրէ Ἀρχὰς δύο εἰσηγούμενοι, πονηράν τε καὶ ἀγαθήν, այսինքն “Երկուս սկզբունս մուծանեն՝ չար եւ բարի:„ Յայտնի է ուրեմն որ Հայը ἀρχὴ բառին կրկին նշանակութիւնքը (1. սկիզբն. 2. իշխանութիւն) հոս շփոթեր է: — Հոգեմարտից ուսումը կը սահմանուի թէ “Ոչ ասեն զնա (զՀոգին) յաստուածութենէն անսպառ բղխումն, այլ ըստ շնորհաց յաջողութեան ստեղծեալ[1].„ մինչդեռ ըստ Եպիփանու այսպէս պէտք էր ըլլալ “այլ . . . վասն նորին իսկ գործունէութեան ստեղծեալ ասեն:„ Որչափ կ'երեւայ հոս թարգմանիչը փոխանակ κατὰ ἰδίαν ἐνέργειαν (վասն յատուկ գործունէութեան) տեսած է κατὰ ἡδεῖαν եւն[2]: — Հոգեմարտից հաստածէն ետքը Հայը կը դնէ “Միւս Արիանոսաց„ հերձուածողաց պատմութիւնը, որ ըստ բնագրին Այերեանոսաց պատմութիւնն է:[3] Մեկնութիւնը հոս դիւրին է. Թարգմանիչը հոս Ἀεριανοί (Այերիանոսք) անունը շփոթմամբ կարդացեր է Ἀρειανοί (Արիանոսք,) եւ որպէս զի արդէն յիշուած Արիանոսաց հետ չշփոթուի՝ “Միւս Արիանոսք„ անունը ստեղծեր է: Այս կարգէն է վերջապէս Որոգինէսի համար ըսելը թէ “Համօրէն„ էր, այսինքն՝ Մատենագիր, այսպէս ճշդիւ թարգմանելով յունարէն συνταχτικὸς (մատենագիր) բառը.[4] եւ այլ շատ

---

[1] Հատծ. ՀԲ, 3. (ՀԱ:) Տես Petav. II, p. 148 V.

[2] Եթէ ուղիղ է մեր ըսածն, այս դէպքիս մէջ Հայը Bի նման բնագիր մը տեսած է. վասն զի κατὰ ἰδίαν ἐνέργειαν խօսքին մէջ միայն B ունի ἰδίαν բառը, որուն հետ կրնար շփոթուիլ ἡδεῖαν եւն:

[3] Հատծ. ՀԳ, 1. (ՀԲ:) Տես Petav. II, p. 148 VI.

[4] Հատծ. ԿԲ, 2. (ԿԱ:) “Այս Որոգինէս Ադամանդ կոչեցաւ ըստ յառաջագոյն հաշակեալ իմաստութեանն եւ մաքրութեանն՝ Համօրէն:„ Հմմտ. Petav. II, p. 146 XVIII.

նման շփոթութիւններ, սխալ ընթերցմունք են։[1] Առանց եթէ մի մասն խնդրական ըլլայ եւ մաս մ՚ալ այլազգ կարելի ըլլայ անգամ մեկնել, միշտ կը մնայ մեծ մաս մը, ինչպէս ցայս վայր ալ տեսանք, որ կը ցուցընեն մեր թարգմանութեան խեղճութիւնը, եւ այն՝ այս քանի մը էջ գրութեան մէջ։

Ճիշդ այս յունաբանութեանց քով կը գտնենք նաեւ հակառակը, այսինքն մինչեւ անգամ այն-

---

Ὡριγενιανοὶ ἄλλοι, τοῦ καὶ Ἀδάμαντος τοῦ Συντακτικοῦ. Սակայն թերեւս կարելի է հայն "Համաէեր,, ուղղել եւ զայն նոյնանշան համարիլ "մատենագիր,, բառին։

[1] Այսպէս կը գտնենք նաեւ որ Ապեղիանոսաց համար կ՚ըսուի թէ "Սոքա ըստ Մարկիոնի չարագործեալ.,, (տես ԽԲ. — Petav. II, p. 143 XI.) որ ըստ ինքեան շատ լաւ կրնայ ըլլալ։ Բայց համեմատելով բնագրին հետ (ὁ Ἀπελλῆς τὰ ὅμοια Μαρκίωνι καὶ Λουκιανῷ δογματίζει, κακίζων [A: κακίζει] τὴν πᾶσαν ποίησιν, καὶ τὸν πεποιηκότα, այսինքն՝ "Ապեղէս նման Մարկիոնի եւ Ղուկիանոսի ուսուցանէ պարսաւել զամենայն ստեղծուածս եւ զստեղծիչն.,,) կը տեսնենք որ "չարագործեալ,, սխալ մըն է κακίζων բառածին, որ բառն "պարսաւեալ,, պէտք էր թարգմանուիլ, բայց կրնար առանց միտ դնելու իմաստին՝ "չարագործեալ,, ալ թարգմանուիլ՝ իբրեւ ածանց κακός (չար եւն) բառին։ — Մելքիսեդեկեանց համար կ՚ըսուի թէ "Սոքա զՄելքիսեդեկ զոմն ծեր պատուեն.,, (ԾԳ, 1. — Petav. II, p. 145 IX) բայց AB չունին "զոմն ծեր.,, որ դուցէ աչքի շփոթութիւն մըն է՝ բնագրին... γεραίροντες (պատուեալք) կարդալով γεραιὸν (ծեր) եւն. բայց ապահով չէ այս մեկնութիւնը։ — Ըստ Հայ թարգմանչին Պօղիանոսք "զՔրիստոս անսկիզբն,, կ՚ըսեն, մինչդեռ պիտի ըլլայ թէ "զՔրիստոս անգոյ,, կ՚ուսուցանեն սոսնք. (ԿԳ, 5 — Petav. II, p. 146 I: Οὗτος ἀνύπαρκτον, τὸν Χριστὸν ὀλίγου δεῖν διαβεβαιοῦται κτλ.) ուստի յայտնի է որ Հայը ἀνύπαρκτον (անգոյ) բառի տեղ շփոթմամբ տեսեր է ἄναρχος (անսկիզբն։) — Կէս-Արիանոսք զՔրիստոս "որդի անուանեն. վասն ծրջենալոյ չարչարանաց նորա ի Հայր.,, (ՀԱ, 5 — Petav. II, p. 148 IV.) Բայց այս խօսքն բոլորովին աղաւաղ ու շփոթ բան է։ Եպիփան կ՚ըսէ "Ἀλλά, φασίν, υἱὸν αὐτὸν λέγομεν, διὰ δὲ τὸ μὴ πάθος προσάψαι τῷ Πατρὶ διὰ τοῦ γεγεννηκέναι, κτιστὸν αὐτὸν λέγομεν, այսինքն՝ "Այլ, ասեն, Որդի զնա ասեմք, բայց զի մի չարչարանք նորա եւ ի Հայրն հասցեն վասն ծնանելոյն, արարած զնա ասեմք։,, Ուստի այժմու Հայ բնագիրն կմախքն է հնոյն, եւ "վասն ծրջենալոյ չարչարանաց նորա ի Հայրն,,՝ յոռի թարգմանութիւն եւն եւն։

պիսի անուանց թարգմանութիւնք որ գտնէ աւելորդէին։ Այսպէս փոխանակ “Պիւթագորեանքն որք եւ Պերիպատետիկեանք„ ըսելու, (որ սովորական ծանօթ անուն է, եւ ինչպէս կը գտնենք թարգմանուած նաեւ յԵզնկայ) մեր թարգմանը կը գրէ “Պիւթագորացիք որք եւ Գնացողականք.„[1] վասն զի այսպէս կը նշանակէ Περιπατητικοί փիլիսոփայից անունը։ — Թարգմանիչն ուրիշ շատ տեղեր ալ անուանց քով փոքրիկ մեկնութիւններ յաւելցուցած է հայ ընթերցողին հասկըցընելու համար այն անուանց նշանակութիւնը։ Այս փոքր յաւելուածները բաւական բազմաթիւ են։[2] Ընդհակառակն կան նաեւ այնպիսի մեկնութիւնք, որ թէեւ չկան այժմու AB բնագրաց մէջ, բայց պէտք էր որ նախնաբար գտնուէին։ Անհնար է զատոնք հայ թարգմանչին յաւելուածն համարիլ, վասն զի սեմական լեզուաց հմտութիւն կ'ենթադրեն։ Այսպէս “Սամարիտանոսք„ (Σαμαρειτισμός), կ'ըսէ Եպիփան, Պաղեստին եկան եւ “Շամրոտացիք կոչեցան որ է Պահապանք։„[3] “Շամրոտացի„ ստորաձեւ անուն է եւ արդեւամբք ալ שֹׁמְרוֹן (Սամարիա) անունը שָׁמַר (պահպանել) արմատէն է։ Այս մեկնութիւնը չունին AB, բայց հայն իրմէն յաւելուլ չէր կրնար։ —

---

[1] Հռձ. Ե, 2 = Petav II, p. 132 B.

[2] Այսպէս օրինակի աղագաւ Հռձ. Ա “Բարբարոսութիւնք՝ որ կոչէին խառնակութիւնք.„ — ԺԶ, 2 (= Petav. II, p. 134 B) “Հեմերոբապտիստէք՝ որ ասին Նորա մկրտիչք. (= Ἡμεροβαπτισταί.) — ԼԵ, 2 (ԼԴ = Petav. II, p. 142 IV) “Ոփիտեանք որ են օձախաղացք.„ (= Ὀφῖται.) — ԼԸ, 2. (ԼԶ.) “Արքոնտիկեք՝ որ ասին Իշխանականք.„ զոր արդէն յիշեցինք. — ԽԵ, 1 (ԽԴ.) “Ենկրատիտոսք որ ասին Ժուժկալք.„ (Petav. II, p. 144 I: Ἐγκρατῖται.) — ԽԹ, 2 (ԽԸ.) “Աղոգինոսք՝ զորս Անբանս կոչեմք.„ (Petav. II, p. 144 V: Ἄλογοι.) — ԾԵ, 2 (ԾԶ.) “Կաթարիանոսք որ կոչին Սուրբք.„ (Petav. II, p. 145 XIII: Καθαροί.) — Համանաեւ (ԾԸ) “Անկեղիկէ, որ թարգմանին Հրեշտակականք.„ (ԾԹ.) “Ապոստոլիկէ, որ կոչին Առաքելականք.„ եւն եւն։

[3] Հռձ. Թ. 3 = Petav. II, p. 133 B.

"Փարիսեցիք որ կոչին որոշեալք,"[1] կ'ըսէ Հայը. այս մեկնութիւնը բարեբախտաբար ունին AB, որով կը հաստատուի այն թէ միւսներն ալ այնպէս գտած էր Հայը. — այսպէս նաեւ "Սադուկեցւոց մեկնութիւնը իբր "անձնարդարք."[2] իսկ "Նազարացիք" կը մեկնէ Եպիփան[3] (AB) իբրեւ "յամառք," մինչ Հայն "ուխտաւորք" ըրած "Նազովրացիք" կարծելով։ "Ոսսենացւոց" մեկնութիւնը Հայը դուրս թողուցեր է[4]. եւ նմաններ։

Թէեւ հայերէն բնագրին հատածք՝ սակաւ բացառութեամբ[5] նոյն կարգաւ եւ նոյնչափ են, որպէս եւ որչափ յոյն բնագրին մէջ կը գտնենք. բայց հայն շատ աղաւաղած է եւ շատ տեղ ալ թերի, պակասորդ ու համառօտուած, եւ շատ

[1] Հտծ. ԺԳ. 2։ Petav. II, p. 133 D: Φαρισαῖοι, ἑρμηνευόμενοι ἀφωρισμένοι.

[2] Հտծ. ԺԵ. "Սադուկեցիք՝ որ կոչին Անձնարդարք." = Petav. II, p. 134 B: Σαδδουκαῖοι, οἱ ἑρμηνευόμενοι δικαιότατοι (Արդարագոյնք։) Կ'երեւայ թէ Հայն δικαί-αυτοι տեսեր է շփոթմամբ եւ ըստ այնմ "անձնարդարք" յօրինած։

[3] Հտծ. ԺԸ "Նազարացիք՝ որ կոչին ուխտաւորք.", իսկ Եպիփան կ'ըսէ ըստ B (Petav. II, p. 134 C: Νασσαραῖοι, οἱ ἑρμηνευόμενοι ἀφηνιασταί. (... որ թարգմանին Անսանձք.) իսկ A: ... ἀφανισταί (... Կործանիչք,) ուստի լոկ տառ մը տարբեր գրուելով ծագած։

[4] Հմմտ. Petav. II, p. 134 B: Ὀσσηνοὶ, οἱ δὴ ἰταμώτατοι ἑρμηνεύονται. ("Ոսսենացիք՝ որ թարգմանին Լրբք։") Հայը չէ թարգմանած այս մեկնութիւնը. (Հմմ. ԺԷ։)

[5] Օրինակի համար ԻԱ հատածը (Մենանդրացիք) հայերէն ձեռագրաց մէջ կցուած է Ի հատածին եւ անոր մաս եղած. (Հմմտ. Միաբան, Ի, էջ 4, 7։) — ԻԸ հատածին տեղը Հայոյն մէջ կը պակսի Նազովրացւոց վրայ եղած փոքրիկ հատուածը. (Petav. II, p. 140 C), որ անշուշտ գրչաց արդիւնքն է, որ քիչ մը յառաջ յիշուած "Նազարացւոց" հետ նոյն կարծած, ուստի աւելորդ կրկնութիւն համարած պիտի ըլլան զայն։ — Հայերէնին մէջ "Արքունտիկէք" եւ "Կերդոնիանոսք" կտորները (ԼԸ, ԼԹ) նախ գրուած են քան Սեթիանոսաց հատածը (ԼԷ։) Այս կարգի տեղափոխութիւնը կը վերնայ Խ հատուածէն սկսեալ։ — Հայերէնին մէջ Եւնոմեանք առանձինն հատուած մ'ունին (ՀԴ) մինչդեռ AB նոյնը շարունակութիւն կը դնեն Աւետիանոսաց։

քիչ տեղ ալ յաւելուածներով։ Տեղ մը յայտնապէս Թարգմանչին կամ մանաւանդ թէ գրչին յաւելուածը կը տեսնենք, որ Զորեքտասանականաց զատիկը տօնելու կերպը յիշեցընելէն ետքը, յանկարծ կը յաւելու թէ ըստ Հայոց եկեղեցական կանոնաց պատարագի հացն ջերմ պիտի ըլլայ, զոր արդարեւ կը գտնենք Վարդապետութիւն Առաքելոց անվաւերականին մէջ.[1] բայց այս ամէնն ամենեւին կապ չունի նոյն տեղւոյ հետ, ուստի գրչի մը յաւելման արդիւնք կը համարինք զայն։

Դժուար է գաղափար կազմել թէ ինչ աղաւաղ վիճակի մէջ է հայ բնագիրը։ Ձեռագրաց անթիւ տառասխալներէն, որոնցմով երկու ձեռագիրք ալ — թէ՛ Էջմիածնի ձեռագիրն ուստի եւ Միաբանի հրատարակութիւնը եւ թէ՛ մեր 56 Ա ձեռագիրն — խճողուած են՝ ուղիղը մինչեւ անդամ անճանաչելի ըլլալու չափ՝ մանաւանդ անուանք,[2]

---

[1] Հտծ. ԽԸ. (ԽԷ.) “Զորեքտասանականք. սոքա ի տարւոջն մի օր զատիկ կատարեն եւն։ — Իսկ մերս՝ ըստ առաքելական կանոնին՝ եթէ ոչ ջերմ ելցէ ի սեղանն եւ նոյն ժամայն ծախեսցի, ոչ է ընդունելի։ Բայց ի Նիկիայ ժողովն կանոնեցին յԲ. ճրագալուցսն մասն ինչ թողուլ հիւանդաց եւ տղայոց եւ այլոց եւս։,, Այս վերջին կտորն՝ որ անկապ է բոլորովին ուստի եւ չկայ յունին մէջ, (Հմմտ. Petav. II, p. 144 IV.), գրչի մը յաւելուածն է յայտնապէս։

[2] Իբրեւ օրինակ յիշուին միայն հոս մէկ քանին։ Երկու ձեռագիրք ալ (Թ.) “Թարմորտիմոսք,, փխ. “Սամարիտիսմոսք.,, — (ԺԲ) “Գորիթացիք.,, կը կարդան, որ ըլլալու է յայտնապէս “Դոսիթացիք,, (Δοσίθεοι). — (ԻԵ.) “Փարաւոնացիք,, փխ. “Փիբիոնացիք.,, (Φιβιωνῖται). քիչ մ'ետքն ալ “ի Բոբելոն պարծին,, փխ. “ի Բարբելոյ,, (Βαρβελὼ). — (ԻԸ) “Աբիանացիք,, փխ. “Եբիոնացիք.,, եւ քիչ մ'ետքն “Սամոստացիք,, շփոթմամբ փխ. “Սամսիտք. (. . . τῶν Σαμψάμων), որ կը յիշուի նաեւ յետոյ (ՁԴ.), ինչպէս նաեւ հոս կը գտնենք “Կեսացւոց,, փխ. “Եղկեսացւոց.,, (καὶ ᾿Ελκεσαίων.) — (ԼԲ) կ'ըսեն հայ ձեռագիրք “Մարկիոնացիք . . Մարկիոն . . .,, բայց հօն “Մարկոսացիք . . . Մարկիոս . . .,, պէտք է կարդալ, ինչպէս նաեւ “Հաղարբոս,, ուղղելու է “Կողորբաս,, (Κολορβάσου . . .) — (ԽԹ.) “Ողոգինոսք,, փխ. “Աղոգինոսք,, (῎Αλογοι). — (ԾԵ) “Նետիանոսք,, փխ “Նոյետիանոսք.,, (Νοητιανοί), եւ քիչ մ'ետքը “ի

կարելի է գուշակել երկու գրչաց կամ իրենց գաղափարաց գրիչներուն տգիտութեան պատճառը։ Միաբան՝ որ ի հարկէ տեսած էր իւր ձեռագրին խեղճութիւնը[1] լաւ խորհրդածեր էր թէ բնագրի մը հետ համեմատելով կարելի է պարզել շատ բան։ Այս կողմանէ մեր յաջորդ վերանորոգեալ բնագիրը[2] կը յուսանք բոլորովին ուրիշ կերպարանօք կը ներկայանայ, ուր մանրամասն համեմատուած են նաեւ հայերէն երկու ձեռագիրք եւ յոյն բնագիրը։ Շատ տեղ ուղիղ ընթերցուած ունէր մեր 56Ա ձեռագիրն. բայց յընդհանուրն՝ գրեթէ նոյն կարգի բան են երկուքն ալ։ Նաեւ մեր ձեռագրին մէջ մեծ կտոր մ'ալ պակաս է,[3] որչափ կ'երեւայ՝ իւր օրինակին մէջ այն տեղ թուղթ մ'ինկած ըլլալով։

Աւելորդ է ըսել թէ որչափ աղճատմունք կան հայ բնագրին մէջ։ Բաւական է այն՝ որ շատ տեղ պակասաւոր է հայն եւ տեղ տեղ կմախք միայն մնացած է բուն գրքէն, եւ լի հակասութեամբք,[4]

---

Սեմրնեայ„ զոր "ի Զմիւռնիայ„ (ἀπὸ Σμύρνης) ուղղելու է. — (Կ) "Բելիանոսք„ ըլլալու է "Սաբելիանոսք.„ (ԿԲ) "ի Սերբայ„ ուղղելի "ի Սիրմիայ„ (ἀπὸ Σιρμίου).) (ՀԲ) "Պենեմատոսք„ փխ. "Պնեւմատոմաքոսք„ (Πνευματομάχοι). (ՀԴ) "Որ յաւէտ„ ուղղելու է "Աւետիանոսք„ եւն եւն։ — Աւելորդ է ըսել որ ասոնք հազարէն մէկն են փոքրիկ գրութեանս մէջ խճողուած սխալներուն։

[1] Ցուց. Բ, ուր շատ լաւ ուղղուած է ձեռագրին "Հոմերաբախտիստէքը„ անունը "Հեմերաբապտիստէք.„ ձեռագրաց "Պառաղիանոսք„ ի "Մեսաղիանոսք„ եւն եւն։

[2] Որ լոյս կը տեսնէ մեր այս գրութեան մէջ. սոյն հատածէն վերջը կցուած՝ հանդերձ մանրամասն համեմատութեամբք։

[3] Հմմտ. 56Ա թղ. 74b, ուր "Նիկողայոսացւոց„ հատածին մէջ (ԻԴ) կ'ըսուի "Բայց ոչ նաեւ ոչ ‖ անին յաւիտեանս եւ ունին գիրք մի Սիմոն կախարդ։„ Հոս "բայց ոչ նաեւ ոչ„ մասն է ԻԴ հատածին, իսկ "անին (Ենքէ) յաւիտեանս„ եւն Վաղենտիանոսաց (ԻԹ կտորին. (պակասն է Միաբանի՝ էջ 4, ԻԳ, տող 20—6, տող 1։) Ուրեմն ամբողջ էջ մը պակաս էր 56Ա ձեռագիրն գաղափարին մէջ, կամ գուցէ գրիչն ըստ պատահման մոռցեր է զայն օրինակել, առանց իմանալու պակասը։

[4] Օրինակի աղագաւ Ժ հատուածը մէկ տող է հայոյն մէջ ("Գործենացիք եւ Սեբուացիք զտօնս կատարեն հրէա-

որուն մի մասը թերեւս թարգմանչին յանցանքն է, բայց մեծ մասն անշուշտ ընդօրինակողաց է: Այս թերութեանց մեծ մասը կարելի էր բառնալ լաւագոյն ձեռագիրներ գտնելով եւ համեմատելով բնագրին հետ: — Ընդհակառակն շատ ցանցառ չեն նաեւ այնպիսի տեղեր ալ՝ ուր հայն բոլորովին ուրիշ բնագիր մը տեսած կ'երեւայ. այնչափ մեծ տարբերութիւնք կը տեսնուին, աւելի մասեր, կամ փոխանակ յոյն բնագրին բածին՝ ուրիշ տեղեկութիւններ, որ երբեմն հետաքրքրական են:[1] Իսկ ըստ յոյն բնագրաց՝ ուր տարբերու-

---

բենս.,, = Petav. II, p 133 B.) — ԻԲ (Սատոռնիղիացիք) հատածը նոյնպէս մէկ տող է եղած (" . . . եւ տոքա ըստ Սիմոնի աղանդին վարին. ե— տoխն անծանօն ե— ծանօն տո-փոտած:,,) Այս վերջին բոլորովին անիմաստ խօսքն ալ չկայ յAB, որ ուրիշ տեղեկութիւններ կու տան. (Հմմտ. Petav. II, p. 139 III ութ տող:) — ՀԵ (Դեմիուրիտք) նոյնպէս մէկ տող եղած է, մինչ AB շատ ընդարձակ է (11 տող. Հմմտ. Pet. II, p. 149 I.) — Պղատոնացւոց համար կ'ըսուի թէ (Ջ) "զաշխարհս ծննդոյխոն եւ անմահ" կ'ըսեն, որ հակառական է. պատճառն է այն որ քանի մը բառեր դուրս ինկած են, եւ պիտի ըլլար "զաշխարհս ծննդական ե— տողոխնոյու, ե— ոհոֆե ոնծին եւ անմահ:,, Հմմտ. վերը Եզնկայ թարգմանութիւնը: — Սիմոն մոգի համար կ'ըսեն AB թէ "ի Գիտթիս գեղջէ,, էր, զոր չունի հայը. նոյնպէս Ցատիանոսի համար (ԽԴ) կը յաւելուն AB թէ Միջագետքեն էր, որ նոյնպէս կը պակսի հայոյն մէջ: Պեպուզիացւոց մասին մէջ (ԽԷ) կը պակսին հայոյն մէջ սա մասերը թէ "Պեպուզացիք որ եւ Կուինտեղիացիք, յորոց կարգի են եւ Արտոտիրիտք,, եւ դարձեալ թէ Փռիւգացւոց օրէնքն ունին: Եւնոմեանց մասին մէջ (ՀԴ) AB կ'ըսեն թէ ասոնց հետ էր նաեւ Եւթոքսիոս եւն, զոր չունի հայը, եւ այլ անթիւ նման դէպքեր: — Շատ տեղ ալ տեղափոխութիւնք եղած են: Օրինակի համար (Ե) "Պիւթագորացիք որ է Պերիպատետիկոյ հերձուած", որք են գնացողականք,, խօսքին մէջ "որ է հեթանոսաց հերձուածք" գրչաց անմտադրութեամբ հոն ինկած է, որ Դ հատածին վերջը կամ Եի սկիզբն իբր վերնագիր ըլլալու է ըստ բնագրին: Ինչպէս տեսանք վերը՝ նաեւ Եզնկայ քով այս նախադասութիւնը տեղափոխուած է: Նման տեղեր կը գտնենք այլուր ալ:

[1] Աւելորդ չէ յիշել օրինակի համար քանի մը կտորներ: Բ (Սկիւթիսմոսք) հատուածին մէջ կտոր մը կայ թէ ասոնք "զվինս եւ զջնարս դիս պաշտեցին՝ ըստ խրատու դիւի ուրումն Լուիանդոս անուն,,, որ որչափ հետաքրքրական է՝ այնչափ ալ քննութեան արժանի. զոր չունին AB: —

թիւն կայ A եւ B բնագրաց մէջ, հայն երբեմն A բնագրին համեմատ է, բայց ընդհանրապէս այսպիսի տեղերն աւելի Bի հետ նոյնութիւն կը գտնենք։[1]

Հոս կնքելով դիտողութիւնքս՝ մտադիր ընելու տանք որ ցայժմ մեր քննութեան առարկայ ե-

---

Սամարացւոց համար (Թ) կ'ըսուի թէ իրենց կուռքերը բերին թաղեցին ի Գարեզին եւ Գեբաղ. այս չունին AB ինչպէս նաեւ Դպրաց համար ըսուածը (ԺԳ) թէ անլուայ չէին ուտեր եւն, որ սակայն Աւետարանէն առած կ'երեւայ գրիչը կամ թարգմանիչը։ — Նիկողոսինկատամամբ գրուածը (ԻԴ) թէ իւր կինն ի Հրապարակ հանեց, չունին AB. նոյնպէս այն՝ թէ Եբիոնեցիք ջուր կը պաշտեն (ԻԸ, 11). կամ Վաղենտիանոսաց համառօտի մէջ Սիմոն կախարդի Պրակք Առաքելոց գրքին յիշատակութիւնը (ԻԹ, 5). թէ Սեկունդացիք երկաթ կը պաշտեն (Լ, 3). Սեթիանոսաց համառօտին մէջ “Պարկեշտագոյնք„ անուանելոց կտորը (ԼԷ, 5,). Ապեղիանոսաց համար ըսուածը թէ Աստուած ստեղծեց ուրիշ աստուածներ եւ չար աստուած մ'ալ աշխարհը (ԽԲ, 4). Էնկրատիտոսաց վերջը քանի մը տող յաւելուածը (ԽԵ, 6). բայց մանաւանդ Պեպուզացւոց մասին մէջ եղած մէկ կտորը թէ բակաձեւ նստած տղայ մ'իրարու կը նետեն եւ որուն քով մեռնի, այն կ'ըլլայ քահանայ եւն. (ԽԷ, 5, 6.) Ադամիանոսաց համար ըսուածը թէ ասոնք աջակողման աւազակը Ադամն եղած կը կարծեն (Ծ, 3). Վաղեսիոսաց մասին մէջ յաւելուածոյ մէկ կտորը (ԾԶ, 4). Ապոստոլիկեանց համար գրուածը թէ աղօթքի ընկեր չեն ուզեր (ԾԹ, 4). Պօղիանոսաց համառօտին մէջ գտնուած շատ մը հետաքրքրական աւելի կտորները (ԿԳ, 6, 9, 13). Մանիքեցւոց երդման շատ հետաքրքրական բանաձեւը (ԿԴ, 4). Աւդիանոսաց մասին մէջ մեծ կտոր մ'ուր կ'ըսուի թէ օդն ու պտուղները կը պաշտեն եւ “Երան եւ Տոհմական„ անուն դիւի մ'երկրպագութիւն կը մատուցանեն (ԿԸ, 4, 5). թէ Մարկեղիանոսք Քրիստոսի մարմինը “յարեգական եդեալ„ կ'ուսուցանեն (Հ, 7) եւ այլ շատ նմաններ, որ կամ բոլորովին չկան AB բնագրաց մէջ եւ կամ բոլորովին ուրիշ տեղեկութիւնք կան ասոնց տեղ եւն։

[1] Օրինակի համար յիշեցինք վերը Դ հատուածին մէջ եղած կոչումը (Կողոս. Գ, 11) զոր չունին B եւ Եզնիկ, ունին A եւ մեր “Գիրք Հերձ.„ — Պաւղոս Սամոսատացւոյ համար B կը յաւելու թէ Եպիսկոպոս էր Անտիոքայ, զոր չունին A եւ Հայը. — թէ Մարկեղոս եպիսկոպոս էր Անկիւրեայ, կ'ըսէ B, զոր չունին A եւ Հայը. — Սիմոն մոգի մասին Հայոյն ըսածը թէ “յաւուրս առաքելոցն„ էր, համեմատ է Bի մինչ A “առ Պետրոսիւ առաքելով„ կ'ըսէ. — A Մոնտանեանց հետ կը յիշէ նաեւ Տասկոնդրուգիտաց անունը, զոր չունին B եւ Հայը. — թէ Դեմիուրգոսք կը կոչուին նաեւ “Ապողինարիտքս՝„ կը յիշեն միայն B եւ Հայը, եւն եւն։

ղաւ “Գիրք Հերձուածոցի„ միայն առաջին կէսը (հատճք՝ Ա—Զ.) վասն զի այսչափն միայն Եպիփանու գործոյն Հայ թարգմանութիւնն է, զոր քննադատօրէն վերականգնել էր մեր նպատակը։ Մնացեալ մասը՝ որ Միաբանի հրատարակութեան մէջ կրնայ տեսնուիլ,[1] այլեւայլ աղբիւրներէ հաւաքածոյ մը կ՚երեւայ՝ լի նոյնպէս աղաւաղութեամբք եւն. որուն մի մասն ալ կրկնութիւն էնախընթացին կամ Եպիփանու յիշած աղանդոց՝ ուրիշ խմբագրութեամբ։ Վերջին մասին մէջ կը յիշուին նաեւ քանի մ՚արեւելեան աղանդոց զրոյցք, այսպէս Մարէ եւ Շէթի կանանց մասին եւն, որոնց քննութեան միջամուխ ըլլալը մեր ծրագրէն դուրս էր։ Զկնքած մեր հատուածն՝ դնենք համեմատութիւն մ՚ալ ազգային մատենագիրներէն քաղուած։ Օրինակի աղագաւ Պեպուզացւոց եւ Մանիքեցւոց երդման հետաքրքրական բանաձեւն Յովհ. Իմաստասիրի գրոց մէջ կը գտնենք, ինչպէս կը ցուցընէ հետեւեալ համեմատութիւնը։

Գիրք Հերձուածոց

(ԿԴ. — Միաբ. էջ 11։)

“Մանիքեցիք. սոքա Մանեայ պարսկի աշակերտք էին եւ պաշտեն զարեգակն եւ զլուսին եւ զաստեղս։ Եւ երդնուն յարեգակն եւ ասեն. Լուսիկ արեւիկ քաղցրիկ, լի՛ ես տիեզերօք։ . . . „

Յով. Օձնեցի

(Ընդդ. Պաւղիկ. տպ. Վենետ. 1833, էջ 86։)

“Տղայոցն արեամբ զանգեալ ալիւր . . . Որք եւ զնոցին դիականսն առ երդմունս ի տանիս զեղչեալս բարձրահայեաց եւ երկնապիշ լինելով, երդնուն այլ ընդ ընդ այլոյ աստցեալք Թարձրեալն գիտէ։ Իսկ զարեգակն աղաչել կամեցեալ՝ ասեն, Արեւիկ, լուսիկ եւ ի ծածուկ զօդային եւ զվերնոտ դեւսն կոչեն ըստ Մանեայ եւ Սիմոնի կախարդի մոլորութեանց։

---

1 Համտ. Միաբ. էջ 14 ՀԹ — 22։

(Խէ. — Միաբ. էՋ 8։)
"Պեպուղացիք .... Բա-կաձեւնատուցանեն զգլխաւոր կանայսն եւ մանուկ տղայ խոցոտեն՝ ձգելով ի մի-մեանս, եւ առ ով մեռանի՝ նա է նոցա քահանայ։ Եւ յարենէ մանկանն հաց ա-բարեալ տան ի հաղորդու-թիւն պատարագաց եւ զոս-կերսն թաղեն կամ ի բարձր տաճարի առ երդս, կամ ի բարձր լերինս։ Եւ յորժամ խօսին ընդ ումեք կամ երդ-նուն՝ զձեռս ամբարձեալ ասեն Միածինն բարձրեալն, որ ի վեր է քան զամե-նայն։"...

Դոյնպէս եւ զաստացեալ զառաջնածին կնոջ զմա-նուկն ի ձերբաձգութենէն առ իրեարս չարամահ առ-նելով, զայն՝ յոյր ձեռս ո-գեսպառ եղեալ սատակի՝ յաղանդապետական կար-գեալ պատուի մեծարեն։ Եւ յիւրաքանչիւրոցն ա-նուն երդմունս կատարել զառածանին։ Երդուեալ, ասեն, ի միածինն որդի։ Եւ դարձեալ՝ թէ վկայ ունիմ քեզ զփառս այնո-րիկ, յոյր ձեռս միածինն որդի զոգի իւր աւանդեաց։"

Առ այժմ մատնանիշ միայն ընելով Օձնեցւոյ այս կտորն, ուր թերեւս խօսինք նոյն հեղինակին այս մասին աղբեր վրայ։ Պեպուղացւոց տղայ զոհելու նկարագրութիւնը՝ զոր Օձնեցի Պաւղիկեանց վրայ կ'ըսէ, ընդարձակ կը դնէ Եպիփան իւր բուն գրոց մէջ։ (Ընդդէմ Հերձ. Գիրք Բ, Հտր. Ա. Հտծ. ԺԴ. Հմմտ. Petav. I. p. 416 եւն։)

Մեր յաջորդ հրատարակութիւնը մանրամասն համեմատութեամբ Միաբանի հրատարակութեան եւ մեր 56Ա ձեռագրին եղած է։ Յոյն բնագրայ հետ ճշգրիտ համեմատութեամբ նշանակած ենք հայ բնագրին տարբերութիւնքն ծանօթութեանց մէջ։ Իսկ բուն հայ բնագրին մէջ այն մասերը՝ որ կարեւոր կ'երեւան եւ սակայն չեն գտնուիր հայոյն մէջ, դրինք ըստ AB բնագրաց, բայց միշտ [ ] անկիւնաւոր չակերտի մէջ, որպէս զի չխառնուին բուն հայ ձեռագրաց տուած ընթերցուածոց հետ։ Հայոյն այն մասերը՝ որ չկան AB բնագրաց մէջ, նշանակեցինք սովորական չակերտի ( ) մէջ առնելով։ Այս դիտողութեամբ կը յուսանք որ չեն շփոթուիր մեր ուղղագրած մասերը բուն ձեռագրաց

տուած բնագրին հետ։ Ինչպէս անգամ մը գրինք՝ մեր յաջորդ հրատարակութեան մէջ գործածուած են սա համառօտութիւնքն.

A = Ցոյն բնագիր Եպիփանու Ընդդէմ Հերձուածոց գրոց Ցանկին, որ ամէն գրքին սկիզբը դրուած է։

B = Ցոյն բնագիր Եպիփանու "Համառօտման" (Ἀνακεφαλαίωσις = Anacephalaiosis)

Է = Ձեռագիր Էջմիածնի՝ ըստ հրատարակութեան Միաբանի։

56Ա = Նոյն թուով ձեռագիր օրինակ մեր Մատենադարանին։

## ՀԵՐՁՈՒԱԾՈՂՔ ԵՐԵՒԵԼԻՔ

*Այսչափ են եւ այսոքիկ՝ զոր սերմանեաց սատանայ ի մարդիկ, զոր կարգաւ ասեմք:**

Ա. ¹*Բարբարիսմոսք*, ²*որ կոչին խուժադուժք, սկսեալ յԱդամայ մինչեւ ի Նոյ [ընդ տասն ազգս. եւ կոչին բարբարիսմոսք,] զի ոչ գոյր առաջնորդ եւ [ոչ միաբանութիւն ընդ միմեանս, այլ] ամենայն ոք ըստ կամաց իւրոց գնայր, ³որպէս եւ կամէր:*

Բ. *Սկիւթիսմոսք ի Նոյէ սկսեալ մինչեւ ցաշտարակն [եւ ցԲաբելոնի շինութիւն, եւ զկնի աշ-*

---

* Վերնագիր ըստ Է. 56Ա "Հերձուածողք զոր սերմանեաց . . . այս է զոր կարգաւ ասեմք:" Վերջին մասն "զոր կարգաւ ասեմք" չունի Է: Փոնդի հատածը "Վասն թէ քանի են հերձուածողք յաշխարհի:" — Յոյն բնագրին մէջ չկայ այսպիսի վերնագիր, որ անշուշտ ծագած է յոյնին սա խօսքէն *Πρῶτον μὲν* [B. յաւ. *γὰρ*] *αἱ τῶν αἱρέσεων πασῶν μητέρες τε* [B. չունի *τε*], *καὶ πρωτότυποι [A καὶ] ὀνομασίαι, ἐξ ὧν [A μητέρες πέντε αἱ] ἄλλαι ἔφυσαν, αὗταί εἰσι [A. καὶ εἰσὶν αὗται πρῶται τέσσαρες.]* (Քանզի նախ ամենայն հերեսութեանց մարք եւ նախկին անուանակոչութիւնք՝ յորոց այլքն յառաջ եկին, այս են:)

‖ Ա. Բաժանմունք (Ա. Բ եւն) ունի միայն Է եւ Փոնդ եւ յոյն A: (Բ. 56Ա չունի եւ B ոչ միշտ:) — ¹ "Բարբարիսմոսք" = *Βαρβαρισμός*, փխ "Բարբարոսութիւն." նոյնպէս են յաջորդքն "Սկիւթիսմոսք.", "Հելլենիսմոսք" "Յուդայիսմոսք" եւն եւն: Եզնիկ (էջ 207 եւն) "խուժականք եւ սկիւթականք եւ հեթանոսականք . . . յուդայութիւն . . . Հելլենք" կը թարգմանէ: Տես վերը՝ էջ 99: — ² "Որ . . . խուժադուժք" չիք յAB.— ³ "Որպէս . . ." 56Ա. AB հոս վերջը կը յաւելուն *καὶ νόμος ἑαυτῷ κατὰ τὴν προτίμησιν τοῦ ἰδίου βουλήματος ἐγίνετο* (Եւ օրէնք անձին իւրաքանչիւր որ ըստ յօժարութեան իւրոց կամաց լինէր:) Անշուշտ այսպիսի խօսքի մը նշխարքն է "Որպէս եւ կամէր":

‖ Բ. ¹ "Եւ յՌագաւայ" Է. 56Ա "յԱռագաւայ:" Այս խօսքը շատ կրճատ է եւ աղաւաղ: Ըստ AB պիտի ըլլայ "Որոց անցեալ յԵւրոպա ի կողմանս Սկիւթացւոց եւ

տուած բնագրին հետ։ Ինչպէս անգամ մը դրինք՝ մեր յաջորդ հրատարակութեան մէջ գործածուած են սա համառօտութիւնքն.

A = Յոյն բնագիր Եպիփանու Ընդդէմ Հերձուածոց գրոց Ցանկին, որ ամէն գրքին սկիզբը դրուած է։

B = Յոյն բնագիր Եպիփանու "Համառօտման„ (Ἀνακεφαλαίωσις = Anacephalaiosis)

Է = Ձեռագիր Էջմիածնի՝ ըստ հրատարակութեան Միաբանի։

56Ա = Նոյն թուով ձեռագիր օրինակ մեր Մատենադարանին։



քիչ տեղ ալ յաւելուածներով։ Տեղ մը յայտնապէս թարգմանչին կամ մանաւանդ թէ գրչին յաւելուածը կը տեսնենք, որ Չորեքտասանականաց զատիկը տօնելու կերպը յիշեցընելէն ետքը, յանկարծ կը յաւելու թէ ըստ Հայոց եկեղեցական կանոնաց պատարագի հացն ջերմ պիտի ըլլայ, զոր արդեամբք կը գտնենք Վարդապետութիւն Առաքելոց անվաւերականին մէջ.[1] բայց այս ամէնն ամենեւին կապ չունի նոյն տեղւոյ հետ, ուստի գրչի մը յաւելման արդիւնք կը համարինք զայն։

Դժուար է գաղափար կազմել թէ ինչ աղաւաղ վիճակի մէջ է հայ բնագիրը։ Ձեռագրաց անթիւ տառասխալներէն, որոնցմով երկու ձեռագիրք ալ — թէ՛ Էջմիածնի ձեռագիրն ուստի եւ Միաբանի հրատարակութիւնը եւ թէ՛ մեր 56 Ա ձեռագիրն — խճողուած են՝ ուղիղը մինչեւ անգամ անճանաչելի ըլլալու չափ՝ մանաւանդ անուանք,[2]

[1] Հմտ. ԽԸ. (ԽԷ.) “Չորեքտասանականք. սոքա ի տարւոջն մի օր զատիկ կատարեն եւն։ — Իսկ մերս՝ ըստ առաքելական կանոնին՝ եթէ ոչ ջերմ ելցէ ի սեղանն եւ նոյն ժամայն ծախեսցի, ոչ է ընդունելի։ Բայց ի Նիկիայ ժողովն կանոնեցին յԲ. ճրագալուցսն մասն ինչ թողուլ հիւանդաց եւ տղայոց եւ այլոց եւս։,, Այս վերջին կտորն՝ որ անկապ է բոլորովին ուստի եւ չկայ յունին մէջ, (Հմմտ. Petav. II, p. 144 IV.), գրչի մը յաւելուածն է յայտնապէս։

[2] Իբրեւ օրինակ յիշուին միայն հոս մէկ քանին։ Երկու ձեռագիրք ալ (Թ.) “Թարմորտիմոսք,, փխ. “Սամարիտիմոսք.,, — (ԺԲ) “Գորիթացիք.,, կը կարդան, որ ըլլալու է յայտնապէս “Դոսիթացիք,, (Δοσίθεοι). — (ԻԵ.) “Փարաւոնացիք,, փխ. “Փիբիոնացիք.,, (Φιβιωνῖται). քիչ մ'ետքն ալ “ի Բոբելոն պարծին,, փխ. “ի Բարբելոյ,, (Βαρβελὼ). — (ԻԸ) “Աբիանացիք,, փխ. “Եբիոնեացիք.,, եւ քիչ մ'ետքն “Սամոսատացիք,, շփոթմամբ փխ. “Սամսիտք. (... τῶν Σαμψάμων), որ կը յիշուի նաեւ յետոյ (ՁԴ.), ինչպէս նաեւ հոս կը գտնենք “Կեռացւոց,, փխ. “Եղկեսացւոց.,, (καὶ Ἐλκεσαίων.) — (ԼԲ) կ'ըսեն հայ ձեռագիրք “Մարկիոնացիք .. Մարկիոն . . .,, բայց հոն “Մարկոսացիք . . . Մարկոս . . .,, պէտք է կարդալ, ինչպէս նաեւ “Հաղարբոս,, ուղղելու է “Կողորբաս,, (Κολορβάσου . . .) — (ԽԹ.) “Աղոդինոսք,, փխ. “Աղոգինոսք,, (Ἄλογοι). — (ԾԵ) “Նեստորիանոսք,, փխ “Նոյետիանոսք,, (Νοητιανοί), եւ քիչ մ'ետքը “ի

կարելի է գուշակել երկու գրչաց կամ իրենց գաղափարաց գրիչներուն ագիտութեան աստիճանը։ Միաբան՝ որ ի հարկէ տեսած էր իւր ձեռագրին խեղճութիւնը[1] լաւ խորհրդածեր էր թէ բնագրի մը հետ համեմատելով կարելի է պարզել շատ բան։ Այս կողմանէ մեր յաջորդ վերանորոգեալ բնագիրը[2] կը յուսանք բոլորովին ուրիշ կերպարանօք կը ներկայանայ, ուր մանրամասն համեմատուած են նաեւ հայերէն երկու ձեռագիրք եւ յոյն բնագիրը։ Շատ տեղ ուղիղ ընթերցուած ունէր մեր 56Ա ձեռագիրն. բայց յընդհանուրն՝ գրեթէ նոյն կարգի բան են երկուքն ալ։ Նաեւ մեր ձեռագրին մէջ մեծ կտոր մ'ալ պակաս է,[3] որչափ կ'երեւայ՝ իւր օրինակին մէջ այն տեղ թուղթ մ'ինկած ըլլալով։

Աւելորդ է ըսել թէ որչափ աղճատմունք կան հայ բնագրին մէջ։ Բաւական է այն՝ որ շատ տեղ պակասաւոր է հայն եւ տեղ տեղ կմախք միայն մնացած է բուն գրքէն, եւ լի հակասութեամբք,[4]

Սեմրնեայ„ զոր "ի Զմիւռնիայ„ (ἀπὸ Σμύρνης) ուղղելու է. — (Կ) "Թեղիանոսք„ ըլլալու է "Սաբելիանոսք.„ (ԿԲ) "ի Սերբայ„ ուղղելի "ի Սիրմիայ„ (ἀπὸ Σιρμίου).) (ՀԲ) "Պնեմատոսք„ փխ. "Պնեւմատոմաքոսք„ (Πνευματομάχοι). (ՀԴ) "Որ յաւէտ„ ուղղելու է "Աւետիանոսք„ եւն եւն։ — Աւելորդ է ըսել որ ասոնք հազարէն մէկն են փոքրիկ գրութեանս մէջ խճողուած սխալներուն։

[1] Յոյն. Բ, ուր շատ լաւ ուղղուած է ձեռագրին "Հոմերաբախտիստէքը„ անունը "Հեմերաբապտիստէք.„ ձեռագրաց "Պառաղիանոսք„ ի "Մեսաղիանոսք„ եւն եւն։

[2] Որ լոյս կը տեսնէ մեր այս գրութեան մէջ. այն հատուածէն վերջը կցուած՝ հանդերձ մանրամասն համեմատութեամբք։

[3] Հմմտ. 56Ա Թղ. 74b, ուր "Նիկողոսացւոց„ հատուածին մէջ (ԻԴ) կ'ըսուի "Բայց ոչ նաեւ ոչ ‖ անին յաւիտեանս եւ ունին գիրք մի Սիմոն կախարդ։„ Հոս "բայց ոչ նաեւ ոչ„ մասն է ԻԴ հատուածին, իսկ "անին (Ըերբ) յաւիտեանս„ եւն Վաղենտիանոսաց (ԻԹ կտորին. (պակասն է Միաբանի՝ էջ 4, ԻԴ, տող 20—6, տող 1։) Ուրեմն ամբողջ էջ մը պակաս էր 56Ա ձեռագիրն գաղափարին մէջ,՝ կամ գուցէ գրիչն ըստ պատահման մոռցեր է զայն օրինակել, առանց իմանալու պակասը։

[4] Օրինակի աղագաւ Ժ հատուածը մէկ տող է հայոյն մէջ ("Գորթենացիք եւ Սեբուացիք զտօնս կատարեն հրէա-

որուն մի մասը թերեւս թարգմանչին յանցանքն է, բայց մեծ մասն անշուշտ ընդօրինակողաց է։ Այս թերութեանց մեծ մասը կարելի էր բառնալ լաւագոյն ձեռագիրներ գտնելով եւ համեմատելով բնագրին հետ։ — Ընդհակառակն շատ ցանցառ չեն նաեւ այնպիսի տեղեր ալ՝ ուր հայն բոլորովին ուրիշ բնագիր մը տեսած կ'երեւայ. այնչափ մեծ տարբերութիւնք կը տեսնուին, աւելի մասեր, կամ փոխանակ յոյն բնագրին բառին՝ ուրիշ տեղեկութիւններ, որ երբեմն հետաքրքրական են։[1] Իսկ ըստ յոյն բնագրաց՝ ուր տարբերու-

---

բենս.,, — Petav. II, p 133 B.) — ԻԲ (Սատոռնիղիացիք) հատուածը նոյնպէս մէկ տող է եղած ("... եւ սոքա ըստ Սիմոնի աղանդին վարին. եւ տաէն անծանօթ եւ ծանօթ տո-փոսոծ։,,) Այս վերջին բոլորովին անիմաստ խօսքն ալ չկայ յAB, որ ուրիշ տեղեկութիւններ կու տան. (Հմմտ. Petav. II, p. 139 III ութ տող։) — ՀԵ (Դեմիուրիտք) նոյնպէս մէկ տող եղած է, մինչ AB շատ ընդարձակ է (11 տող. Հմմտ. Pet. II, p. 149 I.) — Պղատոնացւոց համար կ'ըսուի թէ (Ձ) "զաշխարհս ծննդական եւ անմահ,, կ'ըսեն, որ հակասական է. պատճառն է այն որ քանի մը բառեր դուրս ինկած են, եւ պիտի ըլլար "զաշխարհս ծննդական եւ ապականացու, եւ ոչ թէ անծին եւ անմահ։,, Հմմտ. վերը Եզնկայ թարգմանութիւնը։ — Սիմոն մոգի համար կ'ըսեն AB թէ "ի Գիտթիս գեղջէ,, էր, զոր չունի հայը. նոյնպէս Ցատիանոսի համար (ԽԴ) կը յաւելուն AB թէ Միջագետքէն էր, որ նոյնպէս կը պակսի հայոյն մէջ։ Պեպուզիացւոց մասին մէջ (ԽԷ) կը պակսին հայոյն մէջ սա մասերը թէ "Պեպուզացիք որ եւ Կուինտեղիացիք, յորոց կարգի են եւ Արտոտիրիտք,, եւ դարձեալ թէ Փռիւգացւոց օրէնքն ունին։ Եւնոմեանց մասին մէջ (ՀԴ) AB կ'ըսեն թէ սոնց հետ էր նաեւ Եւթոքսիոս եւն, զոր չունի հայը, եւ այլ անթիւ նման դէպքեր։ — Շատ տեղ ալ տեղափոխութիւնք եղած են։ Օրինակի համար (Ե) "Պիւթագորացիք որ է Պերիպատոսաց հերձուածք, որք են գնացողականք,, խօսքին մէջ "որ է հեթանոսաց հերձուածք,, գրչաց անմտադրութեամբ հոն ինկած է, որ Դ հատածին վերջը կամ Եի սկիզբն իբր վերնագիր ըլլալու է ըստ բնագրին։ Ինչպէս տեսանք վերը՝ նաեւ Եզնկայ քով այս նախադասութիւնը տեղափոխուած է։ Նման տեղեր կը գտնենք այլուր ալ։

[1] Աւելորդ չէ յիշել օրինակի համար քանի մը կտորներ։ Բ (Սկիւթիսմոսք) հատուածին մէջ կտոր մը կայ թէ սոնք "զմինս եւ զջնարս դիս պաշտեցին՝ ըստ խրատու դիւի ուրումն Լաիանդոս անուն,,, որ որչափ հետաքրքրական է՝ այնչափ ալ քննութեան արժանի. զոր չունին AB։ —

թիւն կայ A եւ B բնագրաց մէջ, հայն երբեմն A բնագրին համեմատ է, բայց ընդհանրապէս այսպիսի տեղերն աւելի Bի հետ նոյնութիւն կը գտնենք։[1]

Հոս կնքելով դիտողութիւնքս՝ մտադիր ընել կու տանք որ ցայժմ մեր քննութեան առարկայ ե-

---

Սամարացւոց համար (Թ) կ'ըսուի թէ իրենց կուռքերը բերին թաղեցին ի Գարեզին եւ Գեբաղ. այս չունին AB ինչպէս նաեւ Դպրաց համար ըսուածը (ԺԳ) թէ անլուալ չէին ուտեր եւն, որ սակայն Աւետարանէն առած կ'երեւայ գրիչը կամ թարգմանիչը։ —Նիկողոսին կատամամբ գրուածը (ԻԴ) թէ իւր կինն ի Հրապարակ հանեց, չունին AB. նոյնպէս այն՝ թէ Եբիոնեցիք ջուր կը պաշտեն (ԻԸ, 11). կամ Վաղենտիանոսաց հատուածի մէջ Սիմոն կախարդի Պրակք Առաքելոց գրքին յիշատակութիւնը (ԻԹ, 5). թէ Սեկունդացիք երկաթ կը պաշտեն (Լ, 8). Սեթիանոսաց հատուածին մէջ "Պարկեշտագոյնք„ անուանելոց կտորը (ԼԷ, 5,). Ապեղիանոսաց համար ըսուածը թէ Աստուած ստեղծեց ուրիշ աստուածներ եւ չար աստուած մ'ալ աշխարհը (ԽԲ, 4). Էնկրատիտոսաց վերջը քանի մը տող յաւելուածը (ԽԵ, 6). բայց մանաւանդ Պեպուզացւոց մասին մէջ եղած մէկ կտորը թէ բակաձեւ նստած տղայ մ'իրարու կը նետեն եւ որուն քով մեռնի, այն կ'ըլլայ քահանայ եւն. (ԽԷ, 5, 6.) Ադամիանոսաց համար ըսուածը թէ սոնք աջակողման աւազակը Ադամն եղած կը կարծեն (Ծ, 3). Վաղեսիոսաց մասին մէջ յաւելուածոյ մէկ կտորը (ԾԶ, 4). Ապոստոլիկեանց համար գրուածը թէ աղօթքի ընկեր չեն ուզեր (ԾԹ, 4). Պօղիանոսաց հատուածին մէջ գտնուած շատ մը հետաքրքրական աւելի կտորները (ԿԳ, 6, 9, 13). Մանիքեցւոց երդման շատ հետաքրքրական բանաձեւը (ԿԴ, 4). Աւդիանոսաց մասին մէջ մեծ կտոր մ'ալ կ'ըսուի թէ օդն ու պտուղները կը պաշտեն եւ "Երան եւ Յօհմական„ անուն դիւի մ'երկրպագութիւն կը մատուցանեն (ԿԸ, 4, 5). թէ Մարկեղիանոսք Քրիստոսի մարմինը "յարեգական եդեալ„ կ'ուսուցանեն (Հ, 7) եւ այլ շատ նմաններ, որ կամ բոլորովին չկան AB բնագրաց մէջ եւ կամ բոլորովին ուրիշ տեղեկութիւնք կան սոցա տեղ եւն։

[1] Օրինակի համար յիշեցինք վերը Դ հատուածին մէջ եղած կոչումը (Կողոս. Գ, 11) զոր չունին B եւ Եզնիկ, ունին A եւ մեր "Գիրք Հերձ.„ — Պաւղոս Սամոսատացւոյ համար B կը յաւելու թէ Եպիսկոպոս էր Անտիոքայ, զոր չունին A եւ Հայը. — թէ Մարկեղոս եպիսկոպոս էր Անկիւրեայ, կ'ըսէ B, զոր չունին A եւ Հայը. — Սիմոն մոգի մասին հայոյն ըսածը թէ "յաւուրս առաքելոց„ էր, համեմատ է Bի մինչ A "առ Պետրոսիւ առաքելով„ կ'ըսէ. — A Մոնտանեանց հետ կը յիշէ նաեւ Տասկոնդրուգիտաց անունը, զոր չունին B եւ Հայը. — թէ Դեմիուրիտք կը կոչուին նաեւ "Ապողինարիտքս՝„ կը յիշեն միայն B եւ Հայը, եւն եւն։

*տուած բնագրին հետ։ Ինչպէս անգամ մը դրինք՝ մեր յաջորդ հրատարակութեան մէջ գործածուած են սա համառօտութիւնքն.*

A = *Յոյն բնագիր Եպիփանու Ընդդէմ Հերձուածոց գրոց Ցանկին, որ ամէն գրքին սկիզբը դրուած է։*

B = *Յոյն բնագիր Եպիփանու “Համառօտման„* (*Ἀνακεφαλαίωσις* = Anacephalaiosis)

Է = *Ձեռագիր Էջմիածնի՝ ըստ հրատարակութեան Միաբանի։*

56Ա = *Նոյն թուով ձեռագիր օրինակ մեր Մատենադարանին։*

# ՀԵՐՁՈՒԱԾՈՂՔ ԵՐԵՒԵԼԻՔ

*Այսչափ են եւ այսոքիկ՝ զոր սերմանեաց սատանայ ի մարդիկ, զոր կարգաւ ասեմք:**

**Ա.** [1]*Բարբարիսմոսք*, [2]որ կոչին խուժադուժք, սկսեալ յԱդամայ մինչեւ ի Նոյ [ընդ տասն ազգս. եւ կոչին բարբարիսմոսք,] զի ոչ գոյր առաջնորդ եւ [ոչ միաբանութիւն ընդ միմեանս, այլ] ամենայն ոք ըստ կամաց իւրոց գնայր, [3]որպէս եւ կամէր:

**Բ.** *Սկիւթիսմոսք* ի Նոյէ սկսեալ մինչեւ ցաշտարակն [եւ ցԲաբելոնի շինութիւն, եւ զկնի աշ-

---

* Վերնագիր ըստ Է. 56Ա "Հերձուածողք զոր սերմանեաց . . . այս է զոր կարգաւ ասեմք:„ Վերջին մասն "զոր կարգաւ ասեմք„ չունի Է: Փ—նըլէ Հատուածը "Վասն թէ քանի են հերձուածողք յաշխարհիս:„ — Յոյն բնագրին մէջ չկայ այսպիսի վերնագիր, որ անշուշտ ծագած է յոյնին սա խօսքէն Πρῶτον μὲν [B. յաւ. γὰρ] αἱ τῶν αἱρέσεων πασῶν μητέρες τε [B. չունի τε], καὶ πρωτότυποι [A καὶ] ὀνομασίαι, ἐξ ὧν [A μητέρες πέντε αἱ] ἄλλαι ἔφυσαν, αὗταί εἰσι [A. καὶ εἰσὶν αὗται πρῶται τέσσαρες.] (Քանզի նախ ամենայն հերետութեանց մարք եւ նախկին անուանակոչութիւնք՝ յորոց այլքն յառաջ եկին, այս են:)

‖ Ա. Բաժանմունք (Ա. Բ եւն) ունի միայն Է եւ Փ—նըլ եւ յոյն A: (Թ. 56Ա չունի եւ B ոչ միշտ:) — 1 "Բարբարիսմոսք„ = Βαρβαρισμός, փխ "Բարբարոսութիւն.„ նոյնպէս են յաջորդքն "Սկիւթիսմոսք.„ "Հելլենիսմոսք„ "Յուդայիսմոսք„ եւն եւն: Եզնիկ (էջ 207 եւն) "խուժականք եւ սկիւթականք եւ հեթանոսականք . . . յուդայութիւն . . . Հելլենք„ կը թարգմանէ: Տես վերը՝ էջ 99: — 2 "Որ . . . խուժադուժք„ չիք յAB. — 3 "Որպէս . . .„ 56Ա. AB հոս վերջը կը յաւելուն καὶ νόμος ἑαυτῷ κατὰ τὴν προτίμησιν τοῦ ἰδίου βουλήματος ἐγίνετο (Եւ օրէնք անձին իւրաքանչիւր ոք ըստ յօժարութեան իւրոց կամաց լինէր:) Անշուշտ այսպիսի խօսքի մը նշխարքն է "Որպէս եւ կամէր„:

‖ Բ. 1 "Իւ յԻագաւայ„ Է. 56Ա "յԱռագաւայ:„ Այս խօսքը շատ կրճատ է եւ աղաւաղ: Ըստ AB պիտի ըլլայ "Որոց անցեալ յԵւրոպա ի կողմանս Սկիւթացւոց եւ

տարակին սակաւ ժամանակս՝ մինչեւ ցՓաղէկ եւ Ռագաւ,] ¹եւ յՌագաւայ սկսեալ ի կողմանս Սկիւթացւոց, որ եւ ²Թրակացիք անուանեցան: ³Սոքա զմինս եւ զՃնարս դիս պաշտեցին՝ ըստ խրատու դիւի ⁴որում Լոփանդոս անուն:

Գ. ¹Հելլենիսմոսք ի ²ժամանակացն Սերուքայ սկսեալ. սոքա ի ձեռն պատկերացն եւ նկարագրութեանց զանձինս ³սկայիցն կախարդաց պաշտեցին եւ աստուածացուցին ի խեցի եւ ի քարի եւ յոսկի եւ յարծաթ եւ⁴ ի պղինձ եւ յերկաթ. եւ դարձան ի հեթանոսութիւն: ⁵Յետ որոյ եւ պատուեցաւ ի Պիթագորայ եւ ⁶յայլոց:

Դ. Յուդայիսմոսք որ է ¹Հրէութիւն յԱբրաամէ² եւ Յուդայէ, որ է չորրորդ ³որդի Յակոբայ, ⁴յորոց ոչուաւ Նեփթաղիմն եւ աճեաց. ⁵որք աւէն

---

ընդմտեալ յազգս նոցա ի Թարայի ժամանակաց եւ այսր, յորոց եւ Թրակացիք սերեցան:,, Նօտրագիրք այն նշխարք են որ մնացած են դեռ ի Հ. (փխ "անուանեցան,, անշուշտ ընթեռնլի "սերեցան:,,) — ² Է "Թրակացք:,, — ³ Այս ամբողջ կտորը չիք յAB: Ըստ Եպիփանու (Հերձ. Գիրք Ա. Մասն Ա. Հտծ. Է) Սկիւթացիք կը պաշտէին "զԹուր,, (τὸν ἀκινάκην), ուր "մին,, եւ "Ճնար,, չեն յիշուիր: — ⁴ Է եւ 56Ա "ումեմն:,, Է "Լըութանդոս:,,

‖ Գ. Այս կտորն կմախք է միայն AB բնագրաց կտորին, զոր այնպէս գեղեցիկ թարգմանած է Եզնիկ. վերը՝ էջ 92: — ¹ Է "Հելլենիսմոս:,, — ² Ըստ Է (= *AB ἀπὸ τῶν χρόνων τοῦ Σερούχ*). 56Ա "ի ժամանակս:,, — ³ 56Ա "Հսկայիցն կախարդացն:,, — ⁴ 56Ա չունի "եւ.,, Է չունի "ի,,: — ⁵ 56Ա "յետոյ:,, — ⁶ 56Ա "այլոց:,,

‖ Դ. Այս հատածն ալ տես յԵզնիկ. (վերը՝ էջ 95:) — ¹ 56Ա "Հրէութիւնն յԱբրահամէ:,, — ² Այսպէս Է եւ 56Ա: Հոս կը պակսի խօսք մը: AB. *Καὶ ἐν Μωϋσῇ ἑβδόμῳ ἀπὸ Ἀβραάμ, διὰ τοῦ αὐτῷ δοθέντος νόμου ὑπὸ τοῦ Θεοῦ πλατυνθείς.* (Եւ ի Մովսէսէ՝ եւթներորդ յԱբրահամէ ի ձեռն օրինացն որ տուան նմա՝ լրացեալ . . .) — ³ Է "որ ի,, (Յակոբայ:) — ⁴ 56Ա "որոց:,, Այս խօսքը չկայ յAB եւ Եզնիկ: — ⁵ Այսպիսի խօսք չունին AB եւ Եզնիկ, եւ նաեւ անյարմար եւ անճահ է այս տեղ: Ընդհակառակն AB կ'ըսեն այս տեղ "(ի Յուդայէ . . .) որ եւ Իսրայէլ կոչեցաւ, ի ձեռն Դաւթայ որ նախ ի տոհմէն Յուդայ թագաւորեաց, կալաւ զկատարեալ անունն Յուդայութեան:,, (*A: τὸ τέλειον τοῦ 'Ιουδαϊσμοῦ ὄνομα κεκληρωμένος,*

շՑուդայ ըւնջէշէլն անդարտ յաւխտենից տաճանացն վասն մարնուշնեանն դեասն, որ է հրէութիւն յայտնապէս։ ⁶Վասն նոցա Պօղոս բարբառեցաւ ասելով "Ոչ բարբարիմսք, ո՛չ սկիւթիմսք եւ յուդայիմսք, այլ ամենայնի Քրիստոս։⁷ [⁸Այս են կրօնք Հելլենաց։]

Ե. *Պիթագորացիքն*[1] որք են [2]գնոստիկեան [[3]միութիւն եւ նախախնամութիւն ասեն։] Բայց [4]սա արգելոյր զո՛հս [5]աստուածոց եւ զշնչաւորս ի ճաշակելոյ, [[6]եւ ի գինւոյ ժուժկալել։] Եւ ասէր ի լուսոյ ի վեր՝ անմահ, եւ անտի ի խոնարհ՝ մահկանացու, եւ [7]փոփոխումն շնչոյ ի մարմնոց ի մար-

---

B լոկ τὸ τέλος κεκληρωμένος.) Անշուշտ այսպիսի խօսքի մը հետքն է "Որ է հրէութիւն յայտնապէս,, ըսելը։ Եզնիկ (208, 1 "ի Դաւթայ,, որ թերի է) յորմէ թագաւորութիւնն էր, եւ կալաւ անունն զամենայն ազգն յուդայական։„ — [6] AB σαφῶς (իմանտութեամբ)։ Այս վերջին կտորը չունի B. ուստի հայը թարգմանած է A բնագրէն։ 56Ա "Պօղոս։,, — [7] Նորանշան է այս թարգմանութիւնը (Կողոս. Գ. 11.)։ Տես վերը՝ էջ 101։ — [8] Այսպիսի խօսք մ'ըլլալու է հոս, ինչպէս ունին AB Ἑλλήνων [B յաւ. δὲ] διαφοραὶ [B յաւ. αἵδε.] Այսպէս տեսած է նաեւ Եզնիկ (էջ 206) "Այս են կրօնք հեթանոսաց,, փխ "հեթանոսաց,, կամ "Հելլենաց։,, Անշուշտ ձեռագրաց յաջորդ կտորին մէջ "Պիթագորացիք որ է հեթանոսաց հերձուածք՝,, այս տեղէն է հոն ինկած գրչաց սխալմամբ։

‖ Ե. Հմմտ. Եզնիկ. վերը՝ էջ 96։ — [1] Հոս Է եւ 56Ա ունին "որ է հեթանոսաց հերձուածք,, խօսքը։ Տես նախընթաց ծանօթութեան վերջը։ — [2] "գնացողականք,, Հմմտ. վերը՝ էջ 106։ — [3] Այս կտորն անհրաժեշտ է, ինչպէս ունի Եզնիկ (204, 7, 8) եւ AB τὴν μονάδα καὶ πρόνειαν. — [4] 56Ա "սոքա . . . արգելոյն։,, — [5] Է "յաստուածոց։,, Այսպէս պարզ է եւ Եզնիկ ("չզոհել աստուածոց,,) եւ B, իսկ A θύεσθαι τοῖς δῆθεν θεοῖς, այսինքն "չզոհել անուանեալցն աստուածոց։,, — [6] Այս կտորն անհրաժեշտ է. նոյնն ունի նաեւ Եզնիկ (էջ 204, 11) եւ AB. — [7] Է շատ աղաւաղ "եւ ի փոխումն շնչաւորաց ի մարմնոյ մինչեւ յանասունս,, 56Ա "փոփոխումն շնչոց ի մարմնոյն մինչեւ անասունս։,,—"ի մարմնոցս մարմինս,, անհրաժեշտ է, զոր ունի նաեւ Եզնիկ (էջ 204, 15) եւ AB (μεταγγισμούς τε ψυχῶν ἀπὸ σωμάτων εἰς σώματα.) — [8] Այսպէս ըլլալու է ըստ AB (. . . ἄχρι ζώων καὶ κνωδάλων.) Եզնիկ (էջ 204, 16) "մինչ ցանասունս եւ ցճճիս անգամ,,

մինս մինչեւ յանասունս [8 եւ գազանս:] Եւ. Ե. ամ լռել տայր աշակերտելոցն նորամտից, եւ յետոյ զինքն աստուած անուանեաց 9 Հռոն Խմասփա—ընէանն:

Զ. Պղատոնացիք զաստուած 1 հիւղ եւ տեսակ անուանեցին, զաշխարհս ծննդական եւ [2 ապականացու, եւ զհոգի անծին եւ] անմահ եւ աստուածային 3, երիս մասունս ունելով՝ բանական, սրտմտական, ցանկական. եւ զկանայս հասարակաց՝ [4 եւ մի ումեք մի կին առանձինն ունել. այլ ընդ ում ումեք] ուր 5 եւ կամեսցի ոք՝ խառնակեսցի. եւ 6 զոգիս մարդկան փոփոխելիս [ի մարմնոց] ի մարմինս՝ [մինչեւ ցգազանս.] եւ աստուածս բազումս ի միոջէ օրինադրեցին:

Է. Ստոյիկեցիք 1 զմարմին զամենայն օրինադրեալ ասեն, եւ զգալի աշխարհս զայս՝ աստուած անուանեն, եւ ոմանք ի հրոյ զբնութիւն նորա ասացին լինել. [2 եւ աստուած զմիտս սահմանեցին, իբրեւ թէ շունչ ամենայնի՝ իցէ տարերն երկնի եւ երկրի.]

---

թարգմանած է: — 9 Չէք յAB Եզնիկ: "Ե. ամ" ունի միայն A (σιωπὴν δὲ ἅμα ἀσκεῖν ἐπιχρόνον πέντε ἐτῶν ἐδίδασκε.) իսկ B եւ Եզնիկ չունին տարւոյ որոշումն: Ուրեմն Հ թարգմանութեան հիմն առած է զA, իսկ Եզնիկ՝ զB:

‖ Զ. 1 56Ա "զաստուած հիւսող եւ տեսական ասացին:" A լոկ καὶ εἶδος, B καὶ ὕλην καὶ εἶδος, Եզնիկ (էջ 204, 21 եւն) "հիւղ եւ էդոս:" Եզնկայ մեկնութիւնը տես վերը՝ էջ 97: — 2 Այս բառերն անհրաժեշտ են ինչպէս ունին AB Եզնիկ. հայ ձեռագիրք յայտնապէս թերատ են "ծննդական եւ անմահ" հակասական բառերը գրելով. Համմտ. վերը՝ էջ 97, ծ. 4: — 3 Հարկ է այսպէս կէտադրել (= AB Եզն.) եւ ոչ թէ ըստ ձեռագրաց (եւ Միաբանի) "... եւ աստուածային երիս մասունս:" — 4 Այս թերի մասն նորոգեցինք ըստ Եզնկայ (էջ 205, 3) = AB. — 5 Այս «ուր եւ» անշուշտ մնացորդ է "ընդ ում ումեք" կամ նման բացատրութեան մը. 56Ա "ուր եւ կամիցի ոք խառնակիլ:" — 6 56Ա "զոգ:"

‖ Է. 1 Այսպէս Է եւ 56Ա (= Στωϊκοί). Եզն. "Ստոյիկեանք:" — 2 Այս թերի կտորն անշուշտ կար նախնաբար եւ ի Հ, ինչպէս ունին AB եւ Եզնիկ. Է ձեռագրի քիչ մ'ետքն "անձն Երէրէ Ե— Երէնէ" ըսելը նշան է այս խօսքին: — 3 Ուղղեցինք ըստ AB σῶμα δὲ αὐτοῦ τὸ πᾶν, ὡς ἔφην, καὶ ὀφθαλμοὺς κτλ. նոյնպէս եւ Եզնիկ (205, 18:)

³անձն [նորա] զամենայն բնութիւն աշխարհի, եւ աչս՝ զլուսաւորութ. [⁴զմարմինս ամենեցուն կորստականս,] եւ զշունչս՝ փոփոխելիս [ի մարմնոց ի մարմինս։]

Ը. *Եպիկուրացիք*¹ զաշխարհս ²ինքնեղ եւ ոչ յԱստուծոյ, եւ զտեսակս՝ անհատս. ³Բարեպաշտութիւն՝ զուտելն եւ զըմպելն, եւ ⁴ոչ նախախնամութեան եւ Աստուծոյ ասեն դարմանել զարարածս, այլ ըստ պատահման։

Թ. ¹*Սամարիտիսմոսք* որ կոչին Շամրտացիք. ²սոքա հեթանոսք էին ի Բաբելացւոց, եւ յաւուրս Սաղմանասարայ ի Պաղեստին եկեալ՝ Շամրտացիք կոչեցան, ³որ է պահապանք, եւ ընկալան [միայն] ⁴զօրէնս Մովսիսի ի ձեռն Եզրի քահանայի, եւ ու-

---

հայ ձեռագիրք շփոթ են. Է "եւ անձն՝ բնութիւնն երկրի եւ երկնի.,, 56Ա "եւ զամենայն յանձն բնութիւնն աշխարհի աշխարհի։,, Հոս "բնութիւն,, չունին AB Եզնիկ։ — ⁴ Այս կտորն յայտնապէս թերի է ի Հ, զոր սակայն ունին AB Եզն. թէ Է եւ թէ 56Ա "շունչ փոփոխելիս։,,

‖ Ը. ¹ "Եպիկուրացիք,, (Ἐπικούρειοι), Եզնիկ (205, 23 եւն) "Եպիկուրեանք։,, — ² "Ինքնեղ . . . անհատս,, խօսքին տեղ կ'ըսեն AB ἄτομα καὶ ἀμερῆ σώματα, ὁμοιομερῆ τε, καὶ ἄπειρα τὴν ἀρχὴν εἶναι τῶν πάντων κτλ. զոր Եզնիկ (205, 26) կը թարգմանէ "անհատ [atome] եւ անբաժին մարմինք էին զառաջին եւ անտի եկաց ամենայն ինչ։,, — ³ "Բարեպաշտութիւն,, յոռի սխալ թարգմանութիւն է բնագրին. տես վերը՝ էջ 102։ — ⁴ "Ոչ,, չունի Է, որ "եւ նախախնամութեան Աստուծոյ ասացին դարմանեալ,, ունի. 56Ա "եւ ոչ նախնամութեանն զԱստուծոյ ասեն . . . այլ ըստ այ պատահման։,, Վերջինս ("այլ ըստ պատահման՝,,) չունին AB Եզնիկ։

‖ Թ. ¹ Երկու ձեռագիրք ալ սխալմամբ "Թարմորտիմոսք,, փխ. "Սամարիտիսմոսք,, (=Σαμαρειτισμὸς). իսկ "Շամըրտացիք,, ստորաձեւ հնչիւն է նոյն անուան։ — ² Այս կտորն "սոքա . . . Սաղմանասարայ,,) բոլորովին այլազդ է յAB, որոնք դարձեալ ""Նաբուքոդոնոսոր,, կ'ըսեն իրաւամբք փխ "Սաղմանասարայ։,, AB կ'ըսեն "Շամրտութիւն ի յուդայականութենէ ելեալ նախ քան զերեւել աղանդոց ի Հելլէնս եւ նախ քան զկարգել վարդապետութեանց նոցա. քանզի ի Հրէութենէ առեալ զծագումն ի ժամանակս Նաբուքոդոնոսորայ եւ Հրէից գերութեան. եւ եկեալ յԱսորեստանեայց ի Հրէաստան զհնգամատեանն Մովսիսի միայն ընկալան,, եւն։ — ³ Այս մեկնութիւնը չիք յAB. տես վերը

նին զՀրեից կարգ. ⁵(եւ խոստովանին զաստուած արարիչ գոյից, բայց երկիր պագանեն աստուծոյ ի Հարկէ,, զի զկուռս իւրեանց բերեալ յերկրէն իւրեանց թաղեցին ի ⁶Գարեզին եւ ի Գեբաղ որ է ընդ Հարաւ Երուսաղէմի.) [⁷բայց միայն զարշին յազգաց եւ Հպել անգամ չկամին.] եւ զյարութիւն ոչ ընդունին եւ ոչ զայլ մարգարէսն, բայց ի Մովսէսէ եւ ի գրոց նորա: [⁸Սամարիցիք ի չորս մասունս բաժանին: Նախ՝ Գոթոնացիք. եւն]

Ժ. ¹*Գորթենացիք* եւ *Սեբուացիք* ²զտօնս կատարեն Հրէարէնս³:

ԺԱ. ¹*Եսենացիք* ոչ ուտեն ընդդիմանան վասն Հաւատոյ, այլ որոց եւ² պատահենն՝ ընդ նոսա տօնեն:

---

էջ 106: — ⁴ "Միայն,, անհրաժեշտ է իմաստի ամբողջութեան համար: "Օրէնք,, հոս է "Հնգամատեան" (=τὴν Πεντάτευχον) Մովսէսի, ինչպէս կ'անուանեն նաեւ Ասորիք: "Եզր,, քահանային համար կ'ըսեն AB թէ Բաբելոնէն խաւրած էր թագաւորը, զոր չունին հայ ձեռագիրք: — ⁵ Այս ամբողջ փակագծեալ կտորը չկայ յAB. — ⁶ 56Ա "Գաղտ եզրին . . . Գաղաբ:,, — ⁷ Այս կտորը դուրս մնացած է հայ ձեռագիրներէն, որով խօսքն անկապ մնացած: "Եւ ի գրոց նորա,, չունին AB. իսկ 56Ա " . . . բայց ի Մովսէս . . . :,, — ⁸ Այս կտորը չունի Հ, բայց ունին AB (Σαμαρειτῶν [A յաւ. δὲ] ἔθνη τέσσαρα)։ վասն զի յաջորդները (Ժ—ԺԳ) Սամարացւոց աղանդներն են:

‖ Ժ. Երկու ձեռագիրք ալ սխալ գրչութեամբ "Գոթոնացիք եւ Սեբեացիք.,, AB. Γορθηνοὶ . . Σεβουαῖοι. — ² 56Ա "տօնս կատարեն Հրէայօրէնս ընդ Հրեիցն:,, — ³ Իմաստն հակառակ է յAB, որ դարձեալ առանձին խօսք ունին Սեբուացւոց: Ըստ AB Γορθηνοί, οἱ ἐν ἄλλοις καιροῖς τὰς ἑορτὰς ἄγοντες παρὰ τοὺς Ἑβραίους [B աւելի եւս լաւ παρὰ τοὺς Σεβουαίους.] (Գորթենացիք յայլ ժամանակս զտօնս կատարեն եւ ոչ ընդ Սեբուացիս.) եւ ապա կ'ըսուի թէ Սեբուացիք ասոր համար բաժնուած են Գորթենացիներէն: Բոլորովին նման կ'ըլլայ Հ, եթէ գրուի "զտօնս ոչ կատարեն Հրէարէնս:,,

‖ ԺԱ. ¹ "Եսնացիք,, ունին Է եւ 56Ա սխալմամբ. "վասն Հաւատոյ,, չունին AB: — ² Երկու ձեռագիրք ալ ռամկաբան են հոս "որ,, գրելով. 56Ա "այլ որոց ոք պատահէն.,, Է "որոց ոք պատահենն:,,

ԺԲ. [1]Դոսիթեացիք զնոյն կրօնս ունին, զի ի Սամարացւոյն են. բայց զշաբաթ եւ զթլփատութիւն պատուեն [2]առաւել քան զՍամարացիսն, [[3]եւ զՀնգամատեանն արկանեն ի կիր.] եւ շնչաւոր ոչ ինչ ճաշակեն, եւ ի պահս եւ ի կուսութիւն [4]առաւել վարին։ Այլ եւ ([5]առ երեսս) յարութեան հաւատան. [6]եւ առանց հանապազ լուանալոյ ոչ կոչին արժանաւորք։

ԺԳ. [[1]Հրէից աղանդք եւթն են։] [2]Գրամմատիկոսք որ անուանին դպիրք. [3]սոքա զաւանդութիւն ծերոցն ունին. ո՛չ յօրինաց՝ այլ յանձանց։ [4]Եւ առանց լուանալոյ ոչ ուտեն եւ ոչ ըմպեն եւ ոչ աղօթեն։ Եւ ի հրապարակէ մտեալ՝ ոչ ննջեն առանց լուացմանց

ԺԴ. [1]Փարիսեցիք որ կոչին որոշեալք[2], կոչեն զինքեանս ընտիրս քան զամենայն մարդիկ։ [[3]Ընդունին զյարութիւն մեռելոց, որպէս եւ Դպիրք, զհրեշտակս եւ զհոգի սուրբ թէ իցեն՝ հաւանին. վարս

---

‖ ԺԲ. [1] = Δοσίθεοι. Երկու ձեռագիրք ալ սխալ գրչութեամբ "Գորիթացիք։" "Զի ի Սամարացւոցն են" չունին AB։ — [2] "Առաւել քան" չէ համեմատ AB բնագրաց, որ "Էբրէ— զՍամարացիս" կ'ըսեն։ — [3] Այս կտորն դուրս ինկած է հայ ձեռագիրներէն։ — [4] "Առաւել" չէ համեմատ AB, որ կ'ըսեն ἐν νηστείαις [A: δὲ] συνεχέστατα βιοῦντες [A: βιοῦν.] ἔχουσι δὲ καὶ παρθενίαν τινὲς αὐτῶν, ἐγκρατεύονται δὲ ἄλλοι. (ի պահս հանապազորդեալք. ոմանք ի նոցանէ եւ զկուսութիւն ունին, իսկ այլք ժուժկալեն։) — [5] "Առ երեսս" չիք յAB եւ հակառակ Եպիփանու, որ կը յաւելու թէ այս հաւատալն յարութեամբ "օտար է ի Սամարացւոց." (AB: ὅπος ξένον ἐστὶ Σαμαρείταις.) — [6] Այս վերջին կտորը չիք յAB.

‖ ԺԳ. [1] Այս կտորս, զոր ունին AB, անհրաժեշտ է. վասն զի յաջորդք եօթը կտորներն այս գլխոյ մասն են։ — [2] = Γραμματεῖς. 56Ա "Գրամմատիկոսք . . . զաւանդութիւնն . . . յօրինացն այլ յանձանցն։" — [3] Այս վերջին կտորն չիք յAB, որ ուրիշ խօսքեր ունին։

‖ ԺԴ. [1] Է "Փարիսացիք։" — [2] "Որոշեալք." սոր վրայ՝ տես վերը՝ էջ 107։ 56Ա. "ընտիրս . . . մարդիկք։" — [3] Այս կտորը դուրս ընկած է ակնյայտնի եւ ամբողջէն մնացած է միակ նախադասութիւն մը։ — [4] Դուրս ինկած է այս ալ, որ յAB դեռ երկայն է, եւ կը նկարագրէ

*ունին ազնուականս, ժուժկալութիւն մինչեւ ժամանակ մի եւ կուսութիւն.] եւ պահեն երկիցս ի շաբաթու, [[4]մկրտել զատոմանս, զպնակս եւ զբաժակս սովոր են, որպէս եւ Դպիրք, զտասանորդս եւ զերախայրիս նուիրել . . . ։] Եւ ամենայն [5]հմայք եւ խոտրութիւնք ի նոցանէ ելանեն.*

ԺԵ. *Սադուկեցիք* *որ կոչին [1]անձնարդարք, որք էին ի Սադովկայ քահանայէ։ Եւ զամենայն կարգս ըստ Հրէիցն [2]ունէին. բայց զսուրբ Հոգին եւ զհրեշտակս եւ զյարութիւն ոչ ընդունէին։*

ԺԶ. [1]*Հեմերոբապտիստք* *որ ասին նոքա մկրտիչք[2]. ամենայնիւ [3]նման են Հրէից, բայց ասեն՝ որ ոչ մկրտի հանապազ, ոչ ընդունի զկեանսն յաւիտենականս։*

ԺԷ. [1]*Ովսենոսք* *[[2]որ կոչին լիրբք,] [3]որ նման են Հրէից, եւ ընդունին զօրէնսն Մովսէսի, բայց զբազումս ի մարգարէից ոչ ընդունին։*

ԺԸ. *Նազարացիք՝* *որ կոչին ուխտաւորք[1]. միս ոչ ուտեն, [եւ ոչ ճաշակեն զշնչաւորս.] եւ [2]մինչ ի Մովսէս եւ յԱբրահամ ընդունին զնահապետսն, եւ այլ ոչ եւս։*

---

*զգեստուց խոտրութիւնքն եւն։ — [5] "Հմայք եւ խոտրութիւնք" գրուած է "ծնունդք եւ ճակատագիր" իմաստով. (AB. οἳ καὶ παρεισέφερον γένεσιν καὶ εἱμαρμένην.)*

‖ ԺԵ. [1] Է "անձնարդար." 56Ա "անձն արդարք." = AB. δικαιότατοι (արդարագոյնք.) որուն վրայ տես վերը՝ էջ 107։ — [2] 56Ա նախ "ունին.", ապա վրան գրուած "ունէին։"

‖ ԺԶ. [1] = Ἡμεροβαπτισταί. Է "Հոմերաբախտիստէք." 56Ա "Հոմերաբաֆիստէք", բայց ֆ տառի վրայ փ գրուած։ — [3] Մեկնութիւնս թարգմանչին է։

ԺԷ. [1] Ὀσσηνοί. Է "Ովկեննոսք." 56Ա "Սովկենոսք։" — [2] Հ չունի այս մեկնութիւնը, զոր ունի AB (οἳ δὴ ἰταμώτατοι ἑρμηνεύονται.) — [3] "Որ նման են Հրէից" չունի AB։

‖ ԺԸ. [1] Է "Նազորացիք"։ — "Ուխտաւորք" տես վերը՝ էջ 107. իսկ AB աննման՝ ընթերցման տարբերութեամբ A. Νασσαραῖοι, ἑρμηνευόμενοι ἀφανισταὶ (կործանողք), B . . . ἀφηνιασταὶ (անսանձք։) — [2] Համառօտուած է Հ։

ԺԹ. Հերովդիանոսք՝ նմանք են Հրէից, եւ [1]ի խրատուէ դիւաց՝ Հերովդէի որպէս Քրիստոսի ակն ունին, եւ որ ինչ պատիւ է Քրիստոսի՝ զայն նմա համարին եւ պատուեն:

* Այս [1]տոմն [2]Հերձուածք յԱդամայ մինչեւ ի Քրիստոս:

---

Ի. [1]Սիմոնացիքն ի Սիմոնէ մոգէ էին, [2]յաւուրս առաքելոցն. [3]սամարացի գոլով, [[4]առ Ներեսս հաւատայր ի Քրիստոս....] որ ոչ ընդունէին զյարութիւն եւ զաշխարհս ոչ ասեն Աստուծոյ արարած: Որ եւ կին մի Լուսին[5] անուանեալ շրջեցուցանէր, եւ իւրն անուն Արեգակն դնէր, եւ յԱթէնս նկարել ետ պատկեր երկուցն ի պաշտօն. ([6]եւ զբախտն եւ զպատահմունս՝ պարգեւեալ[7] յԱստուծոյ՝ ըստ աստեղացն իշխանութեան գուշակէր, որպէս ի Ծնունդս դանդաչէին[8] Եգիպտացիքն եւ Քաղդէացիքն:) [9]Եւ կոչեն [զնա] Շամրտացիք՝ Հայր, եւ Հրեայքն՝ Քրիստոս զնոյն ասեն:

---

‖ ԺԹ. 1 "Ի խրատուէ դիւին„ չիք յAB: — Է չունի "եւ պատուեն:„

* Վերջաբան: 1 "Քսան„ ունի միայն 56Ա (Է "ԺԹ„.), բայց լաւ է եւ համեմատ է Եպիփանու. որ այս վերջաբանն այսպէս ունի. AB *Οὗτος [A. ὁ] πρῶτος τόμος, περιέχων κατὰ πασῶν τῶν εἴκοσι τούτων αἱρέσεων· ἐν αὐτῷ δὲ καὶ ἡ περὶ τῆς Χριστοῦ ἐνδημίας ὑπόθεσις, καὶ ἡ τῆς ἀληθείας ὁμολογία, [B. ἡ μία καὶ μόνη οὖσα τοῦ Θεοῦ ἀληθὴς πίστις.* (Այս է մասն Ա, յորում գտանին Հերձուածք Ի, եւ են ի սմա բանք զմարմնաւորութենէ Քրիստոսի եւ դաւանութիւն ճշմարտութեան:) — 2 Է "Հերձուած.„ 56Ա "Հերձուածս„

‖ Ի. 1 Հատուածաթիւը կը շարունակուի ի Հ. որ անընդհատ կը շարէ յաջորդները: Բայց յոյնը նոր թիւ կը սկսի, վասն զի այս յաջորդները կը գտնուին (յA) Եպիփանու Ա. Գրոց Բ. Մասին սկիզբն իբրեւ Յանկ (Petav. I, p. 52—54) նոյնպէս եւ B նախ երկար կտորներ ունի Քրիստոսի մարդեղութեան վրայ. ապա սոյն կտորը կը սկսի (Petav. II, p. 139—141): Վերնագիր ունի A *Τάδε ἔνεστι καὶ ἐν τούτῳ τῷ δευτέρῳ τόμῳ τοῦ πρώτου βιβλίου, ἐν ᾧ εἰσιν αἱρέσεις δεκατρεῖς, οὕτως.* իսկ B. *Καὶ ταῦτα γὰρ*

ԻԱ ¹Մենանդրացիք [²ի Սիմոնէ ի ձեռն Մենանդրեայ,] ըստ Սիմոնեայց վարին, բայց զաշխարհս ի հրեշտակաց ասեն արարեալ³:

ԻԲ. ¹Սատոռնիղիացիք՝ եւ սոքա ըստ Սիմոնի աղանդին վարին. ²եւ ասեն անծանօթ եւ ծանօթ աստուած:

ԻԳ. ¹Բասիլիդէսք՝ ի Բասիլիդեայ ուսեալք. որ աշակերտ էր Սիմոնեայց [²եւ Մենանդրայց՝ ընդ Սատոռնիղեայ, եւ զնոյն խորհէր.] բայց ՅԿԵ

---

ἔνεστιν ἐν τῷ δευτέρῳ τόμῳ τοῦ πρώτου βιβλίου, διαλαμβάνοντα περὶ δεκατριῶν αἱρέσεων. Ուրեմն ԺԳ կտոր միայն ունի այս մասն: — ² "Յաւուրս առաքելոցն„ է ըստ B (ἔτι κηρυσσόντων τῶν ἀποστόλων). մինչ A ἐπὶ Πέτρου τοῦ Ἀποστόλου կ'ըսէ, այսինքն՝ "յաւուրս Պետրոսի առաքելոյ:„ — ³ AB կը յաւելուն "ի Գիտթիս գեղջէ„ (κώμης Γιτθῶν.) — ⁴ Այս կտորը չունի Հ. AB կը յաւելուն թէ Սիմոն կը վարդապետէր զանհամեստութիւն, զպիղծ խառնակութիւն եւ հասարակաց ըլլալը կանանց: — ⁵ Այս տեղն երկու անուանք ալ սխալ ընթերցուած են: Տես վերը՝ էջ 102: Ըստ Միխաբանի (էջ 4, Ծ. 1) Է ձեռագրին մէջ "Լուսին, Արեգակն եւ աստղ„ բառերը գաղափարագիր էին գրուած: — ⁶ Այս փակագծեալ կտորը չունին AB: — ⁷ 56Ա "պարգեւել:„ —⁸ 56Ա "իշխանութիւնն.„ Է "դանդաջէին:„ — ⁹ AB կ'ըսեն թէ ինքը զանձն Հայր Աստուած կը կոչէր Շամրտացւոց առջեւ, իսկ Հրէից՝ Քրիստոս: Է "Որպէս ի ծնունդս .... եւ կոչէն Շամրտացիք Հայր...:„

‖ ԻԱ. ¹ = II եւ Միխաբանի՝ Ի. վասն զի այս ուրոյն հատուածը թէ Է եւ թէ 56Ա կցած են Սիմոնեացւոց հետ իբրեւ մասն այն հատուածին: "Մենանդրացիք„ Μενανδριανοί. Է եւ 56Ա սխալ գրելով "Շամրտացիք„ կ'ըսեն: — ² Այսպիսի բան մ'ըլլալու է հոս ըստ A οἱ ἀπὸ τούτου τοῦ Σίμωνος, διὰ Μενάνδρου τινὸς ἐναρξάμενοι), B քիչ մ'այլազգ (οἱ ἀπὸ Μονάνδρου τινός). — ³ 56Ա յաւ. "այս է վարք նոցա:„

‖ ԻԲ = III եւ ԻԱ (Միխաբ.) — ¹ = Σατορνιλιανοί. Թէ Է եւ թէ 56Ա "Սատոռնաղացիք:„ — ² Այս անիմաստ խօսքը չկայ յAB, որ աւոր տեղ ուրիշ տեղեկութիւններ ունին, այսպէս թէ ասոնց գլուխն է Սատոռնիլոս որ ըստ Մենանդրի հրեշտակները կ'ըսէր արարիչ աշխարհիս եւն:

‖ ԻԳ = IV եւ ԻԲ (Միխաբ.) ¹ 56Ա "Բասիլիդէք.„ AB Βασιλειδιανοί. — ² Այս կտորը պակաս է ի Հ, բայց ունին AB: — ³ Այս վերջին կտորը չունին AB, որ ընդհակառակն ուրիշ կտոր մ'ունին, այսինքն B Καὶ τὸ Ἀβρασὰξ

երկինս ասեն, եւ անուն դնեն նոցա հրեշտակականս, [3]եւ նոյնքան աստուած ասեն ի նոսա:

ԻԴ. [1]Նիկողոսացիք՝ ի Նիկողայոսէ մոլորեցան, որ ընտրեցաւն ի սպասաւորութիւն այրեաց. որ յետս կալով ուսոյց [2]զազրագործութիւն իւրոց աշակերտացն, զի ունէր կին գեղեցիկ, [3]ընդ որ ոք նախանձէր. ([4]եւ ածեալ ի հրապարակ եթող զնա՝ ում կամիցի ամուսնանալ. բայց ոչ նա եւ ոչ [5]դըրատերքն իւր ընդ ումեք ամուսնացան:) Եւ [6]զԿաւղաւկաքեայ եւ զՊռունիկեայ եւ զայլոց բարբարոսաց վարս եւ զկարգս եմոյծ յեկեղեցի:

ԻԵ. [1]Գնոստիկեանք. որքա [[2]առաւել քան] զնոսին [Հերձուածողք] զօշաքաղութիւն եւ զաղտեղութիւնս գործեն. [3]որք յԵգիպտոս [4]Զօրականք

---

ὄνομα τῆς αὐτῆς ψήφου εἶναι, χαὶ εἶναι τριακοσίων ἑξηκονταπέντε, καὶ εἶναι τοῦτο τὸ ἅγιον ὄνομα [A: Πνεῦμα] φησί. (A: καὶ τὸ Ἀβρασὰξ ὄνομα δυνάμεως, ὃ φέρει ψῆφον τξε΄. κτλ.) այսինքն՝ "Եւ յաւելոյր զԱբրասաքս՝ զանուն զօրութեան իրիք, որ կրէ զթիւ ՅԿԵ, եւ զայն համարի Հոգի սուրբ (B անուն սուրբ:)

‖ ԻԴ = V եւ ԻԳ (Մխաբ.) այսպէս եւ յաջորդք: [1] = Νικολαῖται. 56Ա նախ "Նիկողացիք" եւ ապա վրան գրուած "սս", քիչ մ'ետքը "... սպասաւորուին:" — [2] 56Ա "զազրագործութիւնն իւրեանց աշակերտացն:" — [3] Այսպէս ըլլալու է անշուշտ. Է "ընդ որում նախանձէր.", 56Ա "ընդ որ ոք նախանձէր.", AB διὰ ζῆλον τῆς ἰδίας γαμετῆς (վասն նախանձու իւրոյ կնոջն:) — [4] Ամբողջ փակագծեալ կտորը չունին AB: — [5] Այս տեղէն կը սկսի թերի ըլլալ 56Ա: Տես վերը՝ էջ 109: — [6] Է "Եւ զՍաւեղլեայ եւ զՊռունիկեայ" գրի սխալ. AB կը գրեն Καὶ περὶ τοῦ Καυλακαὰκ [A: Καύλακαχ] καὶ Προυνίκου (Պրունիկեայ) καὶ ἄλλων βαρβαρικῶν ὀνομάτων εἰσηγησάμενος [A ... ὀνομάτων, ἃ τῷ κόσμῳ μυσαρῶς εἰσηγήσατο.] ուրեմն "եմոյծ յաշխարհ:"

‖ ԻԵ. [1] = Γνωστικοί. Է "Գնոստիկանոսք." — [2] Այսպէս ըլլալու է ըստ AB πλέον δὲ αὐτῶν [B καὶ αὐτοὶ] πάντων κτλ. Է "որքա զնորին զօշաքաղութիւն" եւն: — [3] Է "որ": — [4] Է չունի "Զօրականք", այլ լոկ "Փարաւոնացիք", որ աղաւաղութիւն է "Փիբիոնացիք" անուան. AB Στρατιωτικοὶ ... καὶ Φιβιωνῖται. — [5] Է "Սակոնդացիք.", AB: Σεκουνδιανοί. "Սոկրատացիք" (AB: Σωκρα-

եւ Փիբիոնացիք կոչին, եւ ի վերին կողմանս [6]Սեկունդացիք, [եւ յայլ տեղիս՝ Սոկրատացիք,] եւ առ ոմանս Զաքէացիք։ Եւ ոմանք [6]Կոդէանոսք [կոչին,] եւ ոմանք՝ Բորբորացիք, եւ սոքա ամենեքեան [7]ի Բարբելոյ պարծին։

ԻԶ. [1]*Կարպոկրատիանոսք* որք ի Կարպոկրատէ Ասիացւոյ աղանդոցն, որ ուսոյց զամենայն աղտեղութիւնս անխտիր գործել. եւ ասաց որ ոչ կատարէ զկամս դիւացն [[2]եւ Հրեշտակաց], ոչ կարէ ի վերին երկինս անցանել, [[2]եւ ոչ անցանել ընդ Պետութիւնս եւ ընդ Իշխանութիւնս։] Եւ ասաց՝ թէ Յիսուս [3]շունչ իմանալի ընկալաւ, եւ ապա գիտաց զվերինսն պատմել. եւ թէ ոք զբանն Քրիստոսի պահէ՝ հաւասար նմա լինելոց է։ Եւ [զօրէնս եւ] զյարութիւն ոչ ընդունի, [[4]որպէս Սիմոնացիք եւ այլ հերձուածողք։ Ի սմանէ եղեւ Մարկեղինայն այն ի Հռովմ։] Եւ պատկերս Յիսուսի արարեալ եւ
[5]Պաւղոսի եւ Հոմերոնեայ [եւ Պիւթագորայ] ի ծածուկ, որոց խունկն ծխէր եւ երկիր պագանէր
[6]ի Հռոմ.

ԻԷ. [1]*Կերինթիանոսք* եւ *Մերինթիանոսք*,
[2]որք են Հրեայք, եւ պարծին ի թլփատութիւն. եւ

---

τῖται) չունի Հ։ — [6] A. հյց. *Κοδδανοὺς*, *B*: *Κοδιανοὺς*. իսկ "Բորբորացիք" (այսինքն՝ Աղտեղիք) յAB հյց. *Βορβορίτας*. — [7] Է "ի Բարբելոն" պարծին կ'ըսէ, անշուշտ նմանահնչիւն ըլլալու համար. A կ'ըսէ՝ οὗτοι τὴν Βαρβελὼ καὶ Βαρβερὼ αὐχοῦσι. B չունի այս կտորը։

‖ ԻԶ. [1] AB *Καρποκρατιανοὶ*. — [2] Այս երկին կտորներն ալ թերի են ի Հ, որ կան յAB. — [3] AB ψυχὴν νοερὰν. — [4] Այս կտորը պակաս է ի Հ, որ սակայն կարեւոր մասն է ամբողջին եւ կայ յAB։ — [5] Այս կտորը դրինք ըստ AB. Է աղաւաղ է "Եւ Պօղոս նոցա [բուն ձեռ. "Պղօոնց,"] եւ Հօմերոնեա," գրելով։ AB կը գրեն՝ εἰκόνας δὲ ποιήσας ἐν κρυφῇ Ἰησοῦ, καὶ Παύλου καὶ Ὁμήρου καὶ Πυθαγόρου κτλ. — [6] Չիք յAB։

‖ ԻԷ. [1] *Κηρινθιανοὶ, Μηρινθιανοὶ*. Է "Կերէնթիանոսք ... Մերէնթիանոսք," սխալմամբ։ — [2] AB յաւ. "ի Կերինթեայ կամ Մերինթեայ ումեմնէ Հրէէ։" — [3] AB *κατὰ προκοπὴν*.

զաշխարհս ի հրեշտակաց աստացին լինել, եւ զՅի-
սուս [3] յառաջադիմութեամբ ասեն աստուածացեալ:

[1] **ԻԸ.** [2] *Եբիոնացիք* նման Կերինթացւոց [3] Նազովրացւոց են. եւ [4] Սամսիտքն նմանեալ [են նոցա, եւ մասն] Եղկեսացւոց են, որք ասեն զՅիսուս Քրիստոս [5] ստեղծեալ [6] յերկինս եւ զՀոգին սուրբ [նորա.] եւ զգեցեալ ասեն զմարմինն Ադամայ՝ Քրիստոսի, եւ դարձեալ մերկանալ եւ զգենուլ ի գալստեանն: Եւ [[7] Թէպէտ] զվարս Հրէից ընդունին, [բայց] եւ զաւետարանն[8] եւ զառաքեալսն ընդունին. ([9] բայց զառանց վկայութեան Թուղթսն ոչ ընդունին, եւ ասեն զնա մարդկային մտօք ասացեալ. [10] եւ ոչ խոստովանին ի նմա բնակեալ զՔրիստոս:) Ի մսոյ զարշին, եւ զջուր որպէս զաստուած պատուեն:[11]

**ԻԹ.** *Վաղէնտինիանոսք* [1] զօրէնս Մովսէսի [եւ զմարգարէս] եւ զյարութիւն ոչ ընդունին, այլ

---

‖ ԻԸ. [1] Հոս կը պակսի ի Հ կտոր մը (IX) որ կը խօսի "Նազովրացւոց" վրայ այսպէս. "Նազովրացիք (AB Ναζωραῖοι) որ ընդունին զՔրիստոս Յիսուս եւ որդի Աստուծոյ, բայց վարս ունին ըստ օրինաց [հնոց]:" — [2] Ἐβιωναῖοι. Է "Աբիոնացիք:" — [3] Է չունի, այլ կ'ըսէ լոկ "նման Կերինթացւոցն ասէն." որ թերեւս հետք ըլլայ "Նազարացւոց" անուան, զոր ունին AB: — [4] Է "Սամոսատացիք" շփոթմամբ. *AB: τῶν Σαμψαίων.* "Սամսիտք" կրկին կը յիշուին յետոյ (ՁԴ.) նոյնպէս "Եղկեսացւոց" (AB καὶ Ἐλκεσσαίων) որ կը յիշուի յետոյ (ՃԺԴ:) Է ձեռագիրն հոս "Կեսացւոյն:" — [5] Ձեռ. Է "ստեղծել երկինս:" — [6] Է անյարմարութեամբ՝ "եւ զգեցեալ միայն ասեն զմարմինն Ադամայ՝ Քրիստոսի եւ ոչ միաւորեալ ընդ անարատ աստուածութեանն:" Նօտրագիրք չկան յAB: — [7] Այս "Թէպէտ . . . բայց" պէտք է յաւելուլ ըստ AB, որով խօսքին իմաստը կ'որոշուի պայծառ: Հոս "զվարս Հրէից ընդունին" բառին տեղ Միքայէլ կ'առաջարկէ " . . . ունին:" — [8] "Եւ զառաքեալսն" չէք յAB, — [9] Ամբողջ այս փակագծեալ կտորը չէք յAB: — [10] Այս անյարմար խօսքին տեղ AB կ'ըսեն "Եւ Քրիստոս ի մարմնաւորութեան իւրում զգեցեալ ասեն զմարդն:" — [11] AB յաւելուն "Եւ հանապազ լուանան զանձինս զամառն եւ զձմեռն, այսինքն՝ առ արդարանալ, որպէս եւ Սամարացիք:"

‖ ԻԹ. 1 Է լոկ "զօրէնս Մովսէսի" որ Հին Կտակարանի տեղ դրուած է (AB παλαιὰν . . . διαθήκην.) —

սակաւ բանս՝ որ իւրեանց առասպելաբան [²վար-դապետութեան] պատճառի, ընդունին: Լ յաւի-տեանց անուանս ասեն ³արուաց-եւ-իգաց, եւ զամե-նեսեան զնոսա ի վերին Հօրէն ծնեալ ասեն. եւ աստուածս ⁴անուանեն զյաւիտեանս: (⁵Եւ ունին գիրք մի զՍիմոնի կախարդի, որում Պրակս Առա-քելոցն կոչեն:) Եւ զՔրիստոսէ ասեն թէ մարմին յերկինս զգեցաւ, եւ որպէս ⁶ընդ խողովակ ինչ ընդ Կոյսն ⁷անցաւ եւ ոչինչ առ ի նմանէն:

Լ. ¹*Սեկունդացիք* [²ընդ որս եւ Եպիփա-նէս եւ Իսիդորոս,] զՎաղէնտիանոսացն զպղծութիւնն վարին. ³բայց զերկաթ առաւել պատուեն:

ԼԱ. ¹*Պտղոմացիք* [²ընդ որս եւ Փղորա,] զՎաղէնտին[ին] ունին. ³եւ զձայնս հաւուցն հմայեն եւս:⁴

---

¹ԼԲ. ²*Մարկոսացիք*. ³Մարկոսս այս ⁴ու-սումնակից էր Կողորբասի: Բ. սկզբունս ասէ. եւ

---

² Այսպիսի բառ մը դնելու է՝ իմաստին ամբողջութեան համար: — ³ Է "արուաց եւ իգաց.„ կից պէտք է գրել անջուշտ ըստ AB αἰώνων . . . ἀῤῥενοθηλειῶν, ուստի "որձեւէգ.„ իմաստով: — ⁴ Հոս կը սկսի 56Ա "բանին յաւիտեանս„ գրելով: Տես վերը՝ ԻԴ⁴: — ⁵ Փակագծեալ հետաքրքրական կտորը չունին AB. 56Ա "գիրք մի սիմոն կախարդ:„—"Պրակս առաքելոց„ = πράξεις Ἀποστόλων անվաւերական գրութիւնը: — ⁶ 56Ա "որպէս կողովակ:„ — ⁷ Այսպէս ("անցաւ„) ռամկախօս են Է եւ 56Ա:

‖ Լ. ¹ 56Ա "Սեկոնդացէք.„ — ² Է եւ 56Ա չունին, բայց կայ յAB: — ³ Այս կտորը չկայ յAB, որ ասոր տեղ կ'ըսեն թէ ասոնք զազրագործութիւն կ'ուսուցանէին եւ Մարդեղութիւնը կ'ուրանային:

‖ ԼԱ. ¹ Πτολεμαῖοι. — ² Այս մասն չունին Է եւ 56Ա: AB . . . Φλώρα.— "զՎաղենտինեան„ գոնէ պէտք գրել, այսինքն՝ զվարդապետութիւն Վաղենտինեայ. եւն: — ³ Այսպիսի բան չիք յAB: — ⁴ Հոս կը լմննայ Եպիփանու Ա. Գրոց Բ Մասին ցանկն՝ այսու վերջաբանութեամբ յAB. "Այս է համառօտումն (ἀνακεφαλαίωσις) ԺԳ հերձուածոց Բ Մասին Ա. Գրոց:„

‖ ԼԲ. — [ ¹ Հոս կը սկսին յAB Եպիփանու Ա Գրոց Գ Մասին ցանկն՝ այսու վերնագրով. "Այս ինչ գտանի յԳ Մասին Ա. Գրոց, յորում հերձուածք ԺԳ.„ (A: τάδε

յարութիւն ոչ ընդունին. եւ [5]ԻԸ յաւիտեանս ասէ. [որպէս եւ Վաղենտիանոս։]

ԼԳ. [1]Կողորբասացիք [2]զՄարկոսին ունին, բայց [3]Ը յաւիտեանս աւելի ասեն։

ԼԴ. [1]Հերակլիանոսք որ զնոյն. [2]Ը. առասպելաբանեն, եւ [3]զՄարկոսին եւ զՎաղենտին[ին] եւ զայլ բազում հերձուածս։ Եւ լուանան [4]ապրսամ իւղով եւ ջրով։

ԼԵ. [1]Ոփիտեանք [2]որ են օձախաղացք, որք զօձս փառաւորեն՝ որպէս զՔրիստոս. եւ ունին բազում օձս ընդ ինքեանս ի [3]սապատս ի պաշտօնս իւրեանց։

ԼԶ. Կայիանոսք. [1]զօրէնսն Մովսիսի բամ-

---

ἔνεστι ἐν τῷ τρίτῳ τόμῳ τοῦ πρώτου βιβλίου, ἐν ᾧ εἰσιν αἱρέσεις δεκατρεῖς.) B նոյնը քիչ մ'այլ ձեւով։ — [2] Այս է ուղիղը. (AB: Μαρκώσιοι.) Է եւ 56Ա "Մարկիոնացիք։,, — [3] AB: Μάρκος. 56Ա "Մարկանոս.,, Է "Մարկիոնս։,, — [4] Է եւ 56 Ա. "փոխադարձեալ են։ Կողարբաս. Բ. [56Ա "երկու,,] սկզբունս ասէ.,, այսպէս աղաւաղ։ (AB: Κολορβάσου συμφοιτητής.) Տես վերը՝ էջ 103։ — [5] Հ թերի է հոս. AB կը յաւելուն թէ այլեւայլ պատրանքներ ալ կ'ընէր եւն։ "ԻԸ յաւիտեանս,, խօսքին տեղ AB "ԻԴ տարերս,, կ'ըսէ (καὶ αὐτὸς δὲ τῶν εἰκοσιτεσσάρων στοιχείων βούλεται τὰ πάντα ἡγεῖσθαι.)

‖ ԼԳ. = II եւն։ Հ համառօտ է քիչ մը։ [1] Κολορβάσιοι. Է եւ 56Ա "Կողարբեանոսք։,, — [2] Է եւ 56Ա "զՄարկիոնին,, որ անճաշ է. Հմմտ. ԼԲ։ — [3] AB կ'ըսեն Τὰς προβολὰς δὲ καὶ ὀγδοάδας ἑτέρως [A: ἑτέρους] ἐδίδαξεν. (Ջնադմունս Յաւիտեանց եւ զՈւթեակս [ogdoade] այլազգ ուսոյց։) Այս ogdoade իմաստով է "Ը յաւիտեանս,, ըսելը նաեւ քիչ մ'եւայքը։

‖ ԼԴ. [1] Ἡρακλεωνῖται. — [2] = Ogdoade (AB: καὶ αὐτοὶ τῇ τῶν Ὀγδοάδων φέρονται.) — [3] Է եւ 56Ա "զՄարկիոնին։,, Հմմտ. ԼԲ։ — [4] Է "ապրսամ տղով.,, 56Ա "... էղով.,, ըստ AB "իւղով, ապրսամաղմով եւ ջրով։,, (AB: ... λυτροῦνται δι' ἐλαίου, ὀποβαλσάμου [ապոբալսամօն] κτλ.) AB կը յաւելուն թէ հրէարէն բաներ կը մրմռան գլուխներուն վրայ այս լուացման ժամանակ։

‖ ԼԵ. [1] Ὀφῖται. Է եւ 56Ա "Ովփիտեանք։,, — [2] Այս մեկնութիւնը չիք յAB։ — [3] 56Ա "սափաթս.,, (AB ἐν κίστῃ.)

‖ ԼԶ. [1] "Օրէնք Մովսիսի,, տես վերը՝ ԻԹ,[1]։ — [2] Այս խօսքը չիք յAB։ — [3] Նիւթական թարգմանութիւն

բասեն եւ որ ետ նմա զօրէնսն. [2] եւ զօրինազանցսն պատուեն. եւ զկայէն փառաւորեն, [3]քանաւոր զօրութիւն ունել ասեն նմա, եւ զՅուդա մատնիչ [4]չաստուածացուցանեն, եւ զԿորխ եւ զԴադան, [եւ զԱբիրոն,] եւ զՍոդոմացիսն։

[1] ԼԷ. [2] *Սեթիանոսք*. սոքա զՍէթ փառաւորեն, եւ ասեն զնա ի վերին մօրէն ծնեալ. զի յետ սպանմանն Աբէլի ոչ ասեն Ադամայ ամուսնանալ ընդ Եւայի, այլ ի յերկնային [3]մօրէն ասեն ստացեալ զՍէթ. որ ի նմանէ կարգի ազգ մարդկան։ ([4]Եւ ոմանք ի նոցանէ Պարկեշտափոքոյն+ անուանին, ծառ կենաց [5]զՊառաւհայ մայրն (?) անուանեն՝ [6]խոստովանել եւ ամուսնանալ ի դրախտին զոր եւ յանցուածս կոչեն։)

[1] ԼԸ. [2] *Արքոնտիկք* [3]որ ասին իշխանականք. սոքա բազում իշխանութիւնս խոստովանին արարածոց, եւ ի պիղծ տօնս իւրեանց գարշելի իրաց հաղորդին, ([4]որ զազրալի է ասելն՝ զապահարն կանանց։) Եւ զհին կտակարանս ուրանան եւ [5]զյարութիւն։

[1] ԼԹ. [2] *Կերդոնիանոսք*՝ ի [3]Կերդոնիոսէ ընկալեալ [4]զանուանակոչութիւնն, որ յԱսորոց մինչեւ ի

---

է. AB λέγοντες αὐτὸν τῆς ἰσχυροτέρας εἶναι δυνάμεως. Տես վերը էջ՝ 103։ — [4] 56Ա "զուդայ",, Է եւ 56Ա "չաստուածոցն անուանեն." (AB ἐκθειάζουσιν.)

‖ ԼԷ. [1] = ԼԸ (Միար.) որուն պէս է նաեւ 56Ա որ նախ կը դնեն մեր ԼԸ, ԼԹ կտորները։ Բայց մեր ըրած կարգի տեղափոխութիւնն (ըստ AB) ակներեւ ուղիղ է, ինչպէս Եպիփանու ուրիշ ցանկերն ալ ու գրութիւնք կը վկայեն։ — [2] Σηθιανοί. — [3] Այսպէս Է եւ 56Ա. բայց A ... τῷ ἄνω πατρὶ (... հօրէն). B չունի այս բառն։ — [4] Այս ամբողջ փակագծեալ մասը չկայ յAB. եւ ակներեւ լի է աղաւաղանօք։ — [5] Այսպէս Է. 56Ա «զպառաւահայրն։» — [6] Է «խոստմնել եւ ամուսնանլ։» — [7] 56Ա «անցուածս։»

‖ ԼԸ. [1] = ԼԶ ըստ Է (եւ 56Ա։) — [2] Ἀρχοντικοί. Է եւ 56Ա «Արքունիտէք։» — [3] Այս մեկնութիւնը չկայ յAB։ — [4] Այս փակագծեալը չկայ յAB։ — [5] 56Ա «եւ զյարութիւնն եւս ուրանան։»

‖ ԼԹ. [1] = ԼԷ (ըստ Է եւ 55Ա։) — [2] Κερδωνιανοί. ։Է եւ 56Ա «Կերդիանոսք։» — [3] Է եւ 56Ա «ի Կերդինոսէ»

[1] ՀԵ. [2] *Դեմիուրիտք* որ ասին [3] Ապողինարիտք, որք ասեն Հոգի եւ միտք ոչ էառ [4] Տէրն ։[5]

ՀԶ. [1] *Անտիդիկոմարիամիտեք*, [2] որ կոչին Դիմամարտք Մարիամու, զի ասեն թէ յետ ծնանելոյն զՔրիստոս ամուսնացաւ ընդ Յովսէփայ [3] Մարիամ ։

ՀԷ. [1] *Մարիամիտք* [*Կողլիւրիդիանոսք* = *Խորտկարարք*] ։ Սոքա [2] յամի մի անգամ կարգեալ են [3] խորտիկս մատուցանել յանուն նորա [Մարեմայ.], որոց անուն եդաք՝ Խորփխորոր ։

ՀԸ. [1] *Մեսաղիանոսք*, որ ասին [2] Աղօթականք ։ Մերձաւոր են սոքա ամենայն հերձուածողաց հեթանոսաց, [[3] որ կոչին Եւփիմիտէք, եւ Մարտիւրոսեանք եւ Սատանայականք ։]

---

մասին ամբողջութեան համար ։ — [13] "Զարուամոլութիւն„ չունին AB ։ — [15] Հոս կը լմնայ Գ Գրոց Ա Մասին ցանկը Վերջաբան AB "Այս ինչ են Գ Գրոց, որ Զերորդ է ըստ կարգի, Հերձուածք Է ։„

‖ ՀԵ. [1] Կը սկսի Գ. Գրոց Բ (եւ վերջին) մասին ցանկը ։ Վերնագիր. AB "Այս ինչ են յԲ Մասին այսր Գ գրոց, որ Էերորդն է ըստ թուոյ, որ է վախճան գործոյս, յորում Հերձուածք Դ ։„ — [2] Δεμοιρῖται 56 Ա "Դեմիւրիտք ։„ — [3] "Որ ասեն Ապողինարիտք„ միայն B ունի (οἳ καὶ Ἀπολλιναρῖται.) Է "Ապօղինարիտք ։„ — [4] 56 Ա "տեառն ։„ — [5] Հ շատ կրճատած է այս կտորը. AB շատ աւելի ընդարձակ են ։

‖ ՀԶ. [1] = Ἀντιδικομαριανῖται. Է "Անդիտոք Մարիամիդէ„, 56 "Անդիտոսք Մարիամիտէ ։ — [2] Մեկնութիւն թարգմանչին ։ — [3] Լոկ 56 Ա ունի "Մարիամ.„ նաեւ ոչ AB ։

‖ ՀԷ. [1] Անշուշտ թարգմանիչը Μαριανῖται տեսեր է, բայց չկայ յAB այժմ այսպիսի անուն մը, այլ Κολλυριδιανοὶ (Կողլիւրիդիանոսք) զոր թարգմանիչը քիչ մ'եւսքը "Խորփխորոր„ թարգմաներ է ։ — [2] Է "յամի միանգամ.„ 56Ա "յամենայնի միանգամ ։„ AB: ἐν ἡμέρᾳ τινὶ τοῦ ἔτους (յաւուր միում ի տարւոջն.) — [3] "խորտիկս.„ AB կ'ըսեն (A: κολλουρίδα τινά, B: κολλυρίδας τινάς.) այսինքն "շօթս ինչ ։„

‖ ՀԸ. Μασσαλιανοί. Է եւ 56 Ա "Պաստղիանոսք ։„ — [2] Այս կտորը չունի 56 Ա ։ Բայց ունի Է եւ AB (. . . εὐχόμενοι.) — [3] Այս մասը չունի Է եւ 56Ա. AB: Εὐφημῖται καὶ Μαρτυριανοὶ καὶ Σατανιανοί.

[* Այս ինչ է համառօտումն Ը Մասին եւ վախճան Գ գրոց. եւ են ամենայն հերձուածք Չ: Ի կատարածի Գ գրոց եւ Ը Մասին՝ եղեալ կայ Հանգանակ կաթուղիկէ եկեղեցւոյ**: եւն:]

---

* Վերլուծանութեան (զոր չունին Ը եւ 56Ա) կը փակէ ամբողջ գրոց ցանկը յA եւ նաեւ B (որ այսուհետեւ դեռ կը շարունակուի վարդապետօրէն:) Ասով կը լմնայ հայ գրութիւն այն մասն որ Եպիփանէն թարգմանուած է: — ** Այս հանգանակն է հայ Եկեղեցւոյն գործածածը: Տես վերը:



## Ե.

# ԳՐՈԿՂԻ ՀՆԱԳՈՅՆ ՕՐԻՆԱԿԸ

"Գրոկղի Դիադոխոսի" քննութեան մէջ վերը՝[1] մանրամասն խօսած ենք գրութեանս հայերէն թարգմանութեան վրայ, որ՝ ինչպէս տեսնուեցաւ՝ վրացերէնէ թարգմանուած է։ Ընթացս մեր գրութեան յիշեցինք նաեւ որ ծանօթ հայագէտն Փ. Կոնիբիր աւելի հնագոյն թարգմանութիւն մը տեսած կ'ըսէ Էջմիածնայ ձեռագրի մը մէջ, եւ յայտնած էինք մեր բաղձանքը՝ նոյն կարեւոր ձեռագրին վրայ աւելի տեղեկութիւն ստանալ։ Այժմ մեր այս բաղձանքը կատարուեցաւ. վասն զի նոյն հայագէտ գիտնականն ինքնայօժար խաւրած է մեզ հրատարակել իւր ըրած քանի մը քաղուածոյքն սոյն հին օրինակէն, ինչպէս նաեւ նոր թարգմանութեան համապատասխանող կտորները նոյնպէս Էջմիածնի (Թ. 1853—60) ձեռագիրներէ՝ հանդերձ նիւթոց ցանկով այս ձեռագրին, որով քիչ մ'աւելի գաղափար կ'ունենանք այն ձեռագրաց վրայ, որոնց վրայ բան մը մ'աւելի չէինք գիտեր մեր քննութիւնը գրած ժամանակն՝ բայց միայն՝ ինչ որ "Մայր-Ցուցակէն" իմանալ կարելի էր։

Նախ քան սոյն նշանակալից հատակտորները դնելը՝ պարտք կը համարինք դիտողութիւն մ'ընել։ Հայագիտիս գտած օրինակին կարեւորութիւնն ակնյայտնի կ'ըլլայ՝ եթէ միտ դնենք թէ ինչ ձեռագրի մէջ գտած է զայն։ Հայագէտը կը նշա-

1 Բ, էջ 22—46։

նակէ թէ Մայր-Ցուցակի թ. 924 ձեռագրին մէջէն օրինակած է սոյն կտորներն, եւ արդեամբք ալ Մայր-Ցուցակի նոյն ձեռագրին մէջ (թ. 924 լե. տես Մայր-Ցուցակ՝ էջ 130) կը գտնենք նշանակուած “Լուծմունք Պրոկղի Աստուածաբանութեանց:„ Սակայն թէ միայն Լուծմունք չի բովանդակեր այն ձեռագիրն, այլ նաեւ Պրոկղի բուն գիրքն, կը ցուցընեն յաջորդ կտորները՝ զորոնք հայագէտն օրինակած է այս տեղէն: Մեր Պրոկղի քննութեան մէջ թէեւ յիշած ենք Էջմիածնի միւս ձեռագրերը, բայց այս թ. 924 չէինք յիշած, վասն զի Մայր-Ցուցակէն չէինք կրնար իմանալ թէ Պրոկղի բուն գիրքը գրուած կը գտնուի հոն: Եւ սակայն ճշդիւ սոյն ձեռագիրն է ամենահին, եւ ամենէն կարեւոր ձեռագիրն Պրոկղի թարգմանութեան համար, վասն զի հազիւ իբր 24 տարի ետքը գրուած է Պրոկղի թարգմանութենէն, ուստի պէտք է որ ամենէն ընտիր եւ հաւատարիմ օրինակն ըլլայ՝ զերծ յետագայ աղաւաղմանց: Արդեամբք ալ Մեծ. Հ. Գրիգորիս Վ. Գալէմքեարեան ցուցուց (տես Հանդէս Ամս. 1891, թ. 6, էջ 161—167) որ այս թ. 924 ձեռագիրն, — որուն համար կը գրէ Մայր-Ցուցակը թէ գրուած ըլլայ “ի սուրբ ուխտն Այրիվանից, այսինքն սրբոյն Գեղարդայ ընդ հովանեաւ սուրբ տաճարին, ձեռամբ Տէր Մխիթար Վարդապետի,„ — է բուն իսկ Մխիթարայ Այրիվանեցւոյ այն կարեւորագոյն ձեռագիրն, զոր ինքը Մխիթար Այրիվանեցի կը յիշէ իւր Պատմութեան մէջ (Մխիթ. Այրիվ. Պատմ. հրտ. Ք. Պ. ի Պետրբ. 1867, էջ 33) թէ գրուած է իրմէ եւ Անանէէ. ուստի այն ձեռագիրն գոնէ իբր 1272—1286 Ց. Ք. տարիներուն մէջ գրուած լմնցած է: Եթէ նկատենք որ 1272 տարւոյն եւ 1248 տարեաց մէջ (— գիտենք որ այս վերջին տարին թարգմանած է Սիմէոն կրօնաւոր Պրոկղի գործքը, —) հազիւ 24 տարի անջրպետ կայ, յայտնի կը տեսնուի

ձեռագրին կարեւորութիւնը՝ Պրոկղի հայ թարգմանութեան հաւատարիմ ընթերցուածը գտնելուն նկատմամբ։

Սակայն մեր ունեցած ուրիշ մէկ յոյսն ի գերեւ ելաւ այս ձեռագրով։ Մեր քննութեան մէջ յիշած էինք հռչակաւոր հայագիտիս մէկ նամակն առ Մեծ. Հ. Գարեգին Վ. Զարբ. (Մատենագարան Հայկական Թարգմ. տպ. Վենետ. 1889, էջ 669) ուղղած մէկ նամակն, որ է այսպէս. "Աստուածաբանութեան Պրոկլոսի Դիադոքոսի ჭჷრჩო— գամ թարգմանութեան գրութիւնս, զոմն որ Եփր Եփրեմանկաց գործ է, եւ զոմն որ ի Վրաց լեզուէ ի միջին դարու յարդարեալ է. ամենայն — բայց եթէ մի, — օրինակք յԷջմիածին պահեալքն ի Վրաց լեզուէ յօրինակեալ են. եւ հնագոյն թարգմանութիւնն առաւել հաւատարմութեամբ արարեալ է քան զայլս. առանց երկմտութեան Վրացն թարգմանութիւն ի հայոց լեզուէ ինքն յարդարեալ է, եւ վերստին հայերէն թարգմանեալ։" Ըստ հայագէտն Էջմիածնի մէկ ձեռագրին մէջ հնագոյն թարգմանութիւն մը գտած կ'ըսէ։ Այս մէկ ձեռագիրն է Թ. 924, զոր յիշեցինք. եւ արդեամբք ալ մեզ խաւրած կտորներուն վրայ նշանակած է հայերէնն իւր իսկ ձեռքով սա հայերէն դիտողութիւնքը "Եփր Եփրեմ. Նախնեաց" եւ ուրիշ կտորի մը վրայ՝ "Այս է ... ... ... Եփր Եփրեմանոմիւն Նախնեաց," մինչ Թ. 1859 եւն ձեռագիրներէն ընդօրինակած կտորին վրայ՝ "այս Եփրեմ. վրացերէն արարեալ է, որդէս կորձեմ" նշանակած է։ — Արդ "Մատենադարանին" հեղինակն այսպիսի հնագոյն թարգմանութեան մը գոյութիւն հաւանական չէր համարեր, այնու որ Սիմէոն կրօնաւոր թարգմանիչն անոր համար վրացերէնէ թարգմանած կ'ըսէ այս գիրքն, վասն զի ուրիշ թարգմանութիւն չէր տեսած։ Մենք միտ դնելով այն պարագային որ այս ապացոյցը զօրաւոր չէ միշտ, վասն զի արդեամբք

ալ կրկին թարգմանութիւնք անսովոր չեն, եւ կրտսերագոյն մը շատ դիւրութեամբ հնագոյն թարգմանութիւն մը կրնայ չգտնել, ընդունած էինք Հայագիտին կարծիքն իբրեւ աւելի ապահով, եւ աւելցուցած թէ՝ "Ամէն բան կը պարզէ, եթէ այն մի միակ ձեռագիրն, զոր տեսած է գիտնականն յԷջմիածին, լոյս տեսնէ։" Այժմ որ սոյն մի միակ ձեռագրէն ունինք առջեւնիս երկու կտոր, համոզուեցանք որ այն՝ զոր Հայագէտն "Հին թարգմանչաց գործք" կ'անուանէ, չէ արդեամբք հնագոյն թարգմանութիւն, այլ նոյն Սիմէոն կրօնաւորի 1248ին Ց. Ք. ըրած թարգմանութիւնն է, ի հարկէ այնպէս մեծ տարբերութեամբք՝ որ դիւրաւ կրնայ մէկն ուրիշ թարգմանութիւն կարծել։

Թողլով այժմ այս տարբերութեանց խնդիրն, (— որ բնական է՝ վասն զի Թ. 924 ձեռագիրն՝ ինչպէս տեսանք, հազիւ իբր 24 տարի ետքն ընդօրինակուած է, մինչդեռ այժմու ծանօթ ձեռագիրք ԺԸ եւ առ առաւելն ԺԿ դարէն են, —) տարակոյս չկայ այժմ որ Թ. 924 ուրիշ հնագոյն թարգմանութիւն չէ։ Ասոր կրնայ համոզուիլ ընթերցողն միտ դնելով յաջորդ համեմատութեան, ուր երկու տարբեր թարգմանութիւն կարծուածները դէմ առ դէմ դրած ենք։ Բաց աստի ուրիշ հաստատուն կռուան մ'ալ ունինք։ Մեր գրատան Թիւ 3Ա ձեռագրին մէջ, — որ ճիշդ Էջմիածնի այս Թ. 924 կարեւոր ձեռագրէն ընդօրինակութիւններ կը բովանդակէ եւ այլ կարեւոր տեղեկութիւններ Տէր Պօղոս Պետրոսեանի աշխատասիրութեամբ 1848ին յԷջմիածին, — նշանակուած է ի կարգին (էջ 133) նաեւ "Լուծմունք Պրոկղի։" Ուրիշ տեղեկութիւն չի տար Պետրոսեան բայց միայն կը գտնենք "յիշատակարան թարգմանչի" օրինակուած։ Համեմատելով այս յիշատակարանը Սիմէոնի կրօնաւորի յիշատակարանին հետ, զոր մեր քննութեան մէջ յառաջ բերած ենք՝ մեր Թ. 123Ա եւ Վենետկոյ

ձեռագրաց համեմատ,[1] ալ տարակոյս չի մնար որ բոլորովին նոյն են երկու յիշատակարանք, ուստի եւ Թ. 924 ուրիշ հնագոյն թարգմանութիւն չի բովանդակեր, այլ Սիմէոնի կրօնաւորի վրացերէնէ ըրած թարգմանութիւնը: Ահա այս Թ. 924 ձեռագրի յիշատակարանն՝ ըստ ընդօրինակութեան Պետրոսեանի. (Թ. 3Ա էջ 133:) "Թարգմանեցաւ գիրքս որ շղակապ գլուխ աստուածաբանութեան Պրոկղէ Դիադոխոսի, պղատոնական իմաստասիրի, ձեռամբ Սիմէոնի անպիտան քահանայի կրօնաւորի է Վրաց լեզուէ ի հայ լեզու: յերկիրս Հայոց ի վանս Վրաց որ կոչի պղնձահանք. յաւիտենից թուականին. ՉՂԾԶ. (= 1248 Յ. Ք.) Աղաչեմ զձեզ ով եղբարք. զի յոյժ աշխատութեամբ թարգմանեցի: Նախ զի ոչ էի արժանի այսպիսի սպասաւորութեան: սակս շաղախեալ գոլոյ. մեղօք: երկրորդ զի յոյժ ծերացեալ էի եւ տկարացեալ յաչաց. եւ ի մտաց եւ ի զօրութենէ: զի զվաթսնամենիւք էի: Այլ զի ոչ էր սա թարքմանեալ ի մերս լեզու. եւ սա է մայր աստուածաբանութեան առաջին: Մովսէս զայս ուսեալ զդպրութիւն. եւ ի սորա բանիցն կարգեաց զիւրն աստուածաբանութիւն: Եւ դիոնէսիոս արիսպագացին եւ եռոթէոս զիւրեանց գրեանքն բովանդակ ի սմանէ գրեցին: Նոյնպէս եւ գրիգոր աստուածաբան, զիւրն աստուածաբանութիւն ի սմանէ խաւսեալ է: Եւ բոլորովիմբն որք զամենայն աստուածաբանութիւն իւրեանց ի սմին ոլորմանց բանիցս բխեցին: Եւ սա է հիմն եւ արմատ եւ մայր ամենայնի: Ի սմանէ առին սոքա բովանդակ: Իսկ այնք փոքր հատորք ելով. եւ ես յայնսակս թարգմանեցի. զի մի պակաս եղիցի սա յազգէս մերմէ: Արդ աղաչեմք, որք կարդայք կամ օրինակ առնույք, յիշեսջիք յաղօթս. եւ զիմ փոքր բանքս գրեցէք զկնի. եւ մի ինչ թողուցուք ի

---

[1] Տես՝ էջ 29—30:

սմանէ ։„ — Այս յիշատակարանէն եւքն ալ չի կրնար տարակուսուիլ որ Թ. 924 հնագոյն Թարգմանութիւն չի ներկայացըներ մեզ, այլ միայն Սիմէոնի Թարգմանութեան հնագոյն եւ ընտրելագոյն օրինակն. եւ յայսմ մասին ամենամեծ է իւր յարգը։

Թ. 924 ունի նաեւ ուրիշ կողմանէ յարգ։ Պրոկղի գրոց հետ ծանօթ ձեռագրաց մէջ կից են միշտ Լուծմունք։ Սովորական օրինակք ունի Սիմէոնի Գառնեցւոյ եպիսկոպոսի անուամբ Լուծմունք մը 1651 Յ. Ք. տարին գրուած կամ Թարգմանուած։ Յաջորդ կտորները կը ցուցընեն որ Թ. 924 բոլորովին ուրիշ հնագոյն Լուծմունք ունի Պրոկղի բնագրին կից։ Յայտնի ալ է որ այս Լուծմանց վրայ է Սիմէոնի Գառնեցւոյ ըրած ակնարկութիւնը.[1] "Բայց յառաջագոյն ունի բնաբանն (— այսինքն՝ Պրոկղի գիրքը, —) ընդ իւր Լուծմանն ի յամելախօսէ եպիսկոպոսէ ասմբմնէ, եւ յայլմէ Թարգմանեալ ընդ բնաբանին։ այլ դժուարաւ մուծանէ զմեզ ի բնաբան անդր։ Նաեւ ի Թարգմանութենէն ունի խանգարումն իմացուածոց. զի ի վրաց լեզուէ է Թարգմանեալ ի հայ բարբառ ի Սիմէօնէ քահանայէ յաշխատասիրէ ուսմամբ։ Եւ աստացելոցս վկայ ունիմ զգիրքս զայս, զոր ոչ է անհնար գտանել ձեզ հանդերձ իւրովին. ընդ մէկնութեամբն . . . ։„ Այս հին մեկնութիւնը՝ որ "Յամելախոսի„ անունը կը կրէ, նոյն կ՚երեւայ Վենետկոյ օրինակին եւ Էջմիածնի Թ. 1822 օրինակի մեկնութեանց հետ, որ նոյն անուամբ են. մնացեալք՝ որչափ ծանօթ են՝ Գառնեցւոյ մեկնութիւնը ունին։ Ուրեմն նաեւ այս հնագոյն մեկնութեան համար Թ. 924 ամենէն հին վկայն կ՚ըլլայ։

— —

[1] Տես էջ 36։

Այս Թ. 924ի կտորները դեռ չգրած՝ պէտք կը համարինք դնել հոս Էջմիածնի օրինակաց (Թ. 1853—60) "ցանկ գրոցն բովանդակութիւնը համդերձ համեմատութեամբ մեր Թ. 123 Ա ձեռագրին ցանկին (էջ 507—510)։ Է կը նշանակէ Էջմիածնի օրինակաց ընթերցուածն ըստ ընդօրինակութեան հայագիտին։

## ՑԱՆԿ ԳՐՈՑՍ։

1. ա.* Վասն միակի եւ բազմութեան Ա, Բ, Գ, Դ, Ե, Զ, Է։**
2. ը. Վասն վերցուցողի եւ վերցուցելոյ, որ է պատճառ եւ պատճառելի, կամ ստորոգութիւն եւ ենթակայ. Ը։
3. թ. Վասն նախկնի բարւոյ եւ անկարօտի, եւ կարօտացելոյ, եւ թէ զոյ պատճառ էիցս եւ մի է եւ թէ էիցս սկիզբն[1] եւ պատճառ նոյն ինքն է նախկին բարութիւնն, եւ թէ բարութիւն եւ միութիւն միեւնոյն է. Թ, Ժ, ԺԱ, ԺԲ, ԺԳ, ԺԴ։
4. ժե. Վասն անհակադարձականի, ինքնադարձականի, եւ այլադարձելոյ ԺԵ, ԺԶ, ԺԷ, ԺԸ։
5. ժթ. Վասն կարգադրութեան[2] էիցս թէ ի սեռից մինչեւ յանհատս, եւ թէ ի մարմնոց մինչեւ[3] յատուած եւ յաճախագոյն յաղագս սեռից եւ տեսակաց եւ անհատից։ ԺԹ—Խ։***
6. խա. Վասն յայլում կայացելոյ[4] եւ ինքնակայի. ԽԱ—ԽԹ։
7. ծ. Վասն ամանակաւորի եւ յաւիտենականի. Ծ—ԾԵ։

---

* Արաբական (1, 2 եւն) թուերը հայագիտին ընդօրինակութենէն են, որ չկան 123Ա ձեռագրին մէջ: Ընդհակառակն հայկական (ա, ը, թ եւն) թուերը 123Ա ձեռագրէն առնուած են:

** Այս թուերը կը նշանակեն Պրոկղի գրոց գլուխները, որոց մէջ նոյն նիւթոյ վրայ խօսուած է:

*** 123Ա ձեռագրին մէջ այս թուերը մի առ մի նշանակուած են (ԺԹ, Ի, ԻԱ եւն եւն:) Այսպէս նաեւ յաջորդներուն մէջ:

1 Է իիցս սկսբն։
2 Է կարգադրութեն։
3 123Ա կրկին անգամ ունի «մինչեւ»։
4 Է կայացելոց։

8. ծզ. Դարձեալ վասն ստորոգութեանց եւ ենթա-
կայից ԾԶ—ԿԵ։

9. կզ. Վասն բոլորի եւ մասանց. ԿԶ — ՀԴ։

10. հե. Վասն պատճառաց զանազանութեան. ՀԵ, ՀԶ։

11. հէ. Վասն զօրութեանց, եւ ներգործութեանց.
ՀԵ, ՀԸ, ՀԹ։

12. ձ. Վասն մարմնոյ եւ անմարմնոյ. Ձ—ՁԴ։

13. ձդ. Վասն միշտ էակի. ՁԴ, ՁԵ։

14. ձզ. Վասն զանազան անհունութեան։[1]

15. ձէ. Վասն էակի եւ զանազանութեան նորին. ՁԷ,
ՁԸ։

16. ձթ. Վասն սահմանեցելոց, եւ՛ անսահմանից.
ՁԹ—ՂԶ։

17. ղէ. Դարձեալ վասն ստորոգութեանց[2] եւ ենթա-
կայից. ՂԷ—ՃԴ։

18. ճդ. Վասն յատկանականին եւ անմահի. Ճ—ՃԷ։

19. ճը. Վասն եղանակաց հաղորդութեան, եւ ստորո-
գութեանց,[3] եւ ենթակայից. ՃԸ, ՃԹ, ՃԺ։

20. ճժա. Վասն աստուածայնոց իմացականաց եւ լոկ
իմացականաց. եւ իմացական անձանց եւ լոկ
անձանց. եւ բանականաց մարմնոց եւ անբանից
մարմնոց. ՃԺԱ, ՃԺԲ։

21. ճժգ. Վասն աստուածական թուոց, եւ հաղորդու-
թեամբ աստուածոց,[4] որք են ընդհանուրքն,[5]
ՃԺԳ—ՃԻԲ։

22. ճիգ. Վասն նախկին պատճառին, որ է բարերարն
աստուած. ՃԻԳ—ՃԻԸ։

23. ճիթ. Վասն հրեշտակաց, եւ անձին մարդոյ, եւ
ջանից,[6] յորում եւ շաղկապումն աստուծոյ,[7]
մինչեւ ցստորինս.[8] ՃԻԹ—ՃԼԵ։

24. ճլզ. Դարձեալ ստորոգութեանց եւ ենթակայից.
ՃԼԶ—ՃԽ։

25. ճխա. Վասն նախախնամութեան[9] աստուծոյ որ ի
ձեռն հրեշտակաց. ՃԽԱ—ՃԽԴ։

26. ճխե. Դարձեալ վասն ստորոգութեանց[3] եւ ենթա-
կայից. ՃԽԵ—ՃԿԶ։

---

1 Է ա̃նհունութեան։
2 Է ստորոկութեանց եւ ենթակից։
3 Է ստորոկութեանց։
4 Է աստուծոց։
5 Է ընդ հաննուրքն։
6 Է երկնից։
7 Է յաստուծոյ։
8 Է ցստորինս։
9 Է մախախնամութեանն։

27. իէ. Վասն իմացականաց եւ իմացմանց, եւ իմանալեաց ՃԿԷ—ՃՂԳ:
28. իը. Վասն անձին. ՃՂԳ—ՄԶ:
29. Վասն ազնուական անձին որ է յատուկ յաղագս հոգւոյ մարդոյ ՄԷ—ՄԺԱ:[1] եւ քրիստոսի փառք յաւիտեանս ամէն:*

---

Հոս կը գտնենք դէմ առ դէմ Հայագիտին խաւրած կտորներն, որ են Պրոկղի Ա եւ ԽԶ կտորները հանդերձ մեկնութեամբք, մէկ կողմը Թ. 924 ձեռագրին՝ որ "Հնագոյն թարգմանութիւն„ կը կարծուէր, եւ դիմացն Էջմիածնի Թ. 1859 ձեռագրին ընթերցուածն, որ է Սիմէոնի վրացերէնէն ըրած թարգմանութիւնը՝ Գառնեցւոյ մեկնութեամբք հանդերձ: Հայագէտը կը նշանակէ որ այս ձեռագրին հետ նոյն են Թ. 1853—1858 ձեռագրերը:[2] Վերջին տեսակին ընթերցուածոց ներքեւ նշանակած ենք մեր Թ. 123 Ա ձեռագրին ընթերցուածոց տարբերութիւնքը:



---

* Հայագէտն կը նշանակէ հոս որ նաեւ Թ. 924 նոյն գլխակարգութիւնն ունի, զոր ունին Թ. 1853—60: Բայց, կը յաւելու, կ՚երեւայ թէ ուրիշ թարգմանութիւն է. նաեւ Մեկնութիւնք այս երկու տեսակ խմբագրութեանց մէջ իրարմէ տարբեր են:

[1] Հայագիտին ընդօրինակութեան մէջ այս տողն նոր գլուխ նշանակուած է 30 թուահամարով:

[2] Այս թուերն են Էջմիածնի ձեռագիր ցուցակին թուերը. վասն զի «Մայր-Ցուցակի» մէջ այն թուերն ուրիշ գործքեր կը ցուցընեն: (Տես այս նկատմամբ՝ Հանդէս Ամս. 1892, Թ. 12, էջ 371:) Անշուշտ այս թուերը կը համապատասխանեն «Մայր. Ցուցակի» Թ. 1811 եւն թուերուն:

| Ա.* | Բ.** |
| --- | --- |
| *Պրոկղէ դիադոխոսի պլատոնական իմաստասիրի շղակապք աստուածաբանականք. Հատորս. ՄԺԱ:* | *Պրոկղի դիադոխոսի Պղատոնականի իմաստասիրի: շաղկապք աստուածաբանականք: Հատորք: ՄԺԱ***:* |
| **ՄԿ. .:. Շղակապք մ͠նաբանութե՜ յայն սակս կոչէ, վ՞նզի բոլորգիրք մ͠ ի մաստասիրաց. ի չորից նիւթոց սկսեր եւ անդուստ ի վեջ ի ձեռն բազմազան բանից. զմ͠ սեռական էակք պատմեցին. մինչ եւ ցսեռական անձն եկելք ի վեջ: եւ ապա յանձին բան հասելք. չփոթեցաւ. եւ ոչ զաւրացել ինչ կոչել զնա. դիմադարձեցան միմեանց. եւ անդ կատարեցին զբան: իսկ սա ի շունչ եւ յոգիս կել: եւ անդի ի սեռական անձինս: եւ ի ստոյգեակն եւ ի միակսն. եւ յանիմանալի միակն. այսինքն է յ͠մծ, անդ դադարեալ աւարտեաց զբանն. եւ զնա մ͠նաբանութեամբ: իսկ զսոսա մ͠ծացեալս կոչեաց: եւ մի ազգ ելով եւ ի նիւթոյ եւ ի սեռէ բանից ոչինչ ասաց, սակն ամենեւիմբ: Սկիզբն:** | |

* *Ըստ Թ. 924 ձեռագրին, զոր հայագէտը կը նշանակէ* „Old version?“ *եւ “Հին Թարգմ. նախնեաց?„ տեղեկագրութեամբ ի լուսանցս ընդօրինակութեան:*

** *Ըստ ձեռագրաց Թ 1859 եւ 1853—58: Հայագէտն լուսանցքի վրայ նշանակած է* Georgian Version *եւ „Այս Թրգմ. վրացերէն արարեալ է, որպէս կարծեմ:„*

*** *Դրինք մեր 123Ա ձեռագրէն:*

Ա.* Ամենայն բազմութիւն յարակցի ուրեմն միոյն։ Իսկ եթէ ոչ հաղորդակցի, եւ ոչ ամենայն մի եղանի։ Եւ ոչ իւրաքանչիւր ի բազմաց յորոց է բազմութիւն, այլ եղանի իւրաքանչիւրն նոցա ճզմ։ Եւ այս մինչեւ ցանսահմանութիւն. եւ** իւրաքանչիւրն նոցա անսահմանից եղիցի***։ Դարձեալ բազմութիւն անսահման, եւ ոչ միոյ լինելով հաղորդակից։ ոչ իւրոյն բոլորովիմբ ելոյն։ եւ ոչ որ յինք են իւրաքանչիւրումն։ Այլ [ապա****] ձմիւ ամենեւիմբ եղիցի անսահման. քանզի իւրաքանչիւրն զոր կալցես, կամ մի եղանի, կամ ոչ մի։ Եւ եթէ ոչ մի. կամ բազում կամ ոչ ինչ։ Իսկ եթէ եւ իւրաքանչիւրն ոչ ինչ, եւ յոչնչէ ոչ ինչ։

Ա. Ամենայն բազմութիւն հաղորդի միոյն, իսկ եթէ ոչ հաղորդի. ոչ ձմն մի եղանի եւ ոչ իւրաքանչիւրն յորոց է բազմութիւն[1]։ այլ եղանի իւրաքանչիւրն բազում եւ այս մինչեւ ցանսահմանութիւն, զի իւրաքանչիւրն սոցա անսահման է։ Քանզի եթէ բազմութիւնն ոչ հաղորդի իւրում բոլորին եւ ոչ իւրաքանչիւրում. որ յինքեան ապա եղիցին սահման[2]։ ('ան).† քանզի իւրաքանչիւրն զոր կալցես. կամ մի է կամ ոչ մի։ Իսկ եթէ ոչ մի, կամ բազում կամ ոչ ինչ։ Եւ եթէ իւրաքանչիւրն բազում, ապա եղանի անսահման,[3] այլ այս անկար է վասնզի ոչ ոք յէակաց[4] կարէ գոլ անսահմանութեամբ անսահման, զի քան զանսահմանութիւնն ոչ ինչ է առաւել, այլ բոլորն առաւել քան

---

* Ա եւն բաժանմունք չկան ընդօրինակութեան մէջ, ուստի եւ ոչ ձեռագրին մէջ։ — Ընդօրինակութեանս յաջորդ խօսքին մէջ նախ գրուած էր "Եւ իւրաքանչիւր ի բազմաց. յետոյ կապարգրչաւ ուղղուած "եւ ոչ իւրաքանչիւր ..։"

** Նախ "եւ իւրաքանչիւրն" գրուած, յետոյ կապարգրչաւ վրան "զի" ուղղուած։

*** Նախ գրուած՝ "անսահմանից եղիցի", ապա կապարգրչաւ "անսահման է։"

**** "Ապա" կապարգրչաւ գրուած էր վրան։

† Այսպէս սրբագրութիւն է "սահման" սխալ գրչութեան, որ պիտի ըլլայ՝ "անսահման։"

1 Թ. 123Ա բազմութիւնն։
2 123Ա անսահման։
3 123Ա անսահմանութեամբ անսահման։
4 123Ա յէակացն։

ՄԽԼ. †. որդեւոյնք. զերկիր կիւբիկոն դրել. ան- դի ի վերաոացին լեալ զած գոյս, եւ ի նմա կապեալ: Սոյնպէս եւ սա զած եւ սկիզբն, եւ անդի մինչեւ յե- տին անձն շնչոյ պատմեաց: Ամենայն բազմութիւն ոե- ռականաց հաղորդին մի- մեանց եւ դարձեալ միոյն, այսինքն կիբիկոնին իւր: Եւ են մի եւ բազում, զի սեռք հրոյ, եւ հուր՝ օդոյ, եւ օդ՝ ջրոյ, եւ ջուր երկրի հաղորդի, եւ են ած մի եւ բազում: Սոյնպէս եւ օդ շնչոյ եւ շունչ հոգոյ. եւ ոգի՝ անձին մարդկանոյ: Եւ անձն մտաց եւ միտք իմա- նալեացն մտաց, եւ իմանա- լիքն ստոյգեակին եւ ստոյ- գեակն միակացն, եւ միակք՝ միայնոյ միակին, հաղորդին եւ միաւորին ընդ ած: Եւ են սոքա այսպէս. շունչ կոչի բուսոց եւ տնկոց. շնչոյ ոգի անբանից, եւ զեռնոցն շնչոյ, անձն եւ միտք՝ մարդկայնոյ անձին:

զիւրաքանչիւրն. իսկ եթէ իւրաքանչիւրն ոչ ինչ եւ յոչ ինչէ[1] ոչ ինչ. զի յոչ ընչէ[1] ոչ է կարողու- թիւն ինչ յառաջ գալ, ապա ուրեմն[2] ամենայն բազմութիւն հաղորդի միա- կին:

ԼԾՄ. Բացերեւութիւնս այս որ առէ ած բազմու- թիւն հաղորդի միակին. խոստովանելի է ըստ երկուց եղանակաց. Նախ զի բազ- մութիւն[3] ինքն է միակ իմն, զի ած բազմութիւն ի բազ- մաց հաւաքի ի մի տեսա- կութիւն. որպէս[4] հարիւրն է միակ զի է տեսակ իմն թուոյ: Երկրորդ զի սկիզբն բազմութեան միական[5] է. զի ի բազում միակաց հաւ- աքի եւ լինի բազմութիւն իմն այս ինքն հաւաքական միութիւն իմն: Այսպէս ած բազմութիւն[6] ի միակէն սկսեալ ի միակն դադարի. զի մասունքն յորոց բաղ- կանայ բազմութիւն[7] մի- ակք են. եւ բազմութիւն[8] ինքն ի մասանցն բաղկա- ցեալ ի միակն դադարի. զի լինի տեսակ իմն: այս ի վր թուոյ. Այսպէս ի վր բնա- զանցական գիտութեն է տե- սանել. զի յընդհանրական միակաց լինի միակ իմն. ո[8] ի զգայնոյ եւ ի շնչաւորէ եւ

1 123Ա յոչնչէ:
2 123Ա չստնի:
3 123Ա բազմութիւնն:
4 123Ա որպէս ձն է . . :
5 123Ա միակն է:
6 123Ա բազմութիւն:
7 123Ա բազմութիւնն:
8 123Ա որպէս:

Իմանալի անձն՝ հրեշտակաց, առոյգեակ նոցին եւս: Իսկ մի անհասանելի ած է:

ի բնական է[1] լինի մարդն. Նմանապէս ի վճ բնականին[1] տեսանի զի յանձնէ եւ ի մարմնոյ լինի անձաւորն:**

ԽԶ.* Ամենայն ինքնակայ անապական է, իսկ եթէ ապականեսցի անջատի յիւրն ինքնութենէ: Եւ եղիցի տարորիշ յինքնութենէն: Այլ այս անկար է. քանզի եւ նոյն է պատճառն եւ պատճառաւորն. քանզի ամ ապականացու հեռացմամբ յիւրոյն պատճառէն ապականի: Զի որքան ըմբռնեսցի եւ պարփակեսցի յիւրմէն կենդանացուցողէն իւրաքանչիւրն կալեալ լինիցի եւ կեցցէ, ոչ ուստեք հեռանայցէ ի պատճառէն իւրմէ ինքնակայ եւ ոչ թողու զիւրն ինքնութիւն: Վասն զի ինքն է ընտանի եւ պատճառ, անապական իմիք է ամ ինքնակայ:

ԽԶ. Ամենայն ինքնակայ անապական է: Իսկ եթէ ապականիցի, անջատի յէութենէ իւրմէ: եւ եղիցի տարորոշ յէութենէ[2]: այլ այս անկար է. քանզի նոյն է պատճառն եւ պատճառելին. զի ամ ապականացու հեռացմամբ յիւրոյն պատճառէն ապականի: զի որքան ըմբռնի եւ պարփակի իւրաքանչիւր ոք ի պատճառէ իւրմէ լինի եւ գոյ: Իսկ ինքնակայն ոչ երբէք հեռանայ ի պատճառէն իւրմնէ.[3] եւ ոչ թողու զիւրն էութի զի ինքն է պատճառելի: անապական ուրեմն է ամ ինքնակայ:

Լուծմունք. Ամենայն ինքնակայ անապական է, իսկ եթէ ապականեսցի խափանեսցի յիւրն ինքնութենէն: պարտական եմք նայել քաջ ընդ նրբութիւն տեսութեանս: Իսկ սա ասէ եթէ որքանեօք արգելցի ի

Լծ. Սոկրատէս որքան է ընդ տեսակին իւրում որ է մարդն ոչ ապականի. իսկ յորժամ հեռանայ ի մարդկոյն՝ հեռացաւ եւ ի պատճառէն, այսինքն յէութենէ իւրմէ. վասն որոյ ապականի: Բայց մարդն

---

* Հայագէտն հոս աւ նշանակած է՝ "Այս է իբրեւ կասկածեմ եմ՝ հին թարգմանութիւն նախնեացն:„

** Հայագէտը կը նշանակէ հոս որ լուծմանս այս տեղ դրուածն 1/5 մասն է այս գլխուն ամբողջ լուծման: Այսպէս է նաեւ 123Ա ձեռագրին մէջ:

1 123Ա բանականէ . . . բանականին:
2 123Ա յէութենէն:
3 123Ա իւրմէ:

գոյութիւն յիւրն ինքնութենէն, այնքան եղանի անգոյ եւ անէակ, վասն զի ընդ նախկին իւրն պատճառի կապակցեալ են, անմարմին եւ անապականն ազգք. եւ ապա ընդ իւրովն ինքնութեամբ, վասն զի անմեկնելի ունի զինքնութիւն յիւրն պատճառէն. զ̃մ բոլորովիմբ պատճառաւոր ի պատճառին է։ Իբրեւ անմարմին յանմարմնոյ միջի է։ Իսկ դու լոող տուր ասա զգայարանաց տեսութեանս թէ որպէս անարգելլի է ի պատճառէն պատճառաւորն։ Զի ոչ եթէ ամանակ անկանիցի ի միջի նոցա, որպէս ի մէջ առաջնոյն եւ յետնոյ։ Իբր յայս որ յապականացուաց եւ ի սեռականաց վերատեսանի պատճառաց եւ պատճառաւորաց։ Եւ ոչ տեղի այսորիկ սեռից պարփակէ զնոսա. իբրեւ զհեռի բացատրել զպատճառաւորն ի պատճառէն. այլ ըմբռնէ պատճառն զպատճառաւորն յինքն. ու տեղի նորա իբրեւ զշրջափակող զօրութեամբ։ Եւ ոչ շուրջ ահիլել * (առեալ) իբր սեռական այս տեղի զսեռիւ։ Այլ իբրեւ զզօրութիւն այնմ որ յիւրմէ ի վերագոյն զօրութենէ։ Եւ դարձեալ ոչ յանկատարութենէ ի կատարելութիւն եկեալ. վասն զի ոչ տիրել ոչ[1] նոյն ինքն է տեսակըն զոր կոչէ ինքնակայ եւ անապկն. պատճառ եւ պ-ելի ինքեան նոյն ինքն է. վասն որոյ ոչ ապականի։ Բայց տես զի նոյնն ըստ նոյնի անկար է գոլ պատճառ եւ պ-ելի, ո̃ յառաջագոյն ինքն ասացաք թէ այլ է տըրփողն[2] ի տրփելւոյն. տրփող է պատճառելին. իսկ տըրփելի պատճառն։ Բայց նոյնն ինքեան տրփի. վասն նոյնն է պատճառ եւ պատճառելի. ոյսինքն ոչ գոյ ի նոյնում պատճառ եւ պատճառելի. թէպէտ ըստ իմիք լինի ասել պատճառ եւ պ-ելի։

---

* Այսպէս գրուած ձեռագրում:

1 123Ա որ նոյն . . .

2 123Ա տռփօղն ի տռփելոյն եւ.ն։

կարէ նմա ամանակաւ որ յառաջածութն. եւ ոչ ի հասակէ ի հասակս փոփոխութն. յաղագս այսորիկ զի զյաւելն եւ զնուազն ոչ ընդունի: Վասն զի ամ̃ յաւելութիւն եւ պակասութիւն հակադարձութիւնէ: Իսկ ամ̃ անմարմին ազգ հակադարձական է տեղեաւ եւս եւ որակութեամբ. այսպէս կացցէ իբրեւ բան յանձին. ի պատճառին պատճառաւորն. եւ ոչ ումեք այսոցիկ օրինակօք արգելցի ի պատճառէն պատճառաւորն. զի ամ̃ անարգելի եւ անմեկնելի յիւրն ինքնութենէն անապական եւ մշտնջենաւոր է եւ կայ յիւրն պատճառի:



## Ջ.

## ՍԵԿՈՒՆԴՈՍ ԻՄԱՍՏԱՍԷՐ*

Հնութեան ամէնէն տարածուած մատեաններէն է այն փոքրիկ գիրքն՝ որ Սեկունդոսի Իմաստասիրի անունը կը կրէ։ Շատ մը գիտնականք հետազօտած են արդէն զայն, անոր այլեւայլ արեւելեան եւ արեւմտեան խմբագրութիւնքը քննած եւ հրատարակած. արեւմտեաններէն ի մասնաւորի՝ յունարէն եւ շատ մը լատինականք, յետոյ միջին-գերմաներէն, իտալերէն, գաղղիերէն եւ նաեւ իսլանդերէն խմբագրութիւնքը, իսկ արեւելեաններէն՝ ասորերէնն, արաբերէնն ու եթովպացերէնն։ Միայն հայերէնը բոլորովին մոռցուած է։ Ապահով կ'երեւայ որ հայերէն խմբագրութեան մը գոյու-

* Յաջորդ քննութիւնը չսկսած՝ հարկ կը համարինք քանի մը դիտողութիւն ընել: Գործքս գրուած է նախնաբար գերմաներէն լեզուաւ եւ նպատակ ունի հայ մատենագրութեան այս հին նշխարն ծանօթացնել եւրոպացի գիտնոց: Ուստի բաց ի հայ բնագրէն՝ ունի նաեւ գերմ. թարգմանութիւն մը հայերէնին մանրամասն համեմատութեամբ ոչ միայն յոյն բնագրին, այլ նաեւ արեւելեան խմբագրութեանց, այսինքն Սեկունդոսի ասորերէն հատակոտորոց եւ արաբերէն եւ եթովպացերէն թարգմանութեանց: Այս ամէնը դուրս մնացած են յաջորդիս մէջ՝ իբրեւ աւելորդ հայ ընթերցողաց համար, եւ միայն քանի մը կարեւոր կէտերն առնուած ծանօթութեանց մէջ: Համառօտուած են նոյնպէս քննութեանս շատ մը կէտերը, եւ այլ կարեւոր երեւցած փոփոխութիւնքն եղած: Այս կարգի մանրամասնութիւնք կրնան մեր գերմաներէն գրութեան մէջ տեսնուիլ:

թիւնն իսկ գրեթէ ամէն քննչաց անծանօթ մնացած է, թէեւ Հայերէն բնագիրն՝ որչափ ալ թերի եւ ոչ ամբողջական՝ իբր քառասուն տարի յառաջ արդէն լոյս տեսած է: «Սոփերք Հայկականք» ժողովածոյից առաջին հատորիկը կը պարունակէ «Բանք Իմաստասիրաց»[1] հաւաքումը, եւ անոր իբր յաւելուած՝ Սեկունդոս Իմաստասիրի վճիռները սա տիտղոսին ներքեւ.[2] «Խօսք Սեկունդոսի Իմաստասիրի որ Ադրիանոս կոչէր:»

Սակայն ճիշդ Հայերէն խմբագրութիւնը պէտք չէր մոռցուիլ, եթէ կ'ուզուէր յունարէն աղաւաղեալ բնագիրքն վերականգնել: Վասն զի Հայերէնը յունարէն բնագրէն ուղղակի ծագած թարգմանութիւններուն ամենահիներէն է, Է—Ը դարէն ըլլալով, եւ այնպիսի յոյն բնագիր մը կը ներկայացընէ, որ ոչ Փարիզեան եւ ոչ Կուտինեան յոյն օրինակաց հետ բոլորովին կը համաձայնի: Եւ թէեւ Սեկունդոսի Վարուց սկիզբն ինծի ծանօթ երեք հայ օրինակաց մէջ ալ կը պակսի, Հայերէն բնագիրը մեզի չէ հասած հատակոտորներով միայն՝ ինչպէս է ասորերէնը, եւ ոչ ալ ընդլայնեալ կերպարանօք՝ ինչպէս կը

---

1 Հմմտ. Սոփերք, Հտր. Ա. (տպ. Վենետ. 1853), էջ 9—39: Ինչպէս Յառաջաբանին մէջ կը ծանուցուի՝ հինգ ձեռագրաց համեմատ եղած է հրատարակութիւնս, բայց առանց տարբերութեանց ընթերցուածոց: Առածից քննութեան համար աւելորդ չէր ըլլար նոր քննադատական հրատարակութիւն մը հայ բնագրին՝ հանդերձ գերմ. թարգմանութեամբ: Կը յուսանք ոչ շատ ժամանակէն ձեռնարկել ասոր, մանաւանդ որ քիչ ժամանակ յառաջ Հայերէնի նոր եւ շատ տարբեր խմբագրութիւն մը գտնել եւ օրինակել կարելի եղաւ Փարիզեան ձեռագրի մը մէջ: Առ այժմ ընթերցողը կը խաւրենք Ուսուցչապետ Է. Ցեզայի փոքրիկ բայց մեծայարգ գրութեան, ուր Առածներուս Հայերէն թարգմանութիւնը հիմնովին քննուած է. Հմմտ. Delle Sentenze morali di filosofi Greci, scelte e tradotte da Armeni. Roma 1893. 8º pp. 24 (Rendiconti della R. Accad. dei Lincei, 1893, II, 6, pp. 375—396.) եւ ասոր Հայերէն թարգմանութիւնը՝ Բազմավէպ, 1894, թ. 2, 3 եւն:

2 Անդ, էջ 61—70 (վերնագիրն ըստ C.)

գտնենք արաբականն ու եթովպականը։ Եթէ ապագային Սեկունդոսի բոլոր խմբագրութեանց համագումար հրատարակութիւն մ'ըլլայ՝ ինչպէս ընել որոշած էր նախ Ռըվիյու գիտնականը, հայերէն բնագիրը պէտք չէ որ պակսի անոր մէջ։ Այս նպատակաւ հարկաւոր համարեցանք Սեկունդոսի նուիրեալ նոր մատենագրութեան մէկ պակասը լնուլ եւ հայ խմբագրութիւնը ծանօթացընել գիտնոց։ Հայերէն բնագիրն՝ որ Վենետկոյ տպագրութեան մէջ անով թերի է որ Սեկունդոսի Վարքը գրեթէ չկայ հոն, լրացուցած ենք երեք օրինակաց համեմատ, զայն գերմաներէնի վերածած եւ բազմաթիւ ծանօթութիւններով ճոխացուցած, որոնց մէջ հայոյն ընթերցմունքը համեմատուած են յոյն բնագրին ընթերցմանց, եւ ասորի, արաբական եւ եթովպական բնագրաց հետ։ Իսկ այս ներածութեան մէջ պիտի հետազօտենք հայերէն թարգմանութեան ժամանակը։ անոր յարգն եւ բնագրին հետ ունեցած աղերսը,

---

## Ա.

Սեկունդոսի "Լռակեաց" իմաստասիրի ընծայուած գրութիւնն երկու մասէ կը բաղկանայ, կամ ինչպէս քննիչներէն ոմանք կ'ուզեն՝ երկու նախնաբար անկախ գործքերէ, այսինքն Իմաստասիրին մէկ կենսագրութենէն եւ 20 (բուն 21) վճիռներէ կամ Պատասխաններէ Ադրիանոս կայսեր հարցմանց։ Կենսագրութեան մէջ կը պատմուի որ Սեկունդոսի ծնողք զինքը դպրոց խաւրեցին (ըստ Արեւելեայց՝ ի Պերիւթոս, այսինքն՝ հին Պէյրութ, եւ Աթէնք) իմաստասիրութիւն սորվելու։ Երբ շատ տարիներ ետքը հայրենիք դարձաւ, ուզեց փորձել իմաստասիրաց մէկ վճռին ճշմարտութիւնը՝ զոր սորված էր կանանց վրայ, այսինքն թէ Ամէն կին ի բնէ անհաւատարիմ է։ Եւ որովհետեւ մէկէ

մը ճանչցուած չէր, իւր իսկ մայրն ուզեց քննութեան ենթարկել: Երկար կը պատմուի թէ ինչպէս երկար յապաղմանէ ետքը մայրը տկար գտնուեցաւ հաւանելու: Այն ատեն Սեկունդոս յայտնեց թէ ինքն անոր որդին է. ամօթահար եղած՝ ինք զինք կախեց մայրը: Իմաստակը տեսնելով որ իւր խօսքն եղաւ մահուան պատճառը, անիծեց իւր լեզուն եւ որոշեց այնուհետեւ խիստ լռութիւն պահել: -- Ինչպէս պիտի տեսնենք՝ ճիշդ այս մասը կը պակսի այժմու հայերէնին մէջ, ոչ թէ որովհետեւ թարգմանչին գործածած յոյն բնագրին մէջ չկար, եւ ոչ ալ որովհետեւ թարգմանիչը դուրս ձգած էր, այլ որովհետեւ օրինակողք այս մասին նիւթն անյարմար տեսած են:

Կենսագրութիւնը կը շարունակէ պատմել թէ Սեկունդոս լռութիւնը շատ խիստ պահեց — ասկէ "Լռակեաց" անունը, — նաեւ Ադրիանոս կայսեր առջեւ, որ երբ Աթէնք եկաւ՝ ուզեց անոր իմաստութիւնը քննել: Լռեց յամառաբար՝ մինչեւ ցմահ, երբ կայսեր հրամանաւ գլխատուելու անգամ վայրկեան մը մնացած էր: Զարմանալով կայսրն անոր յարատեւութեան՝ չպնդեց այլ եւս որ խօսի, այլ գոհ եղաւ որ իւր հարցմանց գրով պատասխանէ, որ եւ եղաւ իսկ: — Հոս կը յաջորդեն արեւելեան խմբագրութեանց մէջ վճիռները, իսկ յունարէնին մէջ այստեղ կը կնքուի կենսագրութիւնն, այնպէս որ վճիռք կապ չունին գրութեան հետ:

Հոս կը ծագին շատ մը խնդիրներ: Ի՞նչ էր այս պատմութեան նախնական կերպարանքը. ճշմարտութեան հիմ մ'ունի՞ այն՝ թէ պարզ վիպասանութիւն մըն է. "Սեկունդոս" անուամբ իմաստասէր մը կապ ունի՞ այս պատմութեան հետ թէ ոչ. Է՞ ինքն հեղինակ վճիռներուն եւ վճիռքն կապակցութիւն ունի՞ն կենսագրութեան հետ թէ ոչ, եւն: — Այս եւ այլ շատ մը խնդիրներ

մանրամասն քննադատած են քննիչներն, ի մասնաւորի Ռըվիյու, Պախման եւ Քոուէլ, բայց իրարմէ շատ տարբեր պատասխան տուած։ Յաջորդովս ի մէջ կը բերենք Սեկունդոսով զբաղող գրութիւնք, ինչպէս նաեւ քննչաց պէսպէս կարծիքը Սեկունդոսի վիպասանութեան նկատմամբ։ Այսով պիտի կարենայ ընթերցողն ինքնին դատաստան ընել Սեկունդոսի խնդրոյն այժմու վիճակին վրայ։

Թէ Վարքն եւ թէ "Խօսքն" (վճիռք) շատ անգամ հրատարակուած են։ Յունարէն բնագիրն ըստ Փարիզեան ձեռագրին հանդերձ լատիներէն թարգմանութեամբ հրատարակած է արդէն Ղուկաս Հոլստենիոս,[1] յետոյ Գալէոս[2] ճիշդ նոյն բնագիրն ու լատին թարգմանութիւնը։ Փարիզի ձեռագրին ընթերցմունքն ընտիր չեն միշտ։ Լաւագոյն են Կուտիանեան ձեռագրին ընթերցմունքը, զոր հրատարակեց Փաբրիկիոս[3] եւ մանաւանդ Ա. Շիր,[4] որ նաեւ կենսագրութիւնն ի լոյս հանեց։ Ընտրելագոյն է Օրէլլիի[5] հրատարակութիւնն, որ ոչ միայն Վարքն հրատարակեց համեմատութեամբ Շիրի հրատարակած Կուտիանեան ձեռագրին (էջ 208—213 *Βίος Σεκούνδου φιλοσόφου*), անոր կցելով հնոց վկայութիւնքը Սեկունդոսի վրայ (էջ 213—214) եւ Հոլստենիոսի դիտողութիւնքն (էջ 214—5), այլ նաեւ "Խօսքն" Հոլստենիոսի

---

1 Demophili, Democratis et Secundi veterum philosophorum Sententiae morales, ed. Lucas Holstenius. Romae 1838 (Lugd. Batav. 1639, p. 84 ff.)

2 Gäleus, Opuscula mytholog. ethic. et phys. Contabrig. 1670 եւ Amstelod. 1688.

3 Fabricius, Bibliotheca Graeca, Vol. XIII. p. 565 ff.

4 Demophili et Democratis et Secundi Sententias cum Vita Secundi antea non edita, ex apographo Gudiano cod. Medicei, ed. Adam Schier. Lips. 1754, p. 84 ff.

5 Opuscula Graecorum veterum sententiosa et moralia, graece et latine, collegit Joh. Conradus Orellius. I, (Lips. 1819) 8° XXXVIII, pp. 684.

լատիներէն թարգմանութեամբ հանդերձ՝ այս վերնագրով՝ Σεκούνδου τοῦ ἀθηναίου γνωμαὶ (էջ 216—226), եւ այլեւայլ լատիներէն բնագիրներ, որ Սեկունդոսի հետ կապ ունին,[1] եւ ամբողջը շատ մը ծանօթութեամբք ճոխացուց։ Նոյն կտորները՝ Փարիզեան եւ Կուտիանեան ձեռագրին մանրամասն համեմատութեամբ՝ ի լոյս ընծայեց վերջապէս Մուլլախ իրեն Յոյն Փիլիսոփայից Հատակտորոց հաւաքման մէջ, եւ այն՝ Ա հատորին մէջ "Խօսքն" ու քանի մը լատիներէն բնագիրներ,[2] իսկ Բ հատորին մէջ Սեկունդոսի Կենսագրութիւնը՝ ներածութեամբ մը ճոխացեալ։[3] Այս ընտրելագոյն հրատարակութիւնը գործածած ենք մեր այս աշխատասիրութեան եւ ի մասնաւորի Հայ բնագրին ծանօթութեանց մէջ, թէեւ նաեւ Օրէլլի հրատարակութիւնն առջեւնիս ունէինք։ Սեկունդոսի Կենսագրութիւնը հրատարակած է վերջապէս նաեւ Թիշէնտորֆ[4] կարեւոր ձեռագրի մը

---

1 Անդ, էջ 227—239 Vincencius Bellovacensis, Specul. Hist. XI, 70; 71 (նաեւ ի Galeus, Opuscula, ed. Amstel. 1688, p. 640) — էջ 229—230 Secundi philosophi Sententiae (Gasp. Barthii Adversaria; XV, c. 17, p. 816 ff. նաեւ ի Fabricius, XIII, 573). — էջ 230—239 Altercatio Hadriani Aug. et Epicteti philosophi (Հրտ. նախ Fr. Lindenbrogius, Francof. 1628 եւ Fabricius, XIII, 557—563). — էջ 567—572 Ծանօթութիւնք։

2 Fragmenta Philosophorum Graecornm, ed. Fr. Guil. Aug. Mullachius. Vol. I (Paris. 1860, 4° XXVII pp. 575). էջ 512—515 գրուած է յունարէն բնագիրն եւ նոր լատիներէն թարգմանութիւն մը. — էջ 516 եւն Secundi philosophi Responsa ad interrogationes Adriani (այսինքն Vin. Bellov. գործքը.) — էջ 518 եւն Altercatio Hadriani եւն։

3 Mullach, II (Paris. 1867. 4° LXXXV, pp. 440) ի մասնաւորի էջ՝ XXVII[1]—XXIX[1]։

4 Fr. Const. Tischendorf, Notitia editionis cod. bibliorum Sinaitici եւն. Lips. 1860, p. 71 ff. — Տես Bachmann, die Philos. եւն, (էջ 64) որ կը յիշէ նաեւ հետեւեալ գործքերը՝ H. Sauppe ի թերթին Philologus, XVII, 149 ff; Rudolf Reicke (անդ, XVIII, 523) խօսած է քէօնիկսպէրկի լատ. ձեռագրին վրայ, ինչպէս նաեւ Georg

համեմատ։ Այնուհետեւ աշխատած են Քասէլ եւ Պախման յունարէն բնագիրն ուղղելու,[1] ինչպէս յետոյ պիտի յիշենք։

Ինչպէս Օրէլլի ալ ըրած էր՝ հաւաքած է Մուլլախ իրեն Ներածութեան մէջ հնոց Սեկունդոսի վրայ տուած տեղեկութիւնները։ Ինքը կը համարէր թէ այս Սեկունդոս նոյն ըլլալու է այն սոփեստին հետ, զոր կը յիշէ Փիլոստրատոս, որ ἐπιθυρός (ըստ Սուիդասայ ἐπίουρος) յորջորջուած էր, կ'ապրէր Ադրիանոսի ժամանակ եւ թաղուեցաւ յԵլեւսիս։ Փիլոստրատոս իւր Սոփեստաց Վարուց մէջ գրած է հետեւեալը.[2] "Պէտք չենք մոռնալ զՍեկունդոս Աթենացի, զոր ոմանք ἐπιθυρός կ'անուանէին՝ հիւսան որդի ըլլալուն համար. Սեկունդոս սոփեստ մըն էր՝ ճարտար ի խորհել, եւ անճարակ ի մեկնել։ Երբ կ'ուսուցանէր զՀերովդէս, վէճի բռնուեցաւ անոր հետ՝ որ արդէն ուսուցանել սկսած էր, ուստի վերջինս կը կատակէր այս տողով. "Տես կը կագի բրուտ բրուտի հետ. հիւսան հետ՝ հիւսն։" Սակայն արտասուալից ճառ մը խօսեցաւ՝ անոր մեռելոյն, իբրեւ ծերութեան մէջ կատարելոյ վրայ։ Շատ բան կայ այն մարդէն յիշատակաց արժանի, մանաւանդ այս խօսքը. Պարտական է մահու՝ որ խռովութիւն մը յարուցած է, եւ որ զայն խաղաղցուցած է՝, արժանի է գովութեան . . . ։ Այսպիսի մարդ էր այն (Սեկունդոս). թաղուեցաւ յԵլեւսիս՝ Մեգարայի ճամբուն վրայ։" Այսպէս Փիլոստրատոս։ Մուլլախ կը հետեւցրնէ որ Սեկունդոս անուանի մատենագիր մ'եղած ըլլալու է որ

Schepps Մայհինկէրի ձեռագրին վրայ (Philologus, XXXVII, 562) եւն։

1 P. Cassel, Mischle Sindbad եւն, էջ 348—357 (ուղղագրուած Վարքը.) եւ J. Bachmann, die Philos. եւն էջ 17—22 (ուղղագրուած "Խօսք" Սեկունդոսի։)

2 Հմմտ. Philostratus, Vitae Sophist. I, 26, հրտ. Olearius, էջ 544. Տես ընդարձակագոյն ի Cassel p. 342—3, n. 2. Հմմտ. նաեւ Revillout, p. 76 ff.

Սուիդաս զինքը շփոթեր է հռչակաւոր Կ. Պլինիոս Երկրորդին (Secundus) հետ, վասն զի Սուիդաս կ'ըսէ.[1] "Սեկունդոս աթենացի սոփեստ, որ կը կոչուէր Պլինէոս, եւ կը յորջորջուէր ἐπίουρος իբրեւ հիւսան որդի,[2] ուսուցիչ եղաւ Հերոդոտոս (Մուլլախ կ'ուղղէ "Հերովդէս") սոփեստի, գրեց հռետորական վարժութիւններ." ((μελέτας ῥητορικὰς): Ինչպէս Քասէլ դիտել կու տայ՝ այսպիսի շփոթութիւնք այլուր ալ կը գտնուին: Քրիստոնէից մէջ Պլինիոս կը շփոթուէր Սեկունդոս մարտիրոսին հետ, եւ կը կարծուէր թէ Տիտոս աշակերտած ըլլայ զՊլինիոս կրտսեր. բայց այս շփոթութիւնն անկէ ծագած էր որ Սեկունդոս վկայն ապրած էր ի Կոմոյ, եւ Պլինիոս կրտսեր ծնած էր ի նոյն Կոմոյ:[3] Մուլլախ կը յիշէ վերջապէս առած մը Սեկունդոսի անուամբ Անանուն հեղինակի մը Բարբերինեան ձեռագիրներէն ըրած ծաղկաքաղին մէջ (Anonymi Florilegium), որ է այսպէս. Ὁ Σεκοῦνδος ἔφη. τριῶν κακῶν τέτευγμαι, γραμματικῆς, πενίης καὶ οὐλομένης γυναικός· τῶν δύο ἐξέφυγον, οὐλομένης γυναικὸς ἐκφυγεῖν οὐκ ἴσχυσα,

1 Տես Mullach, II, p. XXVII n. 193.

2 Այս յորջորջման նկատմամբ դիտել կու տայ Քասէլ (էջ 343) որ ἐπίουρος կոճղ կը նշանակէ, ուստի ծաղու անուն մըն էր Սեկունդոսի տրուած՝ հիւսան որդի ըլլալուն: Այսպիսի ծաղու անուններ կը տրուէին ուրիշ իմաստասիրաց ալ. այսպէս Դեմոկրիտոս կը յորջորջուէր Լերոկրիտէս (ληροκριτής, յիմարադատ) եւ Անտիդորոս՝ Սաննիդորոս (իբր "Մորոսատուր.") Հմմտ. Դիոգ. Լայերտ. Ժ, 4: Ուստի Սեկունդոսին ալ կրնային ἐπιθυρός տիտղոսը տուած ըլլալ, ինչպէս կը վկայէ Փիլոստրատոս, իբր "Ոստուցիչ," "Յարձակող" իբրեւ հակասական Եպիկուրոսի ("խաղաղարար":)

3 Տես Քասէլ, էջ 345, որ այն տեղ կը յիշէ նաեւ որ "Ըմանտիոս — հին փիլիսոփայից այլեւայլ կարծեաց հաւաքիչը — Սեկունդոսի պատմութիւնը կը յիշէ, բայց Սեկունդոսի տեղ՝ Դիոգինէս Լայերտիոս կ'անուանէ: Փաբրիկիոս կը յիշէ ուրիշ գիրք մ'ալ, ուր ոմն Դիոգենիանոս ուրիշ կերպով կը պատմէ իրը: Կարելի չէ անշուշտ ընդունիլ որ Միջին դարու մէջ զՍեկունդոս՝ որովհետեւ հիւսան որդի էր Դիոգենէս անուանած ըլլան:"

այսինքն „Սեքունդոս ասէ. Երից չարաց դիպեցայ, դպրութեան, աղքատութեան եւ ժանտ կնոջ. յերկոցունց զերծեալ՝ ի ժանտ կնոջէ չկարացի պրծանել:„ [1] Անցողակի յիշենք որ Սեկունդոսի անուամբ առածներ կը գտնենք „Բանք Իմաստասիրաց„ գրոց հայերէնին մէջ, զոր յետոյ պիտի յիշենք:

Արդ հնոց այս յիշած Սեկունդոսին հետ, ինչպէս ամէն քննիչք կը հաստատեն, ամենեւին գործ չունի մեր „Լռակեաց„ Սեկունդոսը: Հազիւ յետոյ ժամանակաւ հնոց Սեկունդոսը կապած են Լռակեցին հետ, [2] եւ անոր տուած են ստութեամբ՝ ոչ միայն վճիռներ, այլ եւ ուրիշ գործքեր, ինչպէս հանրածանօթ „Գալիլակ եւ Դամնակ„ գիրքը (Աղուեսագրոց հիմը:) Ինչպէս Քասէլ (էջ 344, ծ. 1) դիտել կու տայ, արդէն Օլէարիոս՝ հետեւելով այլոց՝ այսպիսի կարծիք մը յայտնած էր, եւ նաեւ Շթարքէ (Starke) կը յիշէ նոյնն իրեն Յունական Առակագրոց հրատարակութեան մէջ (Պերլին 1697, Յաջր.): Այս ենթադրութիւնն անկէ ծագած է որ մեր Սեկունդոսի արաբերէն եւ եթովպացերէն խմբագրութեանց մէջ կը գտնուի „Եօթն Իմաստասիրաց„ գրոց մէկ պատմութիւնը, իսկ հնոց քով կը շփոթուէր „Գալիլակ եւ Դամնակ„ գիրքը „Եօթն Իմաստասիրաց„ վէպին հետ: Զայս կը հաստատէ նաեւ Պախման (die Phil. p. 50—51), որ կը յիշէ առ այս թէ Վիեննայի կայս. Գրատան Ձեռագրաց Ցուցակին մէջ (Catal. III, p. 41) Cylile et Dimne գործքը կը յիշուի,

---

1 Տես Mullach, II, p, XXVII, n. 194. Schier, p.80 եւն: Պախման (die Phil. p. 47—48) այս առածը „Լռակացն„ Սեկունդոսին կու տայ, վասն զի մէջը տիրող հոգին է կանանց դէմ ատելութիւն, „Սեքունդոսի անուան հետ կապելով կանանց թշնամւոյ մը գաղափարը. (տես նաեւ Cassel, էջ 344, n. 2.) իրեն վերագրած են ամէն կարելի առածներ, բաւական որ կանանց նուաստացուցիչ բան մը պարունակեն:„

2 Առ այս կոչումն կ'ըսէ Մուլլախ Vinc. Bellov. (անդ) եւ Ravisius Textor ի գիրս Officina, p. 1310.

ուր պատմութեան միջնակէտը կը կազմէ Սեկունդոս, ինչպէս վերնագիրը կը վկայէ Σεκούνδου φιλοσόφου ἱστορία ("Պատմութիւն Սեքունդոսի իմաստասիրի" եւն)։

Ինչպէս ըսինք, շատոնց ծանօթ էր որ Հնոց յիշած Սեկունդոսը կապ չունի մեր Լռակեցին հետ, այնպէս որ Ցելլէր իւր Յունաց Փիլիսոփայութեան Պատմութեան մէջ կրցաւ գրել.[1] "ԶՍեկունդոս աթենացի, Հերովդէս Ատտիկոսի ուսուցիչը, որ Ադրիանու ժամանակ կ'ապրէր, Նոր-Պիւթագորեան մը համարելու իրաւունք չունինք՝ նաեւ այն ատեն, երբ Պիւթագորական ըլլային իրեն ընծայուած Աստուածները, զոր այսպէս խորհիլ չէին կրնար։" Սակայն եւ այնպէս այս "Սեկունդոսի" թէ Վարուց եւ թէ "Խօսից" ծագման վրայ մանրամասն քննութիւն մ'եղած չէր։ Այս մասին ռահվիրայ մ'եղաւ Ռըվիյու գաղղիացւոյն գրութիւնը՝ "Վարք եւ Խօսք Սեկունդոսի, ըստ արեւելեան ձեռագիր մատենից, նմանութիւնք այս գրութեան գնոստիկեան գործոց հետ։"[2] Ռըվիյու իւր այս գործքն

---

1 Ed. Zeller, die Philosophie der Griechen, III, 2, p. 109, Anm. 1, երկրորդ հրատ. էջ 94։ Համեմատելու է սոր հակառակ Շթէօքլի խօսքը (A. Stöckl, Lehrbuch der Geschichte der Philosophie, 2. Aufl. Mainz 1875. p. 220, Anm. 1) "Սեքունդոս աթենացւոյ "Լաւ-կայց" իմաստասիրի՝ Ադրիանու ժամանակակցին՝ կ'ընծայուին Երկրորդ դարէն եղած Վարուց մէջ պատասխաններ կայսեր իմաստասիրական հարցմանց, ինչպէս որ Նոր-Պիւթագորեանց ճաշակին կը յարմարին։" Այս վերջին գաղափարը զարգացուց յետոյ Պախման (die Phil. p. 46—47.) "Սեկունդոսի" փիլիսոփայութեան վրայ՝ հմմտ. նաեւ Ueberweg, Grundriss der Geschichte der Philosophie des Alterthums. Berlin 1886, I, p. 300—302.

2 E. Revillout, Vie et Sentences de Secundus, d'après divers manuscrits orientaux, les analogies de ce livre avec les ouvrages gnostiques. Paris 1873. 8° pp. 107. Գործքս տպուած է նախ Փարիզի Արձանագրութեանց եւ գեղեցիկ Դպրութեանց Ճեմարանի Նստից Տեղեկագրոց մէջ (Comptes-rendus des séances de l'Académie des Inscriptions et Belles-lettres, 1872.) Շնորհակալութեամբ պէտք եմ յիշել որ մեր գրութիւնն աւար-

հրատարակած է իբրեւ նախընծայ Ներածութիւն ապագայ ամբողջական հրատարակութեան Սեկունդոսի բոլոր բնագրաց՝ արաբերէն, եթովպացերէն, ասորերէն եւ այլ խմբագրութեանց, որոնց բառական թարգմանութիւնքն ալ պիտի հրատարակէր (էջ 40—41։) Դժբախտաբար այս ծրագիրը չիրագործուեցաւ։ Ռըվիյու Սեկունդոսի այլեւայլ խմբագրութեանց վրայ իւր ունեցած կարծիքն արդէն քննութեան սկիզբը պարզած է (էջ 8—9։) Փարիզու Ազգային Մատենադարանի թիւ 107 (vieux fonds) ձեռագրին մէջ ուրիշ հոգեւոր գրուածոց հետ գտած էր 1871ին Սեկունդոսի Վարուց եւ Խօսից արաբերէն թարգմանութիւնը, եւ տեսած էր որ այս խմբագրութիւնը նախնական բնագիրն աւելի կը յիշեցընէ, մինչ յունարէնն անձեւ համառօտութիւն մ'ըլլալու է նախնականին։„ Այս կարծեաց մէջ հաստատուեցաւ՝ համեմատութեամբ եթովպական խմբագրութեան եւ ասորերէն հատուածոց, այնու որ արեւելեան այս բնագիրք գաղափարաց աւելի լաւ կապակցութիւն մը կը ցուցընեն, որմէ զուրկ է յունարէնը, եւ թէ Վարուց եւ թէ Խօսից մէջ տեսնուող գնոստիկեան վարդապետութեանց ոգին արեւելեան բնագրաց մէջ աւելի լաւ կը յայտնուի քան յունարէնին մէջ։ Այս գաղափարները Ռըվիյու ընդարձակօրէն պարզած է իւր գրութեան մէջ։

---

## Բ.

**Ռըվիյու** իւր քննութիւնը կը սկսի արաբերէն բնագիրը յունականին հետ համեմատելով, եւ մօտադիր կ'ընէ որ երկուքին նկարագիրն իրարմէ բոլորովին տարբեր է. (էջ 18։) Արաբացւոյն քով

---

տելու վրայ էր, երբ կրցանք գործածել այս գիրքը, զոր Ուսուցչապետն Ա. Գարրիէր բարեհաճած էր մեր տրամադրութեան ներքեւ դնել. վասն զի Վիեննայի մատենադարանաց մէջ չկար։

դէպքը կը սկսի յԱրեւելս՝ ի Բերիտոս, եւ «Սեկունդոս» կը ներկայացուի իբրեւ բուն սեմական սերնդէ՝ այնպէս գործելով ու խօսելով ինչպէս սեմացի մը։ Թարգմանելով վարուց առաջին մասն թէ՛ ըստ արաբական եւ թէ՛ ըստ յոյն բնագրին,[1] սա դիտողութիւնը կ'ընէ վերջնոյս վրայ։ Յոյն բնագիրը, կ'ըսէ, շատ դէշ գրուած է եւ լի է այլակերպեալ բառերով եւ ունի լատիներէն առութիւններ, ինչպէս βάκλον (= baculum) եւ μετάτον (metatum)։ Այս վերջինը շատ ուշ կրնար գործածուիլ, վասն զի ուշ ժամանակ սկսաւ լատիներէն hospitium բառին տեղ metatum գործածել, ուստի ի հարկէ աւելի ուշ կրնար բառս յունարէնին մէջ մտնել եւ ըսուիլ μετάτον (օթեւան) λαμβάνειν. Յետոյ կ'որոշէ այս ընդհանուր խօսքն ըսելով թէ «Ե. դարէն յառաջ չէր կրնար metatum, μετάτον առութիւնը ռամկօրէն լեզուին մէջ մտնել՝ օթեւանի նշանակութեամբ։» (էջ 47։) Ուրիշ գիտնականք չեն ընդունիր զայս։ Քասէլ (էջ [illegible]15, Ծան. 2) մտադիր կ'ընէ որ բիւզանդերէնի մէջ սովորական էին այս բառերն. իսկ Պախման μετάτον գրչի սխալ մը կը համարի։[1] Բաց աստի այս կարծեաց թէ յունարէն բնագիրը հազիւ Ե դարէն ետքը կրնար գրուած ըլլալ, դէմ կ'ելլէ կարծենք հայերէն թարգմանութեան մը գոյութիւնը, որ ամենէն ուշ Է—Ը դարէն է։

Վարուց Բ մասին վրայ խօսելով եւ թարգմանելով արաբ.-եթովպ. բնագրաց ունեցած կաթնաղջկան զրոյցը (էջ 28—30), որ յունարէնին մէջ չկայ, կը պնդէ Ռըվիյու որ աոր գտնէ հետքը մնացած է յունարէնին մէջ, ուր կ'ըսուի՝ «Ուսեալ (Ադրիանու) զպատճառս, որ վասն լռութեամբն

---

1 Անդ. էջ 19—24 եւ 25—26։

2 Տես die Phil. p. 22 ծան., ուր կ'առաջարկէ μεσώτατον λαμβάνειν ընթեռնուլ (Հմմտ. intimam aedium partem, Orelli, I, 565)։

համնճարեալ էր„ Սեկունդոս։ Եւ որովհետեւ այս գրոյցն ըստ Ռըվըլյուի "բնիկ սեմական„ է, — ըստ Քասէլի՝ բուդդհայական, — կը հետեւցրնէ որ Սեկունդոսի վիպաց նախաբնագիրը չէ այժմու յունարէնը։ Այս հետեւութիւնը կ'ընդունին՝ այսպէս ընդհանրապէս առեալ՝ ամէն քննիչք։ Առ այս ցուցում կը բերէ Ռըվըլյու տեղի մըն ալ, որուն վրայ շատ խօսուած է։

Երբ Սեկունդոս Ադրիանու առջեւ յամառաբար կը լռէ՝ կանչել կու տայ կայսրը պաշտօնեայ մը՝ տէ-րպօն (τύρπων) մը, որ խօսել տայ։ Հոս յունարէնը τύρπωνί τινι կ'ընթեռնու, իսկ ասորին ܛܘܪܦܘܢ (տրէքօ-ն), ուստի արդէն Սախաու (Sachau) այն կարծիքը յայտնած էր թէ τύρπων (տէ-րպօն) ըլլայ աղաւաղութիւն tribunus բառին[1]։ Ռըվըլյու կ'ընդունի այս կարծիքը (էջ 32—35) եւ զայս իբրեւ որոշիչ ապացոյց կ'առնու իւր կարծեաց, այսինքն թէ յոյնը չէ ճանչցած իրեն սեմական նախագաղափարին մէջ tribunus բառն՝ որ հոն առանց ձայնաւորի էր, ուստի տառ առ տառ փոխադրած է τύρπων գրելով. ուստի կը հետեւցրնէ թէ Սեկունդոսի Վարքն տէ-բէ-ելէօն բնագրէ մ'անցած է նախ քան յոյն թարգմանչին ձեռօք ծայրաքաղ ըլլալը, որ ինչպէս baclon եւ metaton ձեւերը, նոյնպէս նաեւ turbon այլայլեալ ձեւն օրինակած է։ Սակայն այս արեւելեան նախաբնագիրը չի կրնար ըլլալ այժմու ասորին, որ tribunus բառն որոշ եւ ձայնաւորներով հանդերձ պահած է, եւ ոչ արաբերէնն՝ որ անուն մը դրած է ասոր տեղ եւ ոչ ալ եթովպացերէնը՝ որ "գլխաւոր պետաց„ կ'ըսէ։[2] Այս վերջին կէտը կ'ընդունին

---

[1] Sachau, Inedita Syriaca (Wien 1870), p. 85, 2 եւ ծան. 1։ Օրէլլի (I, 566) կ'ու զէր τύρπων բառը turpioէն ծագած համարիլ։

[2] Արաբերէնը (տես Bachm., Leben etc. p. 25, n. 4) կ'ըսէ այստեղ صالان ابن عم الملك (Պախման կ'ուղղէ գըعم

ամէն քննիչք։ Բայց տէ—րփոն բառին ուրիշ մեկնութիւն կու տան։ Քասէլ պաշտօնէին անունը կը համարի զայն, եւ նշան մը կը կարծէ զայն “մանէ+էակոն ողբէ—րէ մը։„ Արդեամբք ալ Մանեայ աշակերտն եւ օգնականն է Տօ—րբօյ, եւ “արդէն յառաջ ենթադրութիւն մ'ըրած էի, կ'ըսէ Քասէլ, թէ ասի ուրիշ բան չէ՝ բայց եթէ պարսկական Դօ—րբօն մը (= Հայ “դռնապան„), տաճարի սպասաւոր մը։„[1] Թէեւ Քասէլի այս մեկնութիւնը կը տարբերի Թըվկյուէ տուած մեկնութենէն, բայց ասկէ հանած հետեւութիւնը կը համաձայնի վերջնոյս կարծեաց հետ, այն՝ թէ այս բառս արեւելեան աղբիւր մը մատնանիշ կ'ընէ։ Բայց Պախման՝ որ յունարէնին թարգմանութիւն ըլլալը չ'ընդունիր, իւր վերջին գրութեան մէջ ուրիշ մեկնութիւն մը կու տայ։[2] Պախման կ'ընդունի որ τύρπων աղաւաղութիւն մ'ըլլայ τρίβων բառին, որ “խորամանգ„ կը նշանակէ, եւ ասոր ցուցումն կ'առնու ասորւոյն (էջ 85, 5) ըսելը՝ “ասէին զառնէն թէ կարի երկայնամիտ էր եւ իմաստուն եւ սօսօօ—ցէչ էր ամէնայն արանց յամօռ—էլոց։„ Օրինակողք τρίβων բառին իմաստը չգիտնալով՝ աղաւաղած ըրած են τύρπων. Նաեւ

ի عمر), իսկ եթովպականը (տես die Phil. p. 57) r e'e s a m a k u a n e n t.

1 C a s s e l, p. 333. Պախման իւր մէկ գործքին մէջ (Vita etc. p. 11, n. 1) ենթադրած էր որ τύρπων աղաւաղութիւն մ'ըլլալու է κρατῶνէն, ինչպէս լատիներէն ձեռագրաց «potens» ընթերցումը (այսպէս cod. Monae, C) կը ցուցընէ։ Հանրածանօթ Նէօլտէքէ գիտնականը նամակաւ յայտնած է ասոր վրայ թէ ինքը τύρπων բառն անուն մ'եղած կը կարծէ եւ տարակուսանօք Τρύφων անունը կը յիշէ (տես B a c h m. Leben, p. 34)։

2 B a c h m., die Phil. p. 57—59։ Արդէն Թըվկյու (էջ 34—35) դիտել տուած էր որ այս բառս կրնայ հիմնաւորել Սեկունդոսի խմբագրութիւնները դասաւորելու։ Պախման ի գլուխ հանած է այս դասաւորութիւնը եւ տախտակի մը մէջ ներկայացուցած Սեկունդոսի խմբագրութեանց իրարու հետ ունեցած աղերսը (էջ 58, ծան. 2)։

*տորին չիմանալով բառին նշանակութիւնը՝ անով լուծած է դժուարութիւնն որ նմանահնչիւն ծանօթ* tribunus *բառը դրեր է անոր տեղ. իսկ արաբն եւ եթովպացին բոլորովին շեղեր են։ — Այս խնդրոյ մէջ հայերէն թարգմանութիւնը լոյս մը չի կրնար սփռել, վասն զի ճիշդ այս կտորը հայոյն մէջ կը պակսի։ Այնտեղ ուր յոյնը* σπικουλάτωρ *կ'ըսէ. հայը “սուրհանդակ” կը կարդայ. բայց որովհետեւ սուրհանդակ չի համապատասխաներ* σπικουλάτωρ*ին, որ յետոյ միշտ “դահճապետ” կը թարգմանուի ուղղութեամբ, կրնանք առ առաւելն հետեւցընել որ հայն* τρέχων *(ընթացող, ուստի “սուրհանդակ”) կարդացեր է փխ.* τρίβων. *կամ* τύρπων *բառին։ Բայց այս՝ լոկ ենթադրութիւն է։*

*Ասորւոյն քանի մը շեղմունքը քննելէն ետքը՝ կը խօսի Բրվկյու Սեկունդոսի Վարուց վերջերն եղած մէկ նախադասութեան վրայ, ուր կ'ըսուի թէ հրամայեց Ադրիանոս Սեկունդոսի պատասխանները դնել “ի մատենադարանի քահանայից”* (cohen), *ուստի նաեւ այս խօսքն արեւելեան աղբիւր մը կը ցուցընէ (էջ 39—40)։ Նաեւ Քասէլ կ'ընդունի զայս, որուն համեմատ այս “սրբազան մատենադարանը” — այսպէս է յունականը* ἱερατικὴ βιβλιοθήκη, *ուր արաբն եւ եթով. “մատենադարան քահանայից” կ'ըսեն, — բուդդհական վիհարա մ'եղած ըլլալու է։*[1] *Դարձեալ միայն Պախման չ'ընդունիր զայս։*[2] *Այստեղ ալ հայը*

1 Cassel, p. 338 *եւ* 357։ *Այս կարեւոր դիտողութիւնը կրնայ տեսնուիլ Սեկունդոսի Վարուց վերջին մասին մեր ծանօթութեանց մէջ։*

2 Bachm., die Phil. p. 56 *եւն։ Մտադիր ընել կու տայ* ἱερατικὴ *բառին համապատասխանող* sacre *բառը լատիններէն ամէնէն ընտիր ձեռագրաց մէջ չկայ, եւ թէ Օքսֆորդի արաբերէն ձեռագիրն այստեղ* خزانة الحكماء *(մատենադարան փիլիսոփայից) կ'ընթեռնու, ուստի կը հետեւցընէ թէ* ἱερατικὴ *(սրբազան, նուիրական) բառն յետսամուտ է։ Բայց եթէ չըլլայ ալ յետսամուտ՝ չի հետեւիր,*

մեկնութիւն մը տալ չի կրնար, վասն զի այժմու ձեռագրաց մէջ Վարուց վերջին մասը կը պակսի։

Սեկունդոսի Վճիռներու մանրամասն համեմատութենէ սա հետեւութիւնը կը հանէ Ռըվիյու թէ արաբ. եւ եթովպ. Վճիռք աւելի սերտ կապակցութիւն կը ցուցընեն զաղափարաց, մինչդեռ յունարէն բնագիրը զուրկ է անկէ, ուստի թէ արեւելեանք Սեկունդոսի նախնականին աւելի մերձաւոր են։ (Էջ 40։) Մանրամասն կը խօսի ԺԷ Վճռին վրայ (— "Զի՞նչ է Միայնակեցութիւն" եւն. —) որ միայն Կուտինեան ձեռագրին մէջ կայ եւ կը պակսի արեւելեան խմբագրութեանց մէջ, (— բայց կայ հայոյն մէջ, ինչպէս պիտի տեսնենք)։ Արդ այս Վճիռը յոյն թարգմանչին յաւելուածը կը համարի Ռըվիյու, եւ ճիշդ այն ժամանակն որ μετάτον բառը կրնար գործածուիլ, այսինքն Ե դարուն, վերջին ճիգը կ'ընէր մեռնող հեթանոսութիւնը յաղթանակող քրիստոնէութեան դէմ, ուստի այս միջոցին աւելցուցած ըլլալու է հեթանոս յոյն թարգմանիչը միայնակեցաց թշնամանիչ այս Վճիռը։ — Սակայն դժուարաւ ուղիղ է այս կարծիքը։ Վասն զի թէեւ Կուտինեան ձեռագիրն արդեամբք կը կարդայ Τί ἐστι μοναχός (զի՞նչ է միայնակեաց) եւ թէեւ հայն ալ արդէն այսպէս տեսեր ու թարգմաներ է՝ "Զի՞նչ է միայնակեցութիւն", սակայն իրաւունք ունի Պախման սխալ համարելու այս ընթերցուածը եւ ուղղելու μονόμαχος (միամարտիկ)։ Եւ արդէն Վճռիս առանձինն նախադասութիւնք "մենակեցի" մը գաղա-

---

կ'ըսէ Պախման, թէ սորի բնագիրը նախաւորութիւն մ'ունի այստեղ յունարէնէն, վասն զի երբ սորի մը ἱερατικὴ βιβλιοθήκη գտնէր իրեն բնագրին մէջ՝ ի՞նչպէս կրնար թարգմանել այլազգ քան כהן (քահանայ) բառով, եւ արաբն այլազգ քան كاهن (քա՛հանայք)։

փարին ամենեւին չեն յարմարիր, այլ զուտ հեթանոսական մենամարտկի (gladiator) միայն։[1]

Վերջապէս Բրմէյու սա եզրակացութիւնքը կը հանէ իւր քննութենէն (էջ 74)։ Յունարէն բնագիրն անտարակոյս կերպարանափոխութիւն մըն է, կ'ըսէ, սեմական նախաբնագրի մը. իսկ այս նախաբնագիրը չէ այժմու արաբականն ու եթովպականը, որ արաբերէնէ թարգմանութիւն է եւ բաւական ուշ ժամանակի գործ, որուն մէջ Սեկունդոս տրխոփոնեայ ալ նկատուած է,[2] եւ ո՛չ ալ Սախաուի հրատարակած ասորերէնը։ — Ո՞վ էր Սեկունդոս։ Այս հարցման այլեւայլ կերպով կրնայ պատասխանուիլ, կ'ըսէ Բրմէյու։ Կարելի է նախ որ հնոց Սեկունդոս իմաստասէրն՝ որուն վրայ կը խօսի Փիլոստրատոս, կապ մ'ունենայ Վարուց դիւցազնին հետ։ Կրնայ ըլլալ որ այն Սեկունդոսի վճիռներէն ոմանք արեւելեան լեզուի մ'անցած ժամանակ ճոխացած, ընդարձակուած եւ կերպարանափոխ եղած եւ փիլիսոփայական դրութեան մը հիմն կազմած ըլլան, եւ հնոց ծանրախօս Սեկունդոսն փոխուած եղած ըլլայ Վարուց "Լռակացը.„ (էջ 77։) Բայց այս կարծիքը շատ մը դժուարութիւններ ունի, եւ ասոր դէմ կ'ելլէ երկրորդ կարծիքը, այն՝ թէ "Սեկունդոսի„ անունը կրող գիրքը փիլիսոփայական վէպ մըն է իւր այժմու կերպարանաց մէջ, եւ իւր ուղղութիւնն ալ գնոստիկեան։ Վէպին հեղինակն անշուշտ ասորի-փիւնիկական ցեղէ էր, ինչպէս Բերիտոսի յիշատակութիւնը կը ցուցընէ, եւ այն ասորի-փիւնիկական դպրոցին՝ ուստի

---

1 Արդէն Բրմէյու ալ տեսած էր քանի մը դժուարութիւնք, օրինակի համար "օրէորէէ ցանէոոնեն„ խօսքը, որ միայնակեցի ամենեւին չի յարմարիր։ Տես Bachm., die Phil. p. 21 ծան. եւ վարը՝ մեր ծանօթութիւնք ժէ վճռին։

2 Տես եթովպական Վարուց սկզբան ծանօթութիւնը (Bachm., Leben, 16, 1ff) "Եւ Սեկունդոս իմաստուն էր այր ի պատուական ազգէ.... եւ ճանաչէին գքրիստոս փոոո,„ եւն։

հռոմէական պետութեան այնչափ նշանաւոր անձինք ելան։ Ցամենայն դէպս գնոստիկեան մըն է հեղինակը. եւ ճիշդ այս միջոցին անուանի էր Վաղենտիանու աշակերտը՝ Սէկունդոս, զոր Ս. Հարք յաճախ կը յիշեն։[1] Արդ Վաղենտիանու այս աշակերտին հետ կապ ունի՞ մեր Սեկունդոսը։ Այս հարցման պատասխանելու համար՝ Ռըվկյու կը վերլուծէ վաղենտինեան-գնոստիկեան աղանդին վարդապետութիւնքն (էջ 83—104) եւ կը գտնէ որ Լուակացի Վարուց ու Վճռոց հիմնական գաղափարք կը նոյնանան նոյն գնոստիկեան աղանդի դրութեան հետ։ Բայց նաեւ այս դէպքիս մէջ երկու բան կարելի է։ կամ Վաղենտիանու աշակերտը Սէկունդոս՝ որ այնպիսի աղանդի մը կը վերաբերէր, որուն մէջ լուսինը մեծ յարգ ունէր, Լուակեցի Վարուց դիւցազն եղած է, եւ կամ հնոց ծանրալեզու Սեկունդոս իմաստասէրն ձուլուած է լուակաց գնոստիկեան Սեկունդոսի հետ՝ եւ եղած է սոսկ զրուցախառն "Լուսնկայ Սէկունդոսը," ճշդիւ այնպէս՝ ինչպէս Սուիդաս շփոթած է Սեկունդոս հռետորը Պլինիոս Սեկունդոսի հետ (էջ 105։)

Դիտմամբ այսպէս մանրամասն յառաջ բերինք Ռըվկյուի կարծիքները, վասն զի ինքն առաջինն եղաւ որ Սեկունդոսի խնդիրը գիտնականօրէն ուսումնասիրեց։ Բաց սատի իրեն քննութեան հետեւութեանց գլխաւորը կ՚ընդունի նաեւ Քասէլ, թէեւ բոլորովին կը մերժէ Պախման։

Սեկունդոսի ամենէն արդիւնալից քննիչներէն մին է Յովհ. Պախման, որ այս նիւթոյ վրայ չորս գործք հրատարակած է եւ մեծ արդիւնք

[1] Այսպէս՝ Թէոդորէտոս (Հերես. Ա, 11), Իրենէոս (Ա, 11), Եպիփան (ԼԲ, 1, 3, 4), Աւգոստինոս (Հերես. ԺԱ, 12, 1), Տերտուղիանոս (de praescript. c. 49; adv. Valent. c. 4) φιλοσοφούμενα, Գիրք. Զ, 3, եւն։ Տես Ռըվկյու էջ 83։

վաստկած է եթովպական բնագրին հրատարակութեամբն ու թարգմանութեամբ։ Բայց ի ընդարձակ յօդուածէ մը գերմ. "Բանասէր" թերթին մէջ,[1] ուր ի մասնաւորի Սեկունդոսի լատինական խմբագրութեանց վրայ կը խօսի, հրատարակած է նոյն տարին եթովպական խմբագրութեան լատիներէն թարգմանութիւն մը՝ ներածութեամբ եւ ծանօթութեամբք։[2] Ներածութեան մէջ՝ ինչպէս իւր ուրիշ մէկ գործքին մէջ յառաջ կը բերէ,[3] ջանացած է ցուցընել՝ 1. ընդդէմ Ռըվէլյուի՝ թէ "Սեկունդոսի նախնականը յունարէն պէտք է ըլլայ ծագմամբ." (էջ 9—12). 2. արաբ.-եթովպ. Սեկունդոսը քրիստոնէական տեսակիտիւ ողնուացեալն է յունարէն (հեթանոսական) Սեկունդոսին (էջ 12), եւ 3. "Սեկունդոսի պատմութիւնը վարդապետական մանրավէպ մըն է. (էջ 13։) —. Նոյն տարին հրատարակած է երրորդ գործք մըն ալ Սեկունդոսի վրայ սա տիտղոսով.[4] "Վարք եւ Վճիռք Սեկունդոսի Լռակեաց Իմաստասիրի ըստ եթովպական եւ արաբական բնագրաց." եւ իբրեւ հրատարակութիւն Վարուց եթովպ. բնագրի այս եթովպական վերնագրով՝ zēuâ s$^e$k$^e$nd$^e$s ṭabîb wa-t$^e$mh$^e$rtâtîhu wa-t$^e$babu ("Պատմութիւն Սեկունդոսի իմաստնոյ եւ Վարդապետութիւն իւր եւ

---

1 J. Bachmann, Lateinische Secundus-Handschriften: Philologus, XLVI, Band III, p. 385—400. Göttingen 1887.

2 Secundi philosophi taciturni vita ac sententiae secundum cod. Aeth. Berol., quem in linguam latinam vertit nec non introductione instruxit Johann Bachm. Berol. 1887. Դժբախտաբար այս գործքը՝ Վիեննայի գրատանց մէջ չգտնելով՝ չկրցայ գործածել։

3 Տես Leben etc. p. 2.

4 J. Bachmann, Das Leben und die Sentenzen des Philosophen Secundus des Schweigsamen, nach dem äth. und arab. Halle 1887. 8° pp. 34, տպագրուած Drugulinի քով, եւ է նախընծայ ճառախօսութիւն նոյն քաղաքի համալսարանին ներկայացուած՝ վարդապետութեան տիտղոսն առնելու։

իմաստութիւն իւր։») Ներածութեան մէջ (էջ 1—15) մանրամասն կը խօսի եթովպական բնագրին, անոր ուղղագրութեան, ոճին ու բառամթերքին եւ յետոյ փիլիսոփայական վճռոց վրայ, որոնց մէկ քանիին հոն կը հրատարակէ, այսպէս՝ Հարցումն 1 (Աստուած), 2 եւ 3 (Աշխարհ) եւ 25 (Կին), մանրամասն համեմատութեամբ յունարէն բնագրին եւ արաբական խմբագրութեան՝ եթովպականին հետ (էջ 9—12)։ Անոր կցուած է Տախտակ մ'ուր դիմացէ դիմաց գրուած է Մահու վրայ եղած Վճիռը՝ ամէն ծանօթ բնագրօք (ասոր., արաբ., եթովպ. յոյն եւ լատին. էջ 14—15), ուր Հայը միայն կը պակսի։ Նոյն խնամքով հրատարակած է Վարուց եթովպական բնագիրը (էջ 16—34), որ գրքին գլխաւոր մասը կը կազմէ, բազմաթիւ ծանօթութիւններով ճոխացած, որոնց մէջ արաբերէնին տարբեր ընթերցմունքը նշանակուած են, իսկ ասորականինը՝ թարգմանուած։ Պախմանի չորրորդ գրքին վրայ քիչ մ'ետքը պիտի խօսինք։

Տարի մ'ետքը լոյս տեսաւ Պաւղոս Քասէլի նշանաւոր գիրքը՝ «Միշլէ Սինդբադ, Սեկունդոս-Սինտիպաս. Ներածութիւն եւ մեկնաբանութիւն Եօթն Իմաստասիրաց Գրոց։»[1] Արդէն Ռըվէյու Սեկունդոսի արեւելեան ծագումն ունենալը մատնանիշ ըրած էր, Քասէլ՝ Լռակացին Վարքը Եօթն Իմաստասիրաց այլակերպ մէկ խմբագրութիւնը հռչակեց։ Ուստի իւր այս գործքին մէջ գլուխ մը նուիրած է Սեկունդոսի եւ անոր ծագումը քննելու, եւ հրատարակած է Վարուց յունարէն ուղղագրեալ բնագիրը եւ յարգի ծանօթութեամբք ճոխացուցած։ Արդէն ի սկզբան իւր քննութեան

[1] Paulus Cassel, Mischle Sindbad, Secundus-Syntipas, edirt, emendirt und erklärt. Einleitung und Deutung des Buches der Sieben weisen Meister. Berlin 1888. VIII pp. 424 եւ 13 էջ եբր. բնագիր։ Սեկունդոսի քննութիւնը կը գրաւէ՝ էջ 313—347, որմէ ետքը կու գայ

կը հաստատէ Քասէլ որ Սեկունդոս "ծաղրապատկեր" մըն է Սինդբադի զրուցին. եւ որովհետեւ ոչ ոք ցայնվայր համեմատած էր Լուկացի վէպն Արքայազնի վէպին հետ, ինքը ձեռնարկած է նոյն համեմատութեան՝ գլխաւորաբար հնդկական նմանութիւններն յերեւան հանելով, եւ այս անձուեւս իրաւամբք՝ որ Սեկունդոսի վէպն Եօթն իմաստասիրաց վէպին խեղաթիւրումն է միայն եւ անոր հիմն եղող բուդդհայական վարդապետութեան այլակերպումն, զոր յոյն մը՝ հաւանականագոյնս մանիքեցի մը՝ յունացուցած է, ճշդիւ ինչպէս եղած է Բարղամու եւ Յովասափայ վէպը։ Նոյն իսկ այն հիմնական վճիռը, որուն ուղղութիւնը կ'ուզէր փորձել Սեկունդոս, այսինքն թէ Ամէն կին անհամեստ է, անըմբռնելի կ'ըլլայ եթէ չնշմարենք որ բուդդհայական վարդապետութեան մը հետեւութիւնն է այն, այսինքն այն թէ մարդուս ամբողջ իմաստութիւնը կը կայանայ ընկճելու զգայարանքները, որոնց ներկայացուցիչն է կինը։[1] Նոյնն ըսելու ենք Սեկունդոսի ըրած փորձին նկատմամբ։[2]

---

Վարուց յունարէն բնագիրն (էջ 348—353) եւ ապա ծանօթութիւնք (էջ 353—357)։

1 Cassel, էջ 316 եւն։ Արդէն Սեւերիանեանք եւ նման աղանդք կ'ուսուցանէին (Եպիփան, Բ. 15), որ կինը սատանայի գործքն է, ճիշդ՝ ինչպէս են Դուդի եւ Մարայ, դստերք եւն։ Նոյնը կ'ուսուցանէր Մանէս (Flügel Mani, p. 95) եւ Մանիքեցիք՝ որ ամուսնութիւնը կը խոտէին, եւ Եսսենացիք (Յովսեփոս, վասն Հրէակ. պատրզմ. Բ, 8, 2)։ Արեւելից ազդեցութեամբ՝ նման կարծիք ունէին նաեւ Պիւթագորեանք։ Տես Ռօհտէ, էջ 43, 80 եւն. Պախման, էջ 45 եւն։

2 Նման պատմութիւն մը կայ Յովհաննու Վկայաբանութեան մէջ՝ (Պրոխորոնի) Սոսիպատրեայ՝ Պրոկղիանէի որդւոյն նկատմամբ։ Ապատէ ('Απάτη, այսինքն Զեփյուռանոյ Պատրոնէ) կ'ուզէ հրապուրել իր որդին՝ զԱնպատէյն (Μὴ ἀπατώμενος), որ չի հաւանիր։ Ասոր վրայ կ'ամբաստանէ կինը դատաւորին առջեւ թէ այրը զինքը հրապուրեց։ Դատաւորը պիտի դատապարտէր զՍոսիպատրոս, բայց Աստուած կը միջամտէ եւ կ'ազատէ։ Այս ամէնը ճշդիւ Սինդբադի բուդդհայական զրոյցն է. հոս Սոսիպատրոս կը կոչուի՝ հոն է Արքայազն եւն։ — Տես նաեւ Cassel, p. 333.

Այս ամէնը կշռելով կը հետեւցրնէ Քասէլ (էջ 323—4) որ Սեկունդոսի վէպը “Սինդբադի զրուցի Արքայազին վէպն է,„ միայն թէ ամէն բան ճիշդ հակառակին յեղաշրջուած: Նոյնը կը ցուցրնէ Սեկունդոսի լռութիւնը. “Այստեղ Սեկունդոս կոչուողն, կ'ըսէ Քասէլ (էջ 332), նախնաբար Բուդդհա մըն էր, Սրամանա մը կամ Բհիկկու, որ լռութեամբն զգայարանաց պատրանքին (Apateէ կը յաղթէ, — եւ յանձին կնոջ ներկայացուցած)՝ զգայարանաց պատրանքը. — յոյն մը պիւթագորական մ'անուն տուած է անոր՝ միայն լռութեանը պատճառաւ, եւ յետոյ կը փոխէ կ'ընէ շնական մը մուրոյ մախաղին համար, զոր Սրամանա կը կրէր:„

Նոյն իսկ Սեկունդոսի առ Ադրիանոս խօսած ճառը հետեւողութիւն է Արքային եւ Արքայազնին մէջ եղած հակաճառութեան, որ յունական Սինտիպասայ մէջ կայ եւ միայն յունական վճիռներու փոխուած է. այս վճիռներն արաբ. եւ եթովպ. բնագրաց մէջ շատ ճոխացած են, եւ վճռոյ ձեւի վերածուած փիլիսոփայական դպրոցական խնդիրներ են, որոնք Սեկունդոսի վէպին հետ գործք չունին:[1] Այսպիսի Հարցմունք եւ Պատասխանիք շատ յաճախ կը տեսնուին արեւելեան վէպերու մէջ, օրինակի համար ի վիպին Դիհիլէն արքայի եւ Շիմաս վէզիրին[2] կամ Տեւետուտի սարկին՝ որ Հարուն ար-Րաշիտի իմաստունքն ափիբերան կ'ընէ.[3] ուրիշ բան չէ նաեւ հիւսիսային Եդդայի հարցուպատասխաններն, ուր Ոդին կամ Սուիպ-

ուր Սեկունդոսի եւ իւր մօր դէպքը կը համեմատէ ուրիշ նման վիպաց հետ, եւ էջ 335՝ ուր Սեկունդոսի լռութիւնը կը համեմատուի Սինդբադի Արքայազնին լռութեան հետ երկուքն ալ մահուան վտանգի մէջ իսկ լուռ կը կենան:

1 Տես Cassel, p. 338, եւ 334 եւն:

2 Համմ. Hammer und Zinserling, Tausend und eine Nacht. III, 225.

3 Անդ, I, 207: Ստոյն-Կալիսթենեայ մէջ հնդիկ Մերկիմաստասէրք հարցմամբ ու պատասխանով կը խօսին Աղեքսանդրի հետ եւն:

դադր յաջողութեամբ կը պատասխանէ Հարցմանց եւն։ Հնոց քով այս Հարցուպատասխանք իմաստութեան նշան կը համարուէին։ — Նոյն իսկ Պախման (die Phil. p. 45, Ծան 1) չի համարձակիր որոշել որ Սեկունդոսի վճիռներուն այս հարցման ու պատասխանւոյ ձեւը յունակա՞ն է նախնաբար թէ արեւելեան, վասն զի արեւելք սովորական էր այն՝ մանաւանդ կրօնական գործոց մէջ ի Պարսս։ Վերջապէս Սինդբադի զրուցին մէջ արքայն իւր արքայազուն որդւոյն առջեւ քսան հարցում կը դնէ պատասխանելու. Ճիշդ քսան հարցում կ'առաջարկէ Ադրիանոս ալ մեր Սեկունդոսին։[1] Հնդկաստան կը ցուցընէ նաեւ արաբ. Վարուց սա խօսքը "Լուայ եթէ պատկերք դիցն՝ յորժամ ամբոխքն ի մի ժողովեալ իցեն, խօսիցեն մարդկեղէն բարբառով." الاوثان ...يتكلموا بلسان البشر[2] որ մատնանիշ կ'ընէ դիւաց եւ դից խօսելուն նկատմամբ եղած հնդկական զրոյցները։ Քասէլ յառաջ կը բերէ (էջ 338—339) նման զրոյցներ, եւ կը յաւելու որ բուդդհայական զրուցաց մէջ յաճախ կը յիշուին "քաղաքի դրան դից" "ծառոյ դից", "պաշտպան դից" եւն խօսիլը։

Վերն յիշեցինք Տուրբոյ անուան առթիւ որ Քասէլ մանիքեական աղբիւր մը կ'ընդունի Սեկունդոսի, եւ այն՝ ասորերէն լեզուաւ։ Ասորերէնով կը մեկնէ յունարէնի Ἀρσάλος անունն, ուր "Հերակղէս" ըլլալու էր. արդ ասորերէն ܗܪܩܠܝܣ (Հերակղէս) դիւրաւ կրնար "Արսալոս" կարդացուիլ՝ ܗ եւ ܣ շփոթելով։[3] Սակայն "Արսալոս" հին ընթեր-

[1] Cassel, p. 340 եւն։

[2] Տես արաբ. բնագիրն առ Պախման, Leben, p. 27 n. 2. Եթովպականը (էջ 28, 1—2) աղաւաղած է հոս։ Նաեւ Սոդոն-Կալլիսթենեայ մէջ յաճախ կը հանդիպինք դից, դիւաց, արքայազն ծառոց խօսելուն եւն։ Նման զրոյցներ քիչ չկան՝ ազդեցութեամբ օտարաց՝ Հայ մատենագրաց քով։

[3] Cassel, p. 339.

ցուած մը չ՚երեւար. գոնէ հայոյն գործածած յոյն օրինակին մէջ "Հերակլէս„ կեցած էր ստուգիւ։

Հուսկ ուրեմն նաեւ "Սեկունդոս„ անունը "Սինդբադ„ անուանէ աղաւաղած կը դնէ Քասէլ (էջ 345—346)։ Մանիքեցիք յաճախ յունացուցած են բուդդհայական անունները։ "Մանեայ զրոյցին մէջ Սաքէ-Մէնոն է Sakyamuni, եւ նոյն իսկ Մոնէս հաւանականագոյնս՝ Muni. Թոմաս կը նոյնացընեն Gotamaի հետ. Թէրէբինթոս լոկ թարգմանութիւն է սխալ հասկցուած Buddha անուան Բարղաամ եւ Յովասափ (— որ վկայաբանութեանց մէջ մուտ գտած են, —) անուամբքն ու իրականութեամբ պարզապէս այլակերպութիւն են բուդդհայական զրուցաց. Յովասափ է Kasyapa, Բարաքիա է Uparadja մը, Արաքէս՝ Arhat կամ Archat, Թեւդաս՝ Dud„ եւն։ Այսպէս ալ ասորերէն գրուած ܣܢܕܒܪ (Սինդբադ) անունը փոքր կերպարանափոխութեամբ կրնար ܣܩܘܢܕ (Սեկունդ) անուան փոխուիլ, եւ որովհետեւ Մանիքեցւոց մէջ ծանօթ էր "Սեկունդոս„ անունը, անոր կցած են յիշեալ զրոյցը. եւ դարձեալ որովհետեւ Սեկունդոս Ադրիանու ժամանակ կ՚ապրէր, Սինդբադի վէպին Կիւրոս — բուն՝ Պորոս — արքային անուան տեղ դրած են "Ադրիանոս„ կայսրը։[1]

Սեկունդոսի խնդրոյն վրայ հետեւեալ վերջնական դատաստանը կ՚ընէ Քասէլ. (էջ 346 եւն.) "Կը կարծեմ որ վիպիկս՝ առանց վճիռներու՝ մանիքէական գործք մըն է ասորերէն լեզուաւ գրուած, որ այն դատ վճիռները թերեւս Սինդիպասէն փոխ առած է,... մեր ունեցած այժմու յոյն բնագիրը

---

1 Տես Cassel, p. 345—346։ Ոլվիլյու (էջ 41) ուրիշ մեկնութիւն կու տայ "Ադրիանոս„ կայսեր վէպիս մէջ մուծուելուն։ Հրէական հագգատայից կամ ռաբբինական զրոյցներու մէջ շատ յաճախ կը յիշուին, կ՚ըսէ, Ադրիանոս եւ Անտոնինոս Բարեպաշտ, ինչպէս նաեւ հռոմէական պետութեան ներքեւ եղող Հրէից յօրինած պատմուածքներուն մէջ։

համառօտեալ է միայն, եւ ինչ որ պահած է՝ աւելի համանման է նախնականին քան միւս արեւելեան խմբագրութիւնք. կանանց վրայ ըլլալով խնդիրը՝ շատերուն ընթերցանութեան նիւթ եղած է, զոր Մանիքեցիք ամէն տեղ ծանօթացուցին. փորձած են անկէ փոքրիկ վէպ մը յօրինել, նոյն իսկ — ինչպէս եթովպացին ըրած է — քրիստոնէական կերպարանաց ներքեւ։„

Կը մնայ մեզ քանի մը խօսք ըսել գրքի մը վրայ ալ, որ նոյն տարին՝ 1888ին՝ լոյս տեսած է, այսինքն Պախմանի չորրորդ եւ ընդարձակագոյն երկասիրութեան վրայ։ Ասոր գլխաւոր նպատակն է Վճիռներու եթովպական բնագիրը հրատարակել, բայց ճոխացուած է շատ մը յաւելուածներով։ Գրքին տիտղոսն է. “Փիլիսոփայութիւն Սեկունդոսի Նոր-պիւթագորականի, լեզուաբանական-փիլիսոփայական ուսումնասիրութիւն.„[1] եւ սա եթովպացերէն վերնագիրը կը կրէ. Tᵉbaba Sᵉkᵉndᵉs wa-zēnâ Tertâg nᵉgûš Armānᵉjâ, այսինքն “Իմաստութիւն Սեկունդոսի եւ Պատմութիւն Տերտագայ (= Տրդատայ) արքային Հայոց։„ Ներածութեան մէջ կը խօսի Պախման (էջ 13—16) Սեկունդոսի նախնական բնագրին վրայ, եւ Վճռոց ուղղագրեալ յունարէն բնագիրը կը հրատարակէ (էջ 17—22), եւ կը թարգմանէ Սեկունդոսի անուն կրող Վճռոց ուրիշ խումբ մը, որ քրիստոնէական-աստուածաբանական հարցմունք են (էջ 23—44)։ Ներածութիւնը կը կնքուի Սեկունդոսի խնդրոյ վրայ պլեւայլ դիտողութեամբք եւ Յաւելուածոց վրայ կարեւոր ծանօթութեամբք։[2] Ամենէն վերջը ցուցակ մը դրուած է Սեկունդոսի ամէն հրատարակութեանց, քննութեանց եւ նաեւ

---

1 Die Philosophie des Neophythagoreers Secundus, linguistisch-philosophische Studie, vor Dr. J. Bachmann. Berlin 1888. 8 IX, pp. 68 + 47 2 + 12 + 8 եւ 26

2 Bachm. p. 50—63.

ամէն ծանօթ լեզուներու ձեռագրաց (էջ 84—86)՝ ուր միայն հայերէնը կը պակսի։

Վճռոց եթովպական բնագրին հրատարակութիւնն եղած է ամենայն խնամքով, եւ նշանակուած են արաբերէնին տարբեր ընթերցուածները. դժբախտաբար եթովպական բնագիրը տպագրական տառերով չէ հրատարակուած, այլ իւր ընդօրինակութիւնն ինքնատպութեամբ (autographie) բազմացուցած, որով գործածելը դժուարին է։ Վճիռներէն ետքը դրուած է Կաթնաղջկան զրուցին արաբերէն բնագիրն, եւ ի վերջոյ Սեկունդոսի չորս նոր լատ. ձեռագիրներ հրատարակուած։ — Պէտք չենք մոռնալ յիշելու որ Կաթնաղջըկան զրուցէն ետքը հրատարակուած է Տերդատ (= Տրդատ) արքայի հետաքրքրական զրուցախառն պատմութիւն մը՝ եթովպացերէն լեզուաւ,[1] զոր գտած էր Պախման Պերլինի արքունի մատենադարանին ձեռագրաց մէջ (Petrm. 38, fol. 83 ff), եւ զայն թարգմանած գերմաներէնի։ Այս պատմութիւնը յետոյ կրկին հրատարակեց Պախման իւր Եթովպական Հատընտրին մէջ։[2] Հետաքրքրական վիպիկս կը յուսանք քիչ ժամանակէն ծանօթացընել մեր ընթերցողաց հայ թարգմանութեամբ։

Պախմանի կարծիքներն առիթ ունեցանք յիշելու շատ անգամ, ուստի հոս համառօտիւ կը յիշենք իւր նոր գրութեան մէջ յայտնած տեսութիւնքը։ Յենլով Սեկունդոսի յունարէն Թիշէնտորֆեան ձեռագրին հնութեան վրայ՝ կը հաստատէ որ Սեկունդոսի յունարէն Վարքը Բ—Գ դարու մէջ լոյս տեսած է, եւ թէ հաւանականօրէն նոյնն ըսելու է նաեւ Վճռոց վրայ։ (Էջ 44 եւն։) Բայց Ռըվէյուի կարծիքը թէ Սեկունդոս կապ ունի

---

1 Bachm., բնագրաց մասը՝ էջ 1—12 եւ գերմ. թարգմ. էջ 1—8։

2 Տես J. Bachmann, Aethiopische Lesestücke. Leipzig 1893. (8° pp. 53) p. 1—8։

գնոստիկականութեան հետ՝ չ՛ընդունիր, այլ Նոր-պիւթագորականութեան հետ սերտ կապակցութիւն մը կը տեսնէ։ Ռըվիլյու Սեկունդոսի մէջ տիրող ուղղութիւնը հետեւեալ կերպով ամփոփած էր (էջ 43), “Հրաժարիլ ինչքէ, ատել հարստութիւնն, գովել աղքատութիւնը, հրաժարիլ զգայարանաց հաճոյքներէ, ուստի ատել կինը, դատապարտել գեղեցկութիւնն, ուրանալ ապրելու բաղձանքը, արհամարհել կեանքն ու գովել մահը։„ Արդ ասոնք Նոր-պիւթագորականութեան ալ հիմնական յատկութիւնքն էին, որ բոլորովին զըկեալ ու ճգնական կեանք մը կը պահանջէր, եւ թէեւ ամուսնութենէ խորշումն պարտաւորիչ չէր, գոնէ շատ տխուր գոյներով կը ներկայացընէր զկին. այնպէս որ Նոր-պիւթագորեանի մը գրչէն կրնար ելլել Սեկունդոսի՝ կնոջ համար ըսած սա խօսքերը. “ընտանի՛ք տաղտն. բաղմադիմի կոյս. տառն մրրիկ„ եւն։ Ի մասնաւորի Աշխարհի եւ Աստուծոյ Վճռոց մէջ Նոր-պիւթագորեան ոգի կը տեսնէ Պախման,[1] եւ ընդդէմ Ցելլէրի կը պաշտպանէ զայս՝ համեմատելով անոր նախադասութիւնքն ուրիշ Նոր-պիւթագորեանց ասացուածոց հետ, եւ կը հետեւցընէ որ Սեկունդոս “Նոր-պիւթագորեան աշխարհատեսութիւնը ժողովրդական կերպարանաց մէջ կը ներկայացընէ,„ ուր այնպիսի՛ նախադասութիւնք միայն մուտ գտած են՝ “որոնք Նոր-պիւթագորեանց ճաշակին եւ գաղափարաց կը համաձայնին։„ Ուստի հաւանականագոյնս “Սեկունդոս„ անուամբ իմաստակ մը կ՚ապրէր (Ադրիանու ժամանակ), որ ծանօթ էր կանանց դէմ ունեցած ատելութեամբն, որով վարուցնիւթն եղած է։ Հաւանականօրէն յԱղէ-

---

1 Bachm. p. 46—47։ Արդէն Ռըվիլյու (էջ 49) մանրամասն քննած էր այս վճիռներն եւ անոնց բովանդակութիւնը “համաստուածութեան եւ աստուածականութեան խառնուրդ մը„ գտած։

ասորերէն ծագած է Սեկունդոսի այս վէպն՝ որ Հայրենիքն էր նոր-պիւթագորականութեան (էջ 47—48)։

Այս մասը գրելէն ետքը՝ Պախմանի ձեռքն հասած է Քաուելի յիշեալ քննութիւնն, որ Սեկունդոսի վէպը “մանիքեական կերպարանափոխութիւն„ կը դնէ Սինդբադի զրուցին։ Պախման որ Քաուելի այս կարծիքը յէականս կ'ընդունի, այնպէս որ Սեկունդոսի վէպը Սինդբադի չափազանցումը կ'անուանէ (էջ 51), բոլորովին կը մերժէ Քաուելի եւ Ռըվլյուի այն կարծիքը թէ այս նախնական Սեկունդոսը ասորերէն (- մանիքեական) գրութիւն մըն էր. վասն զի այն ատեն, կ'ըսէ, յունարէնին մէջ ալ քրիստոնէական գաղափարներ գտնուելու էին, մինչ այժմու յոյն բնագիրը զուտ հեթանոսական ոգի մ'ունի. նաեւ յունարէն լեզուն ամենեւին հետք չունի սեմական լեզուէ մը թարգմանուած ըլլալու. (էջ 56. ծան. 1։) Ուրիշ գիտնոց այս նկատմամբ բերած ցուցմունքներն ինքն այլազգ կը մեկնէ, ինչպէս տեսանք։

Ինչպէս կը տեսնուի՝ գիտնոց կարծիքները շատ կը տարբերին Սեկունդոսի խնդրոյն նկատմամբ, բայց էական կէտին մէջ բաւական կը միաբանին։ Եթէ Ռըվլյու Սեկունդոսի զրուցին ծագումն Արեւելք փնտռեց, Քաուել հաստատեց զայն պնդութեամբ, այն զրուցին իբրեւ բուն աղբիւր Սինդբադի վէպը դնելով զոր կ'ընդունի նաեւ Պախման, ըլլայ Սեկունդոսի այս նախնական բնագիրն ասորերէն լեզուաւ մանիքեցիէ մը գրուած, ինչպէս Ռըվլյու եւ Քաուել կ'ուզեն, ըլլայ նոր-պիւթագորեանէ մը յունարէն լեզուաւ, ինչպէս Պախման կը պնդէ։ Ստոյգ է միայն որ այժմու ասորերէն բնագիրը չէ այն նախնական բնագիրը, որուն՝ ինչպէս նաեւ միւս խմբագրութեանց վրայ՝ կը մնայ այժմ քանի մը խօսք ըսել եւ ապա անցնիլ Հայ թարգմանութեան։

---

## Գ.

Սեկունդոսի ասորերէն բնագիրը դժբախտաբար հատակոտորներով միայն պահուած է, զորոնք Բրիտանական Թանգարանի cod. Add. 14.620 ձեռագրէն[1] առնելով հրատարակած է Սախաու։[2] Որչափ ալ ասորին "շատ հաւատարիմ" բնագիր մըն է, ինչպէս կը վկայեն գիտնականք. (— զոր օր. Պախման, die Phil. p. 22, ծան. 3), չունի նաեւ այնպիսի տեղեր՝ որ նախնականին մէջ ստուգիւ կային, ինչպէս է դիւցպատկերաց խօսելուն նկատմամբ ըսուածը եւն։ Բայց ուրիշ տեղեր ասորին ամէն խմբագրութիւններէն վեր է արժէքով, մանաւանդ այն մասերուն մէջ, ուր Ադրիանոս կը համոզէ զՍեկունդոս գոնէ գրով խօսիլ իրեն հետ։ Ճիշդ այս մասին մէջն է որ հայ բնագիրը ինչ ինչ տեղ կը համաձայնի ասորւոյն՝ շեղելով յունարէնէն, թէեւ հայն հոս ալ համառօտ է։ Զարմանալի կերպով այն տեղն՝ ուր կայսեր կենաց եւ մահու վրայ իշխանութիւն ունենալուն նկատմամբ է խօսքը, կցած են ասորի հատակոտորքն Մահուան սահմանին, որ ուրիշ խմբագրութեանց մէջ շատ ետքը կու գայ եւ հայոյն եւ յունին մէջ Սեկունդոսի Վճռոց վերջինն է։ Այսպէս ալ էր անշուշտ նախնաբար նաեւ ասորւոյն մէջ, վասն զի այս կտորով կը լմննայ ասորի բնագիրը եւ սա վերջաբանով կ՚աւարտի. "Կատարեցաւ Սեկունդոսի իմաստասէր լռակեաց։" Ուստի Մահուան սահմանէն յառաջ (Sachau 81, 1) մեծ կտոր մը պակաս ըլլալու է ասորւոյն մէջ։

Ստուգիւ յարմար չէ Քասէլի սա խօսքը (էջ 346, ծան. 1.) "Թէեւ՝ ինչպէս կը գուշակեմ

---

1. Ըստ Սախաուի (Յառաջբ. Ը.) եօթներորդ դարու նօտրգիր գրչութիւն մըն է ձեռագիրս։

2. Inedita Syraca, eine Sammlung syr. Uebersetzungen gr. Profanliteratur, herausg. E. Sachau (Wien 1870 8° XIII, pp. 134) p. 84—88: Vita Secundi philosophi 'Taciturni, fragmentum.

թէ ասորերէն բնագիրը մը հիմն եղած է յունարէնին, բայց ոչ թէ այն՝ որուն հատակոտորքն Սախաու հրատարակած է։ Մանաւանդ թէ այս վերջին-լատիներէն խմբագրութենէ մը ծագած կ' երեւայ, որուն թարգմանիչը Տօրքօյ անունը չհասկընալով «որէքօսն մ'ըրած է զայն» եւն։ Այս մասին ամենայն մասամբ իրաւունք տալու ենք Պախմանի,[1] որ կը հաստատէ թէ Սախաուի հրատարակած ասորերէն բնագիրը յունարէնէ մը թարգմանուած է, եւ ոչ թէ լատիներէն բնագրէ մ'որ արդէն ուրիշէ մը յառաջ եկած ըլլալու է։ Ասորւոյն աստւթեան կերպն ալ յայտնապէս յոյն բնագիր մը կ'ենթադրէ. օրինակի համար սա խօսքը (Sachau, 185, 14) "Այր որ չկամի տալ պատասխանի կայսեր, Բէ կեցցէ՝ չկամիմ ես„ = յունարէն (տե Cassel, p. 350, l. 65) τὸν μὴ βουλόμενον λαλῆσαι βασιλεῖ ζῆν οὐ βούλομαι.

Ե՞րբ եւ ուրկէ՞ թարգմանուած է ասորին։ Առայժմ այս հարցման որոշ պատասխան մը տալ չենք կրնար։ Բար-Հեբրէոս եւ աւելի կանուխ Միքայէլ Ասորի, որուն խօսքը յետոյ պիտի յիշենք, տեսած են այս գործքը. բայց շատ աւելի կանուխ ըլլալու է թարգմանութիւնն, որովհետեւ արդէն Թ դարէն է cod. Add. 14, 620 ձեռագիրը։ Թէեւ Եբեդյեսու իրեն Ցուցակին մէջ "Գալիլակ եւ Դիմնակ„ գրոց ծանօթ Բուդ անուն թարգմանչին համար կ'ըսէ[2] թէ թարգմանած ըլլայ "Հարցմանց յոնական„ (ܦܘܫ̈ܩܐ ܝܘܢ.) բայց որոշել չենք կրնար թէ այս "Հարցմանց„ մէջ կը գտնուէին արդեամբք Սեկունդոսի Հարցմունք եւ Պատասխանիք. մանաւանդ որ այս Հարցմանց համար կ'ըսուի թէ "կոչին Ալէֆ Միֆին (ܩܠ ܡܣܟܢ), զոր Ասսեմանի կ'ուղղէ ܩܛܠ, այսինքն "Հազար Բանք„ եւ կը յաւելու թէ թերեւս այսչափ թուով Հարցմունք ըլլային։) Այս

---

1 Bachm., die Phil. p. 56 Տրան. տեսնաւ Leben, p. 3։
2 Assemani, Bibl. Or. III, 1 p. 220.

խնդիրն այն ատեն կրնայ որոշուիլ, երբ հնագոյն ատորի գործոց մէջ Սեկունդոսի նկատմամբ եղած ակնարկութիւնք, կոչմունք եւ յիշատակութիւնք ի մի ամփոփուին։

Անցնինք եթովպական եւ արաբ. թարգմանութեանց։ Եթովպացերէն բնագիրը հրատարակեց՝ ինչպէս ըսինք՝ Պախման Պերլինի Արքունի Գրատան մէկ ձեռագրին համեմատ (թիւ 64 Տիլմանի ցուցակին,[1] փեթերմանի Հաւաքման Ցուել. թիւ 38, թղ. $1^{a}$—82, այսինքն՝ թղ. 4—23 վարք, թղ. $23^{b}$—$45^{b}$ վճիռք եւ թղ. 46—82 Երկրորդ շարք քրիստոնէական վճռոց թուով իբր 100։) փարիզի մէկ ձեռագրին վրայ մանրամասն խօսած է Զօթէնպէրկ իւր ցուցակին մէջ,[2] տալով նաեւ բնագրէն կտորներ եւ հաստատելով որ եթովպականը չէ թարգմանուած այժմու արաբերէնէն։ Եթովպականին օրինակ մ'ալ կայ տ'Ապատիի հաւաքման[3], եւ երկու օրինակ Բրիտանական թանգարանի Մագդաղա հաւաքածոյից մէջ։[4] Ցանցառ չեն նաեւ արաբերէն օրինակներ, եւ կը գտնուին Օքսֆորթի Պոտլեան[5] եւ փարիզի Ազգային Մատենադարանին մէջ։[6] Սակայն արաբերէն բնագիրը չէ հրատարակուած ամբողջո-

1 Dillmann, Verzeichniss der abessinischen Handschriften. Berlin 1878, p. 53—54.

2 Zotenberg, Catalogue des manuscrits éthiopiens de la Bibl. Nat. Paris 1877, p. 245, թիւ 146, թղ. 194 եւն վարքն ու վճիռք, թղ. 205 եւն քրիստ. վճիռք։

3 Catalogue raisonné de mscr. éthiop. appartenant à Ant. d'Abbadie. Paris 1859, p. 81, թիւ 67, 4.

4 Տես Wright, List of the Magdala Collection: ZDMG 1870, p. 614 եւ 616, թիւ 337 (Or. 818) թղ. 129—137 եւ թիւ 346 (Or. 827) թղ. 41—72։

5 Հմմտ. Catalogus Codicum Mss. Orient. Bibl. Bodl. pars secunda, ed. Nicoll. (Oxonii 1835) p. 58, թիւ՝ 55։

6 Bibl. Nat. Supplément 93 եւ 95, թղ. 54 եւ Mss. Arab. 69A եւ 107 (տես Ռըլֆիլու՝ էջ 54. Զօթէնպէրկ՝ էջ 245, եւ Պախման, էջ 67—8 եւ Leben, p. 3—6.)

վին: Պախման քանի մը վճիռներ հրատարակած է իւր ծանօթութեանց մէջ. միւսները լոկ համեմատած եթովպականին հետ:

Յիշեցինք որ արաբերէնին եւ եթովպականին մէջ երկու տեսակ վճիռներ կան: Բաց ի բուն վճիռներէն՝ կը գտնենք հոն բազմաթիւ փիլոսոփա-յական-աստուածաբանական Հարցմունք Սեկունդոսի անուամբ, որոնց բնագիրը չէ հրատարակուած, բայց Պախման թարգմանած է զայն ըստ եթովպականին (die Phil. p. 23 եւն), միայն ի բաց թողուցած է թիւ 93—96, 98 եւ 101—108 թէ նիւթոյն ոչնչութեան եւ թէ բնագրին աղաւաղութեան պատճառաւ: Այս կտորը կը սկսի սապէս "Յանուն Հօր . . . Օգնականութեամբ Աստուծոյ՝ սկսանիմք սակաւիկ մի ի բանից իմաստութեան եւ գիտութեան իմաստնոյն Սեկունդոսի." եւ առաջին Հարցումն է՝ "Զի՞նչ է Իմաստութիւն եւ Գիտութիւն:" Արաբերէն աւելի ճոխ բնագիրը — որ 155 վճիռ ունի, մինչ Եթովպ. 108 միայն, — չէ կրցած գիտնականը գործածել: Թէեւ Ցօթէնպէրկ (անդ) կը հաստատէ որ ամէն ձեռագրաց մէջ Սեկունդոսի տրուած են այս վճիռքն ալ, մոռգիր կ'ըսէ Պախման որ Փարիզի ձեռագիրը կը ժխտէ զայս գոնէ մասամբ, վասն զի սա վերջաբանը կը կրէ. "Կատարեցաւ Պատմութիւն իմաստասիրին Սեկունդոսի եւ Հարցմունք Ադրիանոսի կայսեր ե-ւ այլոց օրանց" եւն (wa-lakalᵉ'ân sab'ᵉ, տես die Phil. p. 48—49.) Այս վերջին վճիռք կապ չունին Սեկունդոսի առաջին վճռոց հետ եւ զուտ քրիստոնէական են: Ժամանակն ալ որոշ չէ, միայն գիտենք որ 1604էն յառաջ՝ երբ գրուած է արաբ. մէկ ձեռագիրը, ծագած ըլլալու են:

Եթովպականն ապահովապէս արաբերէն բնագրէ մը թարգմանուած է, ինչպէս շատ մը բառեր, ասութիւնք եւ նոյն իսկ արաբական կազ-

մութեամբ նախադասութիւններ կը ցուցընեն։[1] Սակայն թէ Վարուց եւ թէ Վճռոց շատ կէտերու մէջ կը տարբերի եթովպականը, որ ընդարձակ խորհրդածութիւններ հիւսած է, այնպէս որ ըստ Պախմանի՝ Սեկունդոսի վէպն եթովպ. թարգմանութեան մէջ ամէնէն աւելի ազնուացածն ու կատարելագործուածն է։ Այս երեւոյթը մեկնելու է կամ ըստ Ցօթէնպէրկի (անդ, էջ 246) ընդունելով որ եթովպացին այժմու արաբականէն տարբեր արաբերէն բնագիր մ'ունէր առջեւը, եւ կամ ըսել որ եթովպացին ազատ վարուած է թարգմանելու ժամանակ։ Հաւանականն է առաջին ենթադրութիւնը, վասն զի շատ տեղ՝ ուր արաբականէն կը շեղի՝ յունարէնին հետ կը համաձայնի եթովպացին։[2] Այս վերջին կարծեաց կը համոզուի իւրաքանչիւր ոք որ մեր ծանօթութիւնքն աչքէ անցընէ. բազմաթիւ են այն դէպքերն, ուր եթովպականը կը համաձայնի յունին եւ հայոյն հետ, ուր կը պակսի արաբականը կամ կը շեղի. հակառակն ալ կը գտնենք պատահած, բայց շատ ցանցառ։

Սեկունդոսի զրոյցը կը յիշուի Պերլինի արքունի գրատան մէկ ձեռագրին (Mscr. Or. oct. 217,) արաբական մէկ գործքին մէջ, որ كتاب نزهة الارواح տիտղոսը կը կրէ, եւ հաւաքածոյ է 111 կենսագրութեանց յոյն եւ եգիպտացի իմաստասիրաց, սկսելով Ադամէն՝ իբրեւ առաջին իմաստասիրէն։[3] Այս գրքին մէջ կը յիշուի նաեւ (թղ. $85^{a-b}$) سفيداس անուամբ[4] իմաստասէրն մ'որ سكندس (Սե-

1 Ասոնց վրայ ընդարձակ խօսած է Պախման (Leben, p. 4։) Օրինակներ յառաջ բերել աւելորդ կը համարինք։

2 Հմմտ. Leben, p. 8.

3 Այս մասին կը խօսի Պախման, Leben, p. 13։

4 Մտադրութեան արժանի է -âs վերջաւորութիւնը՝ որուն նման է ղպտերէնը՝ CKONTAC, հմմտ. Պախման. Leben, p. 13, ծան 1.) Նոյն գիտնականը կը յիշէ (էջ 12.

կունդոս) ըլլալը է, ինչպէս պատմուածքը կը ցուցընէ։ Վասն զի յիշեալ Sephîdâsի համար կ'ըսուի թէ ուխտած էր միշտ լուռ կենալ (سفيداس جعل على نفسه ان لا يتكلم), թէ Ադրիանոս կայսրն ստիպեց զինքն որ խօսի եւ դահիճ մ'ալ սուրը մերկացած կը սպառնար գլխատել, եթէ լռէ։ Բայց իմաստասէրը լռեց, այնպէս որ կայսրն ազատ թողուց իրեն որ լուռ մնայ, եւ առաջարկեց անոր հարցումներ, որոնց գրքի մը մէջ պատասխանեց (وسال عن مسائل فاجابه عنها فى كتاب) այսպէս իմաստասէրն։ Դժբախտաբար չէ նշանակուած գրութեանս յօրինման տարին, որ կռուան մը կ'ըլլար Սեկունդոսի արաբերէն թարգմանութեան ժամանակն որոշելու։

Միայն հաւանական կ'երեւայ որ ո՛չ արաբ. եւ ո՛չ եթով. թարգմանութիւնը շատ հին է։ Գոնէ եթովպականն այն ժամանակ թարգմանուած ըլլալու է, երբ եթովպացերէնը ժողովրդեան բերնէն վտարուած էր արդէն ամհարերէնի ձեռօք, (— ուստի Ժ դարէն ետքը, —) որով ամհարական ասութիւններ կան սպրդած եթովպականին մէջ։[1]

Թէ արաբականն եւ թէ եթովպականն Սեկունդոսեանն գոյն մ'առած են, եւ բաց աստի շատ ընդարձակուած։ Յոյնն ու հայը 20 (Հայը՝ բուն 21) վճիռ գիտեն, որ նախնական թիւն ըլլալու է, վասն զի Վարուց մէջ Ադրիանոս այսչափ թուով հարցումներ միայն կ'ուզէ առաջարկել. իսկ արաբ.

որ արաբերէն ալ կայ اسكنداس ձեւը, օրինակի համար սա գրութեան մէջ՝ Athanasii Kircheri lingua Aegyptiaca restituta (Romae 1643) p. 227։ Այստեղ արաբերէն գրութեան մը մէջ աշխարհքիս նշանաւոր իմաստունները կը յիշուին՝ Գաղիանոս, Հոմերոս, Արիստոտելէս, Պտղոմէոս, Հիպպոկրատէս, Սոկրատէս, Պղատոն, եւ "այս շարքը կը փակուի ամէնէն արժանաւորովն. որ է اسكنداس Սեկունդոս։"

1 Այսպէս կը դատէ Պախման (die Phil. p. 60.)

եւ եթովպ. մինչեւ 55 վճիռ ունին՝ ամէն կարելի նիւթոց վրայ․՝ այսպէս՝ աստեղաց, հրեշտակաց, ամպերու, հովի, որոտման, շանթի, ջրոյ, ձայնի, կենաց, իմաստութեան, դրախտի, դժոխոց, ոսկի, ձկնորսութեան, երաժշտական գործեաց, թշնամութեան, հայհոյութեան, ողջոյ եւ այլ նման նիւթերու վրայ: Երբեմն միեւնոյն նիւթն ունի քանի մը վճիռներ. (— շնութեան վրայ են օրինակի համար՝ թիւ 27, 32—34:) Ինչ ինչ վճիռներ չափազանց երկայն են. այսպէս թիւ 54 ամբողջ 50 տող կը գրաւէ:

Ուրիշ բան մ'ըսել չի մնար միւս արեւմտեան խմբագրութեանց, մանաւանդ լատինականաց վրայ, որ շատ բազմաթիւ են, եւ որոնց մանրամասն ցուցակը դրած է Պախման (die Phil. p. 64 եւն:) Յիշեցինք Vicencius Bellovacensisի խմբագրութիւնն եւն,[1] ինչպէս նաեւ Altercatio Hadriani Aug. et Epicteti (Վիճաբանութիւն Ադրիանու եւ Եպիկտետի իմաստասիրի:)[2] Սեկունդոսի հետ կապ ունին նաեւ Disputatio Pippini cum Albino (Վիճաբանութիւն Պիպպինեայ ընդ Ալբինոսի,[3]) Ապողոնիոս Տիւրացի[4] եւ Ռուոդլիբ: Կայ նաեւ

---

1 Հմմտ. նաեւ Hoveden, annalium pars prior et posterior in rerum Anglicarum scriptores etc. Francf. 1601, p. 815 եւ Walterus Burley, liber de vita ac moribus philosophorum fol. 92—95, Հրտ. H. Knust, Tübingen 1886, p. 372—396.

2 Զոր հրատարակած են նաեւ Fr. Lindenbrogius Francof. 1628; Labbé, Notitia dignitatum imperii Romani, Paris 1651; W, Willmanns, ի Թերթին Zeitschrift für deutsches Alterthum (herausg. v. M. Haupt) N. F. II, 1869, p. 546.

3 Տես Du Chesne, Alcuins Werke, 1617, p. 1385—91; Fabricius, XIII, 579—83; Adolf Ebert, Allgemeine Geschichte der Litteratur des Mittelalters, Leipz. 1880, II, 19ff եւ Lindenbrogius եւ Willmanns.

4 Apollonius Tyrius տես G. Schepss, Neues Archiv der Gesellschaft für ältere deutsche Geschichtskunde. Hannover 1884, IX, p. 184—5.

5 Տես L. Laistner ի Թերթին Zeitschr. f. deutsches Alterthum (Հրտ. E. Steynmeyer) XV, N. F. p. 79, 91, 103.

գերմաներէն խմբագրութիւն մը՝ ստանաւոր ԺԴ դարէ Թիւրինգեան գաւառաբարբառով,[1] եւ ստանաւոր մ'ալ Հանս Սաքսէ՝ սա վերնագրով "Սեկունդոս, լռակաց փիլիսոփայ:"[2] Նոր ժամանակներս ի լոյս հանուեցաւ իսլանտերէն խմբագրութիւն մ'ալ.[3] կը յիշուին վերջապէս նաեւ իտալերէն եւ գաղղիերէն խմբագրութիւնք:[4]

---

## Գ.

Այժմ անցնինք Սեկունդոսի հայերէն խմբագրութիւնը մերձուստ դիտելու, որ ամենէն հին թարգմանութիւնն է, թերեւս հնագոյն քան ասորականն, եթէ նոր քննութիւնք վերջնոյս աւելի խոր հնութիւն մը չտան: Յիշուեցաւ որ Սեկունդոսի հայերէն բնագիրը — Վարքը Թերի — հրատարակուած էր ի Վենետիկ 1853ին: Այս ժամանակէն ի վեր՝ որչափ ինձ ծանօթ է՝ անյիշատակ մնացած է հայերէն այս բնագիրը: Միայն Հ. Գարեգին Վրդ. Նախնեաց Թարգմանութեանց ցուցակին մէջ ծանօթութիւն մը տուած է Սեկունդոսի վրայ:[5] Մօտ օրերս ալ Հայագէտն Է. Թեզա "Բանք Իմաստասիրաց" հայ թարգմանութեան իւր գեղեցիկ քննութեան մէջ չէ մոռցած նաեւ զՍեկունդոս, որուն երկու էջ նուիրած է.[6] Արեւու եւ կնոջ սահմանները թարգմանած եւ համեմատած յոյն բնագրին հետ եւ քանի մ'այլ ծանօթութիւններ կցած: Հայագիտս

---

1 Հմմտ. Ph. Strauch յիշեալ թերթին մէջ՝ Berlin 1878 N. F. X, 389—98 եւ Bachm., die Phil. p. 61—63.

2 Hans Sachs, herausg. v. A. v. Keller, VII (1873), p. 397—400.

3 Հրտ. H. Gering, Islendsk Aeventyri. Halle 1882, I, 7—11, II, 3—5.

4 Երկուքին մասին տես Bachm., die Phil. 67.

5 "Մատենադարան Հայկական Թարգմանութեանց Նախնեաց." (Վենետիկ 1889) էջ 689—90.

6 E. Teza, Delle Sentenze եւն, p. 17—19. Հմմտ. նաեւ 21, ծան. 2:

յայտնած կարծիքները թէ՛ յընթացս քննութեանս եւ թէ մեր ծանօթութեանց մէջ անտես չեն թողուած ։

Վ. Հ. Գարեգին Վրդ. սա ծանօթութիւնը դրած է Սեկունդոսի նկատմամբ. "Ադրիանոս կայսեր ժամանակակից հելլէն իմաստասէր, որուն անուամբ համառօտ հաւաքում մը իմաստասիրական բանից աւանդած է մեզ հայ մատենագրութիւն՝ հաւանական կարծեօք Թարգմանութիւն ոսկեղէն դարու ։ Յոյն բնագիրն ալ կը գտնուի, ինչպէս նաեւ լատին հին փոխադրութիւնք, ընդհանրապէս նման հայկականիս ։ Միայն չենք հանդիպած Նախաբան տեղեկութեանն՝ զոր ունի հայերէնն, եւ յորում կ'աւանդի թէ երբ եւ ինչ առթիւ արտասանած է զայնոսիկ իմաստասէրն ։ . . . Ի յոյնն՝ ինն եւ տասն են հարցմունք Ադրիանոսի եւ իմաստասիրի. մեր թարգմանութեան մէջ քանի մի գլուխք աւելի ։„ — Որչափ կ'երեւայ հեղինակը չէ գտած Սեկունդոսի յունարէն Վարքը. վասն զի եթէ անոր հետ համեմատուէր հայոյն նախաբան տեղեկութիւնն, որ տպագրուած է 1853ի հրատարակութեան մէջ, կը տեսնուէր որ համառօտ ծայրաքաղ մըն է այն Վարքէն ։ Բայց այս ծայրաքաղը լաւ յղկուած է եւ ամբողջութիւն մը կը կազմէ, այնպէս որ կրնար դիւրաւ մոածել տալ թէ այսչափ միայն եւ այս ձեւին մէջ գտած ու թարգմանած է հայն ։ Սակայն իրն այսպէս չէ, ինչպէս այժմ գիտենք. վասն զի այն տեղեկութիւնը հայերէն Վարքէն եղած համառօտութիւն մըն է պարզապէս՝ այն մասին, ուր Ադրիանոս կը փորձէ խօսել տալ իմաստասիրին ։ Նաեւ այս համառօտութեան մէջ պահուած են յոյն բնագրին շատ մը մասերն ամբողջ կամ քիչ մ'այլայլեալ ։ Թէեւ մեր հրատարակութեան մէջ՝ որուն սկզբան կտորն է այն, համեմատած ենք զայն բնագրին հետ, աւելորդ չէ հոս դէմ առ դէմ դնել անոր մէկ մասը ։

| ՀԱՅՆ<br>(Սոփերք, Ա. էջ 63) | ՅՈՅՆՆ<br>(Mullach, p. XXVIII. 27. Cassel, p. 349, l. 41.) |
|---|---|
| Ընդ ժամանակսն ընդ այնոսիկ յորում Ադրիանոս ի Պարսս երթայր, եւ իբրեւ եկն յԱթէնս, լուաւ զՍեկոնդէ, եթէ կորովի իմաստասէր է, եւ անխօսութեամբ զինքն հանճարեալ է, որով եւ կոչեցեալ առ ինքն՝ բազում աշխատանօք մաքառեալ ի հարցմունս առակաց. եւ նա ոչինչ ետ պատասխանի։ Եւ թագաւորն զայրացեալ ընդ անմեծարանսն առաջի սինկղիտոսի, կոչեաց զսուրհանդակն զի սպանցէ զնա. եւ պատուէր տուեալ ասէ. երթ նախ բռնադատեա խօսել. եթէ խօսի՝ սպան, եթէ ոչ՝ կենդանւոյն այսր ածջիր եւն։ | Κατὰ δὲ τὸν καιρὸν ἐκεῖνον Ἀδριανὸς ὁ Καῖσαρ παραγενόμενος ἐπὶ τὰς Ἀθήνας ἤκουσε περὶ αὐτοῦ... καὶ τοῦτον μετεπέμψατο [ἐλθεῖν.] Ἐλθόντα δὲ τὸν Σεκοῦνδον ὁ Ἀδριανὸς δοκιμάσαι θέλων, εἰ ἀληθῶς ἄρα τὴν σιωπὴν ἀσκεῖ, ἀναστὰς πρῶτος ἠσπάσατο αὐτόν· καὶ ὁ μὲν Σεκοῦνδος τὸ σύνηθες τηρεῖ τῆς σιωπῆς... Ἀγανακτήσας δὲ ὁ Ἀδριανὸς... λάτρα τὸν σπεκουλάτωρα καλέσας, ἔφη αὐτῷ· ἡνίκα τὸν φιλόσοφον μέλλεις ἀπάγειν, κατὰ τὴν ὁδὸν λάλησον αὐτῷ καὶ παραμύθησαι τοῦ λαλῆσαι, καὶ ἐὰν μὲν ἀποκριθῆναι αὐτὸν πείσῃς, ἀποκεφάλισον αὐτόν· ἐὰν δὲ οὐκ ἀποκριθῇ, σῶον πάλιν αὐτὸν ἐνταῦθα ἄγαγε κτλ. |

Արդէն այս կտորը կը ցուցընէ որ Վարուց ամբողջ թարգմանութիւն մը պէտք է որ եղած ըլլայ հայերէն լեզուաւ, որմէ համառօտուած է յիշեալ կտորը։ Խնդիրն էր ուրեմն Վարուց ամբողջական հայ բնագիր մը գտնել։ Այս ալ այժմ մեծաւ մասամբ յաջողած է։ Մեծ հատակոտոր մը գտանք մեր Մատենադարանի Թիւ 320 (հին թիւ 101 Բ) ձեռագրին մէջ (թղ, 1[a])։ Թղթի վրայ գրուած բոլորգիր օրինակ մըն է ձեռագիրս, որ կը բաղկանայ 257 թղթէ՝ 16, 5×12 հարիւ-

րորդամեդր մեծութեամբ, եւ այլեւայլ գրչաց գործք է, ուստի տողերու թիւն ալ տարբեր (23—27։) Թէեւ անթուական՝ գոնէ ԺԷ դարէն ըլլալու է, եւ երբեմն Սեւանայ վանաց կը վերաբերի եղեր, ինչպէս թղ. 257ᵇ դրոշմուած կնիքը կը վկայէ, որուն մէջ կը կարդացուին սա բառերը. "Կնիք սրբոյ անապատին Սեւանայ," բայց առանց տարեթուի՝ ինչպէս ունին յաճախ կնքոց արձանագրութիւնք։ Դարուս սկիզբն սեպհականութիւն եղած է ձեռագիրս Դաւիթ կաթուղիկոսին, ինչպէս կը ցուցընէ հետեւեալ յիշատակագրութիւնը (թղ. 2ᵇ) "Յիշատակ է Դաւիթ կաթուղիկոսին եւ իւր ծնողացն ի սուրբ անապատին Սեւանայ. որ վայելէք ՌՄԾԵ ... (= 1806) թուին։" Ձեռագրին մէջ կան ուրիշ յիշատակագրութիւնք ալ։ Յետոյ անցած է ձեռագիրս ի Կ. Պոլիս, եւ անկէ եկած ի Վիեննա. (Հմմտ. կողի ներքին երեսին ծանօթութիւնը. "Առաքեալ ի Կոստանդնուպոլսոյ Վ. Հ. Պօղոս Յովնանեան, 1858։") Ձեռագիրս հաւաքածոյ է Գրիգորի Աստուածաբանի ճառից, Անյաղթի գործոց եւն, եւ կ'աւարտի "ողոմպիական" Առակներով։ Ամենէն վերջին ըլլալու էր նաեւ Սեկունդոսի գործքն, ինչպէս նիւթոց ցանկը (թղ. 3ᵃ) կը վկայէ, որ այսպէս կ'աւարտի. "Է. Եւ սակաւ ինչ առակք ողոմպիական. Ը. Եւ դատասխանին Սեկունդոսի իմաստասիրի։" Բայց այժմ չենք գտներ այս կտորը։ Միայն առաջին թղթին վրայ 29 տող կայ գրուած Սեկունդոսի Վարքէն։ Կարելի է որ առաջին թղթէն յառաջ ուրիշ թուղթ մ'ինկած ըլլայ, որ պարունակէր Վարուց սկիզբն։ Այժմ կը սկսի հատակտորն բոլորովին անկապ "փիլիսոփայն զկեանս" բառերով, եւ կ'աւարտի նոյնպէս անկապ։ Հատակտորս Վարուց այն մասն է՝ ուր կը պատմուի Սեկունդոսի չանսալն դահճապետին յորդորանաց եւն (տես վարը՝ մեր հրատարակութիւնն։) Եւ որ նշանաւորն է՝ հատակտո-

տորս չէ համառօտութիւն յոյն բնագրին, այլ հաւատարիմ թարգմանութիւն։

Շնորհակալութեամբ յիշելու ենք որ Հ. Յովհ. Վրդ. Թորոսեան պատասխանել հաճելով մեր հարցման թէ 1853էն ետքը Սեկունդոսի նոր ձեռագիր մը հասա՞ծ է ի Վենետիկ, ծանոյց որ՝ թէեւ նոր ձեռագիր չէ գտնուած, բայց թիւ 739 ձեռագրին մէջ կտոր մը կայ, որ տպագրութեան մէջ կը պակսի, եւ որմէ օրինակութիւն մ'առաքել հաճած էր։ Բարեբախտութեամբ ճիշդ այս կտորն էր Վարուց տակաւին պակաս մասն։ Ասով լրացաւ մեծաւ մասամբ հայ բնագիրն. կը պակսի միայն սկիզբն, այն մասն Վարուց, որ Սեկունդոսի մանկութեան եւ մօր դիպաց վրայ է, ամբողջին իբր հինգերորդ մասը։ Ստոյգ է միայն որ թարգմանիչը դուրս չէր թողուցած այս մասն ալ, այլ ընդօրինակողք՝ որ անոր նիւթը չեն պատշաճ տեսած ընդօրինակութեամբ աւանդելու յետնոց։ Բայց թէ կար նախնական հայոյն մէջ, յայտնի է անկէ որ Ուխտանէս կարդացած է զայն։

Ձեռագիրս տպագրութեան պատրաստ էր՝ երբ առիթ ունենալով 1893 տարւոյ Սեպտեմբերի այցելել Ս. Ղազար՝ կրցայ կրկին համեմատել թիւ 739 ձեռագրին ընթերցմունքն, եւ հիմա առնուլ զայն յաջորդ հրատարակութեան, որուն համար պարտք կը համարիմ նաեւ հրապարակաւ շնորհակալութիւնս յայտնել։ Սեկունդոսի վարքն ու վճիռք յիշեալ ձեռագրին (Ճառընտիր՝ ԺԹ) 830 — 834 էջերը կը գրաւեն։ Միածալ այս թանկագին ձեռագիրն ժողովածոյ մըն է նոր ընդօրինակութեանց այլեւայլ հին ձեռագիրներէ, ինչպէս հետեւեալ ծանօթութիւնը կը հաստատէ, ուր կը կարդանք թէ "Վ. Հ. Եփրեմ ի ճանապարհորդել իւրում ի Հայս զմատեանս զայս գաղափարեալ ընդ Վ. Հ. Եսայեայ Մզրաքեան [illegible], զորս եգիտ առ Կարապետ

Վարդապետի առաջնորդին Կարնեցւոց, յղեաց ի Վանս, որ եհաս 1836 Օգ. 8:» Ուրիշ տեղեկութիւն չգտայ նշանակուած այն հին գրչագրաց վրայօք՝ որոնցմէ եղած են ընդօրինակութիւնք, բայց կայ տեղ մը (էջ 607) ուր ծանօթութիւնը. "Ի հին մանր երկաթագիր մատենէ, գրելոյ ի ՆԼ Թուականին. ծանու աշխատութեան պէտք եղեւ ընթեռնուլ եւ գրել զանընթերցանելի տեղիսն առ փտելոյ ի տամկութենէ եւ ծակոտելոյ ի հնութենէ,» Ուստի գաղափար-ձեռագիրը Հայ ձեռագրաց ամենահիներէն էր, եթէ նաեւ ՆԼ (= 981) թուականին գրուած ըլլար: Բայց կ'երեւայ թէ աւելի հին ըլլալու էր այն, վասն զի յիշատակարանին մէջ կ'ըսուի թէ 981ին "Նորոգեցաւ» մատեանը: Ահա այդ յիշատակարանը (էջ 543.) "Ես Դաւիթ քահանայ ցանկացայ լուսաւոր եւ աստուածազան վարդապետութեան սրբոց սրբոյն Աթանասի . . . ի մի վայր բովանդակեցի, առեալ սուղ ինչ ի սրբոյն Անդրէասի վարդապետութենէն եւ յայղոց նմանեաց զշարադրութիւն տոմարաց հաւաքեցի ի գիրսս յայս ի յիշատակ ինձ եւ իմոց կենդանեաց եւ ննջեցելոց եւ ի ժառանգութիւն որդւոյ իմոյ Ղուկասու որ գծագրեացս իսկ զսա . . . Եւ է նորոգեալ սա ի ՆԼ թուականութեանս Հայոց:» Կ'ենթադրեմ որ այս վերջին տողն գաղափարին մէջ ուրիշ ձեռքէ ըլլալու է՝ այն անձին, որ թերեւս նոր կազմել տուաւ կամ թերի մասերը նորոգեց եւն: Այս մասին ստուգութիւն կրնար տալ բուն գաղափար ձեռագիրն, եթէ բախտ ունենար մէկը տեսնելու զայն: Շատ թանկագին կտորներ կան ամփոփուած ձեռագրիս մէջ: Ասկէ առնուած են՝ եթէ չենք սխալիր՝ Արիստիդեայ հատակտորքն (տպ. Վենետ. 1878), որ մի միակն էին մինչեւ մօտ օրերս, երբ ամբողջական ասորերէն բնագիր մը գտնուեցաւ (Հրտ. Harris, Loudon 1892)

Այս Թիւ 739 ձեռագիրն եղած է հիմն 1853ի հրատարակութեան, ինչպէս հաղորդուեցաւ մեզ։ Սակայն այժմ կը գտնենք հոս մտադրութեան կէտ մը։ Սոփերաց հրատարակութեան համար անհրաժեշտ է որ ուրիշ օրինակ մ'ալ գործածուած ըլլայ, եթէ ոչ ամբողջական՝ գոնէ հատակոտոր։ Վասն զի այն տպագրութիւնն (— զոր C կը նշանակենք —) բաւական կը տարբերի 739 ձեռագրէն. (— զոր A կը նշանակենք։) Ընդունելով ալ որ Վարուց վերջին մասն՝ որ կայ յA եւ կը պակսի Cի մէջ, կամաւ թողուած ըլլայ, վասն զի արդեամբք այն վիճակին մէջ անկապ բան մըն է, էական տարբերութիւն մը կայ Վճռոց նոյն իսկ սկիզբը։ Թիւ 739 առաջին Վճռէն ("Աշխարհ.") ետքը թերի է եւ կը սկսի Երրորդ վճռով ("Ծով.") ուստի Aի մէջ կը պակսի Երկրորդ վճիռը "(Զինչ է Աստուած։") Արդ այս վէպը կը գտնենք 1853ի տպագրութեան մէջ, թէեւ թերակատար վիճակի մէջ. (տես վարը՝ Բ.) ուստի ուրիշ տեղէ մ'առնուած ըլլալու է։ — Նոյն բանը կը հաստատուի այն կոչմունքներէն, որ կը գտնուին Վենետկոյ Մեծ Բառագրոց մէջ (Հայկազն. Բառ. Վենետ. 1836—7)։ Սեկունդոսի շատ մը նախադասութիւնք կը գտնենք հոն ի վկայութիւն բերուած (տես ծովական, զա-ղաք, ճանճաման, չորքոտանիք-ներն, օդային, տնկական եւն բառերը. —) եւ այն՝ Պիտառ. (= Պիտառութիւն) տիտղոսին ներքեւ։[1] Այս կոչմանց մեծ մասը

---

1 Տարակոյս չկայ որ Թիւ 739 ձեռագիրն ալ "Պիտառութիւն" անուամբ նշանակուածներէն ըլլալու է։ Բառագրոց յօրինիչք (Յառջ. 18a) կը հաստատեն զայս, երբ կը գրեն. "Պիտառ. Պիտառութիւնք ազգի ազգի՝ որպէս ճառք կամ հատուածք բանից ի վերայ զանազան իրաց ի հին դարս ... Այսպիսի գրուածք տասնեւերկու անկեալ են ի մեր ձեռս յատուկ պատրաստութեան գործոյս։" Ինչպէս յիշուեցաւ՝ Թիւ 739 ձեռագիրն 1836ին հասած է ի Վենետիկ, ճիշդ այն տարին՝ որ բառագրոց Ա հատորին տպագրութեան տարեթիւն է, մինչ Բ հատորը 1837 տարեթիւը կը կրէ։

կը համաձայնի Թ. 739 ձեռագրին եւ տպագրութեան հետ. բայց կան նաեւ այնպիսիք՝ որ բոլորովին ուրիշ, երբեմն նաեւ Լաւագոյն եւ ուղղագոյն բնագիր մը մեր առջեւ կը դնեն: Այսպէս պարտաւանդ բառին մէջ յիշուած է Սեկունդոսի այն խօսքը թէ կինն ըլլայ "պիտանի չար. պարտաւանդ աներեւոյն:" Արդ "պիտանի չար" չկայ 1853ի տպագրութեան, եւ ոչ ալ 739 ձեռագրին մէջ, եթէ կրնամ վըստահիլ ըրած համեմատութեանս (տես վարը՝ ԺԲ, 17.) բայց նախնական հայ թարգմանութեան մէջ պէտք է որ ըլլար, ինչպէս կը վկայէ յոյնն ալ, վասն զի թէ Փարիզեան եւ թէ Կուտինեան ձեռագիրք կ'ընթեռնուն ἀναγκαῖον κακόν = պիտանի (հարկաւոր) չար, որ ուստի ուրիշ ձեռագրէ մ'ըլլալու է:

Եթէ չենք սխալիր, մեկնութիւնը հետեւեալն ըլլալու է: Յիշեալ կոչումն բառագրաց ոչ Սեկունդոսի անուամբ է եւ ոչ ալ միւս կոչմանց նման "Պիտառ." վերնագրով, այլ "Մխ. առակ" տիտղոսով: Սակայն Մխիթարայ Գօշի Առակաց, գոնէ Վենետկոյ տպագրութեան մէջ (տպ. Վենետ. 1842) չենք գտներ այս կոչումն, թէեւ Գօշի սա խօսքը — "Կինն սատանայ է բազմածնունդ չարեօք" (տպ. Վենետ. 1842, էջ 151, ՃՁԸ.) — կը ցուցընէ որ Գօշ կարդացած է Սեկունդոսի Վճիռները: Ուստի կ'երեւայ թէ Վենետիկոյ Գօշի առակաց ձեռագրին մէջ կան նաեւ Սեկունդոսի Վճռոց գոնէ ոմանք, այնպէս որ Բառագրոց հեղինակք Սեկունդոսի խօսքը Գօշի անուամբ կոչումն ըրել կրնային: Թէ արդեօք ուղիղ է այս ենթադրութիւնը թէ ոչ՝ այժմ չենք կրնար որոշել:

Յամենայն դէպս Սեկունդոսի նոր, լիակատար օրինակ մ'ունենալ անհրաժեշտ է, ոչ միայն թերի մասերը լրացընելու, այլ նաեւ հայ բնագրին ոչ սակաւ աղաւաղմունքն ուղղելու համար: Վասն զի այժմու հայոյն մէջ կը գտնուին տակաւին շատ մը

տարակուսական ընթերցմունք, երկբայական տեղեր եւն,[1] թէեւ շատ աղաւաղութիւններ ճանչնալ եւ ուղղել դիւրաւ կարելի եղաւ պարզապէս հայը յոյն բնագրին հետ համեմատելով, որով՝ ինչպէս կը վկայեն մեր հրատարակութեան ծանօթութիւնք՝ բազմաթիւ սխալ ընթերցմունք, (որ թէ 1853ի տպագրութեան եւ թէ 739 ձեռագրին մէջ կը գտնուին,) ջնջել կարելի եղաւ։ Այսպէս Ե, 3 "սկիզբն ամենայն ցաւոց" ուղղելի է՝ "աւուրց" = ἀρχὴ καθημερινή։ — Է, 3 "անդրոյ ճանապարհորդ" (ըստ C) ուղղելու է՝ "օդոյ" = οὐράνιος ὁδοιπορία (այսպէս նաեւ A)։ — Թ. 10 անկարելի է պահել "փոխանակք յաշխարհէ," այլ՝ "փախստական յաշխարհէ" = φυγὰς βίου (ըստ G, այսինքն՝ Կուտինեան ձեռագրի)։ — ԺԲ, 3 "ոգւոց պատճառք" ընթեռնլու է՝ "հոգւոց," ինչպէս յունին μέριμνα կը պահանջէ։ — ԺԲ, 5 անիմաստ է "ինքնայաւժար ի կոխ," զոր ուղղելու է՝ "ի կռիւ" = αὐθαίρετος μάχη։ — ԺԶ, 6 անիմաստ է "քուն թռուցեալ," ուղիղն է՝ "քնոյ թռուցեալ" որ նաեւ համար կ'ըսուի = ἀνιπταμένη φυλακή։ — ԻԱ, 9 "հայր քնոյ" միահուան համար, որ ընթեռնլու է՝ "հայր ժնոյ" = ὕπνου

[1] Ցարակուսական են օրինակի համար՝ Ե, 5 "Երկրաժեշտ գործոյ,". — ԺԳ, 9 "պնդաձոյ իմաստք" հարատուեթեան համար ընուած. Հոս պնդաձոյ թերեւս ուղղելի ընլալ "արծաթոյ" = ἀργυρικὸν, բայց տակաւին անստոյգ կը մնայ. յաջող չ'երեւնար նաեւ Վեն. Բառագրոց տեղւոյս մեկնութիւնը՝ (պնդաձոյ իմաստք) "անկեալ ինչ, եւ եղեալն ի միտս՝ անհաստատ եւ դիւրանցուկ՝ որպէս զերազ"։ — Ի, 2 ճաղճամահ ("կիսամահ" նշանակութեամբ) ուրիշ տեղ չենք գտներ, եւ արդեօք ուղի՞ղ ընթերցուած մըն է։ — Ուղի՞ղ է արդեօք նոյնպէս ԺԸ. 3 "անանդ վարէ" խօսքը, կամ Թ. 3 "սխմոռ խնդրելի" որ կրնայ ըստ ինքեան լաւ ընլալ. բայց լաւագոյն է ուղղել՝ "դժուարիմաց խնդրելի" = δυσνοούμενον ζήτημ ։ — Անհնար է Ե, 2 "չորջանակ երկոտասան ժամանակեան" ընթերցումն ընդունիլ, զոր "երկոտասանժամեան" ուղղեցի՝ ըստ յունին δωδεκάωρον, բայց արդեօք նախնական հայոյն մէջ չէ՞ր "երկոտասանժամանակեան" եւն։

πατήρ։ Համեմատելու է նաեւ ԺԶ, 13 «Նիւթոյ գործ» փխ. «Նիւթեալ գործի» Ի, 5 եւն եւն։ — Ի հարկէ ամէն տեղ չի զօրեր այս միջոցը։ Ի՞նչպէս ուղղելու է օրինակի համար նաւորդին համար բռուածը (ԺԵ, 7) «Ղօղորդ մեռելոյ,» որ չկայ յունին եւ արեւելեանց մէջ։ «Ղօղորդ» շատ դիւրաւ կրնայ «ղօ-գորդ» բառէն աղաւաղած ըլլալ եւ «ղօ-գորդ մեռելոյ» նաւորդի համար յարմար խօսք մըն է. բայց նաեւ այս կը պակսի յունին եւ արաբ.-եթովպ. բնագրաց մէջ։ Նոյնպէս յոյն բնագրէն դատելով (Է. 4) խօսքը «Նաւորդաց մխիթարութիւն» բաղադրութիւն մըն է երկու նախադասութեանց, այսինքն՝ «Նաւորդաց փոխաննեան, ճանապարհորդաց մխիթարութիւն։» Ի՞նչ էր հոս նախնական հայը. այս երկու բառերը դուրս ինկա՞ծ էին թէ այնպէս համառօտեալ էր արդէն նախնականը։ Այսպէս նաեւ Թ, 13—14 խօսքը՝ «տեսիլ յաւիտենական» ըլլալու է ըստ յունին՝ «տեսիլ ժամանակի. փոխեալ յաւիտենական։» Ի՞նչ էր հոս ալ նախնական հայը։

Որչափ ալ շատ տեղ աղաւաղած ըլլայ հայ բնագիրն, յընդհանուրն շատ առոյգ եւ հին լեզու մ'ունի։ Բազմութիւն մը բառերու եւ բացատրութեանց կը գտնենք հոս, որ միայն հնագոյն մատենից, գլխաւորաբար մեսրոպեան շրջանին կը վերաբերին, բառերուն իմաստներ՝ որ յետնոց քով գրեթէ բոլորովին մոռցուած են։ Օրինակի համար՝ Ժ, 1 «Նկար բնութեան» այսինքն «բնական» (= φυσική). ԺԲ, 8 «տան ձմեռն» (մրրիկ = χειμών). ԺԲ, 16 «պարտանք աներեւոյթ». ԺԴ, 5 «անխաբ ստացուած» (անկողոպտելի. հմմտ. Եղիշէ, Մատենագր. տպ. Վենետ. 1859, էջ 36, 29 «ոչ կարէք աւերել զանխաբ ամուրս իմ»). ԺԶ, 13 «Նիւթեալ գործի» (Թակարդ լարեալ). Ի, 3 «ողողիչ մահու.» Ի, 6 «պահակ ցպոյ». — այսպէս նաեւ ԺԳ, 3 «... չողեալ ընդ երկրի.»

ԺԳ, 4, 10 "կասկած անդուլ . . . ծփումն անդուլ„. ԺԵ, 5 "յոմերայնոյ նահապետի„. (մերկի հակառակորդ.) ԺԵ, 8 "նշոյլք կորստեան„. ԺԹ, 2 "բժշկաց ատուրք„ եւն եւն: Չեն պակսիր նաեւ գեղեցիկ բառակազմութիւններ եւ բացատրութիւններ ըստ հնագոյն ոգւոյն լեզուին, որոնք թարգմանութեանս յատուկ կ'երեւան, ինչպէս՝ ԺԷ, 8 "վաղվաղաբեկան„. ԺԸ, 6 "աղքատութեան հոյլոյն„ (= "հոյակոյն„, իբր՝ ազատ, գերիվերոյ) եւն: Ինչպէս մճիւները, նոյնպէս նաեւ Վարքին նոյն ընտիր եւ կորովի լեզուն կը ցուցընէ. այսպէս՝ "զմահաբեր վաղակաւորն ի վերայ խաղացուցեալ„. — "բան հաւ է բերանոյդ„ (հմմտ. Մարութաս ի Սոփերք, Ի, էջ 148, 16 "հաստատոյն օրհնութեանց է բերանոյ„, որ հոս ուրիշ իմաստ ունի, ինչպէս յաճախ են "հաստանել„ բային նման կազմութիւնք„. — "ոչ դարձաւ ի բանս իւր„, որ ճշդիւ նման է յունին. — "ձգեա զպարանոցդ„. — "իբրեւ ի վերայ օրինաց պնդեցար ի լռութեան„. — "երաշտացեալ բեկտիս . . . եւ կասես. ծաղր կրես„ եւն. — "Կիկղոփ էր այր անճոռնի եւ յաղթ„ եւն (հմմտ. Կիւրղ. էջ 84 "անճոռնիս զիշխանսն աւէ կամ զարս պատերազմողս.„ Եզնիկ, էջ 130 վիշապ "անճոռնի„.) եւն:

Այս ամէնը նկատելով՝ հայ թարգմանութեան մեծ հնութիւն մը կը ստիպուինք տալ: Վ. Հ. Գարեգին Վրդ., ինչպէս տեսանք, մինչեւ "ոսկեղէն դար„ կ'ուզէ հանել թարգմանութեանս ժամանակը: Եւ պէտք է ըսել որ կը համաձայնէինք, եւ նաեւ մեսրոպեան շրջանին կը վերագրէինք թարգմանութիւնս, եթէ չգտնուէին աստ անդ բառեր եւ բացատրութիւններ, որ այն կարգի թարգմանութեանց օտար են: Թերեւս ասոնք ալ յետոամուտ կամ յետոյ փոփոխուած ըլլան, ինչպէս շատ կը գտնենք այսպիսի փոփոխութիւններ հայ մատենից մէջ. սակայն առ այժմ ձեռագրաց

վկայութեամբ չենք կրնար հաստատել այսպիսի փոփոխութեանց արդեամբք մուտ գտած ըլլալը։ Զինչ եւ իցէ՝ Սեկունդոսի միայն լեզուէն դատելով, պէտք ենք անոր թարգմանութիւնն իբր Զ, առաւելն Է—Ը դարուն դնել։ Նոյնը կը հաստատուի նաեւ հայ մատենից վկայութեամբ, որուն նկատմամբ յաջորդովս կը խօսինք։

---

Ե.

Թէ Մխիթար Գօշ տեսած է Հայ Սեկունդոսը՝ վերը յիշեցինք։ Այս մասին յիշատակութիւն կը գտնենք նաեւ Միքայէլի Ասորւոյ Պատմութեան հայ թարգմանութեան մէջ, ուր կը կարդանք. "Յայսմ ժամանակի երեւեցաւ Սեկունդոս իմաստասէր լռակեցն„ ըստ համառօտ խմբագրութեան նոյն պատմութեան (տպ. Երուսաղէմ, 1871, էջ 116, 6), մինչ ընդարձակ խմբագրութիւնն այս խօսքն հետեւեալ կերպով ունի. "Զայսու ժամանակօք էր Սեկունդոս լռակեցն.„ (տպ. Երուսաղէմ, 1870, էջ 140, 24)։ Զարմանալի եղանակաւ Միքայէլ Ասորի, եթէ կրնանք այստեղ հայ թարգմանութեան վստահիլ, զՍեկունդոս ոչ թէ Ադրիանոսի՝ այլ Տրայանու ժամանակ կը դնէ։ Սեկունդոսի յիշատակութենէն ետքը կը սկսի Ադրիանու պատմութիւնը՝ սկսելով այսպէս. "Յետ Տրայանու թագաւորեաց Անդրիանոս ամս քսան եւ մի.„ (ըստ տպ. 1870, էջ 141, 4, իսկ տպ. 1871, էջ 116. 8 "Զկնի Տրայիանոսի թագաւորեաց Ադրիանոս„ եւն։)[1] Եւ որովհետեւ ապահով կ'երեւայ որ այս խօսքն ասորի բնագրին մէջ կար, ուստի ասկէ չի հետեւիր թէ պատմութեան հայ թարգմանիչը տեսած ըլլայ Սեկունդոսի հայերէնը,

---

1 Langlois (Chronique de Michel le Grand Venise 1868, p. 105, n. 3) կը յիշէ թէ նաեւ Աբուլֆարաճ (Բար-Հեբրէոս) կը յիշատակէ զՍեկունդոս իւր "Ասորական Ժամանակագրութեան„ մէջ (էջ 54)։

թէեւ այս շատ կարելի էր։ Զհայ Սեկունդոսը կը յիշէ Մխիթար Այրիվանեցի իւր ժամանակագրութեան մէջ, որ Վեսպասիանու թագաւորութեան ժամանակը յիշատակելէն ետքը, սա ծանօթութիւնը կը գրէ (ցամն Տեառն 132) "Արտաշէս շինէ զԱրտաշատ։ Սեկունդոս լռակեաց իմաստասէր։"[1] Ամէնէն յարգին է հոս Ուխտանէսպատմիչին յիշատակածը, զոր մանրամասն յիշելու ենք։

Ուխտանէս եկեղեցական պատմիչ մըն է անձուկ նշանակութեամբ։ Իւր գրութեան մանաւանդ Բ Մասն կը խօսի գրեթէ մի միայն Յունաց, Հայոց եւ Վրաց մէջ եղած կրօնական վէճերուն վրայ։ Առաջին մասին մէջ ուրիշ նիւթոց վրայ ալ գրած է այլեւայլ գլուխներ՝ մեծաւ մասամբ հին գրութիւններէն օրինակելով։ Ադրիանու կայսեր վրայ հետեւեալը կը գտնենք գրուած.[2] "Թագաւորէ Ատրիանոս ամս քսան եւ մին, որ երկոտասաներորդ ի թուոյ թագաւորացն Յունաց։ Սա եկն ի գաւառն Աթենացւոց, եւ հարցանէր վասն Սեկունդոսի փիլիսոփայի աթենացւոյ, որ զլեզուն նուաճեալ էր ի վարս ժուժկալութեան՝ զՊիթագորէ նախանձն առեալ. եւ զամենայն ժամանակս կենաց իւրոց ի լռութեան զլեզուն նուաճեաց. եւ բազում բան խօսեցեալ ընդ նմա պէսպէս հնարիւք՝ ոչ կարաց բանս լսել ի նմանէ, բայց միայն ի ձեռն գրոց բանս ինչ առակաց։" Այս կտորը նշանակալից է ոչ միայն անոր համար որ կը ցուցընէ թէ հայ Սեկունդոսն Ժ դարէն շատ յառաջ ծանօթ էր, այլեւ անոր համար՝ որ կը վկայէ թէ Ուխտանէս հայերէնին ամբողջական օրինակ մ'առջեւն ունէր։ Վասն զի այնպիսի մանրամասնութիւններ կու տայ

---

[1] Մխիթարայ Այրիվանեցւոյ Պատմութիւն, Հրատ. Ք. Պատկանեան, Պետրբ. 1867, էջ 59. իսկ Հրատ. Էմին, Մոսկ. 1860, էջ 45 (յամէ Տեառն 89)։

[2] Ուխտանէս եպիսկոպոս, Պատմութիւն Հայոց. Վաղարշապատ, 1871, էջ 58—59։

Ուխտանէս, որ այժմու Հայերէնին մէջ կը պակսին։ Ըստ Ուխտանիսի՝ Սեկունդոս ժուժկալ կեանք մը կը վարէր՝ Պիւթագորեան ըլլալով եւ “զՊիւթագորէ նախանձն առեալ։„ Այժմու Հայերէնին մէջ չկայ այս տեղեկութիւնն՝ Վարուց սկզբան պակսելովն. բայց կար հոն Ուխտանիսի օրինակին մէջ, եւ այն Վարուց առաջին տողերուն մէջ, ինչպէս յոյնը կը վկայէ, որ այսպէս կը սկսի. Σεκοῦνδος ἐγένετο φιλόσοφος· οὗτος ἐφιλοσόφησε τὸν ἅπαντα χρόνον, σιωπὴν ἀσκήσας, Πυθαγορικὸν ἐζηλωκὼς βίον. (“Սեկունդոս եղեւ իմաստասէր. սա իմաստասիրեաց զամենայն ժամանակս լռութեամբ կրթեալ, Նախանձաւոր եղեալ Պիւթագորական կենաց։„) Տարակոյս չկայ ուրեմն որ Վարուց սկիզբն՝ որ այժմ կը պակսի, կար Ուխտանիսի օրինակին մէջ, մանաւանդ որ Ուխտանէս ուրիշ լեզուի մը հմուտ եղած չ'երեւար։ Բաց աստի իւր ըրած կոչումն Վարուց Հայերէնին քանի մ'ասութիւնք պահած է. այսպէս է՝ Սեկունդոսի Վճռոց “առակ„ կոչումն։

Հայերէն թարգմանութիւնն ուստի Ուխտանէսէն, որ իբր Ժ դարուն կը գրէր, շատ յառաջ ծանօթ էր։ Թարգմանիչն ալ կրնար թերեւս կարծուիլ Ստեփանոս Սիւնեցի (Ը դար), որ նման գործքեր փոխած է Հայերէնի. (տես Կաղանկատուացի, Պատմ. գ, 19, տպ. Մոսկ. էջ 260—61։) Սակայն այս կարծիքը դեռ եւս չէ ապացուցեալ. մանաւանդ թէ ըստ մեզ Սեկունդոսի թարգմանութիւնն շատ աւելի հին է, այնպէս որ “Բանք իմաստասիրաց„ գործոյն հայ թարգմանիչը տեսած կ'երեւայ զայն։ Այս “Բանք իմաստասիրաց„ ժողովածոյն շատ այլակերպութիւններ կրած է դժբախտաբար, բայց էական մասն շատ հին է եւ արդէն Է դարուն առհասարակ ծանօթ եղած կ'երեւայ։ Սեկունդոսի անուամբ քանի մ'ասացուածներ կան այս հաւաքման մէջ. ոմանք գործ

չունին մեր Լուակացին հետ, այլ՝ անկէ առնուած են: Լուակացին հետ կապ չունի օրինակի համար հետեւեալ ասացուածն (Թ, 10.) “Սեկունդոսի տեսեալ զոմն զի առ վտանգի մահ կոչէր անձին, ասէ. Ո՛վ դու. ընդէ՞ր կոչես զայն, որ թէպէտ ոչ կոչես՝ ինքնակոչ գայ:”[1] Սեկունդոսի Վճռիներէն են ընդհակառակն ուրիշ ասացուածներ: Հատ մը կայ առնուած ԻԱ Վճռէն (Մահ), եւ է այսպէս (Թ, 19).[2] “Սեկունդոս ըմահն քուն ասաց (ձեռ. Փարիզի լաւ եւս՝ “ասէ”)[3] եւ երկիւղ մեծատանց եւ խղճք աղքատաց:” Համեմատելու է սոր հետ ԻԱ, 6, 7, 9, ուր կ'ըսուի թէ Մահն ըլլայ “մեծատանց երկիւղ. աղքատաց պանծալի (տես ԻԱ, 4 լաւ եւս՝ “խղճք”) հայր քնոյ:” Միտ դրուի որ այստեղ “Բանք իմաստասիրաց” հայերէն Սեկունդոսի հետ աւելի կը համաձայնի քան յունին. վասն զի վերջինս թէեւ ունի “մեծատանց երկիւղ (πλουσίων φόβος), բայց չունի “աղքատաց խղճք”, այլ՝ “աղքատաց մխիթարութիւն” կամ “ցանկութիւն” (πενήτων παραμυθία կամ ἐπιθυμία ըստ G, եւ παραλαλία, “բաջաղանք”, ըստ P.) երկուքն ալ չէին կրնար “խղճք” թարգմանուիլ, որ ԻԱ, 4 տեղէն առնուած է, ուր յոյնը նոյնպէս “ցանկութիւն” կ'ըսէ. (“պանծալի” բառին վրայ տես վարը ԻԱ, 7 տեղւոյ ծանօթութիւնը:)

Ուրիշ կոչումն ալ կայ, որ Սեկունդոսի ԺԲ (Կէն) վճռին հետ կապ ունի եւ կը պակսի Վենետ-

---

1 Սոփերք, Ա, էջ 32: Այս վճռին վրայ կը խօսի Թեզա (էջ 12) եւ կ'ըսէ թէ ասացուածիս յոյն բնագիրը Բիասոյ է. (Mullach, I 230, թ. 29:)

2 Սոփերք Ա, էջ 32: Ասոր վրայ կը խօսի Թեզա (էջ 22) եւ կ'ըսէ թէ Մարսէյլի տպագրութեան մէջ կը պակսի:

3 Փարիզի Ձեռագիրը (106, թղ. 247b) զայս եւ նախընթացը միացուցած է այսպէս. “Սեկունդոս ըմահն քուն ասէ, եւ երկիւղ մեծատանց եւ խղճք աղքատաց: Սա տեսեալ զոմն զի առ վտանգի մահ կոչէր անձին, ասէ. Ո՛վ դու ընդէ՞ր կոչես զայն որ թէպէտ ոչ կոչես՝ ինքն անկոչ գայ:”

կոյ տպագրութեան մէջ, եւ է այսպէս (Է, 3.)՝ «Սեկունդոս ի հարցանելն թէ զի՞նչ է կին, ասէ. ընտանի գազան. մարդոյ կործանումն. տանն մրրիկ. անպարտելի պատերազմ. կենաց թշնամի. աթոռակից վիշապ։» Այս կոչումն նշանաւոր է այնու որ այնպիսի կտորներ ունի որ ոչ յունարէնին եւ ոչ Հայոյն մէջ կան։ «Ընտանի գազան» բառ առ բառ ԺԲ, 2 խօսքն է, ինչպէս նաեւ «տան մրրիկ» ԺԲ, 8 տեղէն (— որուն «ձմեռն» հնագոյն աստցուածն = χειμών, հոս սովորական բառով մը բացատրուեր է։) «Կենաց թշնամի» խօսքը չկայ ոչ՛ Հայ Սեկունդոսի մէջ, բայց ըլլալու էր նախնականին՝ ինչպէս կը վկայէ յոյնը՝ βίου ἄλωσις ըսելով։ Կը մնան երեք նախադասութիւնք, որ թէ Հայոյն եւ թէ յունին մէջ կը պակսին։ Ի՞նչպէս մեկնելու է զասոնք. կայի՞ն ասոնք նախնական Հայոյն մէջ թէ ուրիշ, տարբեր յոյն բնագրէ մը թարգմանուած են։ Նոյն խնդիրն ընել կրնանք բուն այն ընդարձակ Հայ կտորին համար, որմէ ասոնք քաղուած են, եւ զորքիչ մ՝ետքը պիտի յիշենք։ Այս խնդիրն որոշել դժուար է. մանաւանդ որ ինչ ինչ բան անշուշտ յետսամուտ յաւելուած է. տարակուսական է այսպէս «մարդոյ կործանումն» խօսքն. իսկ «աթոռակից վիշապ» պէտք է ուղղել «աթոռակից վիշապ.» (տես քիչ մը վարը)։

Մեր Մատենադարանի Թ. 29 ձեռագրին մէջ (Թղ. 221b) կայ նաեւ հետեւեալ ասացուածը. «Սեկունդոս (ձեռ. «Մեկունդ») ասէ. կին մի գլորեցաւ եւ անկաւ. մինչդեռ մեռանէր՝ ասէ ցնա ընկեր իւր. Յոյժ տրտմեցայ՝ զի ու՞ր բերկար եւ այդ մեռար, զի զմահ ամենայն ոք մեռանի։» Լռակացի Աճառոց մէջ չկայ այս, որ գոնէ «կանանց թշնամի» Սեկունդոսի շատ լաւ կը յարմարի։

---

1 Անդ, Թղ. 243a։

Ծանօթ է որ այս կարգի գրութիւնք, ուստի թէ՛ Վճիռք եւ թէ՛ մանաւանդ "Բանք իմաստասիրաց„ միշտ ենթակայ են փոփոխութեան, եւ նաեւ անոնց լեզուն՝ ռամկանալու: Օրինակի համար Սեկունդոսի "Կին„ վճիռը "Բանք իմաստասիրաց„ գրութեան ուշ ժամանակի մէկ հաւաքման մէջ բոլորովին կերպարանափոխեալ դիմօք կը ներկայանայ մեզ, այսինքն Մարսէյլ 1675ին տպագրուած գրքի մը մէջ, որուն տիտղոսն է՝ "Գիրք վայելուչ եւ հարկաւոր հանուրց Հայկազունեաց բարեսիրաց„ եւն:[1] Հայագէտն Թէզա[2] քննած է տպագրութեանս բովանդակութիւնն եւ քանի մ'օրինակներ յառաջ բերած, ի մասնաւորի այն գրքին մէջ գտնուած (էջ 122) Սեկունդոսի վճիռը ("Զի՞նչ է կին չար„) թարգմանած եւ համեմատած: Թէպէտ Մարսէյլի այս տպագրութիւնը չունինք այժմ առ ձեռն, եւ թէեւ Թէզա ալ չէ հաղորդած հայ բնագիրը, սակայն յաջորդ կոչումն չի տարբերիր տպագրեալէն: Մեր Մատենադարանի Թ. 29 ձեռագիրն ունի այսպէս (Թղ. 219a) "Սեկունդոսի հարցեալ թէ Զի՞նչ է կին չար, ասէ. Առն ընկղմն. (= ԺԲ, 9 առանց "անժոյժ„ բառի.) Տան մրրիկ (ուստի ոչ ճիշդ ԺԲ, 8, այլ "Բանք իմ.„ ԺԶ, 9 ըստ ձեռ. փար.) Անհոգութեան արգելուած. (= Յոյն՝ ἀμεριμνίας ἐμπόδιον, որ ուստի Սեկունդոսի հայ թարգմանութեան նախնականին մէջ ըլլալու էր.) Կենաց խողողուէն (Համմտ. βίου ἅλωσις եւ "Բանք իմ.„ ԺԶ 9 ըստ ձեռ. փար. "կենաց թշնամի.„ ուստի այսպիսի բան մը գտնուելու էր նախնականին մէջ.) Հանապազօրդեան մախանք (ԺԲ, 7 "վնաս„ ունի = ζημία. Թէզա կ'ենթադրէ որ հոս հայն ζηλια տեսած ըլլայ եւ ζῆλοςի հաւասար կարծած.) Բաղձալի պատերազմ. (ԺԲ,

---

[1] Համմտ. Հայկական Մատենագիտութիւն, Վենետ. 1883: էջ 133:

[2] Թէզա, էջ 19 եւն, մանաւանդ էջ 21—22, ծան. 2:

13 ուր «կռիւ» կ'ըսուի, բայց Հայոյն յատուկ «Բաղմադէմն» կը գտնենք երկուքին մէջ.) Հացաւէց փողան. (Թեգա կ'ենթադրէ որ յոյն ձեռագրաց συνεσθιόμενον «ընտանի» բառը σύν ιθηρίον կարդացուած ըլլայ.) Աճապակէց վիշապ.[1] (Համմտ. συντηρουμένη δράκαινα, որ ըլլալու էր նախնական Հայոյն մէջ. «Բանք. Իմ.» ըստ ձեռ. Փար. «վիշապ» կը կարդայ սխալմամբ, ինչպէս տեսանք.) Կենդանի շար. (ԺԲ, 17 լաւ եւս «դիւական չար.» կը պակսի Մարսէյլի տպագրութեան մէջ.) Իժ շինարի- դո- տեալ. (= ԺԲ, 4). Ինքնայօժար կամի. (= ԺԲ, 5). Անձայժ գիշերնիան. (= ԺԲ, 9 ուստի լաւ քան Մարսէյլի տպ. «անժուժ գիշութիւն,» զոր Թեգա կ'ուզէր «անժոյժ գիտութեան» ուղղել.) Շնալոյ պարծանք. (= ԺԲ, 10. կը պակսի ի Մարս.) Սուր որ ով տայ շփալ. (= ԺԲ, 12. տպ. Մարսէյլ այլազգ ըլլալու է, զոր Թեգա կը թարգմանէ spada trafiggitrice.) Կատու երկիմբր. հատու (հատուա՞) խոս- փընկէց. ադամես պօպօսող. գայլ արաբացի. Ծանադամ հաճել (հաճէ՞ւ) է [illegible]. (տպ. Մարս. կը յաւելու. «ընդվզայր դաւգանն։») — Այս համեմատութենէն կը հետեւի նախ՝ որ այս կոչումն ընողն ունէր իրեն առջեւ Սեկունդոսի Հայերէնը, որմէ շատ բան օրինակած է բառ առ բառ, նաեւ ուր յատուկ բան մ'ունէր Հայն. երկրորդ՝ այն Հայերէնը շատ մերձաւոր էր նախնական Հայ թարգմանութեան եւ ունէր այնպիսի կտորներ, որ այժմու Հայերէնէն դուրս ինկած են. երրորդ՝ աւելցուցած է հաւաքիչն շատ մը խօսքեր ուրիշ աղբիւրէ մը, որոնք թէ Հայոյն եւ թէ յունին մէջ չկան. վերջապէս չորրորդ՝ ամբողջն իւր այժմու ձեւը շատ ուշ ժամանակ առած ըլլալու է, ինչպէս կը ցուցընեն ռամկական բացատրութիւնքն։

---

[1] Այս խօսքը կարդացած կ'երեւայ Սարգիս, որմէ կոչումն կ'ընէ Վլեն. Բառ. (Ա, էջ 12գ) «ընդ անզգամ կին, ընդ աճապակէց ժանտն»։

քննութեանս այս մասը չկնքած, պէտք կը համարինք յիշել խնդիր մը, զոր նախ Ա. Պաումկարթներ յուզեց "Պիտոյից Գրոց" իւր ընտիր հետազօտութեան մէջ:[1] Իրաւամբք միտ դնել տուած է որ (իբր 660ի գրուած) Սեբէոսի քով կայ մանրավէպ մ'որ նման է Մ. Խորենացւոյ ընծայուած ճարտարախօսութեան մէկ տեղւոյն (— որ Է—Զ դարէն յառաջ դժուարաւ գրուած է:) Սեբէոսի այն կտորը Պաումկաթներ օրինակուած կը համարի Պիտոյից գրքէն, իսկ Պիտոյից գրոց խօսքն ալ ոչ թէ Մուլլախի (Fragm. Phil. Gr. II, 115 b N. 4) հաւաքած տեղերէն, այլ Թէոնի նախակրթանքէն (Theon, progymn. c. 5, Հրտ. Watz, Ret. Gr. I, 204, 3.) Պաումկարթներ կը կնքէ իւր քննութիւնն այսպէս. "Այս փոխառութեանց մէջ կրնանք որոշ կերպով տեսնել որ յունարէն θεσμοφορεῖον բառն նախ Մ. Խորենացի երկդիմի "տէրունիք" բառով թարգմանած է, որ թէ մեհեան եւ թէ արքունի գաւառ կրնայ նշանակել, (— "տէրունիք" բառին վերջին նշանակութիւնը գոնէ տարակուսական է. —) եւ յետոյ Սեբէոս Խորենացւոյ "տէրունիք" բառին երկդիմութիւնն սխալ կերպով որոշած է "արքունիք" դնելով անոր տեղ. Սեբէոսի այս տեղւոյն մանրավէպո-անցած ըլլալը է Պիտառութեանց:" Անշուշտ պէտք ենք ընդունիլ որ Սեբէոսի այն տեղը կը համաձայնի Պիտոյից գրոց Ա, 5 տեղւոյն, մանաւանդ որ Սեբէոսի անիմաստ "արքունիք" բառն աղաւաղութիւն մ'ըլլալու է "տէրունիք" բառին: Բայց ի՞նչ կը հասկընայ Պաումկարթներ ըսելով թէ մանրավէպս անցած է Սեբէոսէն նաեւ Պիտառութեանց: Անշուշտ կ'ակնարկէ գիտնականը Վենետ. Բառագրոց (Բ, 873b) կոչումն, ուր ի մեկնութիւն տէրունիք = κυριακόν բառին յառաջ կը

[1] ZDMG, 1886, III. p. 465—6.

բերուի սա կտորը. «Արժան է մտանել ի տէրունիս . . . ի տէրունեանն տաճարս. Պիտ.:» Բայց հոս Պիտ. չի կրնար «Պիտոյութիւնք» նշանակել, այլ միայն «Պիտոյից Գիրք» վասն զի Բառգիրքն հոս ուրիշ տեղէ կոչումն չ'ըներ, բայց եթէ նոյն իսկ Պիտոյից Գրոց Ա, 5 կտորէն, ինչպէս «ի տէրունեանն տաճարս» բառերն ալ կը վկայեն. (տես Մ. Խոր. տպ. Վենետ. 1842, էջ 353, 26:) Այս անցած է մանրավէպս նաեւ Պիտոյութեանց, որոնցմէ կոչումն չ'ըներ Բառգիրքն: Միեւնոյն մանրավէպը կը գտնենք «Բանք Իմաստասիրաց» գրոց մէջ. բայց այս տեղը կը պակսի Սոփերաց տպագրութեան մէջ, եւ այնպիսի ձեւով է, որ չի կրնար Սեբէոսէն օրինակուած ըլլալ, նաեւ ոչ Պիտոյից Գրոց Ա, 5 տեղէն, եթէ պէտք չենք ասոր ճիշդ հակառակը պնդել. վասն զի ճարտասանութեան հեղինակը կ'երեւայ թէ կարդացած է «Բանք Իմ.» գրութիւնն: Յաջորդումս դէմ առ դէմ կը դնենք երեք բնագիրքն, որմէ կը տեսնուի որ «Բանք Իմ.» գրութեան կտորն ամենէն հինը կ'երեւայ եւ անոր հետ կապ մ'ունին Սեբէոսի խօսքը:

### 1. Բանք Իմաստասիրաց

(Ժ Ը, 18. ձեռ. փար.)

«Զթէոմնաս ոմն կին պիթագորական հարցեալ թէ յետ քանի՞ աւուր մտցէ ի տուն կնոջ այր որ լինի ընդ կնոջ, ասէ. յիւրն՝ նոյն աւրին, եւ յաւտարին՝ ոչ բնաւ:»

### 2. Պիտոյից Գիրք

(Ա, 5. տպ. Վենետ. էջ 352:)

«Զթէանով ոմն պիւթագորական եհարց, եթէ յետ քանի՞ աւուր կնոջ առ այր մերձաւորութեան

### 3. Սեբէոս

(Գ, 33. հրտ. Պատկ. էջ 122, 15.)

«Զթէանով (ձեռ. «Աթէանով») ոմն կին (ձեռ. «զկին») մարդ՝ զաշակերտ Պիւթագորայ՝ հարցեալ

արժան է մնանել ի տէրունիսն։ Եւ նա ասէ. յիւրմէն՝ նոյն օրին, յօտարէն՝ եւ ոչ բնաւ երբէք։„

եղեւ, թէ յետ քանի՞ աւուր մերձաւորութեանն ի կին մարդ, արժան է յարքունիս մնանել։ Եւ նա ասէ. յիւրմէն աւրէն է, յաւտարէն՝ եւ ոչ բնաւ։„

Երեք բնագիրքս ապահովապէս կապ ունին իրարու հետ։ Մովսէս քանի մը տեղ կը միաբանի “Բանք Իմ.„ գրութեան հետ, այսպէս՝ “յիւրմէն՝ նոյն օրին„ (= Բանք Իմ. “յիւրն՝ նոյն աւրին.„) “եւ յօտարէն ոչ բնաւ երբէք„ (= Բանք. “եւ յաւտարին՝ ոչ բնաւ։„) Մնացեալն ալ ունի նմանութիւններ, նոյն բառերն՝ բայց ուրիշ կերպով բացատրուած։ Իսկ Սեբէոս երկուքին հետ ալ կը համաձայնի, վասն զի մէկ կողմանէ “Ջթէանով ոմն,„ “մերձաւորութիւն„, “տէրունիք„ եւն կը կարդայ. (= Պիտ.) միւս կողմանէ կը միաբանի “Բանք Իմ.„ գրութեան հետ, “ոմն կին„ կարեւոր ընթերցմամբ։ Թէոնի այն տեղն, որմէ առնուած կ'ըսէ Պաումկարթնէր Պիտոյից Գրոց յիշեալ խօսքն, հետեւեալն է. Θεανὼ ἡ Πυθαγορικὴ φιλόσοφος, ἐρωτηθεῖσα ὑπό τινος, ποσταία γυνὴ ἀπ'ἀνδρὸς καθαρὰ εἰς τὸ θεσμοφορεῖον κάτεισιν, εἶπεν. ἀπὸ μὲν τοῦ ἰδίου παραχρῆμα, ἀπὸ δὲ τοῦ ἀλλοτρίου οὐδέποτε. Արդ Թէոնի այս խօսքին թարգմանութիւնն են վերը համեմատուածները։ Կարծենք պէտք է ժխտել։ Գոնէ Թէոնի խօսքն եւ ոչ մէկուն ճշդիւ կը համաձայնի. բայց կայ Թէոնի այս խօսքն ալ թարգմանուած ճշդիւ, եւ է այսպէս. (Ձեռ. մեր Մատ. Թ. 29, թղ. 217 a) “Թէանով պիւթագորեան (ձեռ. “պիթագորոն„) հարցեալ՝ քանօրեայ՞ կին յառնէ մաքուր (ուստի ճիշդ = γυνὴ ἀπ'ἀνδρὸς καθαρὰ) ի Թեսմոփորոնն (ուստի բառ առ բառ εἰς τὸ θεσμοφοροῖον) իջանէ (= κάτεισιν), ասաց. յիւրմէն (ձեռ. “յիւրէն„) նոյն ժամայն, յօտարէն՝ եւ ոչ երբէք։„

Ա՛յս է Թէոնի խօսքին թարգմանութիւնն եւ ո՛չ վերինք, որ ուրիշ յոյն բնագրէ մը թարգմանուած ըլլալու են։ Արդ խառիւ խօսելով՝ թէ “Բանք Իմ.„ եւ թէ Պիտոյից Գիրքն կրնան յիշեալ կտորն՝ իրարմէ անկախ՝ միեւնոյն յոյն բնագրէն թարգմանած ըլլալ։ Բայց աւելի հաւանական կ'երեւայ ընդունիլ որ Պիտոյից Գրոց հեղինակը “Բանք. Իմ.„ գրութեան խօսքն գործածած ըլլայ, բայց ոչ միշտ բառ առ բառ օրինակած անկէ։ Սեբէոս ստուգիւ կարդացած է Պիտոյից Գրոց խօսքը, բայց նաեւ “Բանք Իմ.„ որով մերթ միոյն մերթ միւսին հետ կը միաբանի։ Բաց աստի “Բանք Իմաստասիրաց„ գրոց նախնականը կ'ակնարկէ անշուշտ Սեբէոսի քիչ մը յառաջ ըսածը. (Հրտ. Պատկ. էջ 132, 8 եւն) “Այլ տեսանեմք՝ զի եւ կարի իսկ ի հինսն եւ յառաջին փիլիսոփայսն պիղծ եւ գարշելի համարեալ էր պոռնկութիւն։ Զի Սողոնի Աթենացւոյ աւրէնս եդեալ Աթենացւոցն ի բաց կալ ի պոռնկութենէն եւ ոչ ընդունել զպոռնկորդին ի ժառանգութիւն։ Ղիկուրգոս Ղակիդեմոնացի աւրէնս եդ Ղակեդովմայեցւոց՝ ի բաց կալ ի պոռնկութենէն, եւ ոչ թաղել իսկ զպոռնկորդին։„ Եթէ ուղիղ է մեր կարծիքը, ցուցուած կ'ըլլայ ասով որ “Բանք Իմ.„ 660էն շատ յառաջ թարգմանուած էին, իսկ Սեկունդոս աւելի կանուխ։

Այս շեղմունքէն ետքը դառնանք վերստին Սեկունդոսի հայերէն թարգմանութեան, եւ քիչ մ'աւելի մերձուստ նկատենք զայն։

---

## Զ.

Յոյն բնագրաց որո՞ւն հետ կը համաձայնի հայն։ Ստուգիւ եւ ո՛չ մէկուն հետ բոլորովին։ Այն բազմաթիւ դիպաց դէմ՝ որոնց մէջ հայն Փարիզեան (P) ձեռագրին կը համաձայնի, կան նոյնչափ բազմաթիւ դէպքեր, որոնց մէջ Կուտինեան ձե-

ռագրին (G) կը համընթանայ. յատկապէս Օքս-ֆորտեան ձեռագրին (Ox.) հետ շատ քիչ կապ ունի հայն։

Աւելորդ չէ քանի մ'օրինակ յիշել հոս։ Հ (= Հայ բնագիրը) կը միաբանի Pի հետ ի միջի այլոց՝ (Գ, 2) "պսակ ծովեղէն" = θαλάσσιον στεφάνωμα. (Զ, 6) "զգեստ պտղոց" = καρπῶν περιβόλαιον (նոյնը նաեւ Ox.), 7 "անանց ճառագայթ" = ἄσβεστος ἀκτίς. — այսպէս նաեւ (Ը, 6) "Մայր պտղոց." (Թ, 5) "գործի աճառապինդ." (ԺԲ, 15) "սատար ի ծնունդս մարդկան." = ἀνθρωποποιὸν ὑπούργημα. (ԺԵ, 3) "ուղեկից հողմոց." (անդ, 9) "ծովակաց մենամարտիկ." (ԺԶ. 11) "ձի ծովեղէն." (ԺԸ, 4) "առանց ծովու վաճառական" եւն եւն։ — Ընդհակառակն Հ կը համաձայնի Կուտինեանին հետ, ի միջի այլոց՝ (Ե, Ծ) "յուշարար անդադար" = παλίνδρομος ἀνάμνησις (Թ, 8) "բարի հարեւանցիկ." = ἀπαράμονον ἀγαθόν, 9 "կենաց մաշիչ" = ζωῆς δαπάνημα (ԺԲ, 8) "տան ձմեռն." (անդ, 9) "անժոյժ առն ընկղմիչ." (ԺԴ, 8) "ստացուած որիշ ի զրպարտէ." (անդ, 11.) "բախտ անհոգ.". (ԺԶ, 7) "բախտ կապեալ." (անդ, 8) "խաղալիկ հողմոց." եւն եւն։ Բաց աստի Հ նշանաւոր կէտի մը մէջ կը համաձայնի Gի հետ. վասն զի Հ ունի ԺԷ վճիռը մենամարտութեան նկատմամբ, զոր միայն G ունի. մինչեւ անգամ անոր սխալ ընթերցումն Τί ἐστι μοναχός; (փխ. μονόμαχος) պահած ըլլալով՝ "Զի՞նչ է միայնակեցութիւն։"

Յայտնի է ուրեմն որ հայն բոլորովին անկախ յոյն բնագիր մը կը ներկայացընէ, որ թէ P եւ թէ G ձեռագրէն կը շեղի, մերթ մին եւ մերթ միւսը կը հաստատէ։ Կը գտնուին նաեւ տեղեր, որոնց կէսը միոյն եւ կէսը միւսին միաբան է։ Օրինակի համար ԺԶ, 10, 11 խօսքը, ուր նաւու համար կ'ըսուի թէ ըլլայ "Նաւուն փայտեղէն. ձի ծովեղէն։" G ունի սոր

Ուխտանէս, որ այժմու Հայերէնին մէջ կը պակսին: Ըստ Ուխտանիսի՝ Սեկունդոս ժուժկալ կեանք մը կը վարէր՝ Պիւթագորեան ըլլալով եւ “զՊիւթագորէ նախանձն առեալ:„ Այժմու Հայերէնին մէջ չկայ այս տեղեկութիւնն՝ Վարուց սկզբան պակսելովն. բայց կար հոն Ուխտանիսի օրինակին մէջ, եւ այն Վարուց առաջին տողերուն մէջ, ինչպէս յոյնը կը վկայէ, որ այսպէս կը սկսի. Σεκοῦνδος ἐγένετο φιλόσοφος· οὗτος ἐφιλοσόφησε τὸν ἅπαντα χρόνον, σιωπὴν ἀσκήσας, Π υ θ α γ ο ρ ι κ ὸ ν ἐ ζ η λ ω κ ὼ ς β ί ο ν. (“Սեկունդոս եղեւ իմաստասէր. սա իմաստասիրեաց զամենայն ժամանակս լռութեամբ կրթեալ, Նախանձաւոր եղեալ Պիւթագորական կենաց:„) Տարակոյս չկայ ուրեմն որ Վարուց սկիզբն՝ որ այժմ կը պակսի, կար Ուխտանիսի օրինակին մէջ, մանաւանդ որ Ուխտանէս ուրիշ լեզուի մը հմուտ եղած չ'երեւար: Բաց աստի իւր ըրած կոչումն Վարուց հայերէնին քանի մ'ասութիւնք պահած է. այսպէս է՝ Սեկունդոսի Վճռոց “տուաչ„ կոչումն:

Հայերէն թարգմանութիւնն ուստի Ուխտանէսէն, որ իբր Ժ դարուն կը գրէր, շատ յառաջ ծանօթ էր: Թարգմանիչն ալ կրնար թերեւս կարծուիլ Ստեփանոս Սիւնեցի (Ը դար), որ նման գործքեր փոխած է հայերէնի. (տես Կաղանկատուացի, Պատմ. Գ, 19, տպ. Մոսկ. էջ 260—61:) Սակայն այս կարծիքը դեռ եւս չէ ապացուցեալ. մանաւանդ թէ ըստ մեզ Սեկունդոսի թարգմանութիւնն շատ աւելի հին է, այնպէս որ “Բանք Իմաստասիրաց„ գործոյն հայ թարգմանիչը տեսած կ'երեւայ զայն: Այս “Բանք Իմաստասիրաց„ ժողովածոյն շատ այլակերպութիւններ կրած է դժբախտաբար, բայց էական մասն շատ հին է եւ արդէն Ը դարուն առհասարակ ծանօթ եղած կ'երեւայ: Սեկունդոսի անուամբ քանի մ'ասացուածներ կան այս հաւաքման մէջ. ոմանք գործ

չունին մեր Լռակացին հետ, այլ.ք անկէ առնուած են։ Լռակացին հետ կապ չունի օրինակի համար հետեւեալ ասացուածն (Թ, 10.) "Սեկոնդոս տեսեալ զոմն զի առ վտանգի մահ կոչէր անձին, ասէ. Ո՛վ դու. ընդէ՞ր կոչես զայն, որ թէպէտ ոչ կոչես՝ ինքնակոչ գայ։"[1] Սեկունդոսի Վճիռներէն են ընդհակառակն ուրիշ ասացուածներ։ Հատ մը կայ առնուած ԻԱ Վճռէն (Մահ), եւ է այսպէս (Թ, 19).[2] "Սեկոնդոս զմահն քուն ասաց (ձեռ. Փարիզի լաւ եւս՝ "ասէ")[3] եւ երկիւղ մեծատանց եւ խղճք աղքատաց։" Համեմատելու է ասոր հետ ԻԱ, 6, 7, 9, ուր կ'ըսուի թէ Մահն ըլլայ "մեծատանց երկիւղ. աղքատաց պանծալի (տես ԻԱ, 4 լաւ եւս՝ "խղճք") հայր քնոյ։" Միտ դրուի որ այստեղ "Բանք իմաստասիրաց" հայերէն Սեկունդոսի հետ աւելի կը համաձայնի քան յունին. վասն զի վերջինս թէեւ ունի "մեծատանց երկիւղ (πλουσίων φόβος), բայց չունի "աղքատաց խղճք", այլ՝ "աղքատաց մխիթարութիւն" կամ "ցանկութիւն" (πενήτων παραμυθία կամ ἐπιθυμία ըստ G, եւ παραλαλία, "բաղձանք, ըստ P.) երկուքն ալ չէին կրնար "խղճք" թարգմանուիլ, որ ԻԱ, 4 տեղէն առնուած է, ուր յոյնը նոյնպէս "ցանկութիւն" կ'ըսէ. ("պանծալի" բառին վրայ տես վարը ԻԱ, 7 տեղւոյ ծանօթութիւնը։)

Ուրիշ կոչումն ալ կայ, որ Սեկունդոսի ԺԲ (Կին) վճռին հետ կապ ունի եւ կը պակսի Վենետ-

---

[1] Սոփերք, Ա, էջ 32։ Այս վճռին վրայ կը խօսի Թեզա (էջ 12) եւ կ'ըսէ թէ ասացուածիս յոյն բնագիրը Բիասայ է. (Mullach, I 230, Թ. 29։)

[2] Սոփերք Ա, էջ 32։ Ասոր վրայ կը խօսի Թեզա (էջ 22) եւ կ'ըսէ թէ Մարսէյլի տպագրութեան մէջ կը պակսի։

[3] Փարիզի Ձեռագիրը (106, Թղ. 247b) զայս եւ նախընթացը միացուցած է այսպէս. "Սեկունդոս զմահն քուն ասէ, եւ երկիւղ մեծատանց եւ խիղճ աղքատաց։ Սա տեսեալ զոմն զի առ վտանգի մահ կոչէր անձին, ասէ. Ո՛վ դու ընդէ՞ր կոչես զայն որ թէպէտ ոչ կոչես՝ ինքն անկոչ գայ։"

կայ տպագրութեան մէջ, եւ է այսպէս (Է, 3.)[1] "Սեկունդոս ի հարցանելն թէ զինչ է կին, ասէ. ընտանի գողն. մարդոյ կորուսեան. տանն մրրիկ. անդադրելի պատերազմ. կենաց թշնամի. աթոռակից վիշապ:" Այս կոչումն նշանաւոր է այնու որ այնպիսի կտորներ ունի որ ո՛չ յունարէնին եւ ո՛չ Հայոյն մէջ կան: "Ընտանի գազան" բառ առ բառ ԺԲ, 2 խօսքն է, ինչպէս նաեւ "տան մրրիկ" ԺԲ, 8 տեղէն (— որուն "ձմեռն" հնագոյն ասացուածն = χειμών, հոս սովորական բառով մը բացատրուեր է:) "Կենաց թշնամի" խօսքը չկայ այժմու Հայ Սեկունդոսի մէջ, բայց ըլլալու էր նախնականին՝ ինչպէս կը վկայէ յոյնը՝ βίου ἅλωσις ըսելով: Կը մնան երեք նախադասութիւնք, որ թէ՛ Հայոյն եւ թէ՛ յունին մէջ կը պակսին: Ի՞նչպէս մեկնելու է զանոնք. կայի՞ն անոնք նախնական Հայոյն մէջ՝ թէ ուրիշ, տարբեր յոյն բնագրէ մը թարգմանուած են: Նոյն խնդիրն ընել կրնանք բուն այն ընդարձակ Հայ կտորին համար, որմէ անոնք քաղուած են, եւ զոր քիչ մ'ետքը պիտի յիշենք: Այս խնդիրն որոշել դժուար է. մանաւանդ որ ինչ ինչ բան անշուշտ յետսամուտ յաւելուած է. տարակուսական է այսպէս "մարդոյ կորուսեան" խօսքն. իսկ "աթոռակից վիշապ" պէտք է ուղղել "աթոռակից վիշապաց." (տես քիչ մը վարը):

Մեր Մատենադարանի Թ. 29 ձեռագրին մէջ (թղ. 221b) կայ նաեւ հետեւեալ ասացուածը. "Սեկունդոս (ձեռ. «Մեկունդ») ասէ. Կին մի գլորեցաւ եւ անկաւ. մինչդեռ մեռանէր՝ ասէ ցնա ընկեր իւր. Ցոյժ տրտմեցայ՝ զի ոչ ծերացար եւ այդ մեռար, զի զմահ ամենայն ոք մեռանի:" Լռակեացի Ճառոց մէջ չկայ այս, որ գոնէ "կանանց թշնամի" Սեկունդոսի շատ լաւ կը յարմարի:

---

1 Անգ. թղ. 243a:

Ծանօթ է որ այս կարգի գրութիւնք, ուստի թէ Վճիռք եւ թէ մանաւանդ «Բանք իմաստասիրաց» միշտ ենթակայ են փոփոխութեան, եւ նաեւ անոնց լեզուն՝ ռամկանալու։ Օրինակի համար Սեկունդոսի «Կին» Վճիռը «Բանք Իմաստասիրաց» գրութեան ուշ ժամանակի մէկ հաւաքման մէջ բոլորովին կերպարանափոխեալ դիմօք կը ներկայանայ մեզ, այսինքն Մարսէյլ 1675ին տպագրուած գրքի մը մէջ, որուն տիտղոսն է՝ «Գիրք վայելուչ եւ հարկաւոր հանուրց Հայկազունեաց բարեսիրաց» եւն։[1] Հայագէտն Թէզա[2] քննած է տպագրութեանս բովանդակութիւնն եւ քանի մ՚օրինակներ յառաջ բերած, ի մասնաւորի այն գրքին մէջ գտնուած (էջ 122) Սեկունդոսի վճիռը («Զի՞նչ է կին չար») թարգմանած եւ համեմատած։ Թէպէտ Մարսէյլի այս տպագրութիւնը չունինք այժմ առ ձեռն, եւ թէեւ Թէզա ալ չէ հաղորդած հայ բնագիրը, սակայն յաջորդ կոչումն չի տարբերիր տպագրեալէն։ Մեր Մատենադարանի Թ. 29 ձեռագիրն ունի այսպէս (Թղ. 219a) «Սեկունդոսի հարցեալ թէ Զի՞նչ է կին չար, ասէ. Ան ընկերն. (= ԺԲ, 9 առանց «անժոյժ» բառի.) Տուն մրրիկ (ուստի ոչ ճիշդ ԺԲ, 8, այլ «Բանք իմ.» ԺԶ, 9 ըստ ձեռ. փար.) Անհոգութեան արգելուած. (= Յոյն՝ ἀμεριμνίας ἐμπόδιον, որ ուստի Սեկունդոսի հայ թարգմանութեան նախնականին մէջ ըլլալու էր.) Կենաց կողոպտիչ (հմմտ. βίου ἅλωσις եւ «Բանք իմ.» ԺԶ 9 ըստ ձեռ. փար. «կենաց թշնամի.» ուստի այսպիսի բան մը գտնուեու էր նախնականին մէջ.) Հանապազորդեան տուժանք (ԺԲ, 7 «Վնաս» ունի = ζημία. Թէզա կ՚ենթադրէ որ հոս հայն ζηλια տեսած ըլլայ եւ ζῆλοςի հաւասար կարծած.) Բազմադէմի պատերազմ. (ԺԲ,

---

1 Հմմտ. Հայկական Մատենագիտութիւն, Վենետ. 1883։ էջ 133։

2 Թէզա, էջ 19 եւն, մանաւանդ էջ 21—22, ծան. 2։

13 ուր "կռիւ„ կ'ըսուի, բայց Հայոյն յատուկ "Բաղմադէմն„ կը գտնենք երկուքին մէջ.) Հազաշէզ Էադան. (Թէզա կ'ենթադրէ որ յոյն ձեռագրաց συνεσθιόμενον "ընտանի„ բառը σύν ιθηρίον կարդացուած ըլլայ.) Աբուշակէց Վէշաղ.[1] (Հմմտ. συντηρουμένη δράκαινα, որ ըլլալու էր նախնական Հայոյն մէջ. "Բանք. Իմ.„ ըստ ձեռ. Փար. "Վէշա„ կը կարդայ սխալմամբ, ինչպէս տեսանք.) Կենդանէ շար. (ԺԲ, 17 լաւ եւս "դէպանէ չար.„ կը պակսի Մարսէյլի տպագրութեան մէջ.) Իժ շէնորէ դորեալ. (= ԺԲ, 4). Իննաշօձար կոէ. (= ԺԲ, 5). Անձայժ փէջալբիան. (= ԺԲ, 9 ուստի լաւ քան Մարսէյլի տպ. "անժուժ գիջութիւն,„ զոր Թէզա կ'ուզէր "անժոյժ գիտութեան„ ուղղել.) Շնալբայ պաղծաւ. (= ԺԲ, 10. կը պակսի ի Մարս.) Սոր որ ու տայ շէալ. (= ԺԲ, 12. տպ. Մարսէյլ այլադգ ըլլալու է, զոր Թէզա կը թարգմանէ spada trafiggitrice.) Կոժա էրկմբր. կարա (կարապ) խոլփընկեց. աղաէս պօպօող. փայլ արաբաջէ. Հանազաղ կոբէլ (կափէլ) է դանն. (տպ. Մարս. կը յաւելու. "ընդվայր դանփանէ:„) — Այս համեմատութենէն կը հետեւի նախ՝ որ այս կոչումն ընողն ունէր իրեն առջեւ Սեկունդոսի Հայերէնը, որմէ շատ բան օրինակած է բառ առ բառ, նաեւ ուր յատուկ բան մ'ունէր Հայն. երկրորդ՝ այն Հայերէնը շատ մերձաւոր էր նախնական Հայ թարգմանութեան եւ ունէր այնպիսի կտորներ, որ այժմու Հայերէնէն դուրս ինկած են. երրորդ՝ աւելցուցած է հաւաքիչն շատ մը խօսքեր ուրիշ աղբիւրէ մը, որոնք թէ Հայոյն եւ թէ յունին մէջ չկան. վերջապէս չորրորդ՝ ամբողջն իւր այժմու ձեւը շատ ուշ ժամանակ առած ըլլալու է, ինչպէս կը ցուցընեն ռամկական բացատրութիւնքն:

---

[1] Այս խօսքը կարգացած կ'երեւայ Սարգիս, որմէ կոչումն կ'ընէ Վենն. Բառ. (Ա, էջ 12 գ) "ընդ անզգամ կին, ընդ աբուշակէց ժանտն:„

քննութեանս այս մասը չկնքած, պէտք կը համարինք յիշել խնդիր մը, զոր նախ Ա. Պաումկարթներ յուզեց "Պիտոյից Գրոց„ իւր ընտիր հետազօտութեան մէջ:[1] Իրաւամբք միտ դնել տուած է որ (իբր 660ի գրուած) Սեբէոսի քով կայ մանրավէպ մ'որ նման է Մ. Խորենացւոյ ընծայուած ճարտարախօսութեան մէկ տեղւոյն (— որ Է—Զ դարէն յառաջ դժուարաւ գրուած է։) Սեբէոսի այն կտորը Պաումկարթներ օրինակուած կը համարի Պիտոյից գրքէն, իսկ Պիտոյից գրոց խօսքն ալ ոչ թէ Մուլլախի (Fragm. Phil. Gr. II, 115 b N. 4) հաւաքած տեղերէն, այլ Թէոնի նախակրթանքէն (Theon, progymn. c. 5, Հմտ. Watz, Ret. Gr. I, 204, 3.) Պաումկարթներ կը կնքէ իւր քննութիւնն այսպէս. "Այս փոխառութեանց մէջ կրնանք որոշ կերպով տեսնել որ յունարէն θεσμοφορεῖον բառն նախ Մ. Խորենացի երկդիմի "տէրունի„ բառով թարգմանած է, որ թէ մեհեան եւ թէ արքունի պալատ կրնայ նշանակել, (— "տէրունի„ բառին վերջին նշանակութիւնը գոնէ տարակուսական է. —) եւ յետոյ Սեբէոս Խորենացւոյ "տէրունի„ բառին երկդիմութիւնն սխալ կերպով որոշած է "արքունի„ դնելով անոր տեղ. Սեբէոսի այս տեղին մանրավէպ անցած ըլլալու է Պիտառութեանց։„ Անշուշտ պէտք ենք ընդունիլ որ Սեբէոսի այն տեղը կը համաձայնի Պիտոյից գրոց Ա, Ծ տեղւոյն, մանաւանդ որ Սեբէոսի անիմաստ "արքունիք„ բառն աղաւաղութիւն մ'ըլլալու է "տէրունիք„ բառին։ Բայց ի՞նչ կը հասկընայ Պաումկարթներ ըսելով թէ մանրավէպս անցած է Սեբէոսէն նաեւ Պիտառութեանց։ Անշուշտ կ'ակնարկէ գիտնականը Վենետ. Բառագրոց (Բ, 873b) կոչումն, ուր ի մեկնութիւն տէրունի = χυριαχόν բառին յառաջ կը

[1] ZDMG, 1886, III. p. 465—6.

բերուի սա կտորը. “Արժան է մտանել ի տէրունիս ... ի տէրունեանն տաճարս. Պիւթ.։„ Բայց հոս Պիւթ. չի կրնար “Պիւթագորեանք„ նշանակել, այլ միայն “Պիտոյից Գիրք„ վասն զի Բառգիրքն հոս ուրիշ տեղէ կոչումն չ'ըներ, բայց եթէ նոյն իսկ Պիտոյից Գրոց Ա, 5 կտորէն, ինչպէս “ի տէրունեանն տաճարս„ բառերն ալ կը վկայեն. (տես Մ. Խոր. տպ. Վենետ. 1842, էջ 353, 26։) Այն́ անցած է մանրավէպս նաեւ Պիւթագորեանց, որոնցմէ կոչումն չ'ըներ Բառգիրքն։ Միեւնոյն մանրավէպը կը գտնենք “Բանք Իմաստասիրաց„ գրոց մէջ. բայց այս տեղը կը պակսի Սոփերաց տպագրութեան մէջ, եւ այնպիսի ձեւով է, որ չի կրնար Սեբէոսէն օրինակուած ըլլալ, նաեւ ո՛չ Պիտոյից Գրոց Ա, 5 տեղէն, եթէ պէտք չենք ասոր ճիշդ հակառակը պնդել. վասն զի ճարտասանութեան հեղինակը կ'երեւայ թէ կարդացած է “Բանք Իմ.„ գրութիւնն։ Յաջորդովս դէմ առ դէմ կը դնենք երեք բնագիրքն, որմէ կը տեսնուի որ “Բանք Իմ.„ գրութեան կտորն ամենէն հինը կ'երեւայ եւ անոր հետ կապ մ'ունին Սեբէոսի խօսքը։

1. Բանք Իմաստասիրաց

(Ժ Ը, 18. ձեռ. Փար.)

“Զթէոմնաս ոմն կին պիթագորական հարցեալ թէ յետ քանի՞ աւուր մտցէ ի տուն կռոց այր որ լինի ընդ կնոջ, ասէ. յիւրն՝ նոյն աւուրն, եւ յաւտարին՝ ոչ բնաւ։„

2. Պիտոյից Գիրք

(Ա, 5. տպ. Վենետ. էջ 352։)

“Զթէանով ոմն պիւթագորական եհարց, եթէ յետ քանի՞ աւուր կնոջ առ այր մերձաւորութեան

3. Սեբէոս

(Գ, 33. հրտ. Պատկ. էջ 132, 15.)

“Զթէանով (ձեռ. “Աթէանով) ոմն կին (ձեռ. “զկին„) մարդ՝ զաշակերտ Պիւթագորայ՝ հարցեալ

արժան է մտանել ի տէրունիսն: Եւ նա ասէ. յիւրմէն՝ նոյն օրին, յօտարէն՝ եւ ոչ բնաւ երբէք:"

եղեւ, թէ յետ քանի՞ աւուր մերձաւորութեանն ի կին մարդ, արժան է յարքունիս մտանել: Եւ նա ասէ. յիւրմէն աւրէն է, յաւտարէն՝ եւ ոչ բնաւ:"

Երեք բնագիրքս ապահովապէս կապ ունին իրարու հետ: Մովսէս քանի մը տեղ կը միաբանի "Բանք Իմ." գրութեան հետ, այսպէս՝ "յիւրմէն՝ նոյն օրին" (= Բանք Իմ. "յիւրն՝ նոյն աւրին.") "եւ յօտարէն ոչ բնաւ երբէք" (= Բանք. "եւ յաւտարին՝ ոչ բնաւ:") Մնացեալն ալ ունի նմանութիւններ, նոյն բառերն՝ բայց ուրիշ կերպով բացատրուած: Իսկ Սեբէոս երկուքին հետ ալ կը համաձայնի, վասն զի մէկ կողմանէ "Զթէանով ոմն," "մերձաւորութիւն", "տէրունիք" եւն կը կարդայ. (= Պիտ.) միւս կողմանէ կը միաբանի "Բանք Իմ." գրութեան հետ, "ոմն կին" կարեւոր ընթերցմամբ: Թէոնի այն տեղն, որմէ առնուած կ'ըսէ Պաումկարթներ Պիտոյից Գրոց յիշեալ խօսքն, հետեւեալն է. Θεανὼ ἡ Πυθαγορικὴ φιλόσοφος, ἐρωτηθεῖσα ὑπό τινος, ποσταία γυνὴ ἀπ' ἀνδρὸς καθαρὰ εἰς τὸ θεσμοφορεῖον κάτεισιν, εἶπεν. ἀπὸ μὲν τοῦ ἰδίου παραχρῆμα, ἀπὸ δὲ τοῦ ἀλλοτρίου οὐδέποτε. Արդ Թէոնի այս խօսքին թարգմանութիւնն են վերը համեմատուածները: Կարծենք պէտք է ժխտել: Գոնէ Թէոնի խօսքն եւ ոչ մէկուն ճշդիւ կը համաձայնի. բայց կայ Թէոնի այս խօսքն ալ թարգմանուած ճշդիւ, եւ է այսպէս. (Ձեռ. մեր Մատ. Թ. 29, թղ. 217 a) "Թէանով պիւթագորեան (ձեռ. "պիթագորոն") հարցեալ՝ քանօրեայ՞ կին յառնէ մաքուր (ուստի ճիշդ = γυνὴ ἀπ' ἀνδρὸς καθαρὰ) ի Թեսմոփորոնն (ուստի բառ առ բառ εἰς τὸ θεσμοφοροῖον) իջանէ (= κάτεισιν), ասաց. յիւրմէն (ձեռ. "յիւրէն") նոյն ժամայն, յօտարէն՝ եւ ոչ երբէք:"

Ա՛յս է Թէոնի խօսքին թարգմանութիւնն եւ ո՛չ վերինք, որ ուրիշ յոյն բնագրէ մը թարգմանուած ըլլալու են։ Արդ խստիւ խօսելով՝ թէ “Բանք Իմ.„ եւ թէ Պիտոյից Գիրքն կրնան յիշեալ կտորն՝ իրարմէ անկախ՝ միեւնոյն յոյն բնագրէն թարգմանած ըլլալ։ Բայց աւելի հաւանական կ'երեւայ ընդունիլ որ Պիտոյից Գրոց հեղինակը “Բանք. Իմ.„ գրութեան խօսքն գործածած ըլլայ, բայց ոչ միշտ բառ առ բառ օրինակած անկէ։ Սեբէոս ստուգիւ կարդացած է Պիտոյից Գրոց խօսքը, բայց նաեւ “Բանք Իմ.„ որով մերթ միոյն մերթ միւսին հետ կը միաբանի։ Բաց աստի “Բանք Իմաստասիրաց„ գրոց նախնականը կ'ակնարկէ անշուշտ Սեբէոսի քիչ մը յառաջ ըսածը. (Հրտ. Պատկ. էջ 132, 8 եւն) “Այլ տեսանեմք՝ զի եւ կարի իսկ ի հինսն եւ յառաջին փիլիսոփայսն պիղծ եւ գարշելի համարեալ էր պոռնկութիւն։ Զի Սողոնի Աթենացւոյ աւրէնս եդեալ Աթենացւոցն ի բաց կալ ի պոռնկութենէն եւ ոչ ընդունել զպոռնկորդին ի ժառանգութիւն։ Ղիկուրգոս Ղակիդեմոնացի աւրէնս եդ Ղակեդովմայեցւոց՝ ի բաց կալ ի պոռնկութենէն, եւ ոչ թողել իսկ զպոռնկորդին։„ Եթէ ուղիղ է մեր կարծիքը, ցուցուած կ'ըլլայ ասով որ “Բանք Իմ.„ 660էն շատ յառաջ թարգմանուած էին, իսկ Սեկունդոս աւելի կանուխ։

Այս շեղմունքէն ետքը դառնանք վերստին Սեկունդոսի հայերէն թարգմանութեան, եւ քիչ մ'աւելի մերձուստ նկատենք զայն։

---

## Զ.

Յոյն բնագրաց որո՛ւն հետ կը համաձայնի հայն։ Ստուգիւ եւ ո՛չ մէկուն հետ բոլորովին։ Այն բազմաթիւ դիպաց դէմ՝ որոնց մէջ հայն Փարիզեան (P) ձեռագրին կը համաձայնի, կան նոյնչափ բազմաթիւ դէպքեր, որոնց մէջ Կուտինեան ձե-

ռագրին (G) կը համընթանայ. յատկապէս Օքսփորտեան ձեռագրին (Ox.) հետ շատ քիչ կապ ունի հայն:

Աւելորդ չէ քանի մ՚օրինակ յիշել հոս: Հ (= Հայ բնագիրը) կը միաբանի Pի հետ ի մէջի այլոց՝ (Գ, 2) "պսակ ծովեղէն" = θαλάσσιον στεφάνωμα. (Զ, ս) "զգեստ պտղոց" = καρπῶν περιβόλαιον (նոյնը նաեւ Ox.), 7 "անանց ճառագայթ" = ἄσβεστος ἀκτίς. — այսպէս նաեւ (Ը, 6) "մայր պտղոց." (Թ, 5) "գործի աճառապինդ." (ԺԲ, 15) "սատար ի ծնունդս մարդկան." = ἀνθρωποποιὸν ὑπούργημα. (ԺԵ, 3) "ուղեկից հողմոց." (անդ, 9) "ծովակաց մենամարտիկ." (ԺԶ. 11) "ձի ծովեղէն." (ԺԸ, 4) "առանց ծովու վաճառական" եւն եւն: — Ընդհակառակն Հ կը համաձայնի Կուտինեանին հետ, ի մէջի այլոց՝ (Ե, ծ) "յուշարար անդադար" = παλίνδρομος ἀνάμνησις (Թ, 8) "բարի հարեւանցիկ." = ἀπαράμονον ἀγαθόν, 9 "կենաց մաշիչ" = ζωῆς δαπάνημα (ԺԲ, 8) "տան ձմեռն." (անդ, 9) "անժոյժ առն ընկղմիչ." (ԺԳ, 8) "ստացուած որիշ ի զրպարտէ." (անդ, 11.) "բախտ անհոգ.. (ԺԶ, 7) "բախտ կապեալ." (անդ, 8) "խաղալիկ հողմոց." եւն եւն: Բաց աստի Հ նշանաւոր կէտի մը մէջ կը համաձայնի Gի հետ. վասն զի Հ ունի ԺԻ վճիռը մենամարտութեան նկատմամբ, զոր միայն G ունի. մինչեւ անգամ անոր սխալ ընթերցումն Τί ἐστι μοναχός (փխ. μονόμαχος) պահած ըլլալով՝ "Զի՞նչ է միայնակեցութիւն:"

Յայտնի է ուրեմն որ հայն բոլորովին անկախ յոյն բնագիր մը կը ներկայացընէ, որ թէ P եւ թէ G ձեռագրէն կը շեղի, մերթ մին եւ մերթ միւսը կը հաստատէ: Կը գտնուին նաեւ տեղեր, որոնց կէսը միոյն եւ կէսը միւսին միաբան է: Օրինակի համար ԺԶ, 10, 11 խօսքը, ուր նաւու համար կ՚ըսուի թէ ըլլայ "Նաւուն փայտեղէն. յի ծովեղէն:" G ունի սոր

առաջին մասը՝ ὄρνεον ξύλινον, իսկ Բ երկրորդը՝ πελάγιος ἵππος, եւ նմաններ։

Ինքնին կը հասկցուի որ հայն շատ մը յատուկ ընթերցուածներ ունենալու է, որոնք ոչ Բի եւ ոչ Ցի մէջ կը գտնուին կամ գոնէ ոչ նոյն ձեւով։ Որչափ ալ ասոնց մէկ մասն աղաւաղ ըլլայ եւ մաս մ՚ալ անապահով, կը մնայ տակաւին մեծ մաս մը հաստատուն։[1] Ընդհակառակն քիչ չեն այն տեղերն, ուր հայն յոյն ձեռագրաց ո՛չ միոյն ընթերցումն ունի, որոնց եթէ մէկ մասն գրչագրաց ձեռօք դուրս մնացած է, մաս մ՚ալ արդէն նախնականին՝ ուստի հայոյն յոյն բնագրին մէջ չկար։ Օրինակներ բերել աւելորդ կը համարինք, վասն զի մեր ծանօթութեանց մէջ իւրաքանչիւր վճռի վերջը դրած ենք այսպիսիները, թէ՛ զանոնք՝ որ ամէն յոյն օրինակաց մէջ կան եւ թէ՛ զանոնք որ անոնց միոյն կամ միւսին մէջ կը գտնուին, եւ զորոնք Հ չունի։ Դժբախտաբար հայոյն մէջ քանի մը վճիռներ թերի աւանդուած են. այսպէս առաջինն (Աշխարհ), ուր ձեռագիրը թերի է, երկրորդ վճիռն (Աստուած), զոր C միայն ունի եւ ուրիշներ։ Քանի մը բան ալ յաջորդացս մէջ յիշուած է։

Որովհետեւ հայն ուղղակի յունարէնէ թարգմանուած է, ըստ ինքեան կապ մը չունի միւս խմբագրութեանց՝ լատինականաց, ասորականին, արաբ. եւ եթովպ. թարգմանութեանց հետ։ Քիչ են անոր համար այն տեղերն, ուր հայն շեղելով յունարէնէն ասոնց միոյն հետ համաձայնի, որով ցուցուած կ՚ըլլայ ի հարկէ՝ թէ հայոյն առած յունարէնն այն տեղեր աւելի մերձաւոր էր վերջնոցս քան այժմու յունարէն օրինակներուն։ Օրինակի համար (Գ, Ս) հայը կ՚ըսէ թէ "Հաստատիչ ամենայն

---

[1] Հմմտ. Գ, 4, 5, 7. Ե, 4. Է, 5. Թ, 2, 8, 11, 12. Ժ, 5, 6. ԺԲ, 11, 12. ԺԳ, 5. 11, 12. ԺԴ, 9. ԺԵ, 2, 6, 7. ԺԶ, 14. ԺԷ, 4, 8. ԺԸ, 6. Ի, 6 եւն։ — Ինչ ինչ տեղեր ստուգիւ յաւելուած են, այսպէս՝ Թ, 1։

Հրոց. ըլլայ ծովը, զոր միայն լատինականք ունին. (տես Եպիփան. եւ Վինկ. Բելլ. hospitium fluvio-um.) Եթէ մեծայարգ սուրբ թարգմանութիւնն ամբողջ պահուած ըլլար, անշուշտ հայոյն հետ շօշափման շատ կէտեր պիտի գտնէինք: Վասն զի նոյն իսկ այժմու Վարուց հատակոտորոց մէջ հայոյն քանի մ'ընթերցմունք, ուր այլազգ է յոյնը, կը համապատեն. այսպէս հայոյն սա խօսքը "կենաց ե-մանու էշխեօ„ կը համապատասխանէ ասորի բնագրէն [illegible] Վ․ծիռներէն համ'մը մնացած է ասորւոյն մէջ (Մահ.) բայց նաեւ այս տեղ մը, ուր հայը կը շեղի յունէն, կը համապա-տէ հայոյն խօսքը, որ է (ԻԱ, 3) "Հեռանդրոց խըն-դրուածք.„ թէեւ ասորին հոս շատ ընդարձակ է. վասն զի ասորի Վ․ծիռս եզական դիրք մ'ունի ամէն խմբագրութեանց մէջ՝ ամէնէն աւելի ճոխն ըլլալով: Եւս առաւել շատ դոյզն կապ ունի հայն արաբ.-եթովպ. բնագրաց հետ, որոնք բոլորովին ընդար-ձակեալ խմբագրութիւնք են, եւ յունէն ու հայէն կրկնապատիկ թուով վճիռներ կը բովանդակեն: Բոլորովին ցանցառ են ուստի այն դէպքերն, ուր ասոնք հայոյն նման ընթերցում մ'ունին, երբ յոյնն տարբեր է. (տես իբր Զ, 7. Թ, 3. Ժ, 10 եւն:) Սակայն ասոնք կը համապատեն հայոյն մէկ կարեւոր կէտը, զոր պէտք է յիշել:

Հայերէնին մէջ 21 վճիռ կայ, մինչ յոյնը 20 ունի (ըստ G, ուր P հազիւ 19 ունի, վասն զի հոն Մէն-մորթիկ վճիռը կը պակսի:) Նաեւ Վճիռ-ներու կարգն ու շարքը տարբեր է. բայց այս նշա-նակութիւն չունի: Նշանակութիւն ունի այնոր հայն վճիռ մ'աւելի ունի քան այժմու յոյն օրինակները, եւ այս վճիռն է՝ "Զի՞նչ է Եբեր.„ եւն: Լատի-նականք (Եպիփ. եւ Վինկ. Բելով.) ունին նոյն նիւթոյ վրայ վճիռ մը (տես aer), բայց ամենեւին չեն նմանիր հայոյն: Աւելի նման են արեւելեանք. վասն զի թէ արաբականն եւ թէ եթովպականն

ունին այսպիսի կտոր մը. (Հարցումն 15, տես Bachm. բնագիր, էջ 8. ուր եթովպ. "այէր" բառը կը գործածէ։) Թէեւ ասոնք ալ բոլորովին չեն միաբանիր Հայոյն հետ. բայց այս՝ արեւելեան յիշեալ խմբագրութեանց սովորութիւնն է առ հասարակ, որոնք գոնէ ունին շատ խօսքեր, որ գէթ նման են Հայոյն նախադասութեանց. (տես վարը Ծանօթութիւնք ի Դ։) Ուրեմն Հայոյն այս կտորն ստուգիւ հարազատ է, այսինքն կը գտնուէր թարգմանչին գործածած յոյն բնագրին մէջ։ Այս յայտնի է նաեւ անկէ, որ Հայոյն յիշեալ կտորին մէջ ամենեւին քրիստոնէական գաղափարներ չկան, ինչպիսիք կան արաբ. եւ եթովպ. բնագրաց մէջ, օրինակի համար սա խօսքը. مثل النور كما قال الله ليكن ذور այսինքն՝ Օդն է "իբրեւ զլոյս, որպէս սաէ Աստուած եղիցի լոյս". — Նման է նաեւ եթովպականը, զոր աւելորդ կը համարինք յառաջ բերել. (Հմմտ. Ծննդոց Ա, 3։)

Սակայն չկարծուի թէ ինչ որ այժմու Հայոյն մէջ կայ՝ ապահով այնպէս էր թարգմանչին տեսած յոյն օրինակին մէջ։ Շատ դիպաց մէջ պէտք ենք նախ քննել թէ անաղարտ հասա՞ծ են մեզի։ Համոզուած ենք որ նոր եւ լաւագոյն ձեռագիր մը շատ մը խնդրական եւ յունականէն շեղող մասեր ջնջել պիտի տայ։ Ո՞րչափ հնութիւն ունի օրինակի համար այն պարագան որ յունին երկու Վճիռքն մէկի ամփոփուած են Հայոյն մէջ։ Վենետկոյ 1853ի տպագրութեան մէջ զուր տեղ պիտի փնտռէ քննիչ մը յունին սա վճիռը՝ "Զի՞նչ է Երկիր" (տես Mullach, XV.) Սակայն թարգմանչին օրինակին եւ նաեւ նախնական Հայ թարգմանութեան մէջ չէր պակսեր այն։ Եթէ լաւ զննենք Լուսոյ Վճիռը՝ պիտի տեսնենք որ շատ նախադասութիւններ կան հոն, որ այն Վճռին չեն վերաբերիր, այլ ձուլուած ուրիշ վճռէ մը (Երկիր։) Այս վիճակն ան-

շուշտ յետոյ յերեւան ելած է՝ երբ գրչագիրք խառնած են երկուքին խօսքերը։ Մեր Հրատարակութեան մէջ փորձեցինք որոշել իրարմէ այս մասերն, Երկրէ վճռոյն վերաբերող խօսքերը փակագծի մէջ առնելով եւ ուրոյն թուակարգ մը տալով անոնց։

Մէկ՝ եւ այն կարեւոր կէտի մը մէջ՝ Հայոյն գործածած յոյն օրինակը կը տարբերէր այժմու օրինակներէն։ Հայերէնին մէջ Վարքն ու Վճիռքն սերտիւ կցուած են իրարու, մինչ յոյն օրինակաց մէջ կապ չունին իրարու։ Պախմանն[1] երկար կը խօսի այս կէտիս վրայ եւ կը ցուցընէ որ Վճիռք նախնաբար անկախ են, եւ այս՝ ընդդէմ Ռըվիյուի,[2] որ հակառակը կը հաստատէ, վասն զի նաեւ յունական Վարուց մէջ Վճռոց տեղը նշանակուած է, ուր կ'ըսուի թէ Սեկունդոսի Աշխարհի վրայ խօսածն "յառաջաբան" է միայն, եւ թէ Ադրիանոս 20 հարցումն կ'առաջարկէ, եւ այս թուով են արդեամբք Վճիռները։ Պախման Ռըվիյուի դէմ կը բերէ սա պատճառներ. նախ ծանօթ յունարէն օրինակի մը մէջ ալ կապուած չեն Վարքն ու Վճիռքն. եւ լատինականք որ կապած են զանոնք, այնպէս անյարիր կերպով ըրած են, որ օրինակի համար Աշխարհի վրայ կրկին Վճիռ ունին, որ նշան է թէ երբեմն անկախ էին անոնք։ Երկրորդ Վճռոց մէջ կնոջ վրայ չ'ըսուիր այն էական վճիռն, որ Վարուց հիմնական սկզբունքը կը կազմէ, այսինքն πᾶσα γυνὴ πόρνη ("ամէն կին պոռնիկ է։") Այս հակասութիւնը կը ցուցընէ որ Վճիռք օտար գրչէ են,[3] եւ երկուքն ալ նախնաբար անկախ յօրինուած են։[4] Մենք ընդդիմութիւն չունինք այն կարծեաց

1 Bachm., die Phil. p. 13—16.
2 Revillout, Vie et sentences, p. 39.
3 Նաեւ Քաուէլ այս կարծիքն ունի. (էջ 344—345)։
4 Սակայն Պախման (էջ 15, Ծան. 2) կ'ընդունի որ Սեկունդոսի բանախօսութիւնն առ Ադրիանոս Աշխարհի վրայկար նախնական Վարուց մէջ. վասն զի իմաստասէր մ'առանց իւր իմաստասիրական կարծեաց կարելի չէ ենթադրել։

թէ Սեկունդոսի վէպին նախնականին մէջ չկային այժմու վճիռները։ Բայց այն խնդիրը թէ կային երբեմն յոյն օրինակներ ալ՝ որ լատինականաց պէս կից ունէին Վարքն ու Վճիռքը, պէտք է հաստատել. եւ Հայը կը ցուցընէ որ կա՛ր այսպիսի յունարէն օրինակ մը։ Ասով հաւանական կ՚ըլլայ նաեւ այն՝ թէ Թիշէնտորֆեան ձեռագիրն ալ հայոյն պէս էր. վասն զի թէեւ Վարուց Թիշէնտորֆեան յոյն ձեռագիրը Աշխարհի վճռէն յառաջ կը սպառի, բայց Թիշէնտորֆ իրաւամբ կը յաւելու թէ անշուշտ այնտեղ կը յաջորդէին վճիռները, որ այժմ կը պակսին։¹ Նաեւ Պախման, որ ի սկզբան կը վարանէր, յետոյ հաւանական կը գտնէ Թիշէնտորֆի կարծիքը. (էջ 44—45։)

Կը մնայ այժմ հայերէնին ինչ ինչ տեղեաց վրայ խօսիլ, որոնք մեծաւ մասամբ մեկնութեան կարօտ են։ Շատ բան առաջին հայեցուածին աղաւաղութիւն կ՚երեւայ. եւ սակայն բնագրի այս աղաւաղութիւնը շատ հին ըլլալու է, մասամբ արդէն թարգմանչին գործածած յոյն օրինակին մէջ։ Այսպէս է՝ ինչպէս յիշեցինք՝ Մենամարտկի վճռին վերնագիրը՝ "Զի՞նչ է Միայնակեցութիւն," (ինչպէս ունի նաեւ G μοναχός փխ. μονόμαχος, ինչպէս իրաւամբք կը սրբագրէ Պախման)։ — ԺԱ վճիռն է ըստ հայոյն՝ "Զի՞նչ է Սէր։" Լատինականք ալ ունին Վճիռ մը Quid est Amor? բայց անոնց խօսքերն ամենեւին կապ չունին հայոյն հետ. ուստի այս Վճիռն հայոյն յատուկ կարծուեցաւ։ Սակայն եթէ քննենք այս Վճռին խօսքերը, կը տեսնենք որ հայոյն "Սէր" վճիռն ուրիշ բան չէ, բայց եթէ յունարէնին "Բարեկամ" վճիռը. (Mullach, XI.) Մեկնութիւնն այս է։ Հայը իւր յոյն օրինակին մէջ φίλος (բարեկամ) բառի տեղ φιλία գտեր է

---

¹ Tischendorf, Notitia editionis cod. bibl. Sinaitici եւն. p. 73. ծան. 24։ Տես Bachm., die Phil. p. 13, ծան. 5։

(բարեկամութիւն, միտութիւն են), որ “սէր” ալ կրնայ առնուիլ։ Նաեւ արաբը φιλία տեսեր է, ուստի կը թարգմանէ صداقة (տես այս բառիս վրայ՝ Բրքէլման, էջ 46.) եթովպ. “բարեկամ” կ'ըսէ։ — Ծովը կը սահմանուի (Գ, 8) “աշխարհի տանընկալն,” ուր յոյնն է οἰκουμένης κάτοχος (ստացող, բռնող, նուաճող.) յայտնի է ուրեմն որ κάτοχοςի տեղ հայը ξενόδοχος (հիւրընկալ, տանընկալն) կամ ξενοδοχεῖον (հիւրանոց, իջեւան եւն.) կարդացեր է։ — Այսպէս նաեւ “Լուսոյն” վճռին մէջ կը կարդանք (Է, 6) “յաւիտենից նշանակ,” մինչ ըստ յունին ըլլալու էր՝ “տօնից նշանակ” (σημεῖον ἑορτῶν). Հոս ալ հայը յոյն բնագրին մէջ αἰώνιον (յաւիտեան, յաւիտենից) գտեր է փխ. ἑορτῶν. “Կնոջ” վճռին մէջ (ԺԲ, 1) կը գտնենք “առն մխիթարութիւն,” ուր յոյնն է ἀνδρὸς ἐπιθυμία, որ եթէ հայոյն տեսած բնագրին մէջ ըլլար՝ թարգմանուած պիտի ըլլար՝ “առն ցանկութիւն։” Կ'երեւայ թէ հոս հայն ἀνδρὸς παραμυθία (մխիթարութիւն) գտեր է. եւ այս բանս կը հաստատուի անով, որ ճիշդ այս խօսքն ունի Բ ուրիշ տեղ մը՝ “Գեղեցկութեան” վճռին մէջ, ուր հայոյն մէջ չկայ։

Ասոնք դիւրին է մեկնել։ Բայց ի՞նչպէս մեկնելու է ԺԴ, 6 խօսքը, ուր այժմու հայերէն բնագիրը կ'ըսէ թէ Աղքատութիւնն ըլլայ “խորհրդատուութիւն ընտրեալ։” Այստեղ կամ աղաւաղ յոյն բնագիր մը կար հայոյն առջեւ եւ կամ թարգմանութիւնը շատ յաջող չէ։ Յոյն օրինակը հոս ἐπινοιῶν διδάσκαλος կ'ըսէն (“ընտրողաց ուսուցիչ” կամ “խորհրդատու”) որ յարմար է։ Կ'երեւայ թէ հայը διδασκαλία գտեր է (“վարդապետութիւն”) եւ նաեւ ἐπινοιῶν, բայց այս վերջինս “ընտրեալ” իմաստով առեր է, որով խօսքը մթարութիւն մ'առած է։ — “Նաւորդն” է ըստ հայոյն (ԺԵ, 2) “մշակ ծովու։” Այս բանս կրնար ըստ

ինքեան հայոյն գործածած յոյն բնագրին մէջն ալ ըլլալ. բայց այժմու օրինակք կը կարդան θαλάσσης βερεδάρης (տուրհանդակ ծովու, veredarius). Արդեօք այսպէս ալ չէ՞ր հայոյն օրինակին մէջ, որուն նշանակութիւնը գուցէ մութ ըլլալով թարգմանչին՝ վերոյիշեալ թարգմանութիւնը դրած ըլլայ անոր տեղ։ Ասոր նկատմամբ որոշ բան մ'ըսել ի հարկէ չենք կրնար։ — Աւելի դիւրին է մեկնել ԺԶ. 3 խօսքն, ուր նաւու համար ըսուած է թէ ըլլայ "հմայեալ գերեզման։" Աստ տեղ յոյնը կ'ըսէ ἡρμοσμένος τάφος (պատրաստեալ, յարդարեալ։) Արդեօք հայը οἰωνισμένος (հմայեալ) կամ նման բան մը չէ՞ տեսած։ — Մենամարտիկին վճռին մէջ կ'ըսուի թէ ըլլայ (ԺԵ, 2) "նահատակէ շինուած," որ կրնայ ալ յարմարիլ գաղափարին։ Բայց G, որ հոս միայն կրնայ համեմատութեան առնուիլ, այստեղ ունի. ἀγωνοθέτου θυμός (մարտայարդարի խրախոյս, քաջալերութիւն։) Տարակոյս չկայ որ հայն հոս կարդացեր է ἀγωνιστοῦ θῦμα (նահատակի զոհ)։ Ընդհակառակն դժուար է մեկնել նոյն վճռին սա խօսքը (ԺԵ, 5) "բախտի բեկումն։" Ի՞նչ կարդացեր է հայը. արդեօք σύντριμμα բառը։ Չենք կարծեր. վասն զի հոս ալ G կը կարդայ τύχης παράπτωμα, (զոր հայերէն պէտք էր "արկած" կամ լաւ եւս "դիպուած բախտի" թարգմանել.) վասն զի παράπτωμα կը նշանակէ բուն "իյնալը, պարտութիւն, սխալումն, վրիպակ" եւն, եւ հայն բախտի "բեկանել" ըսելով այս բառը փոխադրել ուզած է։ Աւելի եւս դժուարին է նոյն տեղւոյ յաջորդ (ԺԵ, 6) խօսքը մեկնել, որ է "Հոլովադեղեալ Նշանաւորութիւն։" Յոյնն հոս ուրիշ բան մը կ'ըսէ. περισαλπιζομένη μοῖρα, այսինքն՝ "փողանշանեալ ճակատագիր (մահու)," (սուսերամարտկաց յարմար, տես վարը Պախմանի տուած տեղեկութիւնը։) Հոս հայոյն "Նշանաւորութիւն" ըսելը կամ

ուրիշ բնագիր մը չ'ենթադրեր, բայց եթէ μοῖρα (բախտ, ճակատագիր), զոր այսպէս ընդհանուր իմաստով մը փոխադրած ըլլայ հայն. կամ ճշգագոյն եւս՝ μοῖρα (ճակատագիր) բառին տեղ μόρος (դժբախտութիւն, արկած եւն) տեսեր է հայն: Իսկ ի՞նչ է "վարդապետեալ." միթէ թարգմանութիւն περισαλπιζομένη (փողահարեալ) բառին: Հաւանական այս կ'երեւայ ինձ. հայը հոս "վարդապետեալ" ընդհանուր իմաստով մը գործածած կ'երեւայ, այն իմաստով՝ զոր յետինք "փողահարեալ" բառով կը բացատրեն: "Վարդապետեալ" կրնար ալ թերեւս նման իմաստով գործածուիլ (իբր մունետիկէ ծանուցեալ եւն):

Վերջապէս պէտք ենք քանի մը կէտեր ալ յիշել: "Մշակը" կ'անուանուի (ԺԸ, 1) "ժամանակաց արբանեակ." որ չի յարմարիր ստուգիւ: Արդ որովհետեւ հոս յունարէն բնագիրը χαρπῶν (պտղոց արբանեակ) կ'ըսէ, տարակոյս չի մնար որ հայն χαρπῶν (պտղոց) ընթերցման տեղ χαιρῶν (ժամանակաց) տեսեր է կամ գտեր իր օրինակին մէջ: Քիչ մ'ետքն ալ կ'ըսուի թէ նոյն Մշակն ըլլայ (ԺԸ, 8) "ժամուց դաստիարակ," որ բոլորովին անյարմար է: Արդ յունարէնին մէջ այստեղ կեցած է ὀρνέων παιδαγωγός (Թռչնոց դաստիարակ): Այստեղն ապահովապէս հայոյն գործածած օրինակին մէջ աղաւաղեալ էր, նոյն իսկ այժմու G ձեռագիրը աղաւաղ է հոս եւ ունի ὀρέων: Ուստի տարակոյս չկայ որ հայը հոս ոչ թէ ὄρνεον (թռչուն), այլ պարզապէս ὥρα (ժամ) գտած էր: — Թերեւս այնչափ յաջող բացատրութիւն մ'ընտրած չէ թարգմանիչը, երբ "Քուն" վճռոյն մէջ (ԺԹ, 7) գրած է՝ "ուսմանց հանապազորդեան," թէեւ յունարէն μελέτη բառն "ուսումն" ալ կը նշանակէ, (յոյնն է՝ χατημερινὴ μελέτη) բայց կը նշանակէ բուն հոգ. մտածութիւն, փոյթ, ուսումն" եւն: Մուլլախ այս խօսքը կը

թարգմանէ՝ quotidiana meditatio. Ուրիշ քանի մը տեղերն աւելորդ կը համարիմ հոս յիշատակել։ Շատ բան նշանակուած է արդէն մեր հրատարակութեան կից համեմատութեանց մէջ։

Կը կնքենք հոս մեր քննութիւնն այն յուսով, որ ամբողջական եւ այժմու օրինակներէն անկախ օրինակ մը գտնել կարելի պիտի ըլլայ։ Անով միայն պիտի լեցուին հայ բնագրին քանի մը թերի մասերը, շատ մը աղաւաղմունք պիտի ուղղուին, եւ անով աւելի վստահելի բնագիր մը պիտի ունենանք ձեռքերնիս։ Առ այժմ կարելի չէր այս. վասն զի նոյն իսկ թիւ 739, որ 981 տարւոյ գրչագրէ մ՚օրինակուած է (— թէ արդեօք Սեկունդոսի մասն ալ՝ այժմ խնդրոյ նիւթ ընել չենք կրնար, —) թերակատար է, եւ ո՛չ ալ նուազ աղաւաղած քան միւս օրինակները։

Ձեռ. 739, էջ 830: Սոփ. Ա. էջ 63:

# ԽՈՍՔ ՍԵԿՈՆԴՈՍԻ ԻՄԱՍՏԱՍԻՐԻ ԱՌ ԱԴՐԻԱՆՈՍ ԿԱՅՍՐ

---

Ընդ ժամանակսն ընդ այնոսիկ յորում Անդրիանոս ի Պարսս երթայր, եւ իբրեւ եկն յԱթէնս, լուաւ զՍեկոնդէ՝ եթէ կորովի ի-

---

* Ցաջորդ հրատարակութիւնս գործածելու համար միտ դնելու է երկու կէտի: Ամբողջ բնագիրը թուարկեալ է անընդհատ տողերու կարգաւ, որոնց թուին համեմատ եղած են կոչմունք ծանօթութիւնց մէջ: Բնագրին ներքեւ իւրաքանչիւր տողին թուին համեմատ դրուած են նոյն տողին ընթերցուածոց տարբերութիւնք միւս ձեռագրաց մէջ: Ասոնք ուրեմն միայն բնագրական ծանօթութիւնք են: Ուրիշ ծանօթութիւնք, ի մասնաւորի բաղդատութիւնք հայոյն ընթերցուածոց յոյն, ասորի եւն բնագրաց հետ՝ դրուած են ամէնէն ետքն առանձին գլխով. (տես էջ 241 եւն:) Այնտեղ ալ կոչմունք եղած են ըստ տողից մեր հրատարակութեան:

‖ Հրատարակութեանս հիմն առնուած է Վենետկի թիւ 739 (Ճառընտ. ԺԹ, էջ 830—834) ձեռագիրն, որուն ընթերցմունք A նշանագրով կը նշանակենք՝ ուր որ ուրիշ ընթերցում մը նախամեծար ընտրած ենք: Վարուց մէկ փոքր մասն եւ Վճիռքը կը գտնուին հրատարակուած ի Սոփերք, Ա, տպ. Վենետ. 1853, էջ 63—70), որուն A էն ունեցած սակաւ տարբերութիւնք C կը նշանակենք: Վարքն կ'ամբողջացընէ մասամբ մեր Մատ. թիւ 320 ձեռագրին հատակոտոր մը, (հին թիւ 101 Բ, թղ. 1a) զոր B տառով կը նշանակենք:

‖ Վերնագիր: A "Խաւսք Սոկոնդի.„ C "Խօսք . . . առ . . . կայսեր:„ B ձեռագրին մէջ բուն, վերնագիրն կը պակսի եւ միայն նիւթոց ցանկին մէջ (թղ. 3a) այսպէս կը գրուի. "Եւ պատասխանիքն Սեկունդոսի իմաստասիրի:„

‖ 3 A զՍոկոնդէ:

հետ կը համաձայնի Աստրին 87, 23 եւն. «Ո՛վ Ադրիանոս, ճշմարտիւ ունիս իշխանութիւն ի վերայ կենաց եւ մահու իմոյ:» Անկէ ետքը Աստրին միայն սա խօսքն ունի. «քանզի այս կամք քո են՝ եթէ զի մեռայց եւ եթէ զի կեցից,» եւ կը լմննայ Վարուց սօրի հատակոտորն: Կը մնայ միայն Մահուան Վճիռը, որ հոս կցուած է, եւ զոր յետոյ իր տեղւոյն կը համեմատենք: Եթովպ. 8, 14—29 շատ ընդարձակ է այստեղ:

8. Տող 43—48: Հայն հոս նախադասութիւն մ'աւելի ունի, ինչպէս կը ցուցընէ յաջորդ համեմատութիւնն, ուր Ց կ'ըսէ (Cassel, տող 106—110.) «Եւ Ադրիանոս ընթերցեալ՝ ասէ. Աշնոսաքոյն արարեր զպատասխանիդ, [այսպէս Հ լաւ, Ց՝ καλῶς ἀπελογήσω, որմէ ետքը Հ կը յաւելու լաւ եւս՝ «այլ ո՞չ լռութեամբ փորձեմ զքեզ,»] այլ այլովք բազմօք. [ինչպէս վերը յիշեցինք՝ այժմու Հ չունի «այլ,» բայց պէտք է՝ ինչպէս իմաստը կը պահանջէ եւ յոյնը՝ ἀλλά. Եթովպ. 29, 2 «Ա՛սէ արքայն ցՍեկունդոս. Բարւոք խօսեցար. գրեա՛ զինչ եւ ցանկաս.»] ահա խնդիրս տամ երից առաջի քո [ուստի Ց προβλήματα խնդիրս = problème, զոր Հ կը թարգմանէ «առակ.»] յորոց առաջինն այս է՝ Զի՞նչ է Աշխարհ. պատասխանի արա ինձ առ այսոսիկ:» Եթովպ. 29, 3 վերջինս միայն ունի եւ այն ուրիշ ձեւով. «Եւ գրեաց Սեկունդոս իբրեւ ասէ. Այսպէս է Աշխարհ:»

9. Տող 48—51: Հոս կը սկսին, ինչպէս տեսանք AC, եւ C միայն քանի մը տող ունի իբրեւ Վճիռ Ա: Նաեւ AC ձեռագրաց ընթուցուածը («Աշխարհ մեք եմք» եւն. տես վերը հայ բնագիր) աղաւաղ է, մինչ Bի ընթերցուածը լաւ եւս է, ինչպէս յոյնը կը վկայէ (Mullach, II, p. XXVIII[2] տող 44 եւն. Cassel, էջ 351 տող 110—114.) «Դարձեալ գրեաց Սեկունդոս պատասխանի. Աշխարհ է, ով Ադրիանոս, յօրինուած երկնի եւ երկրի [«Յօ-

րինուած» դրինք, ուր յունարէն σύστημα, système կ'ըսէ, զոր Հ «զհաստատութիւն եւ զժողովն» կը թարգմանէ.] Եւ ամենայնի որ ի նոսա, զորոց ասա-ցից յետ սակաւու [μικρὸν ὕστερον], եթէ ունկն-դիր լիցիս ասացելոցն:» Վերջին տողս չունի Հ: Եթովպ. 29, 3 եւս ունի Աշխարհի սահմանն այս-պէս. «Ո՛վ Ադրիանոս, Աշխարհ է զարդարումն (կամ «գեղեցիկ կազմութիւն» = σύστημα, Հ «հաստատութիւն») երկնի եւ երկրի եւ ամենայնի որ ի նոսա է» եւն: Պախման (Leben, p. 29, n. 1) կը ծանուցանէ որ արաբն չունի Աշխարհի այս սահ-մանն:

*10. Տող 51—58:* Հայոյն առաջի խօսքը («Եթէ ոք ի մարդկանէ — զիւրեանց կեանս վճա-րեն») հոս չենք գտներ ո՛չ յունին եւ ո՛չ եթով-պացւոյն մէջ, որոնք շատ ետքը նման խօսք մ'ունին (տես Cassel, p. 352, տող 132—139) այսպէս. «Մի՛ ասիցես թէ միայն շրջեցար ընդ աշխարհ, քանզի արեգակն եւ լուսին համդերձ աստեղք են, որ շրջին զաշխարհաւ:» Ուստի յունին մէջ չկայ յաջորդ խօսքը՝ «բայց մարդիկ մարմնաւոր» եւն: Եթովպ. 30, 1—2 ալ յունարէնին նման է. «Եւ մի՛ ասիցես թէ ո՛վ հաստատեաց զայս աշխարհ. զի արեգակն եւ լուսին են՝ որ հաստատեցին զայս աշխարհ:» — Այս տեղէն ետքը, որ Հայոյն մէջ տեղափոխուած է, կու գայ մնացեալը, որ յունարէնին մէջ ալ (Cassel, տող 114—116) այսպէս է. «Քանզի եւ-դու մարդ ես, ո՛վ Ադրիանէ, որպէս մեք ամենեքեան, հզօրդ ամենայն տերանց, փոքր փառութեան:» Վերջինս չունի Հ, առաջինն ալ (παντὸς πάθους μέτοχος) այսպէս ունի՝ «կրիչ ամենայն չարչարանաց եւ աշ-խատութեանց:» Եթովպ. 29, 6—7 սոր տեղ բոլորովին ուրիշ բան ունի՝ «Եւ կապեալ ես դու ընդ ցանկութեամբք որպէս զանխօս անասունս:»

*11. Տող 59—63:* Փակագծի մէջ առնուած այս կտորն թէ B եւ թէ A ձեռագրին մէջ աղաւաղ

է, որով ամբողջին իմաստն այլայլած։ Ամենայն սիրով այս կտորը յետաամուտ ընդմիջարկութիւն համարելով՝ դուրս կը թողունք, եթէ քանի մը մասեր նման չըլլային յունարէնին ճիշդ այստեղ անբան անասնոց նկատմամբ ըսածներուն։ Հայոյն մէջ թռչնոյ մ՚անուն կը յիշուի, զոր B "պեպոս" կը կարդայ, A անշուշտ լաւագոյն եւս՝ "պիպոս" = πίπος, pipus, զոր Բառագրոց ոմանք տեսակ մը ծառագնաց թռչուն կը մեկնեն, իսկ այլք "ծովային թռչուն" կը կարծեն. (Համմտ. նաեւ πίππος, թռչնիկ. աղաւնեակ։) Յունարէնն այստեղ այսպէս է. (տես Cassel, տող 116—120.) "Եւ անբանիցն կեանք այսպիսի ինչ են, ոմանք ի նոցանէ թեփաւորք են [τὰ δε πεφολίδωται, որուն կը համապատասխանէ անշուշտ Հ "Եւ է որ խեցոր է." անշուշտ թեփոտ անասնոց համար ըլլալով "խեցոր" բառը.) Եւ են որ հերս ունին [τὰ δε τετρίχωται = արդեօք Հ "Եւ է որ նորաբոյս է." "Նորաբոյս" է բուն = νεοφυής.] եւ են որ մերկք են [այսպիսի բան մ՚ըլլալու է հոս ի Յ, որ կ՚ընթեռնու τὰ δὲ πεπήρωται, հաշմեալք.] Եւ որ են զարդարեալք են [τὰ δὲ κεκόσμηται = Հ "Եւ զարդարեալ ազգի ազգի փետրովք."] յանձնէ զգեցեալք [αὐτένδυτα, հոս Հ ունի՝ "ինքնաբոյս"]. Եւ յանձանց գտեալ զօգնութիւն [αὐτοβοήθητα, ասոր տեղ Հ կ՚ըսէ՝ "Եւ ոմն երբէ անձն է,"] ի բնութենէն տուելոյ նոցա։" Վերջինս չկայ ի Հ։ Եթովպ. 29, 7 եւն ուրիշ կերպարանօք ունի այս կտորը։

*12. Տող 63—77:* Այս կտորը շատ դժուարին մասերէն է, վասն զի մանաւանդ վերջերը յոյն բնագիրը բոլորովին աղաւաղած ու անիմաստ է (տես Mullach, II, p. XXIX[1] տող 4 եւն. Cassel, էջ 351, տող 120—134.) Քասէլ ջանացած է (էջ 355—6) ուղղել յոյն բնագիրն, եւ այժմ կը տեսնենք որ Հայը կը հաստատէ իւր

սրբագրութիւններուն շատերը։ Բայց նաեւ հայն ամէն տեղ ուղիղ աւանդուած չէ մեզի ապահովապէս։ Համեմատելու է հայ բնագրին հետ յոյնն ըստ սրբագրութեան Քասէլի. "Բայց դու, ով Ադրեանէ մարդ ես, մի երկնչիր, սատակաշունչ հողւով [πνέυματι βαρηχῷ, զոր կ'ուղղէ Քասէլ π. βαρυήχῳ, Հ "մի խռովութեամբ, ծանր գիջութեամբ, պղտոր մտաւք."] երկարաձիգ դիւական մաղձաւ [χόλῃ δαίμονος ἐνοχῇ, Հ "Խռովութեան մաղձաւ."] կարի յոյժ ամփոփիս ի քեզ՝ որպէս է փակեալ ամարան ողջերէն եւ ծախծախուտ ջրոյ, որոց նմանիս. [այսպէս Յ՝ ըստ Քասէլի. Հ աւելի լաւ եւ ընդարձակ "աշնանի՝ քնասէր լինիս. ամարանի՝ անաւսրանաս եւ տարածիս. ձմերանի՝ խանձրանաս եւ պնդիս. նմանիս ծովուց եւ ծովակաց." Հայ բնագրին մէջ "ծովականաց" է, որ գրչի սխալ մըն է անշուշտ. Նաեւ Եթովպ. 29, 11 եւն քիչ մ'աւելի նման է հայոյն՝ "..որպէս յամարան ամփոփիս ի տապոյ արեգական մինչեւ խնդրել զովութիւն եւ ի ձմերան՝ տեղի ջերին."] քանզի եւ դու ունիս անասունս, կերպ՝ յորս երամակք օձլաց են, ի տեղ զեռան որդունք, որոց հոտոյ չկարես ժուժել, եւ կեաս ի ջերման (կրակի) կիզելեաց։" Այսպէս Յ՝ ըստ Քասէլի, որուն հետ համեմատելու է Հ "քանզի ի նոսա զեռունք խաղան, եւ ի տեղ ճճիք եւ երամակք օձլաց, ծնունդ աւտից, կերակուր որդանց, ծանրախեղն ջերման՝ երկաբնաւոր լեալ." — այսպէս ուղղելու է անշուշտ հայոյն ընթերցումը "ծանրութիւն ջերման. երկաթահար լինել," վասն զի իմաստն ըլլալու է այն՝ թէ երկաթահար եղածի պէս՝ ծանրաջերմ տապով կը տանջուիս. եւ այսպէս ուղղելու կը յորդորէ նաեւ յոյնը καὶ ἐν πυρὶ τῶν ἐγκαυτήρων πέλεις. Մինչեւ հոս Հ եւ Յ քիչ շատ կը միաբանին. յաջորդն աւելի տարբեր է, վասն զի Հ ունի քանի մ'ընթերցումներ, զոր չունի Յ, ընդհակառակն յունին մէջ շատ աւելի ուրիշ նախադասու-

թիւնք ալ կան, որ չկան այժմու Հայոյն մէջ։ Նախ
խնդրական է Հայոյն առաջին խօսքը՝ “Ընարաւէր ա-
տամանց կտրելով եւ բաժանելով։„ “Հնարաւէր„ (ար-
դեօք “Ընարաւորի՞„) հոս բոլորովին նորանշան իմաս-
տով գործածուած է. վասն կը համապատաս-
խանէ προνοίᾳ μὲν խօսքին, ուստի “կանխագի-
տութեամբ, կանուխ խորհրդով„ կը նշանակէ, որ
հոս ալ կը յարմարի. բայց “ատամանց„ սխալ գըր-
չութիւն մըն է յամենայն դէպս, եւ թերեւս ուղ-
ղելու է “արարած,„ զոր ունի յոյնն, այնպէս որ
Հայոյն այս խօսքին իմաստն ըլլայ՝ Դուն կանուխ
խորհրդով կտրուած եւ բաժնուած արարած մըն
ես՝ սակաւաժամանակեայ, եւն։ Եւ այսպէս է յու-
նարէնն ըստ սրբագրութեան Քասելի, որ է. “Ե-
ես քոյ արարած կտրեալ եւ բաժանեալ կանուխ խոր-
հրրդով, սակաւաժամանակեայ, այլբազմագէտ. [προ-
νοίᾳ μὲν τεμνόμενον, καὶ διαιρούμενον, ὀλιγοχρό-
νιον καὶ πολυμαθὲς ζῶον. Հ ունի զայս՝ եթէ ուղ-
ղուի ըստ վերնոյն, վասն զի Հ կը կարդայ՝
“Ընարաւէր՝ արարած (ձեռ. “ատամանց„) կտրելով
եւ բաժանելով, սակաւաժամանակեայ կենդանութեան,
որ չէ առիթէ բազմագէտ։„ Վերջին խօսքս կը հա-
մապատասխանէ յունին πολυμαθὲς = բազմագէտ
ըսելուն, ուստի Հայը թերեւս πολυπαθής, բազ-
մախոփ, կարդացեր է.] փախեա երաշտացեալ [= Հ.
ἡλίῳ φρυγόμενον, “տապացեալ յարեգականէ.„]
Հիւսիսով ցրտացեալ [βορροψυχούμενον = Հ
“Հիւսիսով ցրտանաս եւ կասիս.„] ունիս զառաւե-
լութիւն լեզուի, եւ արփասոս ողջոյ ի փոփոխ-
մանէ. [ասոնց տեղ Հ կ՚ըսէ “ծայր կէս որ յառա-
ջաքան է ողջոյ.„] զի՞նչ ինչ է մեր. բանադատուին
ճակատագրի եւ աստուածութեան։„ Այս վերջինը
չկայ այժմու Հայոյն մէջ՝ գուցէ գրչաց անհաճոյ
երեւնալուն։—Քասել այստեղ կը մեկնէ Սեկունդոսի
առ Ադրիանոս խօսած ճառին “մանիքէական-
բուգդ-Հայական„ ուղղութիւնը։ Յիշենք որ Մուլ-

լախ (p. XXIX) ինչ ինչ բան այլազգ կ'ուղղէ յոյն բնագրին մէջ քան Հայն:

13. Տող 77—80: Համեմատելու է յոյն բնագիրը. (C a s s e l, էջ 352, տող. 134—136.) "Քանզի ոչ գիտեմք ուստի իցէ [աւոր տեղ Հ "Երեկեան աւրն էանց.] Եւ որ այս օրս է՝ անցանէ ի մէնջ [= Հ "Եւ որ այս աւուրս է՝ անցանէ."] Եւ զգալոցն ոչ գիտեմք." [= Հ "Եւ որ գալոցն է՝ չեմք տեղեակ, եթէ մնասու մեռուս:"] Վերջինս ուղղելու է՝ "Բայց եթէ մնասու մեռուս." ըստ որում իմաստն այն է թէ ապագան ծանօթ չէ, բայց միայն մահը։ Եւ այս իմաստն ունի նաեւ Եթովպ. 29, 18—21. "...եւ ոչ գիտեմք ուստի եմք մեք, եւ յոր ինչ տարեալ լինիմք. քանզի հարկիւ փոխիմք ի վաղիւն ցորչափ կեամք, եւ յետ այնորիկ դառնամք ի մահ:"

14. Տող 81—92: Այս կտորը քիչ մը համառօտուած է այժմու հայ բնագրին մէջ, եւ բաւական աղաւաղուած՝ մանաւանդ անուանքն։ Յոյնը կը սկսի այսպէս. (C a s s e l, տող 136—150.) "Մի՛ արդ զտառապելովքս արհամարհեր, ո՛վ Ադրիանէ. [Հ հարցման ձեւով՝ "ընդէ՞ր զաստացեալ բանսն արհամարհեցեր:"] Հոս կը յաջորդէ յունին եւ եթովպականին մէջ այն կտորը, զոր Հայն վերն ունէր, ուր համեմատեցինք Հայոյն հետ միւս բնագրաց այս տեղը՝ "Մի ասեր թէ միայն շրջեցար ընդ աշխարհ" եւն. (տես վերը՝ Ծան. 10։) Ապա կը յաջորդէ յունին եւ եթովպացւոյն՝ ինչպէս նաեւ Հայոյն մէջ մնացեալ մասը, որ է ըստ յունին այսպէս. "Մի՛ համարեսցիր քեզ թէ գեղեցիկ ես եւ մեծ եւ մեծատուն եւ իշխան աշխարհաց [աւոր տեղ Հ "այդպէս գեղեցիկ եմ ... յաւիտենական իշխանաւորս եմ գովեցեալ."] Ո՞չ գիտես եթէ մարդ ես՝ խաղալիկ կենաց, դրդուեալ ընդ բախտի եւ ճակատագրաւ [ἄνθρωπος βίου πέφυκας παίγνιον, ὑπὸ τύχης καὶ μοίρας κρατούμενος, ուր մտադրութեան արժանի է Հայոյն ընթերցումն. "խաղալիկ ես բախ-

ռէջ, փակեալ եւ ընդ Երնեւեկաւ.„ Ի՞նչ է հոս "Երնեւեկ.„ եթէ ուղիղ է ընթերցումն՝ յայտնի է որ ճակատագրի, բախտի արեւմեան նշանակութեամբ գործածուած է, որ սակայն հայ մատենագրութեան մէջ այլուր չի տեսնուիր. Եթովպ. ուրիշ նմանութիւն կը բերէ հոս, այսինքն՝ այն թէ գեղեցկութիւն, հարստութիւն նման է խոտոյ դաշտաց.] երբեմն բարձրացեալ եւ երբեմն խոնարհեալ մինչեւ ցանդունդս [Հ պարզապէս. "խոնարհեալ ես ընդ հողով„ առանց առաջնոյն.] չկարէ՞ս իմանալ զկեանս, Աղբէանէ ի ծաղուած օրինակաց. [ἐκ πολλῶν ὑποδειγμάτων, զոր Հ կը թարգմանէ "ի բազում առակաց ցուցից քեզ.„] որպէս մեծատուն էր ոսկեովք Գիւգէս թագաւոր Լիւդացւոց [Հ "որպէս մեծատուն էր Կրոնոս.„ ուղղելի՝ "Կրոսոս" նաեւ Եթովպ. 30, 7 եւն կը շեղի բոլորովին յունէն, եւ Տրայանոս համար կ'ըսէ թէ "մեծատուն էր ոսկեով,„ բայց այս "Տրայանոս„ չունի արաբացին.] եւ զօրավար մեծ՝ թագաւորն Դանայեցւոց Ագամեմնոն, [հոս ալ Հ ուրիշ է՝ "եւ զօրավար էր Ոդիսէոս.„ նախ "զօրավար„ ուղղելու է "զօրավար„ = στρατηλάτης. երկրորդ՝ "Ոդիսէոս„ թերատ ընթերցումն ըլլայ թերեւս "Ոդիսէոս,„ թէեւ պէտք էր հոս բուն "Ագամեմնոն„ ըլլալ = Ἀγαμέμνων. Եթովպ. չունի.] կամ յանդուգն եւ արի էր Աղէքսանդրոս՝ Փիլիպպոսի Մակեդոնացւոց, [Հ "որպէս ուժեղն էր Աղեքսանդր Մակեդոնացին„ Եթովպ. 30, 9 հոս ալ "կարի մեծատուն էր՝ կ'ըսէ եւ Աղեքսանդր անունն արաբական ձեւով կը գործածէ, այսինքն՝ Eskĕndĕr = الاسكندر] եւ անձնեայ Հերակլէս [θρασὺς ժպիրհ, համարձակ, յանդուգն եւն. Հ "որպէս քաջն էր Հերակլէս.„] եւ վայրագ՝ Աքիլլէս [= Հ], իմաստուն՝ Ոդիսեւս, եւ գեղեցիկ՝ Աքիլլեւս:„ Վերջիններս չունի այժմու հայն. Եթովպացին 30, 9 եւն ունի վերջինները՝ Ոդիսեւս եւ Աքիլլէս, բայց նախըն-

թացները՝ Հերակղէս եւ Սիկղոփս՝ չունի: "Ոդիսեւս„ ալ աղաւաղ ձեւով աւանդուած է Awdîs, ուր արաբ. լաւ اريسوس, բայց "Աքիլլեւս„ անուան տեղ արաբն ունի սա անունը ارشلاوس, զոր հանրածանօթ գիտնականը Fleischer կ'ուզէր = Ἀρχέλαος մեկնել. (տես Bachm. Leben, p. 30, n, 5): Բայց Քասէլ (էջ 339) ուղիղ չի համարիր այս մեկնութիւնը, այլ կ'ընդունի Պախմանի (Vita, p. 10b) յառաջագոյն յայտնած կարծիքը թէ անունս է = Ἄρσαλος աղաւաղեալ անունն յոյն ձեռագրին՝ փխ. "Հերակղէս." մանաւանդ որ Օքսոնեան ձեռագիրը ارسلاوس կը կարդայ: Այս "Արսալոս„ անունէն Քասէլի հանած հետեւութիւնը վերը յիշեցինք. (էջ 184:)

15. Տող. 92—97: Այս փակագծեալ կտորը Սիկղոփսի նկատմամբ, որ ո՛չ յունին եւ ո՛չ այլոց մէջ կայ, անտարակոյս լուսանցագրութիւն մըն է, թէեւ շատ հին՝ ինչպէս լեզուն կը վկայէ, որ յետոյ մտած է բնագրին մէջ: Կրնայ նաեւ թարգմանչին յաւելուածն ըլլալ, որ իւր ազգայնոց Սիկղոփսի վրայ տեղեկութիւն մը տալ կ'ուզէր: Որոշ բան մ'ըսել ի հարկէ դժուար է: Անշուշտ գրչի սխալ մըն է "Աֆասոէս„ անունը, զոր անշուշտ ուղղելու ենք "Ոդասոէս„ եւ լաւ եւս՝ "Ոդէսոէս:„ Ոդիսեւսի յիշատակութիւնը, որ յունին մէջ տող մը յառաջ կը գտնուէր, այնտեղ չկար հայոյն մէջ, ինչպէս տեսանք:

16. Տող. 97—105: Բաւական տարբերութիւն ունի այս կտորը, որ յունին եւ այլոց մէջ աւելի ընդարձակ ալ է. (յոյնը՝ Cassel, տող 151—157:) Նախ առաջին խօսքը այժմու հայոյն մէջ այնպէս է որ Սիկղոփսի վրայ առնելու է, բայց քիչ մ'ուղղելով կրնայ յունին հետ համաձայն ըլլալ: Յոյնը կ'ըսէ, "Եթէ յիւրաքանչիւր ի նոցանէ՝ զոր ունէին, եբարձ բախտն, որչափ ես ա-

ուաւեալ ի քէն„ (տես Քասէլի ուղղածը՝ էջ 357։) Հայն այսպէս ունի այս մասը՝ "Եւ էր [էի՞ն] երբեմն այնպէս՝ մինչ բախտին շնորհեալ էր․ արդ փառքն բարձան ի նմանէ ["ի նոցանէ„ Թերեւս], եւ որք էին լաւ քան զքեզ․„ Ւթուլպ․ 30, 11—11 այլազգ է․ "Ամենեքին նոքա էին տեարք (կամ "ստացիչք„) յայն աւուրս եւ այսօր ոչ են․ այսօր քեզ եւ վաղիւ՝ այլում։„ Ասկէ ետքն եկող մասին մէջ ալ անուանք բաւական աղաւաղած են այժմու Հայերէնին մէջ։ Ցոյն է․ "Քանդէ ղէտ ինչ տյնդէս գեղեցիկ որդես Աթէնղէտ [Հ "արդ չես ինչ լաւ քան զԱթենս․„] եւ ոչ իմաստուն՝ որդես Ոդիսեւս [Հ քիչ մ'ետքն ունի զայս․] եւ ոչ քաջարթ՝ որդես Աքիլլեւս․ եւ ոչ՝ համարձակ որդես Հերակլէս [Հ "եւ ոչ քաջերնի եւ քաջարթ քան զԱքիլլես․„ իսկ Հերակղէս յետոյ կը յիշուի իբրեւ "զաւրաւոր„] եւ ոչ արի եւ յանդուգն որդես Աղէքսանդրոս, եւ ոչ զօրավոր որպէս Ագամեմնոն, եւ ոչ մեծատուն որպէս Գիւգէս Թագաւոր Լիւդացւոց։„ Վերջնոյս տեղ Հ այսպէս ունի․ "Եւ ո՛չ իմաստուն որդես զՈդիսոս, եւ ոչ զաւրաւոր որդես զԱքաբինոս եւ զՀերակլէս [հոս ալ ուրեմն "զաւրավար„ = στρατηλάτης եղած է "զաւրաւոր․„ իսկ վերն յիշուած աղաւաղ անունը "Ոդաբինոս„ հոս եղած է "Աքաբինոս,„ ուստի Ա, եւ Ո եւ Դ եւ Գ փոխանակուած, ճիշդ ինչպէս վերը յիշուած "Աքաւոս„ = "Ոդիսեւս„ անուան մէջ․] եւ ո՛չ Բագաւոր սաստիկ որդես զՄակեդոնացին։„ Մնացեալները չկան այժմու Հայ բնագրին մէջ․ իսկ Ւթուլպ․ ամբողջ այս մասը չունի։

17․ Տող․105։ Նշանաւոր է այս խօսքը․ "Այս քեզ է ձենջ որպէս յառաջաբան մի՝ լիցի․„ (մի = մը։) Հոս այնչափ յարմար չէ "է ձենջ,„ թէեւ այսպէս ալ կրնար թարգմանուիլ յունին հոս տեղ ἡμῖν (բուն "ձեզ„) ըսելը․ Ταῦτα μὲν, ὦ Ἀδριανὲ, ἐν μέρει προοιμίου ἡμῖν ἀνεγράφη κτλ. այսինքն՝ "Արդ այս, ո՛վ Ադրիանէ, իբրեւ յառաջաբան ինչ

դրեցաւ մեզ (կամ "ի մէնջ.") մոռացաւ այժմ յաւուրն, որպէս տեսցէք:" Այս վերջինը չկայ Հայոյն մէջ, որ ասոր տեղ կ'ըսէ՝ "բայց վասն զի հարցեր՝ թէ Զի՞նչ է աշխարհ" եւն, եւ կը սկսին վճիռները: Քասէլ (էջ 357) յունարէնին վերոյիշեալ խօսքին նկատմամբ կ'ըսէ թէ այստեղ պէտք էին կցուած ըլլալ Վճիռները: Ճիշդ այսպէս է արդ Հայերէնը, որ նշանակութիւն ունի նաեւ այնու որ կը ցուցընէ թէ յոյն օրինակներ ալ կային այնպէս: Արեւելեան խմբագրութիւնք այստեղ կը շեղին բոլորովին, վասն զի քանի մը գլուխ ունին աւելի: Եթովպացերէնը վերոյիշեալ Ταῦτα μὲν եւն խօսքէն ետքը, զոր աւելի ընդարձակ կերպարանօք կը ներկայացընէ (էջ 30, 12—15) կը փակէ ԺԲ գլուխը: Ասոր կը յաջորդեն երկու գլուխներ ալ: ԺԳ գլուխը կը սկսի (էջ 30, 16—32, 6) անով թէ Ադրիանոս զարմացած էր Փիլիսոփային իմաստութեան վրայ. այն ատեն ուզեց իմաստասէրը դեռ եւս զուարճացընել զկայսրն եւ սկսաւ պատմութիւն մը պատմել: Հոս կը յաջորդէ "Եօթն իմաստասիրացն գրքէն առնուած կաթնաղջկան զրոյցը՝ արաբ.-եթովպ. բնագրաց մէջ. (տես F. Baethgen, Sindban oder Die sieben weisen Meister, Leipzig 1879, p. 34. Cassel, Sindbad, p. 337 եւ մանաւանդ 391, ուր թարգմանուած է այս զրոյցը Սինտիպասէն. տես նաեւ վերը՝ Պախմանի գրութեանց մէջ): Զրոյցէս ետքը կը յաջորդէ ԺԴ գլուխը (Եթովպ. էջ 32, 7—33, 12), որուն մէջ Սեկունդոս մանրամասն կը խօսի իւր լռութեան պատճառին վրայ, եւ կը լմնայ սա խօսքով. "Եւ այս են Հարցմունք, որ հարցան Սեկունդոսի, եւ այսուքիկ Առակք եւ Իմաստութիւնք:" Ասոր վրայ կը յաջորդեն 55 Վճիռք կամ Սահմանք, եւ անկէ ետքը ամբողջ Վարուց վերջաբանը: Թէեւ Հայն յունին պէս չունի այս վերջին գլուխները, բայց այն կարեւոր կէտին մէջ միաբան է արեւելեանց,

որ կիցունին Վարքն ու Վճիռքը։ Բայց կէտ մը կայ հոս զոր պէտք չենք մոռնալ յիշելու։

Արաբն ու Եթովպացին Վարուց վերջաւորութիւնը Վճիռներէն առջն ունին, եւ մէկ ամբողջ մը կը կազմեն Վարքն ու Վճիռք։ Յունարէնին մէջ զատուած ըլլալով այս երկուքը, այն վերջաբանական մասը հոս տեղն է։ Հայոյն մէջ այժմ չկայ այս վերջաւորութիւնը. վասն զի այստեղ՝ ուր ունի Յ, չէր կրնար ըլլալ. իսկ Վճիռներէն վերջը չկայ։ Արդեօք գրչագրաց անխնամութեամբ դուրս մնացած է թէ Հայոյն տեսած բնագրին մէջ չկար. որոշելը դժուար է, բայց կ'ենթադրենք որ նախնաբար ըլլալու էր այն Վճիռներէն վերջը։ Այս վերջաբաններուն յունին (Mullach, II, p. XXIX1, տող 41 եւն. Cassel, տող. 160—164.) "Յայնժամ ընթերցեալ Ադրիանու եւ ուսեալ զպատճառս որ վասն լռութեամբն հանճարեալ էր [τὴν σιωπὴν ἐφιλοσόφησεν, տես վերը՝ Ծան. 1. Եթովպ. 33, 15 եւն ընդարձակ է, եւ կը յաւելու քանի մը գովութիւններ իմաստասիրին՝ էջ 34, 1 եւն.] Հրամայեաց ի մատեանս իւր ի Նուիրական մատենադարանի դնել զիմաստասիրականն Սեկունդոսի բանս։" Այսպէս ըստ ուղղագրութեան Քասէլի (էջ 357.) յոյն բնագիրն է այսպէս ἐκέλευσεν αὐτοῦ τὰς βίβλους ἐν τῇ ἱερατικῇ βιβλιοθήκῃ [Mullach, տարբեր ընթ. βίβλῳ] ἐντεθῆναι Σεκούνδου τοῦ φιλοσόφου, որուն նկատմամբ կը գրէ Քասէլ այսպէս. "Կարելի չէ անշուշտ Սեկունդոսի Պատասխանները βίβλος (գիրք) կոչել. բաց աստի եթէ Սեկունդոսի նկատմամբ է այն՝ կրկին անգամ կեցած կ'ըլլայ αὐτοῦ (նորա) եւ վերջը դեռ անգամ մ'ալ Σεκούνδου (Սեկունդոսի)։ Պէտք է յունարէնն այսպէս կարդալ ἐκέλευσεν εἰς τὰς αὐτοῦ βίβλους ἐν τῇ ἱερατικῇ βιβλιοθήκῃ ἐντεθῆναι τὰ τοῦ Σεκούνδου τοῦ φιλοσόφου. (Թարգմ. տես վերը։) Ադրիանու այս "նուիրական

մատենադարանն„ շատ քիչ պիտի հասկընայինք, եթէ բուդդհայական հիմն մը չընդունէինք. այսպիսի "նուիրական մատենադարան„ մը վիհարա մ'եղած ըլլալու է, որուն մէջ բարեպաշտք կը կարդային եւ կ'ուսանէին։ Ա՛յն է յարմար տեղը հարցընելու եւ պատասխանելու։ Պուռնուֆ (Bournouf, Lotus de la bonne loi, p. 317) կոչումն կ'ընէ բուդդհայական գրքէ մը հետեւեալը. Հինաւուրց հռչակաւոր կրօնաւորք, որ քաջավարժ են յընթերցման սրբոց գրոց . . . կը բնակին այս վանքը. այս կրօնաւորք իրենց ժամանակը կ'անցընեն հարցափննելով եւ անդադար նոր խնդիրներ առաջարկելով։„ — Այս "նուիրական մատենադարանին„ վրայ վերը յառաջ բերինք գիտնոց այլեւայլ կարծիքները. (էջ 176)։ Փարիզի արաբական ձեռագիրը خزينة الكهنة (մատենադարան քահանայից) կը կարդայ, իսկ Օքսֆորդեանը՝ خزانة الحكماء (մատենադարան փիլիսոփայից)։ Եթովպ. կ'ըսէ. "Եւ հրամայեաց զի ընթերցցին գիրք նորա ի տան մատենից քահանայից„ եւն ("տուն մատենից„ խօսքին տեղ եթովպերէն բառը բուն "մայր„ փայտ կը նշանակէ)։ — Ասկէ վերջը կու գայ սա վերջաւորութիւնը Τέλος τοῦ βίον Σεχούδου (վերջ վարուց Սեկունդոսի), Ասոր. 88, 14 Մահուան սահմանէն ետքը՝ ܫܠܡ ܣܩܘܢܕܘܣ ܦܝܠܣܘܦܐ ܫܬܝܩܐ (կատարեցաւ Սեկունդոս իմաստասէր լռակեաց), Արաբ. كملت هذه الاقوال (կատարեցան այս բանք.) Եթովպ. t^a^f^a^z^a^m^a^ z^e^ntû ("Կատարեցաւ այս.„) եւ կը յաւելու "Եւ տուողին իմաստութեան վայելեն փառք եւ պատիւ եւ եղիցի յաւիտեանս յաւիտենից, ամէն։„

18. *Տող. 107—114։* Առաջին վճիռս, որ հայոյն մէջ թերակատար է, ունի միայն A. վերը տեսանք որ C ասոր տեղ Սեկունդոսի Աշխարհի վրայ ըրած բանախօսութեան առաջին տողերն

տռած է։ Վճիռներուս համեմատութեան համար գործածած ենք յոյն բնագիրն ըստ հրատարակութեան Մուլլախի (Mullach, Fragmenta եւն. I, Paris. 1860, p. 512 եւն.) եւ ուր որ արեւելեան խմբագրութիւններէն կոչումն եղած է՝ ըստ հրատարակութեան եթովպական բնագրին Պախմանի (die Philos. բնագրի մասն՝ էջ 1—41)։

*վճիռ Ա:* Յունարէն՝ I. *Τί ἐστι Κόσμος;* (Ա. Զի՞նչ է Աշխարհ)։ Արաբ.-Եթովպ. կրկին վճիռ ունին Աշխարհի վրայ. (Հարցումն 2 եւ 3, հրտ. Bachm., Leben, p. 10—11)։ Եթովպական Վճիռք սովորաբար այս կամ ասոր նման բանաձեւով կը սկսին՝ “Հարցին ցեմտարանն ես տեղն — հոս կը յաջորդէ հարցումը, — ես գրեալ էջրետէ:„ — Հայերէն բնագիրն այժմու վիճակին մէջ 6 սահման ունի այս վճռին վերաբերող, եւ երկու հատ ալ՝ որոնց գոնէ մէկը խնդրական է. իսկ ամբողջը շատ լաւ վիճակի մէջ չէ աւանդուած մեզի, ինչպէս յաջորդ համեմատութիւնը կը ցուցընէ։ —1 “Անհաս մեծութիւն որ զամենայն փակէ.„ անտարակոյս հայն կարդացեր է Բ ἀχατύληπτος περιοχή (անհաս շրջապատ), թէեւ “մեծութիւն„ բառացի թարգմանութիւն չէ περιοχή բառին։ Մուլլախ կ'առաջարկէ ἀνέχφραστος կամ ἀδιήγητος περίοδος (շրջան) կարդալ՝ հետեւելով լատինականաց, Եպիկտ. ineffabilis circuitus եւ Վինկ. Բելլով. incessabilis circuitus. Արաբ. لیس له حد (չիք նորա սահման), եւ Եթովպ. “սահման որ ոչ բովանդակի։„ —2 “Աւդով վերարկեալ„ չկայ՝ ո՛չ ի Յ եւ ո՛չ արեւելեանց մէջ. “Վերարկել„, որ հոս “պատել, ծածկել չորս կողմանէ„ կը նշանակէ, յետմեսրոպեան առութիւն մըն է։ —3 Թերի եւ աղաւաղ է ապահովապէս այս խօսքը՝ “աղխումն որ ընդ միմեանց կապեալ է.„ եթէ չհամեմատուի այս Բի սա

ընթերցման հետ θεωρητικὸν κατασκευάσμα [G: θ. κατασκευασμένον], այսինքն՝ "տեսանելի կազմած," չկայ յունին եւ արեւելեանց մէջ. (Հմմտ. Արաբ. "եւ ոչ է կատարած զարդու նորա որ երեւի ի պէսպէս ազգս." Եթովպ. մէթէն)։ — 4—5 Այսպէս պէտք է բաժնել հայն եւ ընթեռնուլ. "մնացումն յաւիտենական. որ յաւդոց հաստատեալ է։" Հայ բնագրաց ընթերցումն ("մնացումն որ յաւիտենական յաւդոց հաստատեալ է") կրնար ընդունուիլ, եթէ "յաւիտենական" ածականի տեղ "յաւիտեանս" կամ նման մակբայ մ'ըլլար։ Զինչ եւ իցէ Հ կը համապատասխանէ յոյնին սա խօսքին՝ αἰώνιον διακράτημα ("յաւիտենական պահպանումն" կամ "մնացումն" վասն զի διακράτημα կը նշանակէ բան մ'իր վիճակին մէջ բռնելը, պահելը = Արաբ. سلطنة دائمة, Եթովպ. "նոր լինիցի մինչեւ ցյաւիտեան")։ — 6 "Զերրորդն որ ընդ միմեանս ...," հոս կը յաջորդէ Aի թերի մնացած մասը։ Որչափ ալ թերի է խօսքս, եւ "չերրորդն" բառին գործածութիւնն այլազգ, կ'երեւայ թէ հոս "շրջան, շրջագնաց շարժումն" իմաստով գործածուած է, վասն զի յունարէն այս տեղ կ'ըսէ ἀπλανὲς κύκλωμα (անմոլար շրջան, ըստ G, մինչ P ἑπταπλανὲς κύκλωμα, եւթնամոլորակ շրջան.) Gի հետ կը համաձայնի Եգիպտ. circuitus sine errore, ընդհակառակն Pի աւելի նման է Արաբ. "տասն տարերք շրջին ի վերայ նորա" = Եթովպ.։ — 7—8 Aի այս թերի մասէն ետքն երկու նախադասութիւնք կան, որոնք՝ դիրքէն նկատելով՝ Աստուծոյ սահմանին պէտք էին վերաբերիլ։ Մին արդեամբք կը յարմարի անոր (տես Բ, 3) բայց վերջինը՝ ոչ։ Այս վերջինը ("աճումն որ սահմանաւք փակեալ է") կրնար Ծովու սահմանին վերաբերիլ. սակայն սոր դէմ կ'ելլէ այն պարագայն որ A ձեռագրին մէջ սակէ ետքը կը սկսի ծովու

մասը՝ "Զի՞նչ է ծով,, եւն։ — Հայր Թերի ըլլալով՝ շատ մը նախադասութիւնք կը պակսին, զոր ունին յոյնը եւ արեւելեանք։ Այսպէս ունի յոյնը։ "Անտեսանելի (G գեղեցկատեսիլ) բարձրութիւն, [որ ըստ Պախմանի զարմանալի եղանակաւ կը պակսի բոլոր լատինականաց մէջ, բայց կայ յԱրաբ. وهو علواء لا يدرك "բարձրութիւն որում ոչ հասանի,, = Եթովպ. "բարձր. որ ոչ կատարի,,] ինքնածին տեսիլ, [տես վարը՝ Բ, 1.] բազմանկարագիր կերպարանք. եթեր անուցիչ. (P կը յաւելու πολυδιοίκητον πνεῦμα, "շունչ բազմաբաշխ,,, որ այս տեղւոյ չի վերաբերիր.) արեգակն. լոյս (G լոյս արեգական.) տիւ. լուսին [չիք ի G.) աստեղք խաւար. գիշեր. երկիր. հուր [չիք ի G). ջուր. օդ [G օդ. ջուր։),, Արեւելեանց այս մասին ընթերցմունք տես Bachm., Leben, p. 10—11։

*19. Յոդ. 115—118 Բ:* Յոյնը՝ III. *Τί ἐστι Θεός;* (Զի՞նչ է Աստուած)։ Արաբ.-Եթովպ. Հարցումն 1 (հմտ. Bachm., Leben, p. 9)։ Հայ բնագիրը կը պակսի A ձեռագրին մէջ, եւ պահուած է միայն ի C եւ այն՝ շատ թերակատար ձեւով. քանի մը սահմանք ալ Աշխարհի վճռին կը վերաբերին։

— 1 "ինքնածին տեսիլ,, այստեղ պէտք էր համապատասխանել յունին՝ ἰδιόπλαστον ἀγαθόν (ինքնակազմ բարի) ըսածին, զոր P եւ Ox. ունին, իսկ G պարզապէս ἀγαθόν (բարի) կ'ըսէ. կը շեղի նոյնպէս Արաբ. وحده والدائم, բայց Եթովպ. աւելի կը համապատասխանէ ἰδιόπλαστον ասութեան։ Սակայն ճշդիւ քննելով՝ կը տեսնուի որ հայոյն ընթերցումն յիշեալ խօսքին թարգմանութիւն չէ. նախ "ինքնածին,, չէ ճշգրտիւ = ἰδιόπλαστον, իսկ "տեսիլ,, բոլորովին ուրիշ բան է։ Արդ հայոյն ըսածին ճիշդ նոյնը տեսանք վերը՝ Աշխարհի վճռին մէջ, որ է αὐτογέννητον

θεώρημα = "ինքնամէն տեսիլ," որ այնտեղ կը պակսի ի Հ։ — 2 "Որ փակէ զամենայն եւ ինքն յումեքէ ոչ փակի." այս ալ՝ որ չկայ հոս յունին եւ արեւելեանց մէջ, շատ նման է Աշխարհի վճռին առաջին սահմանին՝ "որ զամենայն փակէ." (տես Ա, 1)։ Այս ընթերցումը կը հաստատէ Վինկ. Թեյլ. omnia continens. յոյն բնագրին մէջ կան նման բաներ, որոնք հայոյն մէջ չկան, հմմտ. ἰδία πάντων οὐσία ("սեպհական էութիւն ամենայնի," չունի G, Եթովպ. տես Bachm, p. 9, n. 7.) կայ նաեւ πολυδιοίχητον πνεῦμα ("բազմաբաշխ շունչ." = Արաբ. "որ առաջնորդէ ամենայն արարածոց եւ ստեղծուածոց բանիւ իւրով եւ հոգւով." Եթովպ. "որ դատի զամենայն հոգւով իւրով։") — 3 Հայն ունի հոս "իմաստ խնդրելի" բստ այժմու C բնագրին, ուր "իմաստ" ի հարկէ "իմաստութիւն" նշանակութեամբ է։ Եթէ համեմատենք բնագրին հետ δυσνοούμενον ζήτημα (դժուարիմաց խնդիր) կը տեսնենք որ "խնդրելի" հոս է = ζήτημα (խնդիր) եւ գոյականաբար գործածուած, ուստի "իմաստ" պէտք կ'ըլլայ ուղղել գոնէ "դժուարիմաստ խնդրելի" (արաբ., եթովպ. բնագիրք չունին զայս)։ Համեմատելու ենք արդ Ա, 7 խօսքը՝ "խնդիր որոնմ ոչ հասանելի," եւ կը տեսնենք որ երկուքն ալ նոյն իմաստն ունին եւ թերեւս միեւնոյն խօսքին երկու տարբեր խմբագրութիւնք են։ — 4 C կ'ընթեռնու "իմաստուն անմահ," որ կրնայ շատ լաւ ըլլալ. սակայն որովհետեւ յոյնը ἀθάνατος νοῦς (անմահ միտք = Արաբ. عقل غير مايت) կը կարծենք թէ հայը պէտք է գրչի սխալ մը համարիլ եւ ուղղել՝ "իմաստութիւն անմահ." յունին νοῦς (միտք եւն) կրնար նաեւ "իմաստութիւն" թարգմանուած ըլլալ, հմմտ. Եթովպ. "իմաստութիւն (lĕbûnâ, իմացականութիւն) որ ոչ մեռանի։" — Այսչափ միայն ունի C, որով շատ թերի է Հ։ Յոյն բնագիրք

ունին նաեւ հետեւեալքը. “Բազմակերպարան պատկեր. անտեսանելի բարձրութիւն. (— այս խօսքն Աշխարհի վճռին մէջ կար եւ հոս կրկնուած է, զոր նոյնպէս կրկներ են արեւելեանք՝ քիչ մ'այլազգ թարգմանելով, հմմտ. Արաբ. “բարձրութիւն, որոյ չիք սկիզբն եւ վախճան.„ Եթովպ. տես Bachm. p. 9 n. 3.) բազմանկարագիր կերպարանք, (այս ալ կար վերը, եւ չունին հոս արեւելեանք.) շունչ բազմաբաշխ. (տես Բ, 2.) անքուն ակն. բազմանուն զօրութիւն. (= Արաբ. “որ ունի զամենայն զօրութեամբ իւրով.„ իսկ Եթովպ. աւելի նման է հայոյն Բ, 2 խօսքին՝ “որ ունի զամենայն արարածս ի ձեռին իւրում.„) ձեռն ամենակալ. լոյս. [G ամենակալ լոյս. բայց P ի հետ նոյն է Եթովպ. “սա է ձեռն.„ իսկ Արաբ. կը շեղի قوة جوهره لا يدرك, այսինքն “զօրութիւն, որոյ էութիւն անհասանելի է.„ բաց աստի Արաբ.-Եթովպ. “լոյս„ ուրոյն ալ ունին.] միտք, զօրութիւն. [Արաբ. حياة կեանք. Եթովպ. “զօրութիւն որ իշխէ ամենայնի„]:

*20. Յող. 119—124 Գ:* Յոյնը՝ II. *Τί ἐστι Ὠκεανός;* (Զի՞նչ է Ովկէանոս): Արաբ.-Եթովպ. Հարցումն 18 (հմտ. Bachm. die Phil., բնագիր, էջ 11—12,) ուր արեւելեանք յունարէնին նման “ովկէանոս„ կ'ընթեռնուն՝ Եթովպ. “ծով ովկէանոս,„ իսկ Արաբ. البحر المحيط

— 1 “Գօտ աշխարհի„ = Յ *κόσμου ἐναγκάλισμα* (գրկախառնումն աշխարհի, Արաբ. حضن الدنيا, “ամրութիւն„ կամ “ամրոց„ աշխարհի = Եթովպ. “պարիսպ աշխարհի:„) — 2 “Պսակ ծովեղէն„ կը հաստատէ P ի ընթերցումն *θαλάσσιον στεφάνωμα*, մինչ G կը կարդայ *στεφανωμένον δρίον* “սահման պսակեալ„ = Եպիկտ. եւ Վինկ. Բեյլ. terminus coronatus, զոր կ'ընտրէ

Պախման։ Սակայն նաեւ արեւելեանք կը հաստատեն Հայոյն եւ Բի ընթերցուածը. Արաբ. هو اكليل اللجة, "նա է պսակ ծովու," նոյնպէս Եթովպ.։ —3 "Ընդերկարութիւն ջրեղէն" անշուշտ կը համապատասխանէ յունին սա խօսքին՝ G δεσμὸς ἀτλαντικός ("կապանք ատլանտեան" կամ "ծովային",) ուր P ἁλμυρὸς δεσμός "աղային կապանք" եւ յետոյ ἀτλαντικὸς ζωστήρ, "գօտի ատլանտեան" կ'ընթեռնու։ Հայն թէ "աղային" եւ թէ "գօտի" բառերն ունի՝ բայց ուրիշ դրից մէջ. (տես Գ, 5 եւ 7)։ Արեւելեանք չունին բառացի նոյն կտորը, բայց ունին նման խօսք մը, հմմտ. "որ լնու զլրումն տիեզերացն" ըստ Արաբ., իսկ Եթովպ. "լցեալ եւ կատարեալ" —4 "Անբաւ հաստատութիւն։" Հոս "հաստատութիւն" պէտք է անշուշտ "գոյացութիւն" իմաստով առնուլ։ Յոյնը չունի այս խօսքը, վասն զի անոր խօսքը πάσης φύσεως περίδρομος այս տեղւոյ չի վերաբերիր. (տես Գ, 7.) Լատինականներէն ոմանք, ինչպէս Եպիկտ. կ'ընթեռնուն orbis sustentaculum ("աշխարհի պահպանութիւն," բուն՝ "սնունդ"։) Արեւելեանք ունին Հայոյն ըսածն, այնու որ ծովը "անբաւ" կը սահմանեն. հմմտ. Արաբ. ليس له قياس او لا حد, "չիք նորա չափ եւ սահման" = Եթովպ. "չիք նորա չափ։" —5 "Մայր աղի" չկայ այսպէս բառ առ բառ ոչ P եւ ոչ G բնագրաց մէջ, բայց P ունի "աղէ" (տես վերը՝ Գ, 2.) նաեւ G ունի ուրիշ ընթերցուած մը περίαμμα ἁλμυραῖον, այսինքն "աղային յուռութուլունք։" —6 "Հաւաքիչ ամենայն ջրոց" չկայ ի Յ, բայց ունին լատինականք, Եպիկտ. եւ Վինկ. hospitium fluviorum։ Անոր տեղ ունի Արաբ. "որ տիրէ ի վերայ ամենայնի որ գտանի ի նմա, եւ աշխարհ եւ ամենայն տիեզերք ի գիրկս նորա է (արաբ, հոս ալ حضن կ'ըսէ,).

Եթովպ. “որ գտանի յամենայն աշխարհի„ եւ “որ ունի զամենեսին՝ որ ժողովին ի նմա եւ որ ենն:„ —7 “Որպէս գաւառի զտիեզերաւք„ այսպէս չկայ յունին մէջ, բայց մասունքը կան. Համմ. P ἀτλαντικὸς ζωστήρ (գօտի ատլանտեան) եւ PG πάσης φύσεως περίδρομος (շրջապատութիւն ամենայն բնութեան), ուստի հայն այնպիսի բնագիր մ'ունէր, ուր ասոնք մէկ նախադասութեան ամփոփուած էին: Պախման (էջ 17 ծան 10) կ'ըսէ թէ P ձեռագրին “գօտի„ ընթերցումը չի վերաբերիր այս տեղւոյ. ըստ հայոյն՝ շատ լաւ կրնայ տեղը մնալ՝ կցուելով միւս խօսքին հետ: Արեւելեանք չունին զայս ճշդիւ, Եթովպ. “ի գոգս նորա է ամենայն աշխարհ:„ —8 “Աշխարհի տողնջական„ նորանշան ընթերցումն, ուր Յոյնը οἰχουμένης χάτοχος կը կարդայ, մեկնեցինք վերը (էջ 225) այնու որ թարգմանիչը ξενοδόχος (օտարասէր, հիւրընկալ, ասպնջական) գտեր է բնագրին մէջ: Արաբացին չունի այս խօսքը. Եթովպ. “որ գտանի զաշխարհաւ:„ — Յոյն G ձեռագիրը ունի λιαχὸς λαμπτήρ, որ ծովու գաղափարին չի յարմարիր. (տես Bachm. էջ 17, ծան. 10):

*21. Տող. 125—130 Դ*: Յոյն՝ չունի: Արաբ.-Եթովպ. Հարցումն 15 (հրտ. Պախման, էջ 8): Լատինականք ալ ունին նոյն նիւթոյ վրայ վճիռ մը, բայց բոլորովին աննման հայոյն: Այսպէս կ'ընթեռնու Վինկ. Բեռլ. Aer, custodia vitarum (Եպիկտ. vitae), animarum fundus: Ուստի միայն Հայն ու Արեւելեանք ունին զայս. բայց նաեւ վերջինք ըստ իրենց սովորութեան շատ կը խոտորին. (տես վերը՝ էջ 221): —1 “Աւդք տարածք եւ թաթաւունք.„ թերեւս համեմատելու է Արաբ. الهوى في الجواء, “օդ ի ծորի„ (կամ ի “խորս երկրի„): Եթովպ. բոլորովին քրիստոնէական գունով՝ “շունչ ի Տեառնէ Աստուծոյ:„ —2 “Տե-

սիլ են սուրբ, յստակ.„ անշուշտ բոլորովին անա-
ղարտ հասած չէ այս տողը։ "Յստակ„ բառին հետ
համեմատելու է Եթով. "որ թափանցանց է տե-
սութեան։„ —3 "Լի հողմաւք բազմութեան.„
Եթովպ. կ'ըսէ "եւ է նա հոգի„ (= "հողմ„
իմաստով հասկընալով.) —4 "Զաւրութիւն որ
յամենայն հասանէ„ ասոր նման է քիչ մը Եթով-
պացւոյն մէկ խօսքը "Հողմ„ վճռի մէջ (Հարցում
12, հրտ. Պախման, էջ 6) "որ ընուն զամենայն
արարածս։„ Տես նաեւ Բ վճռին ծանօթութեանց
ամէնէն վերջը։ —5 "Բնութիւն տարած„ հմմտ.
Եթովպ. "եւ վաստակի նա բնութեամբ իւրով
առաւել քան զայլ ամենայն արարածս։„
—6—7 Այս նախադասութեանց շատ նման է
Արաբացւոյն խօսքը. "Է ի նմա եւ հողմ, եւ է ի
նմա կայծակն, եւ է ի նմա անձրեւ եւ է ի նմա ալե-
կոծն„ = Հ "ալեկոծական յորդորիչ. ծնիչ հրոյ եւ ջրոյ."„

22. *Յող. 131—139 ի*: Յոյնը՝ IV. *Τί ἐστι Ἡμέρα;* (Զի՞նչ է Տիւ)։ Արաբ.-Եթովպ. Հար-
ցում 4. (Պախման, էջ 1)։

—1 "Հանդէս որ լի է աշխատութեամբ„
= PG: *στάδιον κακοπαθείας* (ասպարէզ չա-
րակրութեան.) Եպիկտ. stadium laboris. Արաբ.
չիք. Եթովպ. "տեղի լի աշխատութեամբ։„ —
2 "Շրջանակ երկոտասանժամեան„ (տես վերը՝
էջ 205) = Յ *δωδεκάωρος διαδρομή* (ըստ P
ուղղութեամբ, մինչ G *δωδεκάμαρος* կը կարդայ։)
Նոյնպէս Եթովպ.։ —3 "Սկիզբն ամենայն ցաւոց„
ուղղելու է "աւուրց„ (տես վերը՝ էջ 205) = Յ
*ἀρχὴ καθημερινή* (սկիզբն հանապազօրեայ.„) Եպիկտ.
principium quotidianum. Եթովպ. "նա է սկիզբն
աւուրց։„ —4 "Յորդորումն աշխարհի„ չկայ ի Յ
եւ Արեւ., եթէ չուզենք համեմատել սա խօսքին
հետ՝ *ὑπόμνησις βιωτική* (յիշատակ կենսական =
Եթովպ.) զոր չունի Հ։ —5 "Երկրաժեշտ„ գործոյ„
խնդրական ընթերցում մըն է, որուն "Երկրաժեշտ„

բառն անսովոր է. տեղւոյս իմաստն ըլլալու է «յորդորումն ի գործ», Յոյնն եւ Արեւելեանք չունին: — 6 «Հոգք ծփալեցք» մասամբ կայ ի P ἀερίζουσα μέριμνα («Հոգք օդայինք»)։ — 7 «Կենդանեաց համբոյրք առ ի զմիմեանս տեսանելոյ» դժուարաւ բոլորովին ուղիղ հասած է մեզի. «Համբոյր» հոս բոլորովին ուրիշ նշանակութեամբ գործածուած ըլլալու է՝ իբր «այցելութիւն = ἔντευξις, վասն զի տեղւոյս կը համապատասխանէ յունարէնին սա խօսքը ζωστικὴ ἔντευξις. («կենսական այցելութիւն» կամ Այցելութիւն կենսականաց)։ — 8 «Յուշարար անդադար» ունի միայն G παλίνδρομος ἀνάμνησις (ունի նաեւ Ox.) Եթովպ. «յուշարար յաւիտենական:» — 9 «Բնութեան հայելի.» Յ φυσικὸν ἐσόπτρισμα, նման Եթովպ. — 10 «Թիւ որով յաւիտենականք համարին» = Յոյն՝ αἰώνιον ἀρίθμημα (յաւիտենական թուարկութիւն = Եգիպտ. aeterna computatio)։ Արաբ. حساب الى الابد (թիւ ի յաւիտեանս.) Եթովպ. աղաւաղեալ է։ — Հայոյն մէջ կը պակսի δειλινὴ ἀπότασις (G եւ Ox. ἀπόταξις.)

23. *Տող. 140—146 Ձ:* Յոյն՝ V. *Τί ἐστι Ἥλιος;* (Զի՞նչ է Արեգակն)։ Արաբ.-Եթովպ. Հարցումն 5 (Պախման, էջ 1—2)։

— 1 «Ակն լուսաւոր» = Յ οὐράνιος ὀφθαλμὸς = Եթովպ. «ակն երկնից.» մինչ Արաբ. عين نور السما (ակն լոյս երկնից)։ — 2 «Նահատակ գիշերոյն» = Յ νυκτὸς ἀνταγωνιστής (հակառակորդ, ընդդիմամարտ)։ Արեւելեանք կը շեղին. Արաբ. «Լոյս որ ոչ հատանի եւ ո՛չ շրջանի» (ուստի = Է, 5, 7, 8.) Եթովպ. «պահապան աւուր» (= Է, 5։) — 3 «Շրջանակ երկնաւոր» = Յ αἰθέριος κύκλωμα, հմմտ. Եթովպ. «եւ շրջան զամենեքումբք:» — 4 «Աշխարհի յանդիմանիչ» = Յ κοσμικὸς ἔλεγχος, զոր ունի Եթովպ., մինչ

Արաբ. կը պակսի: — 5 "Անմաշ բոց„ ունի միայն G ἀχήρατος φλόξ (բոց պարզ.) Հայոյն հետ բոլորովին կը միաբանի Եթովպ. "Բոց՝ որ ոչ մաշի:„ — 6 "Զգեստ պտղոց.„ ունին այսպէս P եւ Ox. χαρπῶν περιβόλαιον: — 7 "Անանց ճառագայթ„ Հայոյն ընթերցումը կը հաստատէ Pի բածը ἄσβεστος ἀχτίς (ճառագայթ անշիջանելի), զոր Պախման կ'ուզէ ջնջել. Եթովպ. "Հուր որ ոչ ջնջի:„ — 8 "Անպակաս պայծառութիւն„ = G ἀδιάλειπτος φέγγος. Եթովպ. "Լոյս՝ որ ոչ վախճանի եւ ոչ ջնջի:„ — 9 "Զօծեալ ղամպար.„ Հոս յոյն օրինակք ունին χεχορηγημένη λαμπάς (հանդերձեալ, պատրաստեալ, կազմեալ լապտեր) = Եթով. "լապտեր օծեալ.„ բայց Եթովպ. ունի նաեւ "լապտեր աշխարհի„ = Արաբ. سراج العالم Հայոյն "օծեալ„ չի համապատասխաներ լիովին χεχορηγημένη բառին, որուն իմաստն այն է թէ Արեգակն լապտեր մըն է միշտ պատրաստուած, հանդերձուած կարեւոր իւղով: Տեղա (էջ 18 Ծան. 1) խօսելով ասոր վրայ կ'ըսէ թէ արդեօք հայն վերը յիշուած ἀδιάλειπτος բառն անգամ մը ճիշդ թարգմանելէն ետքը՝ շփոթե՞ր է λείπω եւ λιμπάνω բայերն իրարու հետ: Սակայն կ'երեւայ թէ հայն χεχορηγημένη կարդացեր եւ ընդհանուր կերպով "օծեալ„ թարգմաներ է՝ իբրեւ լապտեր մ'որ օծուած մաքրուած, ուստի պատրաստուած է: — 10 "Երկնային ճանապարհորդ„ = G οὐράνιος ὁδοιπόρος. Եթովպ. "գլուխ լուսաւորաց (Ծնն. Ա, 14), որ շրջի յերկինս:„ Արաբ. առաջինն ունի՝ "որ լուսաւորէ յերկինս:„ — Հ չունի սա խօսքը՝ "զարդ տուընջեան„, զոր ունին նաեւ Արեւելեանք:

24. Տող. 147—155 Ի—Ը: Ինչպէս՝ վերը տեսանք (էջ 222) այժմու բնագրին մէջ երկու Վճիռք միացած են: Մենք ջանացինք որոշել իրարմէ, եւ "Երկրի„ վերաբերող մասերն փակագծի մէջ դրինք եւ ուրոյն թուարկեցինք: Հոս ալ զատ զատ պիտի

համեմատենք նախ Լուսնոյ եւ յետոյ երկրի սահմաններն: Ձեռագրաց այս վիճակին մէջ ինքնին յայտնի է որ շատ թերի են երկու Վճիռներն ալ:

վճիռ Ի: Յոյն՝ VI. Τί ἐστι Σελήνη; (Զի՞նչ է Լուսին): Արաբ.-Եթովպ. Հարցումն. 6 (Պախման, էջ 2):

—1 “Կարմրութիւն երկնաւոր” = Յ οὐρανοῦ πορφύρα. Արաբ. կը պակսի. Եթովպ. ալ կը շեղի: —2 “Մխիթարիչ գիշերոյ:” = Յ νυχτερινὴ παραμυθία, զոր ունի Եթովպ. քիչ մ'աւելի ընդարձակուած: —3 “Ա-ջոյ (ձեռ. “ան-ջոյ”) ճանապարհորդ” = οὐράνιος ὁδοιπορία, զոր P ունի, բայց չունի G եւ ոչ Արաբ., իսկ Եթովպ. “Եւ է նա որ շրջի յերկինս:” Տեղս հայագէտն այս խօսքին համար կ'ըսէր (էջ 18 ծան. 2) թէ կը շեղի յունարէնէն, վասն զի առջեւն ունէր միայն C ձեռագրին “ան-ջոյ” ընթերցուածը: —4 “Նաւորդաց մխիթարիչ.” ինչպէս վերը տեսանք (էջ 206) հոս պէտք էր՝ ըստ յունին երկու նախադասութիւն ըլլալ, այսինքն՝ πλεόντων πoννύχισμα, ὁδευόντων παρηγορία (“Նաւ-որդաց ...ութիւն, ճանապարհորդաց մխիթարութիւն”): Հաւանականօրէն այն երկու բառերը (“...ութիւն” եւ “Ճանապարհորդաց”) դուրս ինկած են: Արաբ. անով միայն կը շեղի՝ որ յիշեալ երկու նախադասութիւնքն մէկի ամփոփած է՝ այսպէս. “ուրախութիւն եւ առաջնորդ ճանապարհորդաց.” Եթովպ. “ուրախութիւն որոց են ի նաւի. առաջնորդ որոց են ի ճանապարհի:” —5 “Պահպանորդ գիշերւոյ” չկայ ճշդիւ այսպէս յունին եւ արեւելեանց մէջ. բայց թերեւս հայոյն իմաստն այն ըլլայ, զոր կը բացատրէ յոյնն, երբ կ'ըսէ թէ Լուսինն ըլլայ “թշնամի չարագործաց” (χακούργων ἔχθρα), զոր ունի նաեւ Եթովպ. “թշնամի գողոց.” Արաբ. կը պակսի: —6 “Յաւիտենից նշանակ:” Վերը (էջ 225) խօսեցանք ասոր վրայ, եւ տեսանք որ յոյնն ունի

σημεῖον ἑορτῶν (տօնից նշանակ) եւ թէ հայն αἰώνιον (յաւիտենական) կարդացեր է. Արաբ. “նշանակ տօնից եւ տարւոյց.„ Եթովպ. “նշանակ տօնից։„ — Հայոյն մէջ կը պակսին սա խօսքերը. “փոխանորդ արեգական. (= Եթովպ.) շրջանակ ամսային. [Արաբ. يشرق وايضا يغرب، “ծագէ եւ դառնայ ի մայր„ = Եթովպ.). Բ ունի աւելի զատ “Ցուշարար անդադար„ որ կրկնութիւն է (տես Ե, 8), բայց այստեղ նոյնպէս կրկնուած ունին Արեւելեանք։

վճիռ Ը: Յոյն՝ XV. Τί ἐστι Γῆ; (Զի՞նչ է Երկիր)։ Արաբ.-Եթովպ. Հարցումն 17 (Պախման, էջ 10)։ Շատ թերի են ի հարկէ այս Վճռին մնացորդք։

— 1 “Հաստատեալ ի յաւդոյ„ չկայ այսպէս բառ առ բառ յունին եւ արեւելեանց մէջ. նման են՝ οὐρανοῦ βάσις (հիմն երկնից), զոր ունի նաեւ Եթովպ. եւ ἀεροφυὲς ῥίζωμα (իբր “օդաբոյս արմատ„), զոր միայն Բ ունի։ — 2 “Բոլորակ որում չհասանի ոք„ կը համապատասխանէ Գի ընթերցուածոյն՝ ἀκατάληπτος περιοχή (շրջապատ անհասանելի) = Եթովպ. “որոյ ոչ գտանի չափ իւր։„ (Տես Ա, 1։) — 3 “Անծագ տեսիլ„ անշուշտ = Գ ἀσύνοπτον θεώρημα (անտեսանելի տեսիլ) = Եթովպ. “որ ոչ չափի տեսութեամբ.„ (Բ ἀπύθμενον θεώρημα.) — 4 “Կենդանեաց հանդէս։„ Վերը (Ն, 1) տեսանք “հանդէս„ = στάδιον (ասպարէզ) գործածուած, իսկ հոս է “մարզարան,„ հմմտ. Ց γυμνάσιον ζωῆς։ — 5 “Դայեակ անձրեւոյ„ = ὄμβρων τιθήνη, զոր ունին նաեւ Արեւելեանք։ — 6 “Մայր պտղոց„ = Բ καρπῶν μήτηρ, իսկ Գ κ. φύλαγμα καὶ μήτηρ։ Արաբ. կը համաձայնի հայոյն եւ Բի հետ՝ والدة الاثمار. Եթովպ. կը շեղի։ — Այժու հայոյն մէջ կը պակսին շատ մը նախադասութիւններ, այսպէս՝ “Տքնութիւն լուսնոյ. (Եթովպ. “մխիթարիչ„

կ՚ըսէ. Արաբ. չունի)։ Ծածկոյթ անդնդոց. (= Եթովպ., բայց Արաբ. չունի.) յաւիտենական պահպանութիւն. [= Արաբ. هو حافظة الى الابد.) ընդունարան բազմամատակարար (πολυδιοίκητον, Արեւելեանք չունին.) ծնունդ եւ ընդունելութիւն ամենեցուն. [Արաբ. «մայր ամենայն իրիք եւ դարձեալ կրիչ երկնից», حاملة السماء «որ բառնայ զերկինս.» Եթովպ. «բնակութիւն (հայրենիք) ամենայն արարածոց եւ դարձեալ կրիչ նոցա։» Միայն G ունի տակաւին սա խօսքերը. «միջնավայր աշխարհի.» զոր ունի Եթովպ. եւ «աստուածատեղծ յօրինուած» (σύστημα), զոր ունի Արաբացին, եթէ ջնջենք վերջնոյս قبل (նախ քան) բառը։

25. Տող. 156—165 թ: Յոյն՝ VII. Τί ἐστιν Ἄνθρωπος; (Զի՞նչ է Մարդ)։ Արաբ.-Եթովպ. Հարցումն 25. (Պախման, էջ 16—17)։ Պախման հրատարակած է այս Վճռին արաբերէնը, բայց շատ աղաւաղ է եւ կը շեղի շատ, մինչ Եթովպացին աւելի նման է յունին։ Հայն ալ տեղ տեղ յայտնապէս աղաւաղ է։

—1 «Նման Աստուծոյ» յետաամուտ է անտարակոյս, զուտ քրիստոնէական գաղափար մ՚ըլլալով, զոր չունին ուրիշ բնագիրք։ —2 «Մարմին հոգեկիր եւ մտաւոր.» այսպէս հայն որ լաւագոյն կ՚երեւայ. յոյն բնագիրք կրկին նախադասութիւն ունին՝ νοῦς σεσαρχομένος (միտք մարմնացեալ = Եթովպ.) եւ πνευματικὸν ἀγγεῖον (աման հոգեւոր = Եթովպ. տես նաեւ Թ, 3.) Արաբն աւելի նման է հայոյն՝ մէկ խօսքի մէջ ամփոփելով. վերջապէս հայն այնպիսի ընթերցուած մը գտած կ՚երեւայ, զոր Օքսֆորթեան ձեռագիրը մերձաւորապէս թէեւ աղաւաղեալ կընծայացընէ՝ գրելով ζῶον λόγισμον, νοῦ καὶ ἐπιστήμης θεωτιμὸν (այսպէս. տես Bachm. էջ 19, Ծան. 3)։ —3 «Տաճար հոգւոյ,» Հայը կամ վերոյիշեալ (տես Թ, 2)

θεώρημα = «ընդհանուր տեսիլ,» որ այնտեղ կը պակսի ի Հ։ — 2 «Որ փակէ զամենայն եւ ինքն յումեքէ ոչ փակի.» այս ալ՝ որ չկայ հոս յունին եւ արեւելեանց մէջ, շատ նման է Աշխարհի վճռին առաջին սահմանին՝ «որ զամենայն փակէ.» (տես Ա, 1)։ Այս ընթերցումը կը հաստատէ Վինկ. թեղլ. omnia continens. յոյն բնագրին մէջ կան նման բաներ, որոնք հայոյն մէջ չկան, հմմտ. ἰδία πάντων οὐσία («սեպհական էութիւն ամենայնի,» չունի G, Եթովպ. տես Bachm, p. 9, n. 7.) կայ նաեւ πολυδιοίκητον πνεῦμα («բազմաբաշխ շունչ.» = Արաբ. «որ առաջնորդէ ամենայն արարածոց եւ ստեղծուածոց բանիւ իւրով եւ հոգւով.» Եթովպ. «որ դատի զամենայն հոգւով իւրով։») — 3 Հայն ունի հոս «իմաստ խնդրելի» ըստ այժմու C բնագրին, ուր «իմաստ» ի հարկէ «իմաստութիւն» նշանակութեամբ է։ Եթէ համեմատենք բնագրին հետ δυσνοούμενον ζήτημα (դժուարիմաց խնդիր) կը տեսնենք որ «խնդրելի» հոս է = ζήτημα (խնդիր) եւ գոյականաբար գործածուած, ուստի «իմաստ» պէտք կ'ըլլայ ուղղել գոնէ «դժուարիմաստ խնդրելի» (արաբ., եթովպ. բնագիրք չունին զայս)։ Համեմատելու ենք արդ Ա, 7 խօսքը՝ «Խնդիր որում ոչ հասանէմք» եւ կը տեսնենք որ երկուքն ալ նոյն իմաստն ունին եւ թերեւս միեւնոյն խօսքին երկու տարբեր խմբագրութիւնք են։ — 4 C կ'ընթեռնու «իմաստութեան անմահ,» որ կրնայ շատ լաւ ըլլալ. սակայն որովհետեւ յոյնը ἀθάνατος νοῦς (անմահ միտք = Արաբ. عقل غير مايت) կը կարծենք թէ հայը պէտք է գրչի սխալ մը համարիլ եւ ուղղել՝ «իմաստութիւն անմահ.» յունին νοῦς (միտք եւն) կրնար նաեւ «իմաստութիւն» թարգմանուած ըլլալ, հմմտ. Եթովպ. «իմաստութիւն» (lĕbûnâ, իմացականութիւն) որ ոչ մեռանի։» — Այսչափ միայն ունի C, որով շատ թերի է Հ։ Յոյն բնագիրք

ունին նաեւ հետեւեալքը. "Բազմակերպարան պատկեր. անտեսանելի բարձրութիւն. (— այս խօսքն Աշխարհի վճռին մէջ կար եւ հոս կրկնուած է, զոր նոյնպէս կրկներ են արեւելեանք՝ քիչ մ'այլազգ թարգմանելով, հմմտ. Արաբ. "բարձրութիւն, որոյ չիք սկիզբն եւ վախճան.„ Եթովպ. տես Bachm. p. 9 n. 3.) բազմանկարագիր կերպարանք, (այս ալ կար վերը, եւ չունին հոս արեւելեանք.) չունչ բազմաբաշխ. (տես Բ, 2.) անքուն ակն. բազմանուն զօրութիւն. (= Արաբ. "որ ունի զամենայն զօրութեամբ իւրով.„ իսկ Եթովպ. աւելի նման է Հայոյն Բ, 2 խօսքին՝ "որ ունի զամենայն արարածս ի ձեռին իւրում.„) ձեռն ամենակալ. լոյս. [G ամենակալ լոյս. բայց Pի հետ նոյն է Եթովպ. "սա է ձեռն.„ իսկ Արաբ. կը շեղի قوة جوهره لا يدرك, այսինքն "զօրութիւն, որոյ էութիւն անհասանելի է.„ բաց սատի Արաբ.-Եթովպ. "լոյս„ ուրոյն ալ ունին.] միտք, զօրութիւն. [Արաբ. حياة կեանք. Եթովպ. "զօրութիւն որ իշխէ ամենայնի„]:

*20. Տող. 119—124 Գ:* Յոյնը՝ II. *Τί ἐστι Ὠκεανός;* (Զի՞նչ է Ովկէանոս): Արաբ.-Եթովպ. Հարցումն 18 (հրտ. Bachm. die Phil., բնագիր, էջ 11—12,) ուր արեւելեանք յունարէնին նման "ովկէանոս„ կ'ընթեռնուն՝ Եթովպ. "ծով ովկէանոս,„ իսկ Արաբ. البحر المحيط

— 1 "Գոգ աշխարհի„ = G *κόσμου ἐναγκάλισμα* (գրկախառնումն աշխարհի, Արաբ. حضن الدنيا, "ամրութիւն„ կամ "ամրոց„ աշխարհի = Եթովպ. "պարիսպ աշխարհի:„) — 2 "Պսակ ծովեզերն„ կը հաստատէ Pի ընթերցումն *θαλάσσιον στεφάνωμα*, մինչ G կը կարդայ *στεφανωμένον δρίον* "սահման պսակեալ„ = Եպիկտ. եւ Վինկ. Բեյլ. terminus coronatus, զոր կ'ընտրէ

Պախման։ Սակայն նաեւ արեւելեանք կը հաստատեն հայոյն եւ Բի ընթերցուածը. Արաբ. هو إكليل اللجة, "նա է պսակ ծովու," նոյնպէս Եթովպ.։ — 3 "Ընդերկարութիւն ջրեղէն" անշուշտ կը համապատասխանէ յունին սա խօսքին՝ Գ δεσμὸς ἀτλαντικός ("կապանք ատլանտեան" կամ "ծովային,") ուր Բ ἁλμυρὸς δεσμός "աղայէն կապանք" եւ յետոյ ἀτλαντικὸς ζωστήρ, "գօտի ատլանտեան" կ'ընթեռնու։ Հայն թէ "աղային" եւ թէ "գօտի" բառերն ունի՝ բայց ուրիշ դրից մէջ. (տես Գ, 5 եւ 7)։ Արեւելեանք չունին բառացի նոյն կտորը, բայց ունին նման խօսք մը, հմմտ. "որ լնու զլրումն տիեզերացն" ըստ Արաբ., իսկ Եթովպ. "լցեալ եւ կատարեալ" — 4 "Անբաւ հաստատութիւն։" Հոս "հաստատութիւն" պէտք է անշուշտ "գոյացութիւն" իմաստով առնուլ։ Յոյնը չունի այս խօսքը, վասն զի անոր խօսքը πάσης φύσεως περίδρομος այս տեղւոյ չի վերաբերիր. (տես Գ, 7.) Լատինականներէն ոմանք, ինչպէս Եպիկտ. կ'ընթեռնուն orbis sustentaculum ("աշխարհի պահպանութիւն," բուն՝ "սնունդ"։) Արեւելեանք ունին հայոյն ըսածն, այնու որ ծովը "անբաւ" կը սահմանեն. հմմտ. Արաբ. ليس له قياس او لا حد, "չիք նորա չափ եւ սահման" = Եթովպ. "չիք նորա չափ։" — 5 "Մայր աղի" չկայ այսպէս բառ առ բառ ո՛չ Բ եւ ո՛չ Գ բնագրաց մէջ, բայց Բ ունի "աղէ" (տես վերը՝ Գ, 2.) նաեւ Գ ունի ուրիշ ընթերցուած մը περίαμμα ἁλμυραῖον, այսինքն "աղային յուռութուլունք։" — 6 "Հաւաքիչ ամենայն ջրոց" չկայ ի Յ, բայց ունին լատինականք, Եպիկտ. եւ Վինկ. hospitium fluviorum։ Աստ տեղ ունի Արաբ. "որ տիրէ ի վերայ ամենայնի որ գտանի ի նմա, եւ աշխարհ եւ ամենայն տիեզերք ի գիրկս նորա է (արաբ, հոս ալ حصن կ'ըսէ,).

Եթովպ. “որ գտանի յամենայն աշխարհի„ եւ “որ ունի զամենեսին՝ որ ժողովին ի նմա եւ որ ենն:„ — 7 “Որպէս գաւառի զտիեզերաւք„ այսպէս չկայ յունին մէջ, բայց մասունքը կան. Հմմտ. P ἀτλαντικὸς ζωστήρ (գօտի ատլանտեան) եւ PG πάσης φύσεως περίδρομος (շրջապատութիւն ամենայն բնութեան), ուստի հայն այնպիսի բնագիր մ’ունէր, ուր ասոնք մէկ նախադասութեան ամփոփուած էին: Պախման (էջ 17 ծան 10) կ’ըսէ թէ P ձեռագրին “գօտի„ ընթերցումը չի վերաբերիր այս տեղւոյ. ըստ հայոյն՝ շատ լաւ կրնայ տեղը մնալ՝ կցուելով միւս խօսքին հետ: Արեւելեանք չունին զայս ճշդիւ, Եթովպ. “ի գոգս նորա է ամենայն աշխարհ:„ — 8 “Աշխարհի տողնջական„ նորանշան ընթերցումն, ուր Յոյնը οἰκουμένης κάτοχος կը կարդայ, մեկնեցինք վերը (էջ 225) այնու որ թարգմանիչը ξενοδόχος (օտարասէր, հիւրընկալ, ասպնջական) գտեր է բնագրին մէջ: Արաբացին չունի այս խօսքը. Եթովպ. “որ գտանի զաշխարհաւ:„ — Յոյն G ձեռագիրը ունի λιαχὸς λαμπτήρ, որ ծովու գաղափարին չի յարմարիր. (տես Bachm. էջ 17, ծան. 10):

*21. Տող. 125—130 Դ:* Յոյն՝ չունի: Արաբ.— Եթովպ. Հարցումն 15 (հրտ. Պախման, էջ 8): Լատինականք ալ ունին նոյն նիւթոյ վրայ վճիռ մը, բայց բոլորովին աննման հայոյն: Այսպէս կ’ընթեռնու Վինկ. Բելլ. Aer, custodia vitarum (Եպիկտ. vitae), animarum fundus: Ուստի միայն Հայն ու Արեւելեանք ունին զայս. բայց նաեւ վերջինք ըստ իրենց սովորութեան շատ կը խոտորին. (տես վերը՝ էջ 221): — 1 “Աւդք տարածք եւ թաթաւունք.„ թերեւս համեմատելու է Արաբ. الهوى في الجواء, “օդ ի ձորի„ (կամ ի “խորս երկրի„): Եթովպ. բոլորովին քրիստոնէական գունով՝ “շունչ ի Տեառնէ Աստուծոյ:„ — 2 “Տե-

սիլ են սուրբ, յստակ.„ անշուշտ բոլորովին անաղարտ հասած չէ այս տողս: "Յօփակ„ բառին հետ համեմատելու է Եթով. "որ թափանցանց է տեսութեան:„ —3 "Լի հողմաւք բազմութեան.„ Եթովպ. կ'ըսէ "եւ է նա հոգի„ (= "հողմ„ իմաստով հասկընալով.) —4 "Ջաւրութիւն որ յամենայն հասանէ„ ասոր նման է քիչ մը Եթովպացւոյն մէկ խօսքը "Հողմ„ վճռի մէջ (Հարցում 12, հրտ. Պախման, էջ 6) "որ լնուն զամենայն արարածս:„ Տես նաեւ Բ վճռին ծանօթութեանց ամենէն վերջը: —5 "Բնութիւն տարած„ հմմտ. Եթովպ. "եւ վատակի նա բնութեամբ իւրով առաւել քան զայլ ամենայն արարածս:„ —6—7 Այս նախադասութեանց շատ նման է Արաբացւոյն խօսքը. "Է ի նմա եւ հողմ, եւ է ի նմա կայծակն, եւ է ի նմա ամպրոպ եւ է ի նմա որոտումն„ = Հ "արէֆօխան յորդորիչ. ծնիչ հրոյ եւ ջրոյ.„

22. *Ցող. 131—139 ի:* Ցոյնը՝ IV. *Τί ἐστι Ἡμέρα;* (Զի՞նչ է Տիւ): Արաբ.-Եթովպ. Հարցումն 4. (Պախման, էջ 1):

—1 "Հանդէս որ լի է աշխատութեամբ„ = PG: *στάδιον κακοπαθείας* (ասպարէզ չարչարկրութեան.) Եպիկտ. stadium laboris. Արաբ. չիք. Եթովպ. "տեղի լի աշխատութեամբ:„ — 2 "Շրջանակ երկոտասանժամեան„ (տես վերը՝ էջ 205) = Ց *δωδεκάωρος διαδρομή* (ըստ P ուղղութեամբ, մինչ G *δωδεκάμαρος* կը կարդայ:) Նոյնպէս Եթովպ.: —3 "Սկիզբն ամենայն ցուոց„ ուղղելու է "աւուրց„ (տես վերը՝ էջ 205) = Ց *ἀρχὴ καθημερινή* (սկիզբն հանապազօրէայ.„) Եպիկտ. principium quotidianum. Եթովպ. "նա է սկիզբն աւուրց:„ —4 "Ցորդորումն աշխարհի„ չկայ ի Ց եւ Արեւ., եթէ չուզենք համեմատել սա խօսքին հետ՝ *ὑπόμνησις βιωτική* (յիշատակ կենսական = Եթովպ.) զոր չունի Հ: —5 "Երկրամշակ„ գործոյ„ խնդրական ընթերցումն մըն է, որուն "Երկրամշակ„

բառն անսովոր է. տեղւոյս իմաստն ըլլալու է “յորդորումն ի գործ:” Յոյնն եւ Արեւելեանք չունին: — 6 “Հոգք ծփալեցք” մասամբ կայ ի P ἀερίζουσα μέριμνα (“Հոգք օդայինք”): — 7 “Կենդանեաց համբոյրք առ ի զմիմեանս տեսանելոյ” դժուարաւ բոլորովին ուղիղ հասած է մեզի. “Համբոյր” հոս բոլորովին ուրիշ նշանակութեամբ գործածուած ըլլալու է՝ իբր “այցելութիւն = ἔντευξις, վասն զի տեղւոյս կը համապատասխանէ յունարէնին սա խօսքը ζωστικὴ ἔντευξις. (“կենսական այցելութիւն” կամ Այցելութիւն կենսականաց): — 8 “Յուշարար անդադար” ունի միայն G παλίνδρομος ἀνάμνησις (ունի նաեւ Ox.) Եթովպ. “յուշարար յաւիտենական:” — 9 “Բնութեան հայելի.” Յ φυσικὸν ἐσόπτρισμα, նման Եթովպ. — 10 “Թիւ որով յաւիտենականք համարին” = Յոյն՝ αἰώνιον ἀρίθμημα (յաւիտենական թուարկութիւն = Եգիպտ. aeterna computatio): Արաբ. حساب الى الابد (թիւ ի յաւիտեանս.) Եթովպ. աղաւաղեալ է: — Հայոյն մէջ կը պակսի δειλινὴ ἀπότασις (G եւ Ox. ἀπόταξις.)

23. *Տող. 140—146 Ջ:* Յոյն՝ V. Τί ἐστι Ἥλιος; (Զի՞նչ է Արեգակն): Արաբ.-Եթովպ. Հարցումն 5 (Պախման, էջ 1—2):

— 1 “Ակն լուսաւոր” = Յ οὐράνιος ὀφθαλμὸς = Եթովպ. “ակն երկնից.” մինչ Արաբ. عين نور السما (ակն լոյս երկնից): — 2 “Նահատակ գիշերոյ” = Յ νυκτὸς ἀνταγωνιστής (հակառակորդ, ընդդիմամարտ): Արեւելեանք կը շեղին. Արաբ. “Լոյս որ ոչ հատանի եւ ոչ շրջանի” (ուստի = Է, 5, 7, 8.) Եթովպ. “պահապան աւուր” (= Է, 5:) — 3 “Շրջանակ երկնաւոր” = Յ αἰθέριος κύκλωμα, հմմտ. Եթովպ. “եւ շրջան զամենեքումբք:” — 4 “Աշխարհի յանդիմանիչ” = Յ κοσμικὸς ἔλεγχος, զոր ունի Եթովպ., մինչ

Արաբ. կը պակսի: — 5 "Անմաշ բոց" ունի միայն G ἀχήρατος φλόξ (բոց պարզ.) հայոյն հետ բոլորովին կը միաբանի Եթովպ. "Բոց՝ որ ոչ մաշի:" — 6 "Զգեստ պտղոց." ունին այսպէս P եւ Ox. χαρπῶν περιβόλαιον: — 7 "Անանց ճառագայթ" հայոյն ընթերցումը կը հաստատէ Pի բառը ἄσβεστος ἀχτίς (ճառագայթ անշիջանելի), զոր Պախման կ'ուզէ ջնջել. Եթովպ. "Հուր որ ոչ ջնջի:" — 8 "Անպակաս պայծառութիւն" = G ἀδιάλειπτος φέγγος. Եթովպ. "լոյս՝ որ ոչ վախճանի եւ ո՛չ ջնջի:" — 9 "Զոհեալ ղամպար." հոս յոյն օրինակք ունին χεχορηγημένη λαμπάς (հանդերձեալ, պատրաստեալ, կազմեալ լապտեր) = Եթով. "լապտեր ոսկիէ." բայց Եթովպ. ունի նաեւ "լապտեր աշխարհի" = Արաբ. سراج العالم Հայոյն "զոհեալ" չի համապատասխաներ բոլորովին χεχορηγημένη բառին, որուն իմաստն այն է թէ Արեգակն լապտեր մըն է միշտ պատրաստուած, հանդերձուած կարեւոր իւղով: Տեզա (էջ 18 ծան. 1) խօսելով ասոր վրայ կ'ըսէ թէ արդեօք հայն վերը յիշուած ἀδιάλειπτος բառն անգամ մը ճիշդ թարգմանելէն ետքը՝ շփոթե՞ր է λείπω եւ λιμπάνω բայերն իրարու հետ: Սակայն կ'երեւայ թէ հայն χεχορηγημένη կարդացեր եւ ընդհանուր կերպով "զոհեալ" թարգմաներ է՝ իբրեւ լապտեր մ'որ զոհուած մաքրուած, ուստի պատրաստուած է: — 10 "Երկնային ճանապարհորդ" = G οὐράνιος ὁδοιπόρος. Եթովպ. "գլուխ լուսաւորաց (Ծնն. Ա, 14), որ շրջի յերկինս:" Արաբ. առաջինն ունի՝ "որ լուսաւորէ յերկինս:" — Հ չունի սա խօսքը՝ "զարդ տուընջեան", զոր ունին նաեւ Արեւելեանք:

24. *Տող. 147—155 Ի—Ը*: Ինչպէս վերը տեսանք (էջ 222) այժմու բնագրին մէջ երկու Վճիռք միացած են: Մենք ջանացինք որոշել իրարմէ, եւ "Երկրի" վերաբերող մասերն փակագծի մէջ դրինք եւ ուրոյն թուարկեցինք: Հոս ալ զատ զատ պիտի

համեմատենք նախ Լուսնոյ եւ յետոյ երկրի սահմանները։ Ձեռագրաց այս վիճակին մէջ ինքնին յայտնի է որ շատ թերի են երկու վճիռներն ալ։

վճիռ Ի: Յուն՝ VI. Τί ἐστι Σελήνη; (Զի՞նչ է Լուսին)։ Արաբ.-Եթովպ. Հարցումն. 6 (Պախման, էջ 2)։

— 1 "Կարմրութիւն երկնաւոր„ = Ց οὐρανοῦ πορφύρα. Արաբ. կը պակսի. Եթովպ. ալ կը շեղի։ — 2 "Մխիթարիչ գիշերոյ։„ = Ց νυχτερινὴ παραμυθία, զոր ունի Եթովպ. քիչ մ'աւելի ընդարձակուած։ — 3 "Աւդոյ (ձեռ. "անդոյ„) ճանապարհորդ„ = οὐράνιος ὁδοιπορία, զոր P ունի, բայց չունի G եւ ոչ Արաբ., իսկ Եթովպ. "Ու է նա որ շրջի յերկինս։„ Տեղա հայագէտն այս խօսքին համար կ'ըսէր (էջ 18 Ծան. 2) թէ կը շեղի յունարէնէն, վասն զի առջեւն ունէր միայն C ձեռագրին "անդոյ„ ընթերցուածը։ — 4 "Նաւորդաց մխիթարիչ.„ ինչպէս վերը տեսանք (էջ 206) հոս պէտք էր՝ ըստ յունին երկու նախադասութիւն ըլլալ, այսինքն՝ πλεόντων ποννύχισμα, ὁδευόντων παρηγορία ("Նաւորդաց ուրախութիւն, ճանապարհորդաց մխիթարութիւն„)։ Հաւանականորէն այն երկու բառերը ("մխիթարութիւն„ եւ "ճանապարհորդաց„) դուրս ինկած են։ Արաբ. անով միայն կը շեղի՝ որ յիշեալ երկու նախադասութիւնքն մէկի ամփոփած է՝ այսպէս. "ուրախութիւն եւ առաջնորդ ճանապարհորդաց.„ Եթովպ. "ուրախութիւն որոց են ի նաւի. առաջնորդ որոց են ի ճանապարհի։„ — 5 "Պահպանորդ գիշերւոյ„ չկայ ճշդիւ այսպէս յունին եւ արեւելեանց մէջ. բայց թերեւս հայոյն իմաստն այն ըլլայ, զոր կը բացատրէ յոյնն, երբ կ'ըսէ թէ Լուսինն ըլլայ "թշնամի չարագործաց„ (χακούργων ἔχθρα), զոր ունի նաեւ Եթովպ. "թշնամի գողոց.„ Արաբ. կը պակսի։ — 6 "Ցաւիտենից նշանակ։„ Վերը (էջ 225) խօսեցանք աստ վրայ, եւ տեսանք որ յոյնն ունի

σημεῖον ἑορτῶν (տօնից նշանակ) եւ թէ հայն αἰώνιον (յաւիտենականն) կարդացեր է. Արաբ. "Նշանակ տօնից եւ ––––ըց." Եթովպ. "Նշանակ տօնից:" — Հայոյն մէջ կը պակսին սա խօսքերը. "փոխանորդ արեգական. (= Եթովպ.) շրջանակ ամսային. [Արաբ. يشرق وايضا يغرب, "ծագէ եւ դառնայ ի մայր" = Եթովպ.). Բ ունի առկէ զատ "Յուշարար անդադար" որ կրկնութիւն է (տես Ե, 8), բայց այստեղ նոյնպէս կրկնուած ունին Արեւելեանք:

վՃիռ Ը: Յոյն՝ XV. Τί ἐστι Γῆ; (Զի՞նչ է Երկիր): Արաբ.-Եթովպ. Հարցումն 17 (Պախման, էջ 10): Շատ թերի են ի հարկէ այս Վճռին մնացորդք:

— 1 "Հաստատեալ ի յաւդոյ" չկայ այսպէս բառ առ բառ յունին եւ արեւելեանց մէջ. նման են՝ οὐρανοῦ βάσις (հիմն երկնից), զոր ունի նաեւ Եթովպ. եւ ἀεροφυὲς ῥίζωμα (իբր "օդաբոյս արմատ"), զոր միայն Բ ունի: — 2 "Բոլորակ որում չհասանի ոք" կը համապատասխանէ Գի ընթերցուածոյն՝ ἀκατάληπτος περιοχή (շրջապատ անհասանելի) = Եթովպ. "որոյ ոչ գտանի չափ իւր:" (Տես Ա, 1:) — 3 "Անծագ տեսիլ" անշուշտ = Գ ἀσύνοπτον θεώρημα (անտեսանելի տեսիլ) = Եթովպ. "որ ոչ չափի տեսութեամբ." (Բ ἀπύθμενον θεώρημα.) — 4 "Կենդանեաց հանդէս:" Վերը (Ն, 1) տեսանք "հանդէս" = στάδιον (ասպարէզ) գործածուած, իսկ հոս է "մարզարան," հմմտ. Գ γυμνάσιον ζωῆς: — 5 "Դայեակ անձրեւոյ" = ὄμβρων τιθήνη, զոր ունին նաեւ Արեւելեանք: — 6 "Մայր պտղոց" = Բ καρπῶν μήτηρ, իսկ Գ κ. φύλαγμα καὶ μήτηρ: Արաբ. կը համաձայնի հայոյն եւ Բի հետ՝ ولدة الأثمار. Եթովպ. կը շեղի: — Այժու հայոյն մէջ կը պակսին շատ մը նախադասութիւններ, այսպէս՝ "Տքնութիւն լուսնոյ. (Եթովպ. "մխիթարիչ"

կ՚ըսէ. Արաբ. չունի)։ Ծածկոյթ անդնդոց. (= Եթովպ., բայց Արաբ. չունի.) յաւիտենական պահպանութիւն. [= Արաբ. هو حافظة الى الابد.) ընդունարան բազմամատակարար (πολυδιοίκητον, Արեւելեանք չունին.) ծնունդ եւ ընդունելութիւն ամենեցուն. [Արաբ. “մայր ամենայն իրիք եւ դարձեալ կրիչ երկնից„, حاملة السماء “որ բառնայ զերկինս.„ Եթովպ. “բնակութիւն (հայրենիք) ամենայն արարածոց եւ դարձեալ կրիչ նոցա:„ Միայն G ունի տակաւին սա խօսքերը. “միջնավայր աշխարհի.„ զոր ունի Եթովպ. եւ “աստուածաստեղծ յօրինուած„ (σύστημα), զոր ունի Արաբացին, եթէ ընջենք վերջնոյս قبل (նախ քան) բառը։

25. Յող. 156—165 թ: Յոյն՝ VII. Τί ἐστιν Ἄνθρωπος; (Զի՞նչ է Մարդ)։ Արաբ.-Եթովպ. Հարցումն 25. (Պախման, էջ 16—17)։ Պախման հրատարակած է այս Վճռին արաբերէնը, բայց շատ աղաւաղ է եւ կը շեղի շատ, մինչ Եթովպացին աւելի նման է յունին։ Հայն ալ տեղ տեղ յայտնապէս աղաւաղ է։

—1 “Նման Աստուծոյ„ յետսամուտ է անտարակոյս, զուտ քրիստոնէական գաղափար մ՚ըլլալով, զոր չունին ուրիշ բնագիրք։ —2 “Մարմին հոգեկիր եւ մտաւոր.„ այսպէս հայն որ լաւագոյն կ՚երեւայ. յոյն բնագիրք կրկին նախադասութիւն ունին՝ νοῦς σεσαρκομένος (միտք մարմնացեալ = Եթովպ.) եւ πνευματικὸν ἀγγεῖον (աման հոգեւոր = Եթովպ. տես նաեւ Թ, 3.) Արաբն աւելի նման է հայոյն՝ մէկ խօսքի մէջ ամփոփելով. վերջապէս հայն այնպիսի ընթերցուած մը գտած կ՚երեւայ, զոր Օքսֆորթեան ձեռագիրը մերձաւորապէս թէեւ աղաւաղեալ կը ներկայացընէ՝ գրելով ζῶον λόγισμον, νοῦ καὶ ἐπιστήμης θεωτιμὸν (այսպէս. տես Bachm. էջ 19, ծան. 3)։ —3 “Տաճար հոգւոյ,„ Հայը կամ վերոյիշեալ (տես Թ, 2)

"անօթ հոգեւոր" առջեւն ունեցած է, եւ կամ πνευματικὸν οἴχημα (բնակարան հոգեւոր) կարդացած, մինչ այժմու յոյն բնագիրք αἰσθητικὸν οἴχημα (զգալի բնակարան) կը կարդան։ Ճիշդ հայոյն ընթերցուածը կը հաստատէ հոս Եթովպացին ալ՝ ընթեռնլով "բնակութեան" կամ "տաճար հոգւոյ")։ — 4 "Դոյզնժամանակեայ տեսիլ." աստ հետ համեմատելու է անշուշտ οἰχητήριον ὀλιγοχρόνιον (սակաւաժամանակեայ բնակարան), միայն "բնակարանի" տեղ θεώρημα (տեսիլ) կարդացած է հայն, որ լաւ եւս կ'երեւայ։ Արաբացին աստ տեղ "կեանք" կ'ըսէ. Եթովպացին համեմատ է յոյնին։ "Տեսիլ" անգամ մ'ալ կը գտնենք վճռիս մէջ. (Թ, 13)։ — 5 "Գործի աճառապինդ՝ ոսկերք ջղաւք եւ այղովքն հանդերձ" ունի միայն P ὠστεωμένον ὄργανον (= "գործի ոսկրուտ") զոր ունի նաեւ Եթովպացին։ — 6 "Դէտ աշխարհի". յոյնը՝ "կենաց" կ'ըսէ՝ κατάσκοπος βίου. Եթովպ. "մշակ երկրի" ունի, մինչ Արաբացին յունին նման է՝ منظر هذا العمر عالم. — 7 "Բախտի խաղալիկ" = B τύχης παίγνιον։ — 8 "Բարի հարեւանցիկ" ունի միայն G: ἀπαράμονον ἀγαθόν։ — 9 "Կենաց մաշիչ" ունի նոյնպէս միայն G: ζωῆς δαπάνημα (մաշումն, վատնիլը։) — 10 "Փոխանակի յաշխարհէ" ուղղելու է "փոխափոխան յաշխարհէ", ինչպէս աս բառերն ուրիշ ձեռագրայ մէջ ալ կը գտնենք չփոխուած։ Այս ուղղագրութիւնը կը հաստատէ G: φυγὰς βίου (փախստական ի կենաց,) Եթովպացին չունի զայս՝ ինչպէս նաեւ Թ. 8, ն խօսքերը։ Արաբը պահած է եւ այն ճշդիւ հայերէնին պէս, يترك هذا العالم ويخرج منه ("որ լքանէ զայս աշխարհ, եւ ելանէ ի նմանէ")։ P աստ տեղ ունի φωτὸς ἀποστάτης (ապստամբ ի լուսոյ), զոր չունի Հ. Եթովպ. ալ կը շեղի (տես Bachm. էջ 16 n. 11.) — 11—12 Այս երկու խօսքերն ալ չկան ոչ յոյնին եւ ոչ արեւելեանց քով. ասոնց փոխարէն յոյնն

ունի՝ ἐπίπονος ψυχή եւ γῆς ἀπαίτημα (վերջինս չունի նաեւ G = Հ, բայց կայ Եթովպացւոյն քով)։ — 13—14 "Տեսիլ յաւիտենական" բաղադրութիւն կ'երեւայ (տես վերը՝ էջ 206) երկու նախադասութեանց՝ φάντασμα χρόνου (տեսիլ ժամանակի) եւ αἰώνιος νεκρός (մեռեալ յաւիտենական), Gի φάντασμα (= Հ "տեսիլ") բառին տեղ P φρόντισμα (հոգ, մտմտուք) կ'ըսէ բայց Gի կողմն կ'ելլէ նաեւ Եթովպացին եւ լատինական ձեռագիրն Մունիխէնի (տես Bachm. p. 16, n. 6)։

*26. Ցող. 166—170 Ժ:* Ցոյնը՝ XIV. Τί ἐστι Κάλλος; (Զի՞նչ է Գեղեցկութիւն). Արաբ.-Եթովպ. Հարցումն 41 (Պախման, էջ 33)։

— 1 "Նկար բնութեան" այսինքն՝ բնական = φυσικὴ ζωγραφία, զոր ունի նաեւ Փարիզեան արաբական ձեռագիրը՝ գրելով صورة طبيعية, մինչ Օքսֆորթեան ձեռագիրը ("զարդ ժամանակաւոր") կը միաբանի Եթովպացւոյն հետ ("դոյգն ժամանակեայ զարդ")։ — 2 "Եւ բարի յանձնէ ունի," ուր գոնէ "որ յանձնէ ունի" գրելու է՝ կարծենք. յամենայն դէպս հայոյն ընթերցումն է = ἰδιόπλαστον ἀγαθόν (տես Գ, 1 ուր նոյնը կը գտնենք դարձեալ)։ Արեւելեանք չունին։ — 3 "Ստացուած որ անցանէ" = G ἀπαραμονον κτῆμα (ստացուած որ անցաւոր.) P εὐπάραλλακτον (դիւրափոփոխ.) Արեւելեանք չունին զայս։ Ց ունի դարձեալ ὀλιγοχρόνιον εὐτύχημα (դոյգն ժամանակեան յաջողուած), զոր Հ չունի. Արաբ.-Եթովպ. տես Ժ, 1։ — 4 "Ծաղիկ որ թարշամի" = Ց ἄνθος μαραινόμενον, լատ. flos marcidus։ Արաբ. زهرة تذبل بسرعة ("ծաղիկ որ վաղվաղակի թարշամի" = Եթովպ.) — 5 "Դրոշմած շնչաւոր" կրնայ լաւ ըլլալ, բայց մի գուցէ "դրոշմած" ըլլայ գրչի սխալ փխ. "դրօշուած"՝ իբր կենդանի արձան։ Որոշելը դժուար է, մանաւանդ որ յոյն բնագիրը չունի զայս եւ ոչ ալ Արեւելեանք։

Միայն "շնչաւոր" ապահովլ է. հմմտ. P: ἔμπνους πόρνευσις (շնչաւոր պոռնկութիւն)։ —6 "Տեսիլ ցանկալի" չկայ յունին եւ արեւելեանց մէջ։ — Ասոր փոխարէն չկայ հայոյն մէջ՝ "անժոյժ առն ընկմուռն. [որ կրկնութիւն, է ԺԲ 19 տեղւոյ, թէեւ Եթովպ. հոս ալ ունի.] յաջողութիւն մարմնացեալ. [Արեւելեանք չունին.] արքանեկութիւն ցանկութեանց. ("հեշտութեանց." = Արաբ.-Եթովպ.) իր մի որ ոչ յօրինի. (այսպէս G = Եթովպ. եւ Ղպտ. արաբական ձեռագիրը, իսկ Փարիզեանը "առանց շահու վաճառականութիւն" կ՚ըսէ. P "իր մի որ ոչ ստացեալ լինի ի միասին," ἀσύγκτητον, ուր G ἀσύνθετος է.) մարդկան ցանկութիւն [G, իսկ P "մխիթարութիւն", կրկնութիւն ԺԲ, 1 տեղւոյ. Արեւելեանք համաձայն են հոս G-ի, ինչպէս նաեւ լատ. humana concupiscentia։] — Արեւելեանք ունին ուրիշ նախադասութիւններ ալ։

*28. Յող. 171—175. ԺԱ:* Յոյնն եւ Արեւելեանք չունին ըստ ինքեան այսպիսի վճիռ մը "Սիրոյ" վրայ. եւ թէեւ Եգիպտ. ունի այս նիւթոյ վրայ կտոր մը, բայց բոլորովին ուրիշ բան կը դնէ մեր առջեւ. (տես Mullach, p. 521a) այսպէս՝ Quid est Amor? — Otiosi pictoris molestia; in puero pudor եւն։ Անոր համար հայագէտն Տէզա (էջ 17) այս վճիռը հայոյն յատուկ համարած է։ Սակայն մանրամասն քննելով վճռիս սահմանները, կը տեսնենք որ "Սէր" վճիռս ուրիշ բան չէ, բայց եթէ յունին "Բարեկամ" վճիռը։ Տես վերը՝ էջ 224։

ԺԱ. = Յոյն՝ XI. Τί ἐστι Φίλος; (Զի՞նչ է Բարեկամ)։ Արաբ.-Եթովպ. Հարցումն 42. (Պախման, էջ 34—35)։

—1 "Խնդիր բարեաց." յոյնն է ζητούμενον ὄνομα (անուն խնդրեալ)։ որով կ՚երեւայ թէ հայն ἀγαθόν (բարի) կարդացեր է իւր բնագրին մէջ ὄνομα (անուն) բառին տեղ։ Յոյնին հետ կը միա-

բանին ամէն խմբագրութիւնք։ —2 "Մարդ աներեւոյթ," այսպէս ուղղելու է ձեռագրաց "ծարփ" ընթերցուածը։ Համմտ. Ց ἄνθρωπος ἀφανής. այսպէս եւ այլք։ —3 "Վարանելոց մխիթարութիւն" = Բ: ἀπορίας παραμύθιον (վարանաց մխիթարիչ), ուր G հակառակը կ'ըսէ ἀπορία τῶν παραμυθίων. Եթովպ. ուրիշ կերպարանօք: —4 "Թիկունք թշուառականաց" = καταφυγὴ δυστυχίας (ապաւինութիւն դժբախտութեան." Եթովպ. "պաշտպան յերեսաց նեղութեան եւ դժբախտութեան"): Սակայն յոյնն ունի նաեւ ἄχος [G κατάσχοπος] ταλαιπωρίας (դարման թշուառութեան), զոր չունին այլք։ —5 "Ինչ մի որ ամենեւին պիտոյ է եւ ոչ է ի միջի։" Այս խօսքը չկայ ուրիշներուն քով, եթէ չուզենք համեմատել ասոր հետ՝ δυσεύρετον κτῆμα (դժուարագիւտ ստացուած.) = Արաբ. Փարիզի ձեռագր. قنيته عسيرة والوجود "դժուարին ի ստանալ եւ գտանել," այլք կը շեղին։ — Հայոյն մէջ չկան՝ "Դէտ կենաց. [զոր չունի G լաւ եւս = Հ, եւ կրկնութիւն է Թ, 6 տեղւոյ.] մարդ անհասանելի [այսպէս Բ ἄνθρωπος ἀκατάληπτος, որուն տեղ Եթովպ. լաւ եւս կ'ըսէ "մարդ որ ոչ գտանի," տես ասոր համար ԺԱ, 5. G եւ Արաբ. չունին = Հ.] գանձ անգիւտ. (ἀνυπόστατον κειμήλιον, G ἀνυπόχτατον.] յաջողութիւն անվախճան. [Բ ἀκατάληκτος εὐτυχία, G ἀκατάληπτος ἐπιτυχία. Եթովպ. եւ Օքսփորթի արաբականը կը միաբանին Բի հետ, իսկ Փարիզեանը Gի ἀκατάληπτος ընթերցումը կը հաստատէ՝ գրելով عقل لا يدرك, "միտք ոչ հասանեն այնմ։" — Առեւելեանք ունին ուրիշ սահմաններ ալ։

29. *Յող. 176—186. ՓԲ:* Յոյն՝ VIII, *Τί ἐστι Γυνή;* (Զի՞նչ է կին)։ Մուլլախ կնոջ վրայ երկու Վճիռ կը հրատարակէ, վերջինը՝ ῎*Αλλως*

տիտղոսով, եւ կը սկսի այսպէս. "Սեկունդոս իմաստասէր հարցեալ թէ Զի՞նչ է կին, ասէ եւն։ Քասել (էջ 344—5) երկուքին վրայ ալ խօսած է եւ թարգմանած գերմաներէնի։ Հայերէնին մէջ երկուքն ալ կը գտնենք մէկ վճռի մէջ միացած։ Մէկ Վճիռ ունին նաեւ Արաբ.-Եթովպ. Հարցում 25 (հրտ. Պախման, Leben, p. 11—12)։ Այս վճռին վրայ խօսք եղաւ վերը՝ էջ 212 եւն, որուն ընթերցմունք համեմատելու ենք յաջորդացս հետ։

—1 "Առն մխիթարութիւն" ուստի ἀνδρὸς παραμυθία կարդացեր է, ինչպէս կայ այս խօսքը Ժ վճռին մէջ յունական P ձեռագրին քով, ուր Հայը չունէր. (տես Ժ, վերջը. եւ վերը՝ էջ 225)։ Այստեղ Յոյնն է "առն ցանկութիւն", որուն կը համաձայնին Արեւելեանք, որոնք այս գաղափարը շատ կրկնած են։ —2 "Ընտանի գազան" = Յ συνεστιώμενον θηρίον, նման խօսք մ'ունին Արեւելեանք ալ։ —3 "Հոգւոց պատճառք." այսպէս ուղղելու է ձեռագրաց "ոգւոյ" ընթերցուածը, ինչպէս կը ցուցընէ G: συνεγειρομένη μέριμνα. P չունի։ —4 "Իժ զգեստիւ պատեալ." = ἱματισμένη ἔχιδνα (= Եթովպ., մինչ Արաբ. այլազգ է՝ "մատակ առիւծ (لبوة) զգեցեալ զկորուստ." ասոր նման խօսք մ'ունին յետոյ ուրիշ խմբագրութիւնք։ —5 "Ինքնայաւժար է կռիւ" պէտք է ուղղել ձեռագրաց "է կոխ" ընթերցումն. Թերեւս լաւագոյն էր "ինքնայօժար կռիւ" գրել, որով լիովին կը համաձայնէր յոյն բնագրին՝ αὐθαίρετος μάχη. Եթովպ՛. տես ԺԲ՝ 13։ —6 "Ղաւղեալ անժոյժ գիջութիւն" ունի լոկ G συμπλεχομένη ἀσέλγεια եւ συγχοιμωμένη ἀκρασία, եւ Հ բոլորովին նման կ'ըլլար, եթէ "ղաւղեալ" բառն ուղղէինք "ղօղեալ" կամ "զուգաւորեալ։" —7 "Հանապազորդեան վնաս։" Ձեռագիրք այս եւ յաջորդ խօսքերն ուղիղ կերպով չեն տրոհեր. (տես բնագրին այս մասը) = Յ καθημερινὴ ζημία

զոր ունին նաեւ Եթովպ. եւ Արաբ.: —8 “Տան ձմեռն„ = G: οἰκίας χειμών (մրրիկ տան.) յոյնն ունի նաեւ οἴκου ζάλη, զոր G այսպէս կը կարդայ ἐννεοπνεύμονος ζάλη. —9 “Անժոյժ առնընկղմիչ,„ C “ընկղմումն„ աւելի նման յունին. Հմմտ. G: ἀνδρὸς ἀκρατοῦς ναυάγιον (նաւաբեկութիւն). Եթովպ. “կորուստ ամենայն առն:„ —10 “Շնալոյ պատճառք„ չկայ բառ առ բառ յունարէնին մէջ, բայց Հմմտ. μοιχῶν κατασκευή (շնացողաց կազմած.) —11 “Աշխարհի կործանումն„ չկայ յունին մէջ: —12 “Սուր որ ոչ տալ զգալ„ չկայ նմանապէս: —13 “Կռիւ բազմադիմի„ = B πολυτελὴς πόλεμος (ծեծածախ պատերազմ.) կ'երեւայ թէ հայն πολύμορφος (բազմակերպարան) դտեր է. ունի նաեւ Եթովպ.: —14 “Կենդանի չար.„ = Ζῷον πονηρόν. Եթով. “կենդանի՝ որում ցանկայ ամենայն:„ —15 “Ստար ի ծնունդս մարդկան„ ունի միայն P: ἀνθρωποποιὸν ὑπούργημα եւ Միւնխէնի ձեռագիր մը humanum mancipium. (տես Bachm. 12 n. 11): —16 “Պարաւանդ աներեւոյթ„ չկայ յունարէնին մէջ. միայն G ունի նման խօսք մը՝ ἱκανὸν φόρτιον (բեռն բաւական): —17 “Պիտանի չար.„ չունին ոչ A եւ ոչ C, այլ կը յիշեն յորինողքՀայկազն. Բառագրոց. (տես առոր վրայ՝ էջ 204) = ἀναγκαῖον κακόν. — Այժմու հայոյն մէջ կը պակսին՝ “անկողնակիցառիւծ մատակ. [συγκοιμωμένη λέαινα, G συμπλεκομένη “զուգեալ.„ տես ԺԲ, 6. կայ նաեւ յԵթովպ.]: P ունի անկէ զատ συντηρουμένη δράκαινα, զոր ունէր նախնական հայն “աթոռակից վիշապ„ ձեւով, ինչպէս թիւ 29 ձեռագիրը վկայեց. նման խօսք մ'ունին նաեւ Արեւելեանք, օրինակի համար Արաբ. “վիշապ (ثعبان) թունաւոր:„ Ասոր փոխարէն G ունի ἰοβόλος ἀσπίς, զոր չունի P: Վերջապէս յունական երկրորդ Վճռին մէջ կան նաեւ սա խօսքերը՝ “խափանարար անհոգութեան. կենաց կորուստ.

(տես վերը՝ էջ 213) Սկիւղղա զարդարեալ.” (κεχοσμένη Σχύλλα)։

Այս վճռոյ վրայ խօսած է Հայազգեան Տեղա (էջ 18), թարգմանած իտալերէնի եւ համեմատած բնագրին հետ։ “Ինքնայաւժար ի կոխ” ընթերցումն կ'ուզէ մեկնել անով որ բաղադրութիւն կը համարի նախնականին երկու նախադասութեանց՝ “ինքնայաւժար [պատերազմ.] [խաղաղութեան] կոխ.” վերջինս յոռի թարգմանութիւն համարելով յունարէնին սա խօսքին ἀμεριμνίας ἐμπόδιον (անհոգութեան խափանարար)։ Սակայն դժուարաւ ուղիղ է այս կարծիքը. նախ կոխ գոյականօրէն անսովոր գործածութիւն մը կ'ըլլար, եւ երկրորդ՝ չի համապատասխաներ այն բառին. բաց աստի նախնականին մէջ կար յիշեալ յունարէն խօսքն ուրիշ ձեւով, այսինքն՝ “խաղաղութեան արգելուած”, ինչպէս կը վկայէ Թիւ 29 (տես վերը՝ էջ 213) Ուստի ապահով կ'երեւայ որ հոս “ի կոխ” ուղղելու ենք՝ “ի կռիւ” կամ “կռիւ”։ — Վերը՝ էջ 212 եւն յառաջ բերինք այս Վճռոյն ուրիշ մէկ ձեւն ըստ Թ. 29 ձեռագրի, եւ տեսանք որ շատ մը սահմանք, որ այժմ կը պակսին, կային նախնական հայերէնին մէջ։ Աւելորդ կրկնութիւն չըլլալու համար՝ յիշեալ կտորները հոս կրկին յառաջ չբերինք։

30. *Ցող. 187—196. ԺԳ:* Ցոյնը՝ IX. *Τί ἐστι Πλοῦτος;* (Զի՞նչ է Մեծութիւն)։ Արաբ.- Եթովպ. Հարցումն 29 (Պախման, էջ 29—30)։

—1 “Բեռինք ոսկեղէնք” = χρισοῦν [G χρισοῦ] φορτίον, զոր ունին նաեւ Արեւելեանք։ —2 “Ցանկութեանց արքանեակ” = ἡδονῶν ὑπηρέτης, որուն հետ կը միաբանին Արեւելեանք, մինչ լատինը curarum minister կ'ըսէ։ —3 “Անխրատ վայելչութիւն, կապեալ ընդ երկիւղիւ.” C “անիրաւ” կը կարդայ “անխրատ” բառին տեղ։ “Վայելչութիւն” հոս սովորական

իմաստով չէ գործածուած, այլ = «վայելք», ինչպէս կը գտնենք Մեսրոպեան գրոց մէջ ալ (Համմտ. Յոբ. ԼԶ, 11 եւն)։ Ըստ այսմ համեմատելու է յունարէնին հետ՝ ἀπόλαυσις ἀνεύφραντος (անտրտում վայելք. G ἀνέκφραστος, անպատում։» Այսպէսով չունի Յ հայոյն «կապեալ ընդ երկիւղիւ» խօսքը (Համմտ. սակայն ԺԳ, 3 φόβος, երկիւղ.) սակայն հայոյն նման են արեւելեանք. այսպէս կը կարդայ Արաբ. حلدوة مماوة مرارة (քաղցրութիւն լի դառնութեամբ. = Եթովպ.)։ —4 «Կասկած անդուլ» չկայ ճշդիւ յունարէնին մէջ. Համմտ. Յ φόβος ἐλπιζόμενος (երկիւղ յուսացեալ, G φίλος փխնկ. φόβος.) Արաբ. այս եւ յաջորդ խօսքերուն տեղ կ'ըսէ՝ «Միրտ իւր լի տրտմութեամբ.» եւ «կեանքն որա չեն կեանք հանգստութեան սրտի։» Եթովպ. աւելի համառօտ է. —5 «Ագահաց թշուառութիւն» չկայ ճշդիւ ի Յ, որ ունի φθόνος συνεστιώμενος («նախանձ բնակակից.» նման խօսք մ'ալ ունի Եթովպ.) եւ ἀπλήρωτος ἐπιθυμία (ցանկութիւն առանց յագելոյ), ἀόρατος ἐπιθυμία (անտեսանելի ցանկութիւն), զորոնք չունի Հ։ —6 «Երկն հանապազորդեան» ունի միայն P: χατημερινὴ μελέτη (հանապազորդեան հոգ, ճիգ եւն)։ —7 «Իրք դիւրափոխ» ունի նոյնպէս միայն P: εὐμετάπτωτον πρᾶγμα. —8 «Բազմաց ըղձալի» թերի է ապահովապէս եւ կը պակսի «դժբախտութիւն» բառը, ինչպէս կը պահանջէ յոյն բնագիրը, P: φιλοῦμενον ἀτύχημα (դժբախտութիւն սիրեցեալ)։ —9 «Տնգածոյ իմաստք» խնդրական ընթերցուածն է. (տես վերը՝ էջ 205)։ Կրնայինք «տնգածոյ» բառն ուղղել ընել «արծաթոյ։» բայց նաեւ այն ատեն դժուարաւ կրնայինք համեմատել P-ի սա խօսքին հետ ἀργυριχὸν σύνθεμα (նշանակ արծաթեղէն), վասն զի «իմաստ» չի համապատասխաներ σύνθημα բառին։ Յ ունի դարձեալ՝ ὑψιλὸν

χτῆμα (բարձր ստացուած)։ —10 “Ծփումն անդուլ„ չկայ ճշդիւ յունին մէջ, որ կ'ըսէ ἐπιβουλευόμενον πρᾶγμα (իրք, որոց դաւ գործեալ է.) սակայն այս խօսքն համեմատելու է աւելի ԺԳ, 12 տեղւոյն հետ։ —11 “Փոփոխումն անդադար„ չկայ ի Ց. (համտ. սակայն ԺԳ, 7)։ —12 “Իրք են ամենեցուն նենգի եւ վնասի։„ Ասոր հետ համեմատելու է ԺԳ, 10 յիշուած յունարէն բնագիրը։ —13 “Հոգք վերադրեալք ի մարդկան կամակարութենէ„ ունի Բ: περιπόθητον ταλαιπώρημα (տառապանք սիրելի. Եթովպ. “արքանեկութիւն որ'լի է տառապանօք)։

31. Ցող. 197—204. ԺԴ: Ցոյնը՝ X. Τί ἐστι Πενία; (Զի՞նչ է Աղքատութիւն)։ Արաբ.-Եթովպ. Հարցումն 40. (Պախման, էջ 31--32)։

—1 “Բարի ատեցեալ„ = Ց μισούμενον ἀγαθόν, զոր ունին նաեւ Արեւելեանք։ —2 “Մայր առողջութեան„ = Ց. ὑγιείας μήτηρ, զոր ունին Եթովպ. եւ Արաբ. (բայց ձեռ. Փարիզ. “դուռն առողջութեանն„ կ'ընթեռնու։) —3 “Խափանիչ ամենայն ցանկութեանց„ = Ց ἡδονῶν ἐμποδισμός [G ἐμπόδιαν), մինչ Արեւելեանք “սպանումն„ ցանկութեանց կ'ըսեն։ —4 “Վարք անհոգք.„ = Ց. ἀμέριμνος διατριβή. Արեւելեանք այլազգ։ —5 “Անխաբ ստացուած.„ (անկողոպտելի. տես վերը՝ էջ 206) = Ց. δυσαπόσπαστον χτῆμα. Արաբ. ձեռագր. Փարիզի ունի այսպէս لا حدية يسرق (պարգեւ որ ոչ կողոպտի։) —6 “Վարդապետութիւն հնարեալ„ նորանշան խօսքին վրայ՝ տես վերը էջ 2-5։ —7 “Գտակ իմաստութեան„ = G σοφίας εὑρετής [P ἀνεύρησις, Մուլլախ կ'ուղղէ εὑρέτις], զոր ունի Արաբ. ձեռ. Փարիզի, ուր Օքսֆորթեան “պատճառ կրթութեան„ կ'ըսէ։ Եթովպ. կը շեղի՝ “իմաստութիւն որ ոչ ծածկի„ (մերժի)։ —8 “Ստացուած որիշ ի զրպարտէ„ = G:ἀσυχοφάντον χτῆμα (անզրպարտելի ստացուած,)

ուր P ἄφθονον πρᾶγμα (աննախանձ իրք) կ'ըսէ, որուն հետ կը միաբանի Արաբ.: —9 "Աջողուած որ զկնի ոք ոչ ընթանայ" չկայ ճշգիւ յունարէնին մէջ. նման խօսքեր կան՝ G ἄδηλος τύχη (անստոյգ բախտ. ձեռ. ἀτυχία անյաջողութիւն), զոր կը հաստատէ լատինական ձեռագիր մը incerta fortuna ընթեռնլով. (տես Bachm. p. 19 n. 4.) P սար տեղ ունի ἀσκόπευτος οὐσία (անզնին ինչք), ἀφήφιστος οὐσία (ինչ է որոնց ընտրութեան.) վերջինս բաւական նմանութիւն ունի հայոյն: Հայոյն հետ աւելի նման է նաեւ Արաբ. ձեռ. Փարիզի. "բարի որ դժուարին է ի կրել" (هو خير ولكن عسر الاحتمال.) —10 "Գանձ հաստատուն" ճշգիւ չկայ ի Ց, որ կ'ըսէ ἀζημίωτος ἐμπορία (անվնաս տուրեւառ) ըստ Մուլլախի ուղղագրութեան. (G "նախանձու տուրեւառ" կ'ըսէ. P ἀζήμιος πραγμοτία անվնաս տուրեւառ) զոր ունի նաեւ Ելթովկ.: Քիչ մ'աւելի նման է Արաբ. ձեռ. Փարիզի՝ "շահ (ربح) առանց վնասու" կամ "անկորուստ:" —11 "Բախտ անհոգ" ունի միայն G ἀμέριμνος εὐτυχία (անհոգ երջանկութիւն, բարեբախտութիւն.) որուն տեղ Արաբ. ձեռ. Փարիզի՝ "իմաստութիւն անգիւտ:"

32. Տող. 205—211. Ժի: Ցոյնը՝ XVIII. Τί ἐστι Ναύτης; (Զի՞նչ է Նաւավար): Արաբ.- Ելթովկ. Հարցումն 38 (Պատասխան էջ 28): Այս մասն պակսելով Փարիզեան արաբ. ձեռագրին մէջ՝ պատասխան չէ կրցած հաղորդել մեզ արաբերէնին ընթերցմունքը. —1 "Ալեաց ճանապարհորդ" = Ց χυμάτων ὁδοιπόρος, Ելթովկ. "որ գնայ ընդ ալիս:" —2 "Մշակ ծովու" սեպհական թարգմանութեան վրայ՝ տես վերը էջ 226 Ցունին (θαλάσσης βερεδάριος, սուրհանդակ ծովու) հետ կը միաբանի նաեւ Ելթովկ.: —3 "Հողմոց ուղեկից" ունի միայն P: ἀνέμων σύνοδος = Ելթովկ.:

—4 “Աշխարհի ատար„ = Յ οἰκουμένης ξένος, զոր ունի նաեւ Եթովպ.։ —5 “Ձմեռայնույ նահատակ„, այսինքն՝ ախոյեան մրրկի, ինչպէս է նաեւ Յ χειμῶνος ἀνταγωνιστής, զոր ունի նաեւ Եթովպ.։ —6 “Նաւահանգիստ սքանչելի„ չկայ ի Յ եւ յԵթովպ.։ —7 “Ղուղորդ մեռելոյ„ խընդրական խօսքին վրայ՝ տես վերը էջ 206։ Յ եւ Եթովպ. չունին նման բան մը։ —8 “Կցորդ կորստեան„ կրնար ըստ ինքեան բառական թարգմանութիւն համարուիլ յունարէնին սա խօսքին՝ θανάτου γείτων (մերձ ի մահ, հմմտ. ԺԴ. 10) սակայն անշուշտ ոչ թէ այս նախադասութեան, այլ յաջորդին կը համապատասխանէ՝ ἄδηλος ἐπὶ σωτηρίᾳ (անստոյգ, երկբայ ի փրկութենէ„), որ կը գտնուի նաեւ յԵթովպ.։ —9 “Ծովականաց մենամարտիկ„ ուղղելու է “ծովակաց„. հմմտ. Յ διαπόντιος μονόμαχος (անդրծովեան մենամարտիկ. G ἀπόντιος) ինչպէս ունի նաեւ Եթովպ. “նահատակ (պաշտպան) ընդդէմ ալեաց։„ —10 “Ինքնայօժար ի մահ„ այսպէս ի Հ, որ անշուշտ կը համապատասխանէ յունին սա խօսքին θανάτου γείτων (մերձ ի մահ.) Եթովպ. չունի։ “Ինքնայօժար„ բառն թարգմանութիւն գտանք վերը (տես Թ, 11. ԺԲ, 5) յունարէն αὐθαίρετος բառին։ — Հայոյն մէջ կը պակսին՝ ἀνέμων ἰχνευτής (հետամուտ հողմոց, որ գնայ զկնի շաւղաց հողմոց. G ἄμμων, աւազոյ, կը կարդայ.) եւ θαλάσσης ἐραστής (սիրող ծովու)։ Նման խօսքեր ունի նաեւ Եթովպ.։

*33. Տող. 212—219. Փրջ:* Յոյն՝ XVII. *Τί ἐστι Πλοῖον;* (Զի՞նչ է Նաւ)։ Արաբ.-Եթովպ. Հարցումն 36 (Պախման, էջ 26—27)։ Արաբերէն բնագիրը չէ հաղորդած նոյն գիտնականը։

—1 “Գործի երերուն„ = Յ ἐπισάλον πρᾶγμα (երերուն իրք. G ἐπίσαλος πράξις. Եթովպ. կը միաբանի յունարէնին հետ։ —2 “Տուն

առանց հիման„ = Ց ἀθεμελίωτος οἰκία, զոր ունի Եթովպ. երկու անգամ կրկնուած: —3 “Հմայեալ գերեզման„ (տես վերը՝ էջ 226) = Ց ἡρμοσμένος (G εἱρμοσμένος) τύφος (գերեզման պատրաստեալ) զոր ունի նաեւ Եթովպ. “գերեզման պատրաստեալ որ գնայ ընդ հողմոց.„ վերջինս անշուշտ ԺԶ, 5 խօսքն է: —4 “Խաբեբայ տախտակ„ շատ աւելի լաւ ընթերցուած է քան յունարէնին ըսելը՝ κυβικὴ σανίς (խորանարդ տախտակ), զոր ունի միայն P. հայը ἀπατηλὴ կարդացած կ՚երեւայ: —5 “Հողմոց ուղեկից„ ունի միայն P: ἀνέμων ὁδοιπορία (ճանապարհորդութիւն հողմոց.) Եթովպ. բոլորովին նման է հայոյն. տես ԺԶ, 3: —6 “Բանք թռուցեալ„ այսպէս ուղղելու է ձեռագրաց “բան թռուցեալ„ ընթերցուածը, ինչպէս կը վկայէ Ց ἀνιπταμένη (G περιπταμένη) φυλακή. Եթովպացւոյն քով այս խօսքս յաջորդին հետ կցուած է. “Բանտ կապեալ որ ընթանայ առանց իմաստութեան„ կամ “մտաց„, վերջինս ճիշդ Օքսֆորթեան արաբերէնին համեմատ՝ يسير بغير فهم եւ անշուշտ կը համապատասխանէ “խաղալիկ հողմոց„ խօսքին: —7 “Բախտ կապեալ„ ունի միայն G: συνδεδεμένη μοῖρα. Եթովպ. տես ԺԶ, 6 ուր (բանտ) “կապեալ„ բառը այս տեղւոյն հետ կը համեմատի, —8 “Խաղալիկ հողմոց„ ունի միայն G ἀνέμων παίγνιον = Հ, իսկ P ἀνέμων ὁδοιπορία զոր տեսանք ԺԶ, 5 խօսքին մէջ: Եթովպ. տես ԺԶ, 6: —9 “Ղուղակ գերեզման„ խօսքին տեղ՝ Ց ունի ἐπιπλέων [ἐπιπλεόντων] μόρος, (ուստի “արկած որոց նաւեննն„): Թէեւ “գերեզման„ = τάφος է (տես ԺԶ, 3), չենք կարծեր որ հայն հոս այս բառն գտած ըլլայ իւր բնագրին մէջ, այլ անշուշտ μόρος (արկած, դժբախտութիւն, մահ) բառն ընդհանուր կերպով բացատրած “գերեզման„ գրելով: Նոյնպէս “ղուղակ„ դրուած է ἐπιπλέων (նաւող) բառին տեղ:

Եթովպ. չունի այս բոլորովին բառական կերպով, այլ. նման ասութիւններով՝ “որ գնայ ի վերայ ալեաց„ եւն (տես վարը), եւ “գերեզման„ բառին տեղ ալ անգամ մը կ'ըսէ “գործեալ իբրեւ գերեզման,„ եթէ կրկնութիւն չէ ԺԶ, 3 խօսքին։ —10 “Թռչուն փայտեղէն„ ունի միայն G ὄρνεον ξύλινον. —11 “Ձի ծովեղէն„ ունի միայն P: πελάγιος ἵππος, զոր ունի նաեւ Եթովպ.։ —12 “Աներեւոյթ փրկութիւն„ ունի միայն G: ἄδηλος σωτηρία (անստոյգ, երկբայական փրկութիւն.) Եթովպ. “մահ մերձաւոր նմա,„ բայց կրնայ համեմատուիլ վերջինս ԺԶ, 14 խօսքին հետ։ —13 “Նէ–ֆեալ ֆործէ.„ այսպէս ուղղելու է ձեռագրաց ընթերցուածը՝ “Նէ–ֆոյ ֆործո, ինչպէս կը վկայէ P: ἀνεῳγμένη γαλεάγρα ձեռ. ἠνεῳγμένη, ուստի “ծուղակ բացեալ։„ —14 “Կորստեան ակնկալութիւն„ չունի Յ. իսկ Եթովպ. համմտ. ԺԶ, 12։ — Հայոյն մէջ կը պակսի սա խօսքը, զոր միայն P ունի՝ ἐγχύματος ὁδοιπορία (իբր՝ “ուղեւորութիւն ի վերայ ալեաց.„ = Եթովպ. ԺԶ, 9) զոր G չունի = Հ։

34. Տող. 220—226. ԺԻ: Յունարէն բնագիրը կայ միայն G ձեռագրին մէջ. Մուլլախ կը հրատարակէ “Նաւու„ (ԺԶ) վճռին ծանօթութեանց մէջ, որով առանձին թիւ չունի յունարէնին մէջ, ուստի փոխանակ 19 վճռոյ 20 համրուելու ենք յունարէնին վճիռները, եւ հայը մէկ վճիռ միայն աւելի կ'ունենայ (համմտ. Դ)։ Մուլլախ “յետսամուտ„ կը համարի այս վճիռը հետեւելով Որէլլիի որոնց կը համաձայնի Ռըվիլլու (էջ 48)։ Վասզի ասոնք կը կարծէին թէ “Միայնակեցութեան„ վրայ է հոս խօսքը։ Բայց Պախման ցուցուց իրաւամբք (էջ 21 Ծան.) որ զուտ հեթանոսական է եւ “Սուսերամարտկութեան„ վրայ կը խօսի։ Տես վերը՝ էջ 177։

Յոյն բնագրին վերնագիրն է՝ Τί ἐστι

Μοναχός, ճիշդ ինչպէս գտած է Հայր՝ "Զի՞նչ է Միայնակեցութիւն." զոր ուղղելու ենք Μονόμαχος (Մենամարտիկ)։ P եւ Արեւելեանք չունին։

—1 "Մահ ի վաճառումն." G կ'ըսէ θάνατος πολούμενος (մահ գնել)։ Պախման որ լուսաբանած է այս խօսքերը, կը համեմատէ այս սահմանը Սուետ. Կղաւդ. 12 տեղւոյն հետ։ —2 "Նահատակի զենումն." կրնայ շատ լաւ ըլլալ. բայց յունարէնն է ἀγωνοθέτου θυμός (քաջասրտութիւն մարտայարդարի)։ Վերը մեկնեցինք այս խօսքը (էջ 226) եւ տեսանք որ հայն θῦμα (զոհ, զենումն) կարդացեր է իւր բնագրին մէջ։ —3 "Որկորէի ցանկութիւն" ունի միայն A ձեռագիրը = G γαστριμαργίας ἐπιθυμία (ցանկութիւն որկորէութեան"), որ ինչպէս Պախման կը ցուցընէ ընդդէմ Որվիլլուի, կը յարմարի սուսերամարտկի՝ յաղթութենէ ետքն ըրած շուայտ խրախճանաց, եւ թէ սուսերամարտկութիւնը վերջին ապաւէնն էր աղքատացած շուայտասիրաց։ Նաեւ Որվիլլու տեսած էր այս խօսքին անյարմարութիւնը "միայնակեցութեան" համար եւ ջանացած ուրիշ մեկնութիւն տալ, զոր յառաջ բերել աւելորդ կը համարինք։ —4 "Ինքն դիմեալ ի մահ." գրելու է անշուշտ "ինքնայօժար։" Այս խօսքը չունի G, որ ասոր տեղ կ'ըսէ ὀξὺς θάνατος (մահ յանկարծադէպ), զոր չունի Հ ուրիշ ձեւով։ —5 "Բախտի բեկումն" Նորանշան ընթերցուածին վրայ տես վերը՝ էջ 246 G կ'ըսէ τύχης παράπτωμα, որուն իմաստն է "բախտի խաղալիկ։" —6 "Վարդապետեալ թշուառութիւն" Նորանշան թարգմանութիւնը ջանացինք վերը մեկնել (էջ 227), ուր ըսինք թէ հաւանօրէն ուրիշ բնագիր չունի հայը՝ բայց միայն G-ի ընթերցուածը քիչ մ'այլայլած։ G է περισαλπιζομένη μοῖρα (ճակատագիր փողահարեալ)։ Ասոր մեկնութեան համար մտադիր կ'ընէ Պախման, որ

սուսերամարտկաց պայքարին սկսելու նշան փողով կը տրուէր, ինչպէս ըրաւ նաեւ Կղաւդիոս՝ երբ Հռոդացւոց եւ Սիկիլիացւոց մէջ ծովամարտիկ կռիւ մը ներկայացընել տուաւ, ինչպէս կը պատմէ Տակիտոս (Տարեգ. ԺԲ, 56), Դիոն, Կ, 33, Սուետ. Կղաւդ. եւն։ —7 "Ապականութեան հարք„ չկայ յունին մէջ, որ ասոր տեղ ունի παρατένων μόρος (մշտատեւ մահ)։ —8 "Վաղվաղութեան հնարք„ նոյնպէս չկայ Gի մէջ։ Վենետկ. Բառագրոց մէջ (Բ, էջ 774a) այս խօսքն ի վկայութիւն բերուած է այսպէս՝ "վաղվաղութեան ընթացք։„ "Վաղվա-ղու-թե-ան„ = վաղվաղումն շատ ցանցառ գործածուած բառ մըն է։ —9 "Չարայաղթութեան հնարք„, որուն տեղ C սխալ գրչութեամբ կը կարդայ "չարայաղթու-թեան հնարք„։ Յոյնն է՝ κακὴ νίκη (չար յաղթութիւն), վասն զի, ինչպէս մտադիր կ'ընէ Պախման, սուսերամարտկութեան արուեստն անուանարկիչ կը նկատուէր։

35. Տող. 227–232. ԺԸ: Յոյնը՝ XVI. Τί ἐστι Γεωργός; (Զի՞նչ է Երկրագործ)։ Արաբ. Եթովպ. Հարցումն 33. (Պախման, էջ 24–5)։ Արաբերէնը չէ հաղորդած Պախման։ —1 "Ժամանակաց արքանեակ„, որոնց վրայ տես վերը՝ էջ 227 G κόπων ὑπηρέτης (պաշտօնեայ աշխատութեանց. = Միւնխէնի լատ. ձեռագիրը laborum minister. Ասոր տեղ P կը կարդայ καρπῶν ὑπηρέτης (պտղոց պաշտօնեայ), ինչպէս ունի նաեւ Եթովպ.։ —2 "Անձրեւաց մատակարար„ = G ὄμβρων διαιτητής (միջնորդ), Եթով. "որ սպասէ անձրեւոյ եւ մնայ ջրոյ տալոյ ի մէջ անդոց։„ —3 "Սնունդ վարի„ խօսքին վրայ տես վերը՝ էջ 205։ Յոյնն է τροφῆς ὑπουργός, G τρυφῆς եւն. ուստի "պաշտօնեայ սննդեան„, G "փափկութեան„։ Եթովպ. կ'երեւայ թէ կը հաստատէ հայոյն "վար„ (= վարուցան) ստութիւնը՝ կարդալով. "որ գործէ զսնունդ (կերակուր) եւ զարդարէ զանդ„ : —4 "Ա-

ռանց ծովու վաճառական„ ունի միայն P: ἀθά-λασσος ἔμπορος ըստ ուղղագրութեան Մուլլախի, Ձեռ. ἀθαλασσίας (անծովութեան) կը կարդայ: Եթովպ. ալ ունի զայս, բայց բնագիրը թերի է՝ „ծովն„ բառին դուրս մնալովն: —5 „Ծառոց անդիչ„ = Յ δένδρων φυτουργός, զոր Եթովպ. չունի: —6 „Աղքատութեան հոյկապ„ (= „Հոյա-կապ„ իբր՝ գերի վերոյ, ազատ.) կը պակսի յունա-րէնին մէջ, որուն տեղ P կ'ըսէ χαχοπαθίας συνή-θεια („չարակրութեան սովորութիւն„ կամ սովո-րեալ ըլլալը): —7 „Բժիշկ հողմոց„ ուր Յ կ'ըսէ γῆς ἰατρός (երկրի բժիշկ) որ լաւ է ըստ իմաստին: Արդեօք հայն ἀνέμων կարդացեր է („հողմոց„) թէ լաւ եւս՝ ուղղելու ենք „հողմոց„ բառն գրելով „հողոյ„: Եթովպ. ալ կը միաբանի յունարէնին հետ: —8 „Ժամոց դաստիարակ„ անյարմար կեր-պով, ուր ըլլալու է ըստ յունին „Թռչնոց„, ὀρνέων παιδαγωγός, զոր կը հաստատէ նաեւ Եթովպ.: Հայոյն ընթերցման մեկնութիւնը տուին վերը՝ էջ 227: — Հայոյն մէջ կը պակսին՝ „Սովորեալ առանձնութեան. (Եթովպ. չունի = Հ), հակա-ռակորդ անտառոյ. (ὕλης ἀνταγωνιστής, զոր չունի Եթովպ.) դաշտաց յաղթող.„[πεδίων ἀριστευτής, զոր չունի G = Հ, թէեւ Եթովպացին ունի նման խօսք մը]: Վերջապէս G ունի սա խօսքը՝ „բնակա-կից անապատի„ (կամ „առանձնութեան„ ἐρημίας σύνοικος), զոր չունի այսպէս P, բայց իւր քիչ տարբեր մէկ խօսքն քիչ մը վերը յիշեցինք:

36. Տող. 233—237. Թիթ: Յոյնը՝ XIII. Τί ἐστι Ὕπνος; (Զի՞նչ է քուն): Արաբ.-Եթովպ. Հարցում 51, (Պախմ. էջ 41—42):

—1 „Աշխատութեանց հանգիստ„ = Յ χαμάτων ἀνάπαυσις. Արեւելեանք չունին: —2 „Բժշկաց սատար„. Ճիշդ չկայ յունին մէջ, որ կ'ըսէ ἰατρῶν χατόρθωμα („բժշկաց յաջողուած„ քաջագործութիւն, նշանաւոր գործք.) եւ որուն

նման է Եթովպ.։ —3 “կապելոց լուծումն„ = δεδεμένων λύσις. Արեւելեանք չունին։ —4 “Տըքնելոց իմաստք„։ Հոս “իմաստք„ յայտնապէս = “իմաստութիւն„ գործածուած է, ինչպէս կը ցուցընէ Յ ἀγρυπνούντων σοφία, զոր չունին Արեւելեանք։ —5 “Հիւանդաց իղձք„. Յ “աղաչանք, աղօթք„. νοσούντων εὐχή, զոր չունին Արեւելեանք։ —6 “Մահու պատկեր„ = θανάτου εἰκών. Արաբ. է “մահու նշան„ علامة الموت = Եթովպ.։ —7 “Ոստումն հանապազորդեան„, որուն վրայ տես վերը՝ էջ 221։ Յ καθημερινὴ μελέτη. զոր ունի Արաբ. այսպէս تلاوة كل يوم (“որ կրկնի օր ըստ օրէ.„) բայց Եթովպացին μελετη բառը հայոյն նման հասկըցեր է՝ գրելով “որ ջէշտափանէ զօրհանապազ„ եթէ չենք սխալիր։ — Հայոյն մէջ կը պակսին՝ “մխիթարութիւն թշուառականաց.„ [հոս ալ G “ցանկութիւն„ կը կարդայ = Արաբ. Եթովպ.] հանդիստ ամենայն շնչոյ. [զոր ունին նաեւ Արեւելեանք.] օրինակ վարուց մեծատանց. [կամ “մեծատանց ընթացք„ πλουσίων ἐπιτήδευμα, զոր չունին Արեւելեանք.] աղքատաց ցանկութիւն.„ [ըստ ուղղագրութեան Մուլլախի, ուր ձեռ. ἀδολεσχία է եւ զոր կը պահէ Պախման]։

37. Յող. 238—243. ի: Յոյն՝ XII. Τί ἐστι Γῆρας; (Զի՞նչ է ծերութիւն)։ Արաբ.-Եթովպ. 52. (Պախման, էջ 42—43)։ Արաբերէնին ընթերցմունքն հաղորդած չէ Պախման։

—1 “Դիւրագիւտ չար„, ունի միայն G: εὔεκτες κακόν (քաջառողջ չար). Թերեւս հայն հոս εὔκτητον (դիւրաստաց) կարդացեր է։ P πλήρωσις ἡμέρων (լրումն աւուրց) կ'ըսէ = Եթովպ. “նուազեալ աւուրքը։„ —2 “կենդանի ծաղծաղն։„ Տես այս բառին համար՝ էջ 205, Վեն. Բառ. (Բ, 167c) կը գուշակէ՝ կոչումն ընելով այս խօսքը, թէ այս բառն իբր “չխօսման կամ ցանկացող ծաղու„ կը նշանակէ։ Վերջինը դժուարաւ ուղիղ է, ինչպէս

կը ցուցընէ յունարէնը՝ ζῶν θάνατος (կենդանի մահուալ) = Եթովպ. «մեռեալ իբրեւ կեայ:» — 3 «Սղտաձիչ մահու» Մեսրոպեան շրջանի գեղեցիկ բացատրութիւն մըն է՝ շատ ցանցառ գործածուած = «ողտաձեռ» ամէն նշանակութեամբ, հմմտ. Եփրեմ (Մատենագր. տպ. Վենետ. 1837, Ա, 451) «ընդ վահանաւոր սպառնօքն:» Հոս «սպանել» իմաստով = Յ θάνατος προσδοκιμένος [G προσδοκούμενας «մահ սպասեալ»], ուստի = «որ սպասէ մահու» Եթովպ. ճշդիւ: — 4 «Քնայից ծաղր.» ճշդիւ չէ յունականին նման, որ կ՚ըսէ πολυχρόνιον γέλασμα (երկարաժամանակեայ ծաղր.») Եթովպ. չունի: — 5 «Աղշութիւն առ իմաստութիւն:» Ձեռագրաց «աղշութիւն առ իմաստութեանց ուստր» գրելուն վրայ տես բնագրին այս մասին ծանօթութիւնը: Հայոյն հետ համեմատելու ենք Յ ἄθονος φρόνησις (հանճար անկարօցեալ), զոր ունի նաեւ Եթովպ.: — 6 «Պաճոյճ ցպոյ» գեղեցիկ առութիւն մըն է, զոր չենք գտներ յունին մէջ ճշդիւ այսպէս: Անոր տեղ կը կարդայ Յ ὑγιαίνουσα νόσος (հիւանդութիւն որ առողջ է) = Եթովպ. «հիւանդ եւ առողջ:» — 7 «Ցանկութեանց ուստր»: Հայերէնը համեմատելու ենք յունարէնին սա խօսքին՝ Ἀφροδίτης ἀλλότριον («ուստր յԱփրոդիտեայ»), զոր հայը «ցանկութեանց» թարգմանել ուզած է. Եթովպ. չունի: — 8 «Մեռեալ զեռուն» = Յ νεκρὸς κινούμενος («մեռեալ շարժուն» = «զեռուն».) զոր ունի նաեւ Եթովպ.. — Հայոյն մէջ կը պակսին, «հողք ակընկալեալք. [չունի Եթովպ.] երկիւղ յուսացեալ. (զոր չունի G, եւ կրկնութիւն է, տես ԺԳ, 4) շնչաւոր մեռեալ» [տես Ի, 8]:

*38. Տող. 244—250. ԻԱ:* Յոյն՝ XIX. *Τί ἐστι θάνατος;* (Զի՞նչ է Մահ): Ասորի հատակոտորը պահած է մի միակ այս վճիռը, որ շատ աւելի ընդարձակ է քան յոյնն ու հայը. (Հմտ. Sachau,

Inedita Syr. p. 88, 1—13)։ Արաբ.-Եթովպ. Հարցումն 53, զորոնք հրատարակած է Պախման (Leben, p. 14—15) տախտակի մը մէջ դէմ առ դէմ դնելով բոլոր խմբագրութիւնքը։

—1 "Քուն յաւիտենական" = Θ αἰώνιος ὕπνος. Ասոր. 88, 1 "Մահ է քուն որ ի յաւիտեանս" այսինքն՝ յաւիտենական. նոյնպէս Արաբ.-Եթովպ.։ —2 "Քակտումն մարմնոյ" = P ἀνάλυσις σώματος եւ G διάλυσις σωμάτων. Ասոր. 88, 1 "լուծումն մարմնոյ." = Եթովպ. "քակտումն", մինչ Արաբ. "կորուստ" կ'ընթեռնու՝ الضلال —3 "Հիւանդաց խնդրուածք" չկայ յունարէնին մէջ. բայց կը հաստատուի Ասորւոյն (88, 2) սա կրկին նախադասութեամբք. [illegible] (երկիւղ հիւանդաց) եւ [illegible] (խնդրուածք երկարակեցից)։ Հայոյն մէջ մէկ խօսքի ամփոփուած են ասոնք։ Եթովպ. տես յաջորդը։ —4 "Թշուառականաց խնդիրք։" "Խնդիրք" հայոյն սեպհական է, ուր Θ է "ցանկութիւն" ταλαιπωρούντων ἐπιθυμία. Ասոր. 88, 3 "անկարութիւն (= Հ "խնդիրք") չարաքախտից." Արաբ. կը չեղի, իսկ Եթովպ. յունին հետ "ցանկութիւն հիւանդաց" կ'ըսէ, ուր "հիւանդաց" նախընթաց խօսքին համեմատ է. (ԻԱ, 3)։ —5 Հոգւոյ հեռացումն" = Θ πνεύματος ἀπόστασις ("հեռացումն հոգւոյ" ըստ P, վասն զի G ἀποστάτης «ապստամբ» կ'ընթեռնու.) Ասոր. 88, 3 "անջատումն հոգւոյ." ունի զայս նաեւ Արաբ. Եթովպ.։ —6 "Մեծատանց երկիւղ" = Θ πλουσίων φόβος. Ասոր. 88, 7 ունի նախ "աղքատացուցիչ մարդկան" եւ ապա "ատելի մեծատանց" ուստի երկու խօսքի բաժնուած։ Արաբ.-Եթովպ. ունին յունին եւ հայոյն ըսածը, բայց աւելի մաս մ'ալ ունին։ —7 "Աղքատաց պանծալի" ապահովապէս ուղիղ ընթերցուած մը չէ. թերեւս գրուած էր հոս "ցանկալի". Թէեւ ոչ միայն լեզուի ընտրութեան

կողմանէ այլ նաեւ «Բանք իմաստասիրաց» կոչման համեմատ կը բաղձայինք գրել «աղքատաց խնդ.»: Յոյնն է πενήτων παραμυθία («աղքատաց մխիթարութիւն» ըստ ուղղագրութեան Մուլլախի. վասն զի G ἐπιθυμία «ցանկութիւն» կը կարդայ, P παραλαλία «զառանցանք, բաջաղանք.») Ասոր. 88,5 «կամք (կամ «հաճոյք») հիւանդաց.» Եթովպ. կը համաձայնի Մուլլախի ուղղագրութեան հետ՝ «մխիթարիչ» ընթեռնլով. նոյնպէս Արաբ.: —8 «Քակտումն անդամոց» = Յ ἀνάλησις [G λύσις] μελῶν. Եթովպ. չունի: Մտադրութեան արժանին հոս այն է որ հայն ու յոյնը միեւնոյն ընթերցումն ունին, իսկ Ասոր. 88, 5 «Հանգիստ անդամոց» (ܢܝܚܐ ܗܕ̈ܡܐ), որուն մերձաւոր է Արաբացւոյն ընթերցումը՝ نوم الاعضاء (քուն անդամոց): —9 «Հայր քնոյ» ուղղելու է ձեռագրաց «հայ քնոյ» ընթերցուածը: Յ ὕπνου πατήρ. Ասորին չունի ճշտիւ այս խօսքը, բայց Արաբ.,– Եթովպ. ունին: —10 «Հրաժեշտ յամենայնէ:» Յ է ἀπόλυσις πάντων (արձակումն, լուծումն ամենայնի), զոր նաեւ Ասորին 88, 13 իբրեւ վերջին սահման այս վճռին պահած է՝ ܡܒܛܠ ܟܠܡܕܡ, Արաբ. مبطل كل شى (որ ջնջէ, ոչնչացուցանէ զամենայն ինչ) = Եթովպ. «սկիզբն ամենայն աւարտածոյ եւ կատարած նոցա» (եղծումն, ոչնչացումն): — Հայոյն մէջ կը պակսին յունարէն սա խօսքերը. «Փախուստ եւ կորուստ կենաց. [= Ասոր. 88, 7 «որ արգելու զկեանս.» Արաբ. «որ ելանէ ի կենացս»]. ժամանակակէտ ճշմարիտ. [= Ասոր. 88, 5 «կատարումն աշխարհի» եւ Արաբ. «լուծումն Թուոյ աւուրց.» = Եթովպ.]:

Արեւելեանք՝ ըստ իրենց սովորութեան՝ ունին տակաւին քանի մը նախադասութիւններ: Բայց մտադրութեան արժանին է Ասորին՝ որ սովորաբար հաւատարիմ բնագիր մը կը համարուի: Ուստի այն պարագայէն որ Ասորին հոս շատ մը

նախադասութիւններ ունի, որոնք չեն գտնուիր ո՛չ յունին եւ ո՛չ հայոյն մէջ, կրնանք հետեւցընել որ այս վճռին նախնականը շատ ընդարձակ ըլլալու էր։ Անոր համար Պախման (էջ 22, ծան. 3) փորձած է ասորւոյն տուած գաղափարներուն յունականը վերականգնել։ Այս մասերէն մէկ քանի քիչ շատ նմանութիւն ունին անո՛նց հետ, զորոնք Արաբն եւ Եթովպացին կը ներկայացընեն միացեալ մասանց մէջ։ Բայց մեծ մաս մ՚ալ բոլորովին սեպհական է ասորւոյն։ Աւելորդ կը համարինք այս մասերը, որ հայոյն հետ ուղղակի կապ չունին, մի առ մի յառաջ բերել հոս։



Յաւելուած յէջն 202, 210 եւ 213:

Վերջին վայրկեանիս մեզի հասած Յարգ. Միաբանի (Գալ. Տէր-Մկրտչեան) մէկ նամակը կ'իմացընէ որ ՆԼ (=981) թուականին գրուած կարեւոր ձեռագիրն այժմ Էջմիածին է: Աստ յիշատակարանին այն կարեւոր խօսքը թէ "Եւ է նորոգումն սորա ի ՆԼ թուականութեան Հայոց" ուրիշ ձեռքէ չէ ինչպէս ենթադրած էինք: Յարգ. նամակագիրը սա դիտողութիւնքը կ'ընէ. "Ըստ իս նորոգում-ը պէտք է հասկանալ այն մաքով որ ձեռագիրն ընդհատումներով է գրուած երկար տարիների ընթացքում: Մի ուրիշ յիշատակարանից կարելի է մակաբերել ձեռագրի բուն թուականը այն է ձեռագրի առաջին մասին գրութեան թուականը, որ լինելու է ՆԻ (= 971): Ահա այդ յիշատակարանը. Տէր Յիսուս Քրիստոս միածին որդի Աստուծոյ, ողորմեա Գիշին եւ Աղիզմամին եւ եւ զաւակաց նոցա՝ Տէր Սարգսի, Կարապետին եւ Մելքիսեդեկա. ես մեղաւոր աւագերէց Յովաննեսի որդի Քէչէ որ զգրկունքս գնեցի, եւ յետ ՄԾԴ ամի զցանկս յաւրինեցի ի ՈՀԴ (= 1225) թուականիս:" Արդ "հանելով. ՈՀԴ ից ՄԾԴ՝ կը ստանանք ՆԻ (=971) հայ թուականը, որ լինելու է ձեռագրի սկզբի մասի բուն թուականը: Ձեռագիրը մինչեւ վերջն էլ գրուած է նոյն Ղուկաս գրչի ձեռքով՝ հաւանականաբար ընդհատումներով: Միայն թէ վերջին ստացողները տեղ տեղ աւելացրել են իրենց յիշատակարանները: Այս ձեռագիրը շատ կողմերով նշանաւոր է: Ըստ իմ գիտութեան սա հնագոյն հայ ձեռագիրն է թղթի վրայ գրուած. Էջմիածնի մատենադարանի հնագոյն ձեռագիրն է: Չհաշուելով մի քանի աւետարաններ, սա հնագոյն հայ ձեռագիրն է պատմական եւ այլ բովանդակութեամբ:"

Նամակագիրը յօժարակամ հաճած է խաւ-րել Սեկունդոսի նկատմամբ մէկ երկու կտոր, որ նշանակութիւն ունին։ Այս թիւ 2048, 15 ձեռագիրն (-ոչ ըստ Կարինեանցի թուարկութեան,) եւ որ 1892ին Թ. 2005 թուականը կը կրէր "ունի "Բանք Իմաստասիրաց" անուն գործը։ Աստ Յաղագս չարութեան եւ անզգամութեան կանանց", գլխուն մէջ (Թղ. 252բ-253ա) կայ Սեկունդոսի այն ընդարձակեալ վճիռը, զոր վերը դրինք (տես էջ 213-4), եւ որ կը սկսի "Սեկունդոսի հարցին թէ զինչ է կին չար, ասէ. Առն ընկղմիչ տան մրրիկ" եւն որ ընդհանրապէս նոյն է մեր դրածին հետ՝ բայց նաեւ տարբերութիւններ ունի[1]։ — Անկէ քիչ մ'եաքը կտոր մը կայ, որ Սեկունդոսի Վարուց սկիզբէն հայ թարգմանութեան պակսած մասէն առնուած է, եւ է այսպէս. "Սեկունդոս փիլիսոփայ՝ յասելն ցմայր իւր, եթէ Ամենայն կին բոզ է, եւ նա յուրաստ կացեալ։ Եւ յորժամ ամք անցին ի վերայ՝ եկն (Սեկունդոս) այլակերպեալ առ մայրն փորձիւ. եւ յանկողինսն ասէ. Ո՞չ ասացի թէ ամենայն կին բոզ է։ Եւ մայրն ի յամօթոյն մեռաւ։ Եւ նա եհատ զլեզուն, զի ոչ խօսեսցաւ ի կեանս իւր, այլ գրով հարցանէր ընդ թագաւորն Անդրիանոս։" — Այս կտորը պակսած մասէն քաղուած մըն է։

---

1 Տարբերութիւնքն հետեւեալներն են։ Էջմիածնի ձեռագիրը կ'ընթեռնու. "Հանապազորդ (մերը "Հանապա-զորդեան") մախանք." — "Շնալըյ պատճառ" չկայ. — "կա-[illegible] (— վերն ալ կար Էջմիածնի ձեռագրին մէջ այս խօսքն՝ ինչպէս գրած ենք յէջն 214 —) [illegible]. աղուէս պա-պանող. գայլ արարացի. հանապազ կաթիլ ի տան. [illegible]. եւ անպարտիւ տուգանք'," Վերջիններս կան մեր ձե-ռագրին մէջ ալ բայց բոլոր նօտրագիր խօսքերը նոր են, որոց ոմանք յունարէնին հետ կը նոյնանան։ Լուսանցքի վրայ ալ կայ գրուած պատուով հետեւեալը։ "իսկ մըն սպուր," անշուշտ՝ "իսկ մարդկան սպառուոր։"

